# ԱԹՈՌ

## ՍՐԲՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ

## ԱՌԱՔԵԼԱՊԵՏԻ

Կ

ՊԱՆ Ս.

# ԱԹՈՌ

## ՍՐԲՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ

## ԱՌԱՔԵԼԱՊԵՏԻ

[illegible]ՑԱՆ Ա

# ԱԹՈՌ
# ՍՐԲՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ
## ԱՌԱՔԵԼԱՊԵՏԻ
## ՀԻՄՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ
### ԱՂԲԻՒՐ ԻՐԱՒԱՐԱՆՈՒԹԵԱՆ
### *ԿԵՆԴՐՈՆ ՄԻՈՒԹԵԱՆ*

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ ԹԱՐԳՄԱՆԵՑ
ԵՒ Ս. ՊԵՏՐՈՍԻ ՀՌՈՄ ԳԱԼՈՒՆ
ՈՒ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԱԿԱՆ ԳԼԽԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ
ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՎԿԱՅՈՒԹԵԱՆ
ՃԱՌԵՐՆ ԱՒԵԼՑՈՒՑ

**Հ. ԱՂԵՔՍԱՆԴՐ Վ. ՊԱԼՃԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





**ՎԻԷՆՆԱ**

ՊԱՇՏՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

***1853 ՌՅԲ.***

ԱՐԱՐ ԶՆԱ (ԶՊԵՏՐՈՍ) ՎԷՄ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ ԱՄԵՆԱՑՆ ԵԿԵՂԵՑԵԱՑ։

Ս․ ԳՐԻԳ․ ԼՈՒՍԱՒ․ Ի ՎԱՐԴԱՊ․

ՈՐ ԳԵՐԱԳՈՅՆ ԸՆՏՐԵԼՈՑ ԱՌԱՔԵԼՈՑՆ ԴԱՍՈՒՑ ԱՆՈՒԱՆԵՑԵՐ ԼԻՆԵԼ ԶԵՐԱՆԵԼԻՆ ԶՊԵՏՐՈՍ ԳԼՈՒԽ ՍՈՒՐԲ ՀԱՒԱՏՈՅ ՀԻՄՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ։

ՇԱՐԱԿԱՆ։

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Շատ անգամ լսուած բան է եւ շատերուն բերանը կը շրջի մեր դարուս լուսաւորութիւնը, յառաջադիմութիւնն ու առաւելութիւնները՝ մեր նախնեաց ատեններուն համեմատութեամբ, այնպէս որ երկնից աստղները համրող փիլիսոփայէն սկսեալ՝ մինչեւ տգէտ գեղջուկն իրեն պարծանք կը համարի աս դարուս մէջ ծնած ու սնած ըլլալը. եւ շատերուն բերանն առակ եղած է աս մեր [illegible] լուսաւորեալ դարը։ Իրաւցընէ ալ, կը գտնուի՞ արդեօք մէկը՝ որ մէյ մը մտաց հայեցուածն իր բոլորտիքն աշխարհքիս չորս կողմը պտըտցընելէն ու մարդկային ընկերութեան հիմակուան մտաւոր որպիսութեան վրայ աղէկ դիտողութիւն ընելէն ետքը՝ չզարմանայ ու չաղաղակէ, թէ Աս ինչ յառաջացում է, աս ինչ լուսաւորութիւն, աս ինչ կատարելութիւն մարդկային հանճարոյ. թող յառնեն մեր նախնիք իրենց գերեզմաններէն ու մեր՝ իրենց թոռանց եւ սերընդոց լուսաւորութիւններն ու յառաջադիմութիւնը տեսնեն եւ զարմանան։ Հին ատենները պատմութեան մէջ թագաւորի մը իր զօրքով ծովու նեղուցի մը վրայէն նաւակամրջով մէկալ ծովեզերքն անցնիլը՝ մեծագործ բան մը կ'երեւար. իսկ հիմայ մեր ճամբորդներն աշխարհածանօթ գետի մը ջրերուն տակէն իրենց բազմաբեռն սայլերովը կ'անցնին կը

# ԱԹՈՌ

# ՍՐԲՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ

## ԱՌԱՔԵԼԱՊԵՏԻ

Կ

ՑԱՆ Ս

# ԱԹՈՌ
# ՍՐԲՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ
## ԱՌԱՔԵԼԱՊԵՏԻ
## ՀԻՄՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ
## ԱՂԲԻՒՐ ԻՐԱՒԱՐԱՆՈՒԹԵԱՆ
## *ԿԵՆԴՐՈՆ ՄԻՈՒԹԵԱՆ*

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ, ԹԱՐԳՄԱՆԵՑ
ԵՒ Ս. ՊԵՏՐՈՍԻ ՀՌՈՄ ԳԱԼՈՒՆ
ՈՒ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԱԿԱՆ ԳԼԽԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ
ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՎԿԱՅՈՒԹԵԱՆ
ՃԱՌԵՐՆ ԱՒԵԼՑՈՒՑ

**Հ. ԱՂԵՔՍԱՆԴՐ Վ. ՊԱԼՃԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





**ՎԻԷՆՆԱ**

ՊԱՇՏՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

***1853 ՌՅԲ.***

ԱՐԱՐ ԶՆԱ (ԶՊԵՏՐՈՍ) ՎԷՄ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ ԱՄԵՆԱՅՆ ԵԿԵՂԵՑԵԱՑ։

Ս. ԳՐԻԳ. ԼՈՒՍԱՒ. Ի ՎԱՐԴԱՊ.

ՈՐ ԳԵՐԱԳՈՅՆ ԸՆՏՐԵԼՈՑ ԱՌԱՔԵԼՈՑՆ ԴԱՍՈՒՑ ԱՆՈՒԱՆԵՑԵՐ ԼԻՆԵԼ ԶԵՐԱՆԵԼԻՆ ԶՊԵՏՐՈՍ ԳԼՈՒԽ ՍՈՒՐԲ ՀԱՒԱՏՈՅ ՀԻՄՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ։

ՇԱՐԱԿԱՆ։

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Շատ անգամ լսուած բան է եւ շատերուն բերանը կը շրջի մեր դարուս լուսաւորութիւնը, յառաջադիմութիւնն ու առաւելութիւնները՝ մեր նախնեաց ատեններուն համեմատութեամբ, այնպէս որ երկնից աստղները համրող փիլիսոփայէն սկսեալ՝ մինչեւ տգէտ գեղջուկն իրեն պարծանք կը համարի աս դարուս մէջ ծնած ու սնած ըլլալը. եւ շատերուն բերանն առակ եղած է աս մեր [illegible] [illegible] դարը։ Իրաւցընէ ալ, կը գտնուի՞ արդեօք մէկը՝ որ մէյ մը մտաց հայեցուածն իր բոլորտիքն աշխարհքիս չորս կողմը պտըտցընելէն ու մարդկային ընկերութեան հիմակուան մտաւոր որպիսութեան վրայ աղէկ դիտողութիւն ընելէն ետքը՝ չզարմանայ ու չաղաղակէ, թէ Աս ինչ յառաջացում է, աս ինչ լուսաւորութիւն, աս ինչ կատարելութիւն մարդկային հանճարոյ. թող յառնեն մեր նախնիք իրենց գերեզմաններէն ու մեր՝ իրենց թոռանց եւ սերընդոց լուսաւորութիւններն ու յառաջադիմութիւնը տեսնեն եւ զարմանան։ Հին ատենները պատմութեան մէջ թագաւորի մը իր զօրքով ծովու նեղուցի մը վրայէն նաւակամրջով մէկալ ծովեզերքն անցնիլը՝ մեծագործ բան մը կ'երեւար. իսկ հիմա մեր ճամբորդներն աշխարհածանօթ գետի մը ջրերուն տակէն իրենց բազմաբեռն սայլերովը կ'անցնին կը

դառնան եւ աչքերնուս բան մը չ՚երեւար։ Ժամանակ մը Հերակղի արձանէն անդին ոչ ոք կը համարձակէր նաւելու. իսկ հիմայ զբօսանք մ՚եղած է հին աշխարհքէն նոր աշխարհք երթալ գալ։ Ասկից յիսուն տարի առաջ որուն մտքէն կ՚անցնէր որ տկար երեւցած շոգւոյն զօրութեամբը՝ այն թեթեւ նաւերը հանդարտ ծովերու եւ կամ փրփրադէզ ալեաց վրայ խաղեւ մէյմէկ ծովու իշխաններ պիտ՚որ հրամայեն, եւ կամ այն մեծակառոյց շոգեվար կառքերը՝ երկու շարք երկաթի ձողերու վրայէն թռչնոյ արագութեամբ պիտի սահին անցնին։ Քանի տարի յառաջ ով կրնար կարծել բան համարիլ որ երկու մետաղաց խրար շօշափելովը անանկ զօրութիւն մը պիտ՚որ ելլէ, որ արծաթն, ոսկին ու պղինձը հալեցընէ. եւ կամ ով կրնար համոզել որ այն ելեկտրական մագնիսական զօրութիւնը մեր մտաց խորհուրդը մէկմէկու յայտնելու գործիք մը պիտ՚որ ըլլայ այնպիսի զարմանալի արագութեամբ։ Ասանք մէկ քանին են այնչափ անչափ սքանչելի գիւտերէն՝ որոնցմով բեղմնաւոր է մեր դարը։ Իրաւ է՝ կոյր պէտք է ըլլալ մարդ, որ այս ամենայն չտեսնէ ու չզարմանայ։

Բայց եթէ դառնանք եւ մտածելու ըլլանք որ Արարիչը մարդուս չէ թէ միայն միտք, այլ նաեւ անմահ հոգի մ՚ալ տուած է, որուն անբաժանելի մէկ մասն է միտքը, ան ատեն անհրաժեշտ հարկ մըն ալ կ՚երեւայ, որ ծանր մտածող մը՝ աչքը նաեւ իր դարուն հոգեւոր յառաջացման վրայ դարձընէ, քննէ, նայի ու կշռէ։ Սակայն աս համեմատութեան մէջ ի՞նչ տեսարան կը բացուի աչքին առջեւ...։ Մենք անոնցմէ չենք՝ որ ամէն բան սեւ կը տեսնեն, որոնց առջեւ ինչ

որ վերջին դարերուն է, հոգեւոր եղեր է, մտաւոր եղեր է, անպիտան կը տեսնուի։ Ասիկա ծուռ դատում մըն է։ Բայց աս ալ ստոյգ է որ, թէպէտ Քրիստոսի եկեղեցւոյն մէջ հաւատք, սէր ու սրբութիւն երբեք պակսած չեն եւ պակսելիք ալ չունին. այսու ամենայնիւ իր անդամներէն շատերուն վրայ թէ առաջին եռանդը մնացած չէ, եւ թէ անոնք՝ որոնք իրենց յառաջացումը միայն մտաց վրայ դրած են եւ միայն մտքերնին լուսաւորելու ջանք ունին, կամ թէ ըսենք՝ միայն մտքերնին կը մեծարեն, այնպիսիները ստուգիւ հեռացած են քրիստոնէական հոգիէն եւ երթալով կը պաղի իրենց հոգւոյ եռանդը, եւ այսպէս կամ իրենք զիրենք անտարբերութեան կը զարնեն, եւ կամ այս գժբախտ վիճակն իրենցմէ շատ հեռու չէ։

Կարծենք թէ աս ըսածներնուս իրաւունք կը տրուի, թէ որ անգամ մը դիտող աչքերնիս երկրիս վրայ դարձընենք. ո՞ւր է այն եռանդուն կենդանի հաւատքը՝ որով առաջին քրիստոնէից աչքին առջեւ ոչ հայր, ոչ մայր, ոչ եղբայր, ոչ զաւակ եւ ոչ ամուսին բան մը կ՚երեւար՝ երբոր իրենց հաւատոց վրայ արատ կամ բիծ մը պիտի հանէր։ Ո՞ւր է այն սէրը՝ որով բորբոքած էին ու կ՚օրհնէին իրենց հալածիչները, որով բարիք կ՚ընէին իրենց ատելեաց ու թշնամեաց։ Ո՞ւր է այն ազնուական յոյսը յաւիտենական բարեաց, որուն համար աշխարհքս ու իր ամէն վայելմունքները ոտքի տակ կ՚առնէին։ Ո՞ւր է այն հնազանդութիւնն ու հպատակութիւնը օրինաց եւ առաջնորդաց. ո՞ւր այն գութը մեծին՝ իրմէն պզտիկին վրայ, եւ հպատակին՝ իր մեծին։ Չենք ուզեր ալ աս տխուր պատկերին աւելի կեն-

դանի գոյներով նկարել, թող կու տանք ընթերցողին որ մտածէ . . . ։

Բայց խօսքերնիս դարձընենք մեր ազգին վրայ, որն որ ընդհանուր տիեզերաց մտաւորական յառաջացման ու հոգեւորական յետախաղացութեան մանրանկար մը կրնանք մտածել ։ Ո՛ր Հայազգւոյ սիրտն է՝ որ չուրախանայ տեսնելով աս մեր օրերուս ընդհանուր ուսումնասիրութեան ու լուսաւորութեան բաղձանքը եւ մտաւորական յառաջացումը՝ որ ամէն տեղ ամէն կողմ քիչ շատ կը տեսնուի ։

Ստուգիւ երջանիկ կ՚ըլլար ազգը՝ եթէ մտաւորական յառաջացման հետ հոգւոյ խնամքն ու փոյթը հաւասար երթային . ան ատեն վախ չէր ըլլար ո՛չ կրօնական ցուրտ անտարբերութեան մէջ իյնալէն, եւ ո՛չ ալ ճշմարտութեան դէմ ոգորելէն կամ պատրանաց մէջ կամակար մնալէն . որոնք երկու ծայրեր են, երկուքն ալ չար ու մահաբեր՝ հոգւոյ ։ Չարագոյն է անտարբերութիւնը, վասն զի ուղղութեան յոյսն ալ կը բառնայ, երբ որ հոգւոյ վրայ թմրութիւն մը կ՚իյնայ, եւ անոր կենդանական շարժմունքը դադրելով՝ սրտին վրայ պաղութիւն մըն է կը տիրէ, եւ կ՚ըլլայ անզգայ ամէն հոգեւոր զգածմունքներու . ա՛լ անկից ետքը մարմնաւորը միայն իրեն զգալի է, ամէն բան որ հոգեւոր է՝ իր աչքին առջեւ ցնորք ու խաբէութիւն կ՚երեւայ ։ Եւ այսպէս ստոյգը՝ կեղակարծ, ճշմարտութիւնն անիրաւութիւն ըմբռնելով՝ կ՚անիրաւէ յԱստուած [1], որ յայ-

1 Քանզի յայտնելոց է բարկութիւն Աստուծոյ յերկնից ի վերայ ամենայն ամպարշտութեան եւ անիրաւութեան մարդկան՝ որք զճշմարտութիւնն անիրաւութեամբ ունին, վասն զի գիտութիւնն Աստուծոյ յայտնի է ի նոսա, քանզի Աստուած իսկ յայտնեաց նոցա ։ Հռոմ. Ա. 18, 19։

տնեալ ճշմարտութիւններուն վկայ է, եւ ուշ կամ շուտ վրէժ պիտի խնդրէ ամէն անիրաւութեան։ Բայց մենք աստ վրայ կանգ առնել չենք ուզեր. ազգերնուս կրօնասիրութիւնն աս նկատմամբ երաշխաւորութիւն մը կու տայ։

Սակայն նոյնը կրնա՞նք արդեօք ըսել երկրորդին վրայ ալ. անցեալն ու ներկան ուրիշ կերպ կը պատասխանեն. ուստի եւ ամէն ծանր ու առանց նախապաշարման մտածողներուն բաղձալու բան է աստ ճար մը գտնելն ու դարման տանելը։ Այլ արդ՝ ամենուն յայտնի է որ պատրանաց մէջ կամօք մնալը՝ հասարակօրէն կամ անգիտութեան եւ կամ ինքնահնար նախապաշարման մը վրայ հիմնուած է. քիչ կը պատահի որ գիտութեամբ եւ կամ ճշմարտութիւնը բացայայտ տեսնելէն ետքը՝ կամակոր յամառութիւն մը տիրէ, որն որ առհասարակ կրից ու ատելութեան պտուղն է։

Ասկից կը հետեւի ուրեմն որ գլխաւորաբար պատրանքն ու ինքնահնար նախապաշարումը վերցընելն ու մտքերը լուսաւորելը՝ ամենէն հարկաւոր բանն է, եւ կրնանք ըսել թէ ասիկայ, աստուածային շնորհաց[1] գործակցութեամբը՝ որուն վրայ ամէն մարդկային բարի գործոց եւ արդեանց արգասիքն ու յառաջացումը կը շարժի ու կը դառնայ, մի միայն միջոց ու դարմանն է։

Մեր Փրկիչը՝ աստուածային իմաստութիւնը՝ Ոչ ոք, ըսաւ, ճրագը կը վառէ՝ ծածկութի տակ կը դնէ, այլ աշտանակի վրայ, որպէս զի տան բնակիչներուն լոյս տայ, եւ լոյս տեսնեն ու խաւարի մէջ չխարխափեն[2]։ Աս աստուածային վարդապետին խրատուց հետեւելով՝

1 Ա. Կոր. Գ. 9։ 2 Մատթ. Ե. 15։

դանի գոյներով՝ նկարել, թող կու տանք ընթերցողին որ մտածէ . . . :

Բայց խօսքերնիս դարձընենք մեր ազգին վրայ, որն որ ընդհանուր տիեզերաց մտաւորական յառաջացման ու հոգեւորական յետախաղացութեան մանրանկար մը կրնանք մտածել: Ո՛ր Հայազգւոյ սիրտն է՝ որ չուրախանայ տեսնելով աս մեր օրերուս ընդհանուր ուսումնասիրութեան ու լուսաւորութեան բաղձանքը եւ մտաւորական յառաջացումը՝ որ ամէն տեղ ամէն կողմ քիչ շատ կը տեսնուի:

Ստուգիւ երջանիկ կ'ըլլար ազգը՝ եթէ մտաւորական յառաջացման հետ հոգւոյ խնամքն ու փոյթը հաւասար երթային. ան ատեն վախ չէր ըլլար ո՛չ կրօնական ցուրտ անտարբերութեան մէջ իյնալէն, եւ ո՛չ ալ ճշմարտութեան դէմ ոգորելէն կամ պատրանաց մէջ կամակար մնալէն. որոնք երկու ծայրեր են, երկուքն ալ չար ու մահաբեր՝ հոգւոյ: Չարագոյն է անտարբերութիւնը, վասն զի ուղղութեան յոյսն ալ կը բառնայ, երբ որ հոգւոյ վրայ թմրութիւն մը կ'իյնայ, եւ անոր կենդանական շարժմունքը դադրելով՝ սրտին վրայ պաղութիւն մըն է կը տիրէ, եւ կ'ըլլայ անզգայ ամէն հոգեւոր զգածմունքներու. ա՛լ անկից ետքը մարմնաւորը միայն իրեն զգալի է, ամէն բան որ հոգեւոր է՝ իր աչքին առջեւ ցնորք ու խաբէութիւն կ'երեւայ: Իսկ այսպէս ստոյգը՝ կեղակարծ, ճշմարտութիւնն անիրաւութիւն ըմբռնելով՝ կ'անիրաւէ յԱստուած[1], որ յայ-

1 Քանզի յայտնելոց է բարկութիւն Աստուծոյ յերկնից ի վերայ ամենայն ամպարշտութեան եւ անիրաւութեան մարդկան՝ որք զճշմարտութիւնն անիրաւութեամբ ունին, վասն զի գիտութիւնն Աստուծոյ յայտնի է ի նոսա, քանզի Աստուած իսկ յայտնեաց նոցա: Հռոմ. Ա. 18, 19:

տնեսալ ճշմարտութիւններուն վկայ է, եւ ուշ կամ շուտ վրէժ պիտի խնդրէ ամէն անիրաւութեան։ Բայց մենք աստ վրայ կանգ առնել չենք ուզեր. ազգերնուս կրօնասիրութիւնն ու նկատմամբ երաշխաւորութիւն մը կու տայ։

Սակայն նոյնը կրնա՞նք արդեօք ըսել երկրորդին վրայ ալ. անցեալն ու ներկան ուրիշ կերպ կը պատասխանեն. ուստի եւ ամէն ծանր ու առանց նախապաշարման մտածողներուն բաղձալու բան է ասոր ճար մը գտնելն ու դարման տանելը։ Այլ արդ՝ ամենուն յայտնի է որ պատրանաց մէջ կամօք մնալը՝ հասարակօրէն կամ անգիտութեան եւ կամ ինքնահնար նախապաշարման մը վրայ հիմնուած է. քիչ կը պատահի որ գիտութեամբ եւ կամ ճշմարտութիւնը բացայայտ տեսնելէն ետքը՝ կամակոր յամառութիւն մը տիրէ, որն որ առհասարակ կրից ու ատելութեան պտուղն է։

Ասկից կը հետեւի ուրեմն որ գլխաւորաբար պատրանքն ու ինքնահնար նախապաշարումը վերցընելն ու մտքերը լուսաւորելը՝ ամենէն հարկաւոր բանն է, եւ կրնանք ըսել թէ ասիկայ, աստուածային շնորհաց[1] գործակցութեամբը՝ որուն վրայ ամէն մարդկային բարի գործոց եւ արդեանց արգասիքն ու յառաջացումը կը շարժի ու կը դառնայ, մի միայն միջոց ու դարմանն է։

Մեր Փրկիչը՝ աստուածային իմաստութիւնը՝ Ոչ ոք, ըսաւ, ճրագը կը վառէ՝ ծածկութի տակ կը դնէ, այլ աշտանակի վրայ, որպէս զի տան բնակիչներուն լոյս տայ, եւ լոյս տեսնեն ու խաւարի մէջ չխարխափեն[2]։ Աս աստուածային վարդապետին խրատուց հետեւելով՝

1 Ա. Կոր. Գ. 9։ 2 Մատթ. Ե. 15։

Կ'ուզենք մենք ալ այս ծրագը վարել, որ մեր Հայկեան տան լուսաւորութիւն մը տայ եւ մառախուղը փարատէ, մանաւանդ այնպիսի մառախուղ մը՝ որուն անդադարանը, ցրուիլն ու փարատիլը՝ պայծառ միջօրէական ու նաեւ մշտնջենաւոր լուսաւորութեան մը սկիզբը կը համարինք։ Այն մառախուղը՝ որ շատերուն միտքը պատած է՝ Ս. Պետրոսի աթոռին եւ կամ քահանայապետական գլխաւորութեան ու իշխանութեան նկատմամբ։

Այսպիսի կարեւոր նիւթի մը վրայ՝ որն որ մեր ազգին համար ալ հաւատոյ միութեան խարիսխն ու հիմնուքն է, գուցէ ազգակից մը սրտէ բղխած խօսքերն աւելի ազդու ըլլային. բայց որովհետեւ չէ թէ միայն մթութիւնը, այլ նաեւ նախապաշարումը փարատել հարկ է, աս պատճառաւ ամենեւին անհիմն կասկածի մ'ալ տեղի չտալու համար՝ աս նիւթին վրայ Հայու բերնով Անգղիացւոյ մը խօսքին աւելի ազդու երեւցաւ, այնպիսի Անգղիացւոյ մը՝ որ իր ազգին մէջ գրագիտութեամբ եւ պաշտամամբ հռչակաւոր է, այսինքն՝ Թօմմաս Գուլիելմոս Ալլիս, որ երբեմն նաեւ պաշտպան ու եռանդուն ջատագով էր Անգղիական եկեղեցւոյն, որուն թէ իր աստիճանովը՝ իբրեւ նոյն եկեղեցւոյն պաշտօնեայ, եւ թէ նաեւ իր գրաւոր աշխատութեամբը[1], սրբութիւն ու ընդհանրութիւն մը տալ կը բաղձար ու կը ջանար։ Բայց որովհետեւ միանգամայն ճշմարտութեան սիրող էր եւ հլու անսացող Աստուծոյ շնորհաց ազդեցութեան, ճանչցաւ նոյն եկեղեցւոյն՝ որուն մէջ ծնած ու կրթուած էր, դատապարտութիւնն ու խաւար

1 Անգղիական եկեղեցի սրբեալ յարատոյ հերձուածոց, եւ այլն.

անդունդը՝ ուր կը թաւալէր ։ Նուագեցաւ՝ սրտին մէջ աստուածային շնորհաց նշոյլ մը, որն որ զինքն այն խորխորատին մէջէն առաջնորդելով՝ աղքատնական ճամբուն մէջ դրաւ ։ Բայց դեռ Քրիստոսի փարախը չէր մտած՝ երբ որ իբրեւ իր ներքին համոզմամբ, մնաց լուսաւորութեան ու հաստատուն առաջադրութեան հաւատալիք մը՝ գրեց աս մատեանը, որուն մէջ իր բնածին լուսաւորեալ հանճարով մանրամասն յառաջ կը բերէ այն ամէն պատճառները՝ որոնք զինքն ի գոգ Հռոմէական սուրբ եկեղեցւոյն դառնալու ստիպեցին ։

Մէկ է ճշմարիտ հաւատքը[1] . վասն զի նաեւ մէկ է ճշմարտութիւնը՝ որուն վրայ անիկայ հաստատուած է . այսպէս նաեւ մէկ է ճշմարտութեան ձայնը, եւ ազգի, ժողովրդեան ու լեզուի հետ կապ չունի[2] . ամէն տեղ, ամէն կողմ, ամէն ազգի եւ ժողովրդեան մէջ աղէկ կը հնչէ, ուր որ պատրաստ լսելիք ու ընտելական սրտեր կը գտնուին ։ Այսու ամենայնիւ աւելորդ չերեւցաւ մեր ազգին եւ ժողովրդեան համար երեք առանձին հատուածներ ալ աւելցընել, որոնցմէ մէկն է Վկայութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ ի վերայ գլխաւորութեան Ս. Պետրոսի եւ Հռոմայ Քահանայապետաց .

1 Մի է Տէր, մի հաւատք, մի մկրտութիւն, մի Աստուած ։ Եփես. Դ. 5 ։

2 Զի՞նչ է Կաթուղիկէն . Տիեզերական ։ Զի ամենայն եկեղեցիք ուղղափառաց, որ ընդ տիեզերս են՝ մի են ։ Մի Քրիստոս յամենայն եկեղեցիս է, որ ըստ Առաքելոյն հաւատոյ լինի . զոր եւ առաքելական կոչեմք ։ Որ զի եւ բաժանին ըստ տեղեաց, այլ ոչ եթէ ըստ ժողովրդոց ։ Զի ի ծագաց մինչ ի ծագս երկրի՝ ուր եւ հաստատեսցէ ճշմարիտ հաւատոյ իւրում յեկեղեցւոջն ուղղափառաց՝ իւր եկեղեցի է, եւ ոչ որոշէ զնա ոչ աշխարհն եւ ոչ լեզուայն օտարութիւնն . այլ ընդունի որպէս մայր ի գիրկս իւր ։ Եւ այսպէս ամենայն ուրեք տիեզերական (կաթուղիկէ) կոչի վասն տիեզերաց հաւատացելոց զգրունս բանալոյ եւ զգիրկս սփռելոյ ։ Եւ արդ տես քանի՜ն զբարեացն ունի լինել առիթ ։ Խոսր. Անձեւացեաց Եպիսկոպոս. Մեկն. Աղօթից. (Ըստ յիշատակոյ) ։

երկրորդը՝ Թէ ի՛նչ է եւ յորում կը կայանայ եկեղե-
ցւոյ միութիւնը. եւ երրորդը՝ Ս. Պետրոսին Հռոմ
գալուն, նոյն քաղքին եպիսկոպոսութիւնը կանգնելուն
եւ մինչեւ ցմահ կառավարելուն վրայ. աս ետքինը
իբրեւ յառաջաբանական ճառ մը իսկզբան կը դնենք:

Գիտենք այո եւ կը խոստովանինք որ ասիկայ դժգն
ու տկար աշխատութիւն մըն է՝ որ յանձն առինք հրա-
տարակելու ազգին սիրոյն համար. այսու ամենայնիւ կը
յուսանք որ աս տկար սերմանքն ալ կը նմանին մա-
նանխոյ հատի մը, որն որ սերմանուած ատեն՝ ամէն
սերմանքէ փոքրագոյնն է, բայց երբ որ կը ծլի, կը
բուսնի եւ կ'աճի, իր մեծամեծ ոստերուն տակ եր-
կնից թռչունքն ապահովութիւն կը գտնեն իրենց բոյ-
նը դնելու: Սրտանց կը բաղձանք եւ կը խնդրենք Ա-
տուծմէ՝ որ աս փոքր մանանխոյ հատն ալ գտնէ երկիր
պարարտ ու ծլի բուսնի եւ աճի աստուածային շնորհաց
ոռոգմամբ, եւ եթէ Աստուած՝ գթութեան ու ողոր-
մութեան Հայրն ուզեր է, հաւատացելոց հոգիքն ալ
իրենց սփոփութիւն, մխիթարութիւն եւ ապահովու-
թիւն գտնեն, որ ըլլայ միանգամայն առհաւատչեայ մը
յաւիտենական կենաց:



# ՍՐԲՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ

## ՀՌՈՄ ԳԱԼՈՒՆ

### ՆՈՅՆ ՔԱՂՔԻՆ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԻՒՆԸ ԿԱՆԳՆԵԼՈՒՆ

### ԵՒ ՄԻՆՉԵՒ ՑՄԱՀ

## ԿԱՌԱՎԱՐԵԼՈՒՆ ՎՐԱՅ

---

Մեր գլխաւոր նպատակին ձեռք զարնելէն յառաջ՝ յանձն կ'առնունք հոստեղս անանկ խնդրոյ մը վրայ խօսելու, որուն անտարակուսելի ճշմարտութեան՝ չէ թէ միայն իննեւ-տասն դարեր, չէ թէ միայն բովանդակ ընդհանուր եկեղեցին եւ քրիստոնէական հնութիւնը, այլ նաեւ նոյն իսկ պատմութիւնը, նոյն իսկ պատմական հաւատքն ու ստուգութիւնը միաբերան կը վկայեն. կ'ուզենք ըսել՝ Պետրոսի Հռոմ գալուն, հոն իր եպիսկոպոսական աթոռը հաստատելուն եւ (25 տարի ալ առաջնորդելէն ետքը) իր մարտիրոսական պսակը հոն ընդունելուն վրայ: Անիկայ անանկ ստուգութիւն մըն է, զորն որ յառակասես ու փաքր ի շատէ տրամաբանութիւն ունեցող միտք մը պէտք է որ ընդունի. միայն ամբոխեալ միտքն ու կոյր յամառութիւնն է՝ որ ասոր դէմ կրնայ ըմբոստանալ: Եւ այս է պատճառը՝ որ այսչափ դարերէ վեր բովանդակ քրիստոնէութիւնը, թէ Արեւելք եւ թէ Արեւմուտք, թէ ուղղափառք եւ թէ այլափառք, թէ հին եւ թէ նոր ազգեր, ամէնքն ալ Հռոմայ աթոռը ճանչցած են եւ կը ճանչնան իբրեւ Պետրոսի աթոռ, բաց ի Բողոքականաց մէջէն մինակ քանի մը վիճաբանասէր, ամէն բանի վրայ երկբայող, մանաւանդ թէ չարակամ գրագէտներէն, որոնք յայտնի տեսնելով թէ Քրիստոս իր եկեղեցին աս հիման՝ Պետրոսի վրայ շինած է, եւ անոր յաջորդներուն միջնորդութեամբ կը կառավարէ, աս եկեղեցին ի հիմանց խախտել յուսացին՝ Պետրոսի Հռոմ գալը, հոն եպիսկոպոս ըլլալն ու մեռնիլն ուրանալով, երբ որ բողոքականութեան սաստկացած ատեն՝ ամէն բանի, նաեւ յայտնագոյն

ճշմարտութեան դէմ հակառակիլն ու բողոքելը՝ ամէն մարդու օրինաւոր ու պատշաճական բան մը կը համարուէր։ Ասոնց պարագլուխն եղաւ (1520ին) Վելենտս եւ իր հետեւողները Փղակիոս, Սալմասիոս եւ գլխաւորաբար Փ. Շփանհայմ. բայց իրենց ձեռնարկութիւնները եւ ոչ Բողոքականաց մէջ ընդհանուր ընդունելութիւն մը գտան. մանաւանդ թէ ասոնց դէմ ելան իրենց հռչակաւոր գիտունները Ցունիոս, Սկալիգեր, Պապպիոս, Բլոնդել, Գասաուպոն, Բըդլի, Ուսեր, Բիրսըն, Գաւէ, Հ. Դիպպինկ, Թոմ. Իւսկիոս, Պասնած, Համոնտ, Հուկոյ, Գրոտիոս, եւ վերջի ատեններս Պերթոլտ[1], Կիզելեր[2], Գրեաներ[3], Միւնստեր[4], Նէանտեր, Օլսհաուզէն եւ ուրիշ շատերը, որոնք հաստատուն պատճառներով ցուցուցին թէ Պետրոսի Հռոմ գալն ամենեւին անտարակուսելի բան է, եւ այսպէս լքան հակառակորդները եւ ասպարէզը թողուցին[5]։

1 «Պատմականօրէն բուն բանականին ստուգուած է, որ Պետրոս կրօք Հռոմ գացած է, մանաւանդ թէ՝ ոչ թէ մէկ անգամ միայն իր կենաց վախճանին մօտ, այլ երկու անգամ։ Ներոնի թագաւորութեան ատեն՝ իր Հռոմ ներկայ ըլլալն ու հոն մարտիրոսանալը՝ կատարելապէս պատմական ստուգութիւն ունի. միայն մէկ քանի հին բողոքող աստուածաբանք կամ պատմագիրք իրենց բանականութեան ատելութեան մէջ, որ քահանայապետականութեան հետեւողներուն դէմ ունէին, կրնային ասիկայ ուրանալ»։ (Պամ. բանագաս. ներած. Ն. 2690։)

2 «Մէկ կողմնակցութեան բանականութիւն մըն էր, որ մէկ քանի Բողոքողք ուրանալ կ'ուզէին՝ թէ երբեք Պետրոս Հռոմ գացած ըլլայ»։ (Պամ. Նեկր. էջ 60։)

3 «Վերջի ատենները էր որ Բողոքողներուն բանականութիւնը Պետրոսի Հռոմ մարտիրոսանալուն դէմ ելաւ, թերեւս յուսալով՝ որ աս կերպ ճամբով կրնան Հռոմայի եպիսկոպոսին իրենց անխախտ գլխաւորութենէն զրկել։... Այսու ամենայնիւ բանը հիմնովին քննելով՝ [illegible] է, որ Բողոքողք Պապականութեան դէմ այսպիսի հակառակորդութենէ ետ կեցան»։ (Ներած. ի Ն. Կ. Մատն Բ. էջ 628։)

4 «Թէպէտեւ Բողոքող գրագէտներուն կերքերը վերջին մոլորեցուցին որ նաեւ աս բանս ալ, թէ Պետրոս Հռոմ գացած է, տարակուսի տակ ձգեն, եւ աս տարակոյսները հաւաքուելով՝ մինչեւ մատեան եղաւ, աս յանդուգն մակագրով. «Պետրոսի մատուցածին ճանապարհորդութիւնն ի Հռոմ». բայց նոյն ինքն անոնք՝ որոնք արդարեւ երկին ատենալու ան ամէն բանն՝ որն որ կրնար ապացուցել, զգացին որ աւար մէջ շատ յառաջ գացած են»։ (Փոքր աստուածաբ. գրութիւնք. էջ 144։) Ասանկ կը գրեն աս Բողոքող մատենագիրները։

5 Եւ ոչ ինկ Լուտեր՝ որ Հռոմայ քահանայապետաց դէմ այնչափ թշնամութեամբ, այնչափ ատելութեամբ եւ այնպիսի զզուելի նախատինօք ու զրպարտութիւններով անպատկառ կը մաքառէր, եւ սակայն կը փնտռէր Հռոմայ աթոռը գետնէ գետին զարնելու, կրցաւ երբեք ըսել յայտնապէս թէ նոյն քահանայապետները Պետրոսի յաջորդները չեն, կամ թէ Պետրոս Հռոմ եկած չըլլայ։ Միայն Ուլրիխոս կ'ըսէ (Ը Լե- [illegible] Disputatio de bicipiti Ecclesia) թէ Լուտեր աղէկ գիտնալով անմէն՝ բաւած էր որ Պետրոսի Հռոմ երթալն անտարակոյս գրելոյ. Նոյնպէս Բոցցայոս ալ տասը տեղանք կը պատմէ։ — Ցեռ Փոխճինի «Երանելւոյն Պետրոսի Հռոմայ

Նաեւ նորերս ելան Պաուր, Մայէրհոֆ, Շվեկլեր, Ցելլեր եւ այլն. եւ իբրեւ նոր գիւտ մը գտած՝ Պետրոսի առաջին կաթողիկէ թղթին մէջ յիշուած Բաբելոն քաղաքը, ասկից որ նոյն թուղթը գրուած կը յիշատակուի, (Ա. Պետ. Ե. 13.) յատուկ նշանակութեամբ առնելով՝ Քաղդէացւոց մայրաքաղաքը մեկնեցին. եւ որովհետեւ աս թղթերը մինհաւան մեա գրած է, անոր համար կը հետեւցընէին թէ Ս. Պետրոս Հռոմ գացած չէ: Ասով եւ ասոր նման մտացածին ձեռնարկութիւններով իրենց նախորդներուն պարտութիւնը բառնալու կը ջանին, թէպէտ եւ՝ ինչպէս քիչ մը յառաջ յիշեցինք՝ նորագոյն բողոքական գիտնոց մեծ մասը, եւ գրեթէ ամէնքն ալ, իրենց դէմ ելած են:

Արդ մեզի անհրաժարելի պարտք մը կը սեպենք յայտնի եւ պայծառ ճշմարտութեան ջատագով կենալ եւ անժխտելի փաստերով ցուցընել թէ երբ Ս. Պետրոս Հռոմ եկած է, հոն նախ եպիսկոպոսութիւն կամ Հռոմայ եկեղեցին հաստատած է, եւ նոյն եպիսկոպոսական աթոռին մէջ իր արիւնը Քրիստոսի հաւատքին վրայ թափած է:

Աւելորդ է բաժններուս երեք մասն ալ զատ զատ ցուցընել, ինչու որ ան ամէն հին վկայութիւններն ու փաստերը՝ որ մինակ առջի չորս դարերէն յառաջ պիտի բերենք, երեքին համար ալ կ՚արժեն. որովհետեւ թէպէտ առանձին առանձին մէկը՝ աս մասին, մէկալը՝ մէկալ մասին վկայութիւն կու տան, բայց ամէնը մէկտեղ ամբողջապէս՝ երեք մասին ալ հաստատութիւն կու տան. վասն զի աս ամէն վկայութիւններն իրենց մէջ մէկ պատմական զօդ մը կամ յարաբերութիւն մ՚ունին, որ մէկը մէկալին հետ կապուած ըլլալով՝ մէկը զմէկալը կը վաւերացընէ:

Առաջին դարուն մէջ կը վկայէ նոյն իսկ երանելւոյն Պետրոսի աշակերտն ու իր Հռոմայ աթոռին յաջորդը Ս. Կղեմէս, զորն որ Պօղոս առաքեալ իր թղթոց մէջ կը յիշէ[1]. Հռոմայ եկեղեցւոյն կողմանէ Կորնթացւոց գրած Ա. թղթին[2] մէջ

ճանապարհորդութեան վրայ եւ այլն. Կրթութիւն Ա.

1 Փիլիպ. Դ. 3.

2 Τούτοις τοῖς ἀνδράσιν θείως πολιτευσαμένος συνηθροίσθη πολὺ πλῆθος ἐκλεκτῶν, οἵτινες πολλαῖς αἰκίαις, καὶ βασάνοις διὰ ζῆλον παθόντες ἀπόδειγμα κάλλιστον ἐγένοντο ἐν ἡμῖν.

երկու գլխաւոր առաքեալներուն Պետրոսի ու Պօղոսի մարտիրոսական մահը յիշատակելէն ետքը, զորն որ իր աչքովը տեսած կրնար ըլլալ, անմիջապէս կ'աւելցընէ, թէ "Աս հռչակաւոր արանց վրայ, որոնք սրբական կենաց օրէնքները տուին, աւելցաւ անբաւ բազմութիւն ընտրելոց, որոնք անոնց օրինակին նախանձելով՝ անհնարին տանջանաց ու մարտիրոսութեանց տարին, եւ ընտրելագոյն օրինակ եղան մեր մէջը", այսինքն Հռոմայեցիներուն, որոնց անուամբ բովանդակ թուղթը Կորնթացւոց կը գրէր. եւ իր խօսքերն անտարակուսելի են, որովհետեւ բացայայտ կը ցուցէ մեր մէջը (ἐν ἡμῖν,), որ է ի Հռոմ, ուր էր եւ ուստի կը գրէր Ս. Կղեմէս։

Ս. Կղեմէսէն ետքը կու գայ Ս. Իգնատիոս աստուածազգեաց հայրապետը, առաքելոց աշակերտ եւ յաջորդ Ս. Պետրոսի՝ Անտիոքայ աթոռին վրայ, որն որ երկայն ատեն նոյն աթոռին առաջնորդելէն ետեւ՝ Պետրոսի մահուանէն աւ աւելն 50 տարի վերջը, Տրայիանոս կայսեր ատեն[1] Հռոմ տարուեցաւ ու հոն մարտիրոսութեամբ պսակուեցաւ։ Աս աստուածակիր Ս. Հայրապետը՝ իր եօթը թղթերէն մէկուն մէջ, զորն որ Զմիւռնիայէն Հռոմայի հաւատացեալներուն գրած էր, թախանձանօք իրենց աղաչելէն ետքը, որ չըլլայ թէ իր մարտիրոսութիւնն արգելեն, անմիջապէս վրան կ'աւելցընէ թէ ասիկայ աղաչանք մըն է որ կ'ընէ իրենց եւ ոչ թէ կը պատուիրէ, ինչպէս Պետրոս ու Պօղոս առաքեալք իրենց մահուընէ յառաջ Հռոմայեցւոց պատուիրած էին. "Ոչ իբրեւ զՊետրոս եւ զՊաւղոս հրաման տամ ձեզ,"[2] ։ Աս վկայութիւնն անանկ կը ստիպէ Բողոքականները ճշմարտութիւնը խոստովանելու եւ Պետրոսի Հռոմ գալն ու հոն մեռնիլն ընդունելու, որ մէջերնէն յանդգնագոյններն ուրիշ եղանակաւ չկրնալով աղաւաղել, իրենց սովորական փախուստը սկսան փնտռել՝ նոյն թղթերուն վաւերականութիւնը տարակուսի տակ ձգելով. բայց փուճ եւ ընդունայն է, բովանդակ հնութեան մէջ աս թղթերէն աւելի ստուգագոյն եւ վաւերագոյն թուղթ չկրնար գտնուիլ, ինչպէս քիչ մը ետքը երկայն կը գրենք։

1 Սրբոյն Իգնատիոսի, մահուան՝ վրայ մատենագիրները զատ կը կարծեն։ Տրայիանոսի ժամանակը պատահիլը ստոյգ է, բայց թէ որ տարին՝ ստոյգ չէ։

2 Ս. Իգն. Թղթ. Առ Հռոմայեց. Կոստանդնուպօլիս, էջ 89։

Նոյն դարէն ունինք նաեւ զՍ. Պապիաս մարտիրոս, աշակերտ Ս. Յովհաննու աւետարանչին[1] եւ Փռիւգիացւոց Երապոլսի եկեղեցւոյն եպիսկոպոսը։ Այս առաքելական Ս. Հայրն իր մատենագրութեանց հատակոտորներուն մէջ, զորոնք Եւսեբիոս մեզի պահած է[2], կը գրէ թէ Ս. Մարկոս աւետարանիչ իր աւետարանը Հռոմ գրեց, ինչպէս որ հոնտեղը Ս. Պետրոսի բերնէն կը լսէր։

Երկրորդ դարէն ունինք հաւատարիմ եւ անկասկածելի վկայ զԴիոնիսիոս Կորնթացւոց եպիսկոպոսը (170ին), որուն թէ՛ սրբութեան եւ թէ՛ իմաստութեան համբաւը ոչ թէ միայն իր գաւառին մէջ, այլ ընդհանուր կը տարածէր[3]։ Աս սուրբ Հայրը հազիւ թէ հարիւր տարի Ս. Պետրոսի մահուանէն ետքը՝ իր Թուղթը (վերը յիշուած Կղեմէս Քահանայապետին Թղթին պատասխանը) Հռոմայեցւոց եկեղեցւոյն եւ Սոտեր քահանայապետին կը գրէր, որուն մէջ յիշելով միանգամայն թէ Կղեմէս Քահանայապետին Թուղթը Կորնթոսի եկեղեցիներուն մէջ սովորութիւն եղած էր հրապարակաւ կարդալու, գլխաւորաբար Հռոմայ եկեղեցւոյն բարեպաշտութիւնն ու առատաձեռնութիւնը գովելէն ու բարձրացընելէն ետքը՝ ասանկ կը գրէ, ինչպէս որ մեր հին հայերէն Թարգմանութեան մէջն ալ կը կարդանք. «Զի եւ դուք, տունկն այն՝ որ տնկեցաւ ի Պետրոսէ եւ ի Պաւղոսէ ի Հռոմ եւ ի Կորնթոս, ընդ վարդապետութեանդ ձեր խառնեցէք, զի երկոքեան նոքա ի միասին տնկեցին եւ ուսուցին ի Կորնթոս։ Նոյնպէս եւ ի կողմանս Իտալիացւոց՝ ի միասին ուսուցին եւ վկայեցին ի միում ժամանակի»[4]։ Դիոնիսիոսի Թղթերուն ճոխութիւնն այնչափ մեծ էր եւ այնչափ մեծ բանի տեղ կը դնէին ժամանակին հերետիկոսներն իսկ, որ իր կենդանութեան ատենն ալ իր Թղթերը սկսած էին աղաւաղել[5]։

1 Ս. Ցերոնիմոս, Թղթ. 29. առ Թէոդորա։

2 Պատմ. Եկեղ. Գիրք Բ. Գլ. 14. 15. Գ. 39։ Ձեռագիր Մխիթ. Վիէնն. Թիւ 70. Գ.։

3 Ս. Ցերոնիմոս կը գրէ. «Դիոնիսիոս Կորնթացւոց եպիսկոպոսը՝ այնչափ ճարտարխօսութեամբ ու հանճարով պայծառացած էր, որ ոչ թէ միայն իր քաղաքին ու գաւառին ժողովուրդը, այլ նաեւ ուրիշ քաղաքներու եւ գաւառներու եպիսկոպոսները Թղթով կը խրատէր»։ Նոյն. Քահանայապետներ, Գլ. 21։

4 Եւսեբիոս, Պատմ. Եկեղ. Գիրք Բ. Գլ. 25։ Ձեռագ. Մխիթ. Վիէնն. Թիւ 70. Գ.։

5 Ինք Դիոնիսիոս անոր վրայ կը տրտնջայ։ Տես Եւսեբ. Պատմ. Եկեղ. Գիրք Դ. Գլ. 23։ Ձեռագ. Մխիթ. Վիէնն. Թիւ 70. Գ.։

Բայց աւելի ջախջախիչ եւ անժխտելի է Ս. Իրենէոսի (Երանոսի) Լուգդունի Եպիսկոպոսին (178) վկայութիւնը։ Ան սուրբ Հայրը սուրբ Պողիկարպոսի՝ առաքելոց անընդմիջական աշակերտին ձեռաց տակ կրթուած ու սորված[1], եւ Հռոմ[2] ալ ճամբորդութիւն ըրելով՝ ամէն բանի անձամբ տեղեկացած էր։ Արդ ինքն ալ այսպէս կը գրէ. "Որովհետեւ շատ երկայն կ՚ըլլայ, կ՚ըսէ, այսպիսի մատենի մը մէջ ամէն եկեղեցիներուն յաջորդութիւնները յառաջ բերել, անոր համար միայն ամենէն մեծ ու ամենէն հին եւ ամենուն ծանօթ Պետրոս ու Պօղոս երկու փառաւոր առաքեալներուն Հռոմ հիմնած ու հաստատած եկեղեցւոյն առաքեալներէն ընդունած աւանդութիւնն ու մարդկան քարոզած հաւատքը նշանակելով, որն որ եպիսկոպոսաց յաջորդութեամբ մինչեւ մեր օրերն եկած հասած է, անպատասխանի եւ կոր ի գլուխ կ՚ամչցընենք զանոնք ամէնքն ալ, որոնք ինչ եւ իցէ եղանակաւ, կամ իրենց թիւր կարծեօք, կամ սնապարծութեամբ, կամ կուրութեամբ եւ կամ չարազգածութեամբ անպատեհ վարդապետութիւն մը կը սորվեցընեն։ Վասն զի առ եկեղեցւոյն հետ՝ իր իշխանական նախաւրեան համար՝ հարկ է որ ամէն եկեղեցի միաբանին, այսինքն՝ ուր որ հաւատացեալք կը գտնուին, վասն զի առ եկեղեցւոյն ամէն կողմ տարածուած հաւատացեալներուն մէջ պահուած է առաքելոց աւանդութիւնը"[3]։ Եւ քիչ մը վերը կը գրուցէ. "Մատթէոս Եբրայեցւոց մէջ անոնց սեպհական լեզուաւ կը գրէր իր աւետարանը՝ երբ որ Պետրոս ու Պօղոս Հռոմ կ՚աւետարանէին եւ եկեղեցին կը հաստատէին։ Մատթէոսի աւետարանը գրուելէն ու հրատարակուելէն ետքը, Մարկոս Պետրոսի աշակերտն ու մեկնիչը[4] Պետրոսի քարոզածը գրի կ՚աւանդէր"։

Յիշենք նաեւ Գայիոս Հռոմայ եկեղեցւոյն երէցը, որ իր իմաստութեան ու հաւատոյ եռանդեան համար Եպիսկոպոս հեթանոսաց անուանեցաւ (196—212)։ Ասիկա Հռոմ Կատաֆռիւգացւոց կամ Մոնտանեանց Պրոկղոս գլխաւորին հետ ըրած վիճաբանութեան մէջ կ՚աղաղակէ. "Բայց ես, կ՚ըսէ, առաքելոց յաղթութեան նշանները ալ կրնամ ցուցընել. վասն զի ուր կուզես՝ գնա՛. կամ Վատիկանեան եւ կամ Օստիական ճամբան,

1 Իրեն. Գիրք Գ. Գլ. 1. 3։
2 Եւսեբիոս, Գիրք Ե. Գլ. 4։
3 Իրենէոս, Գիրք Գ. 3.
4 Interpres.

աչքին առջեւը կը շարուին անոնց յաղթութեան նշանները, որոնք աս եկեղեցին հիմնեցին,, [1]:

Նոյն տարիները (191—202) կը պայծառանար նաեւ Կղեմէս Աղեքսանդրացի հայրապետը, որ թէ հին ու թէ նոր դարերուն մէջ իր խորունկ գիտութեամբն ու վարդապետութեամբը հռչակաւոր եղած է: Ասիկա Տեղեկութեանց կամ Մեկնութեանց [2] գրքին մէջ յայտնապէս կը ցուցնէ թէ "Մարկոս աւետարանիչ գրի առաւ զայն ամենայն՝ զորն որ Ս. Պետրոս Հռոմ վարդապետած էր, եւ իր աւետարանը գրեց,, [3]:

Նոյն երկրորդ դարուն վերջն ու երրորդին սկիզբը ամենուն ծանօթ է զարմանալին Տերտուղիանոս իր խորունկ ու բազմահմուտ հանճարովը, հաստատուն նկարագրովը, անաչառ եւ խիստ քննադատութեան հոգւովը, որ եւ ոչ Հռոմէական եկեղեցւոյն կը խնայեր, որուն ետքը անհաշտ թշնամի եղաւ: Արդ նոյն խիստ եւ անողոքելի անձն այս վկայութիւնը կու տայ. "Եթէ մօտ ես Իտալիայի՝ ունիս զՀռոմ, ուսկից մեր ճշմարտութիւնն է. ա՜հ ի՜նչ երջանիկ եկեղեցի է՝ ուր որ բովանդակ հաւատոյ վարդապետութիւնն առաքեալք իրենց արեան հետ հոսեցին, ուր որ Պետրոս Քրիստոսի Տեառն չարչարանաց հաւասարեցաւ (խաչի վրայ), ուր որ Պօղոս Յովհաննու պսակաւ պսակուեցաւ,, [4]: Ասանկ կը գրէր իմաստուն Ափրիկեցի վարդապետն իր կանխագրութեան գրոց մէջ (203ին): Աս միայն բաւական չէ. ուրիշ տեղ մ'ալ դարձեալ կը գրէ. "Հռոմի մէջ անընդհատ շարունակուած է եպիսկոպոսաց յաջորդութիւնը Ս. Պետրոսէն ետքը, ուր որ զԿղեմէս իրեն յաջորդ ձգեց,, [5]: Իսկ

1 Ա. Եւսեբ. Պատմ. Եկեղ. Գիրք Բ. Գլ. 25: Ուր հայերէնն հին թարգմ. այսպէս ունի. "Պաւղոսի հատանել զլուխն անդէն ի նմին քաղաքի (ի Հռոմ) եւ Պետրոս՝ եւ նա խաչեցաւ գլխիվայր. ըստ ասելոյ պատմութեանցն. եւ հաստատէ զնոյն պատմութիւն անուանս այս Պետրոսի եւ Պաւղոսի. ունի եւ զառ մինչեւ ցայսօր ժամանակի գիրքն որ անդէն.... Ի ժամանակի իբրեւ գաւայարած եղեւալ մաքառէր ընդ Պաւղոսի՝ այն որ էր [illegible] աղանդին [illegible] զայս ինչ ասացն նա (Գայիոս երեց Հռոմայ) վասն առաքելոցն՝ որ եղեալ են ի նոսա մարմինք նուիրք առաքելոցն, արդ ես աստ ունիմ ցուցանել զյաղթութիւն առաքելոցն, զի եթէ կամիս երթալ դու ի Վատիկանոս, կամ ընդ ճանապարհն որ հանէ ի կողմանս Ոստիոյ՝ գտանես դու զյաղթութիւն նոցա որ շինեցին զայս եկեղեցի, զի ի միում իսկ ժամանակի վկայեցին նոքա, երկոքեանն ի միասին: Տես նաեւ Ե. 20:

2 Ὑποτυπώσεων.

3 Ասանկ կը վկայէ Եւսեբիոս իր Եկեղեցական Պատմութեան մէջ շատ տեղ եւ նոյն իսկ Կղեմէս Աղեքսանդրացւոյն խօսքերն ալ յառաջ կը բերէ: Տես Գիրք Բ. Գլ. 15.— Ե. 14:

4 Տերտուղ. Կանխագր. Գլ. 36:

5 Անդ:

Մկրտութեան ճառին մէջ՝ "Զանազանութիւն մը չկայ, կ՚ըսէ, անոնց մէջ՝ զորոնք Յովհաննէս Յորդանանու ալիքներուն մէջ, եւ անոնց՝ զորոնք Պետրոս Տիբերիսի ջրով մկրտեց,,։ Նոյնպէս Սկորպիակոս անուանեալ գրքին մէջ կը գրուցէ. "Ինքնակալներուն վարքը կը կարդանք, Ներոն ամենէն առաջ նորածին հաւատքը Հռոմայ մէջ արեամբ ողողեց, եւ ան ատեն Պետրոսի ու-րիշները գօտի կապեցին եւ խաչի վրայ գամեցին,,։ Դարձեալ կը գրէ Մարկիոնի դէմ [1]. "Տեսնենք թէ Հռոմայեցիք ալ ի մօտոյ ինչ կը հնչեցնեն, որոնց թէ՛ Պետրոս եւ թէ՛ Պօղոս աւետարանն իրենց արեամբը ներկուած աւանդեցին,,։ Աւելորդ է խօսք մ՚ալ աւելցնել աս ամէն վկայութիւններուն վրայ՝ զորոնք կու տայ Տերտուղիանոս, Պետրոսի Հռոմ երթալուն եւ հոն մարտիրոսանալուն։

Նայց տեսնենք թէ քրիստոնէութեան ուրիշ մէկ բարձր եւ գերագոյն հանճարն ալ աս նիւթին վրայ ինչ վկայութիւն կու տայ։ Որոգինէս՝ որուն մեծագ սրութիւնը, աշխոյժն ու եռանդը բոլոր տիեզերք տասնուհինգ դարէ վեր կը յարգեն ու կը սքանչանան, Զեփիւրինոս Քահանայապետին ատենը անձամբ Հռոմ կը գտնուէր, ամէն բանի աղէկ մտադիր ու տեղեակ կ՚ըլլար։ Ասոր վկայութիւնը (ինչպէս նաեւ Իրենէոսինը՝ որ յիշեցինք) աս առաւելութիւնն ալ ունի, որ եկեղեցւոյ ու իր նախնեաց աւանդութեամբ կը խօսի եւ կ՚ըսէ թէ Պետրոս "կենացը վերջին ատեններն Հռոմ գտնուելով՝ խաչի վրայ գլխիվայր գամուեցաւ, եւ այսպէս խաչին վրայ կախուած կ՚աղօթէր,,[2]։

Նոյնից տարբեր չէզրուցեր Պետրոս Աղեքսանդրացի վկայն, որն որ իր խորին գիտութեան համար Կրսեր Որոգինէս կը կոչուէր, եւ կը պայծառանար երրորդ դարուն մէջ շուրջ 283ին. "Պետրոս՝ առաքելոց առաջինը, կ՚ըսէ, շատ անգամ բռնուեցաւ եւ շատ անգամ բանտարկեցաւ, եւ նախատինք ու արհամարհանք կրելէն ետքը՝ վերջապէս Հռոմ խաչուեցաւ,,[3]։

Իսկ Կիպրիանոս Կարքեդոնացւոց եպիսկոպոսը, երրորդ դարուն կէսին (247) այնչափ եւ այնպիսի պայծառութեան հասած էր, որ եկեղեցւոյ փառաւորութիւնն ու պարծանքը կը

1 Տերտ. Կանխագր. Գլ. 5։
2 Ան. Եւս. Պամփ. Եկեղ. Գիրք նայատեանց։
3 Ս. Ցերմնիմ. ի Ցանկն Քահա-
Զ. Գլ. 14։

կոչուէր: Այս տուրք Հայրապետին՝ Հերետիկոսաց տուած մկրտութեան վաւերութեան խնդրոյն մէջ՝ Կոռնելիոս Քահանայապետին կարծեաց ու Հրամանաց ցուցուցած հակառակութիւնն ու ընդդիմադրութիւնն ամենուն յայտնի է: Թէպէտ եւ աս բիծն իր վըայէն իր մարտիրոսական արեամբ լուաց ու մաքրեց, այսու ամենայնիւ իր վկայութիւնը մեր հակառակորդաց աչքին առջեւ աւելի եւս արժէք մը պէտք է ունենալ: Արդ ինք առ նոյն Կոռնելիոս Քահանայապետ գրած թղթին մէջ կ'աղաղակէ. "Ասոնցմէ զատ (Դոնատեան Հերետիկոսք) իրենց ստանուն եպիսկոպոս մ'ալ դնելով՝ հերձուածողներէն ու արտաքիններուն ձեռքէն թղթեր կը ժողվեն, եւ ծովէ ու ցամաքէ անցնելով՝ զանոնք կը բերեն ու ընծայելու կը յանդգնին Պետրոսի աթոռին եւ գլխաւոր եկեղեցւոյն, ուսկից որ քահանայական միութիւնը յառաջ եկած է. եւ չեն մտածեր որ կը դիմեն Հռոմայեցւոց, (որոնց հաւատքը՝ Առաքելոյն հռչակելովը գովութիւն ընդունած է,) որոնց քով նենգութիւն մուտք չէկրնար ունենալ"[1]: Դարձեալ ուրիշ տեղ մ'ալ կը գրէ. "Կոռնելիոս եպիսկոպոսութիւնն առած է Աստուծոյ ու իր Օծելոյն Քրիստոսի վճռովը, գրեթէ բովանդակ կղերին վկայութեամբը, եւ հաճութեամբ ժողովրդեան՝ որ ընտրութեան ներկայ էր, երիցագոյն քահանայից եւ առաքինի մարդկան միաբանութեամբ, երբ դեռ իրմէ յառաջ ուրիշ մը չէր դրուած, երբ Փաբիանոսի տեղը, այսինքն՝ Պետրոսի աթոռն ու Քահանայապետական գահին աստիճանը դեռ դատարկ էր"[2]:

Ս. Կիպրիանոս ասոնցմէ զատ շատ ուրիշ վկայութիւններ ալ կու տայ զանազան գրուածներուն մէջ, զորոնք շատ երկայն կ'ըլլար հոստեղս յիշատակել. բայց անոնց տեղ աս խորհրդածութիւնն ընելը հարկաւոր կ'երեւայ, թէ այս ամենայն բազմաթիւ, շարունակեալ եւ անընդհատ հարազատ վկայութիւնները, որ ըստ ինքեան ի ներքուստ իրենց անկասկածելի վաւերականութեան դրոշմը կը կրեն, այնպիսի ատեն՝ այսինքն՝ երկրորդ ու երրորդ դարերու մէջ տրուած են, երբոր Հռոմայ Քահանայապետք՝ աղքատ, աշխարհական բռնութեան տակ ճնշուած, առանց անուան ու համբաւոյ, հալածուած եւ նեղութեան մէջ էին հեթանոս իշխաններուն ու կայսրներուն

1 Թուղթ առ Կոռն. Քահանայապ. 55: 2 Նոյն առ նոյն. 52:

*երկու գլխաւոր առաքեալներուն Պետրոսի ու Պօղոսի մարտիրոսական մահը յիշատակելէն ետքը, զորն որ իր աչքովը տեսած կրնար ըլլալ, անմիջապէս կ՚աւելցընէ, թէ "Աս հաւաքուար տրանց վրայ, որոնք սրբական կենաց օրէնքները տուին, աւելցաւ անբաւ բազմութիւն ընտրելոց, որոնք անոնց օրինակին նախանձելով՝ անհնարին տանջանաց ու մարտիրոսութեանց տարին, եւ ընտրելագոյն օրինակ եղան մեր մէջը„ այսինքն Հռոմայեցիներուն, որոնց անուամբ բովանդակ թուղթը կորնթացւոց կը գրէր. եւ իր խօսքերն անտարակուսելի են, որովհետեւ բացայայտ կը զրուցէ մեր մէջը (ἐν ἡμῖν,), որ է ի Հռոմ, ուր էր եւ ուստի կը գրէր Ս. Կղեմէս։*

*Ս. Կղեմէսէն ետքը կու գայ Ս. Իգնատիոս աստուածազգեաց հայրապետը, առաքելոց աշակերտ եւ յաջորդ Ս. Պետրոսի՝ Անտիոքայ աթոռին վրայ, որն որ երկայն ատեն նոյն աթոռին առաջնորդելէն ետեւ՝ Պետրոսի մահուանէն առ առաւելն 50 տարի վերջը, Տրայիանոս կայսեր ատեն[1] Հռոմ տարուեցաւ ու հոն մարտիրոսութեամբ պսակուեցաւ։ Աս աստուածակիր Ս. Հայրապետը՝ իր եօթը թղթերէն մէկուն մէջ, զորն որ Զմիւռնիայէն Հռոմայի հաւատացեալներուն գրած էր, թախանձանօք իրենց աղաչելէն ետքը, որ չըլլայ թէ իր մարտիրոսութիւնն արգելեն, անմիջապէս վրան կ՚աւելցընէ թէ աս[ի]կայ աղաչանք մըն է որ կ՚ընէ իրենց եւ ոչ թէ կը պատուիրէ, ինչպէս Պետրոս ու Պօղոս առաքեալք իրենց մահուընէ յառաջ Հռոմայեցւոց պատուիրած էին. "Ոչ [illegible] լսէ, Իբրեւ Պետրոսն եւ Պաւղոս հրաման տամ ձեզ„[2]։ Աս վկայութիւնն անանկ կը ստիպէ Բողոքականները ճշմարտութիւնը խոստովանելու եւ Պետրոսի Հռոմ գալն ու հոն մեռնիլն ընդունելու, որ մէջերնէն յանդգնագոյններն ուրիշ եղանակաւ չկրնալով ազատիլ, իրենց սովորական փախուստը ըրած փնտռել՝ նոյն թղթերուն վաւերականութիւնը տարակուսի տակ ձգելով. բայց փուճ եւ ընդունայն է, բովանդակ հնութեան մէջ աս թղթերէն աւելի ստուգագոյն եւ վաւերագոյն թուղթ չէր կրնար գտնուիլ, ինչպէս քիչ մը ետքը երկայն կը գրենք։*

[1] Սրբոյն Իգնատիոսի մահուան վրայ մատենագիրները դեռ կը վիճին։ Տրայիանոսի ժամանակը պատմական ստոյգ է, բայց թէ որ տարին՝ անստոյգ։

[2] Ս. Իգն. Թղթ. Առ Հռոմայեցիս. տպ. Կոստանդնուպօլսոյ. Եջ 89։

Նոյն դարէն ունինք նաեւ զՍ. Պապիաս մարտիրոս, աշակերտ Ս. Յովհաննու աւետարանչին[1] եւ Փռիւգիացւոց Երապոլսի եկեղեցւոյն եպիսկոպոսը։ Աս առաքելական Ս. Հայրն իր մատենագրութեանց հատակտորներուն մէջ, զորոնք Եւսեբիոս մեզի պահած է[2], կը գրէ թէ Ս. Մարկոս աւետարանիչ իր աւետարանը Հռոմ գրեց, ինչպէս որ հոնտեղը Ս. Պետրոսի բերնէն կը լսէր։

Երկրորդ դարէն ունինք հաւատարիմ եւ անկասկածելի վկայ զԴիոնիսիոս Կորնթացւոց եպիսկոպոսը (170ին), որուն թէ սրբութեան եւ թէ իմաստութեան համբաւը չէ թէ միայն իր գաւառին մէջ, այլ ընդհանուր կը տարածէր[3]։ Աս սուրբ Հայրը հազիւ թէ հարիւր տարի Ս. Պետրոսի մահուանէն ետքը՝ իր Թուղթը (վերը յիշուած Կղեմէս Քահանայապետին Թղթին պատասխանը) Հռոմայեցւոց եկեղեցւոյն եւ Սոտեր Քահանայապետին կը գրէր, որուն մէջ յիշելով միանգամայն թէ Կղեմէս Քահանայապետին Թուղթը Կորնթոսի եկեղեցիներուն մէջ սովորութիւն եղած էր հրապարակաւ կարդալու, գլխաւորաբար Հռոմայ եկեղեցւոյն բարեպաշտութիւնն ու առաքինութիւնը գովելէն ու բարձրացընելէն ետքը՝ ասանկ կը գրէ, ինչպէս որ մեր հին հայերէն թարգմանութեան մէջն ալ կը կարդանք. “Զի եւ դուք, տունկն այն՝ որ տնկեցաւ ի Պետրոսէ եւ ի Պաւղոսէ ի Հռոմ եւ ի Կորնթոս, ընդ վարդապետութեանդ ձեր խառնեցէք, զի երկոքեան նոքա ի միասին տնկեցին եւ ուսուցին ի Կորնթոս։ Սոյնպէս եւ ի կողմանս Իտալիացւոց՝ ի միասին ուսուցին եւ վկայեցին ի միում ժամանակի„[4]։ Դիոնիսիոսի Թղթերուն ճոխութիւնն այնչափ մեծ էր եւ այնչափ մեծ քանի տեղ կը դնէին ժամանակին հերետիկոսներն իսկ, որ իր կենդանութեան ատենն ալ իր Թղթերը սկսած էին աղաւաղել[5]։

1 Ս. Ցերոնիմոս, Թղթ. 29. առ Թէոդորա։

2 Պատմ. Եկեղ. Գիրք Բ. Գլ. 14. 15. Գ. 39։ Ձեռագիր Մխիթ. Վիէնն. Թիւ 70. Գ։

3 Ս. Ցերոնիմոս կը գրէ. “Դիոնիսիոս Կորնթացւոց եպիսկոպոսը՝ այնչափ ճարտարխօսութեամբ ու հանճարով պայծառացած էր, որ չէ թէ միայն իր քաղքին ու գաւառին ժողովուրդը, այլ նաեւ ուրիշ քաղաքներուն եւ գաւառներուն եպիսկոպոսները Թղթով կը խրատէր„։ Ցուց. քահանայապետաց. Գլ. 21։

4 Եւսեբիոս, Պատմ. Եկեղ. Գիրք Բ. Գլ. 25։ Ձեռագ. Մխիթ. Վիէն. Թիւ 70. Գ։

5 Ինք Դիոնիսիոսն ասոր վրայ կը տրտնջայ։ Տես Եւսեբ. Պատմ. Եկեղ. Գիրք Դ. Գլ. 23։ Ձեռագ. Մխիթ. Վիէնն. Թիւ 70. Գ։

Բայց աւելի ջախջախիչ եւ անժխտելի է Ս. Իրենէոսի (Երանոսի) Ղուկդունի եպիսկոպոսին (178) վկայութիւնը։ Ա՛ սուրբ Հայրը սուրբ Պողիկարպոսի՝ առաքելոց անընդմիջական աշակերտին ձեռաց տակ կրթուած ու սորված[1], եւ Հռոմ[2] ալ ճամբորդութիւն ընելով՝ ամէն բանի անձամբ տեղեկացած էր։ Արդ ինքն ալ այսպէս կը գրէ. «Որովհետեւ շատ երկայն կ՚ըլլայ, կ՚ըսէ, այսպիսի մատենի մը մէջ ամէն եկեղեցիներուն յաջորդութիւնները յառաջ բերել, անոր համար միայն ամենէն մեծ ու ամենէն հին եւ ամենուն ծանօթ Պետրոս ու Պօղոս երկու փառաւոր առաքեալներուն Հռոմ հիմնած ու հաստատած եկեղեցւոյն առաքեալներէն ընդունած աւանդութիւնն ու մարդկան քարոզած հաւատքը նշանակելով, որն որ եպիսկոպոսաց յաջորդութեամբ մինչեւ մեր օրերն եկած հասած է, անպատասխանի եւ կոր ի գլուխ կ՚ամըչցընենք զանոնք ամէնքն ալ, որոնք ինչ եւ իցէ եղանակաւ, կամ իրենց թիւր կարծեօք, կամ սնապարծութեամբ, կամ կուրութեամբ եւ կամ չարազգածութեամբ անպատեհ վարդապետութիւն մը կը սորվեցընեն։ Վասն զի աս եկեղեցւոյն հետ՝ իր իշխանական նախնեան համար՝ հարկ է որ ամէն եկեղեցի միաբանին, այսինքն՝ ուր որ հաւատացեալք կը գտնուին, վասն զի աս եկեղեցւոյն ամէն կողմ տարածուած հաւատացեալներուն մէջ պահուած է առաքելոց աւանդութիւնը»[3]։ Եւ քիչ մը ետքը կը գրուցէ. «Մատթէոս Եբրայեցւոց մէջ անոնց սեպհական լեզուաւ կը գրէր իր աւետարանը՝ երբ որ Պետրոս ու Պօղոս Հռոմ կ՚աւետարանէին եւ եկեղեցին կը հաստատէին։ Մատթէոսի աւետարանը գրուելէն ու հրատարակուելէն ետքը, Մարկոս Պետրոսի աշակերտն ու մեկնիչը[4] Պետրոսի քարոզածը գիր կ՚առնէր»։

Յիշենք նաեւ Գայիոս Հռոմայ եկեղեցւոյն երէցը, որ իր իմաստութեան ու հաւատոյ եռանդեան համար Եպիսկոպոս հեթանոսաց անուանեցաւ (196—212)։ Ասիկա Հռոմ Կատափռիւգացւոց կամ Մոնտանեանց Պրոկղոս գլխաւորին հետ ըրած վիճաբանութեան մէջ կ՚աղաղակէ. «Բայց ես, կ՚ըսէ, առաքելոց յաղթութեան նշանները ալ կրնամ ցուցընել. վասն զի ուր կուզես գնա՛, կամ Վատիկանեան եւ կամ Ոստիական ճամբան,

1 Իրեն. Գիրք Գ. Գլ. 1. 3։
2 Եւսեբիոս, Գիրք Ե. Գլ. 4։
3 Իրենէոս, Գիրք Գ. 3.
4 Interpres.

աչքին առջեւը կը շարուէին անմեղ յաղթութեան նշանները, որոնք աս եկեղեցին հիմնեցին,, 1։

Նոյն ատենները (191—202) կը պայծառանար նաեւ Կղեմէս Աղեքսանդրացի հայրապետը, որ թէ հին ու թէ նոր դարերուն մէջ իր խորունկ գիտութեամբն ու վարդապետութեամբը հռչակաւոր եղած է։ Անիկա Տեղեկութեանց կամ Մեկնութեանց 2 գրքին մէջ յայտնապէս կը զրուցէ թէ "Մարկոս աւետարանիչ գրի առանց զայն ամենայն՝ զորն որ Ս. Պետրոս Հռոմ վարդապետած էր, եւ իր աւետարանը գրեց,, 3։

Ու երկրորդ դարուն վերջն ու երրորդին սկիզբը ամենուն ծանօթ է զարմանալին Տերտուղիանոս իր խորունկ ու բազմահմուտ հանճարովը, հաստատուն նկարագրովը, անաչառ եւ խիստ քննադատութեան հոգւովը, որ եւ ոչ Հռոմէական եկեղեցւոյն կը խնայեր, որուն եւքը անհաշտ թշնամի եղաւ։ Արդ նոյն խիստ եւ անողոքելի անձն այս վկայութիւնը կու տայ. "Եթէ մօտ ես Իտալիայի՝ ունիս զՀռոմ, ուսկից մեզ ձոխութիւնն է. ա՜հ ի՜նչ երջանիկ եկեղեցի է՝ ուր որ բովանդակ հաւատոյ վարդապետութիւնն առաքեալք իրենց արեան հետ հոսեցին, ուր որ Պետրոս Քրիստոսի Տեառն չարչարանաց հաւասարեցաւ (խաչի վրայ), ուր որ Պօղոս Յովհաննու պսակաւ պսակուեցաւ,,4։ Ասանկ կը գրէր իմաստուն Ափրիկեցի վարդապետն իր կանխագիտութեան գրոց մէջ (203ին)։ Աս միայն բաւական չէ. ուրիշ տեղ մ'ալ դարձեալ կը գրէ. "Հռոմի մէջ անընդհատ շարունակուած է եպիսկոպոսաց յաջորդութիւնը Ս. Պետրոսէն ետքը, ոյն որ զԿղեմէս իրեն յաջորդ ձգեց,, 5։ Իսկ

1 Աս Եւսեբ. Պատմ. Եկեղ. Գիրք Բ. Գլ. 25։ Ուր հայերէնն հին թարգմ. այսպէս ունի. "Պաւղոսի հաւատոյ գլուխն անդէն ի նմին քաղաքի (ի Հռոմ) եւ Պետրոս՝ եւ նոյ խաչեցաւ գլխիվայր, ըստ ասելոյ պատմութեանցն. եւ Հաստատէ զնոյն պատմութիւն անուանս այս Պետրոսի եւ Պաւղոսի. ունի եւ դա մինչեւ ցայսօր ժամանակի գիրքն որ անդէն..., Ի ժամանակի իբրեւ գաւառական եկեղեցւոյ մարտնչէր ընդ Պաւղոսի՝ այն որ էր Զեփիւրինոսի պաշտօնեայն Փոքրոյ Հռոմայ ... քանզի ես (Գայիոս երէց Հռոմայ) վասն առաքելոցն՝ որ եղեալ են ի նոսա մարմինք. ունիմ առաքելոցն, արդ ես աստ ունիմ ցուցանել զյաղթութիւն առաքելոցն, զի եթէ կամիս երթալ դու ի Վատիկանոս, կամ ընդ Ճանապարհն որ հանէ ի կողմանս Ոստիայ՝ գտանես դու զյաղթութիւն նոցա որ ուղղեցին զայս Եկեղեցի, զի ի միում խաղ ժամանակի վկայեցին նոքա, երկոքին ի միասին։ Տես նաեւ Ե. 20։

2 Ὑποτυπώσεως.

3 Ասանկ կը գրէ Եւսեբիոս իր Եկեղեցական Պատմութեան մէջ շատ տեղ եւ նոյն խաղ Կղեմէս Աղեքսանդրացւոյն խօսքերն ալ յառաջ կը բերէ։ Տես Գիրք Բ. Գլ. 15. — Ե. 14։

4 Տերտուղ. Կանխագր. Գլ. 36։

5 Անդ։

**

Մկրտութեան ճառին մէջ՝ «Զանազանութիւն մը չկայ, կ'ըսէ, անոնց մէջ՝ զորոնք Յովհաննէս Յորդանանու ալիքներուն մէջ, եւ անոնց՝ զորոնք Պետրոս Տիբերիոսի քով մկրտեց»: Նոյնպէս Սկորպիակոս անուանեալ գրքին մէջ կը գրուցէ. «Ինքնակալներուն վարքը կը կարդանք, Ներոն ամենէն առաջ նորածին հաւատքը Հռոմայ մէջ արեամբ ներկեց, եւ այն ատեն Պետրոսի ուրիշները գօտի կապեցին եւ խաչի վրայ պրկեցին»: Դարձեալ կը գրէ Մարկիոնի դէմ [1]. «Տեսնենք թէ Հռոմայեցիք ալ ի մօտոյ ինչ կը հնչեցընեն, որոնց թէ՛ Պետրոս եւ թէ՛ Պօղոս աւետարանն իրենց արեամբը ներկուած աւանդեցին»: Աւելորդ է խօսք մ'ալ աւելցընել աս ամէն վկայութիւններուն վրայ՝ զորոնք կու տայ Տերտուղիանոս, Պետրոսի Հռոմ երթալուն եւ հոն մարտիրոսանալուն:

Բայց տեսնենք թէ քրիստոնէութեան ուրիշ մէկ բարձր եւ գերագոյն հանճարն ալ աս նիւթին վրայ ինչ վկայութիւն կու տայ: Որոգինէս՝ որուն մտաց սրութիւնը, աշխոյժն ու եռանդը բոլոր տիեզերք տասնուհինգ դարէ վեր կը յարգեն ու կը սքանչանան, Զեփիւրինոս Քահանայապետին ատենը անձամբ Հռոմ կը գտնուէր, ամէն բանի աղէկ մտադիր ու տեղեակ կ'ըլլար: Ասոր վկայութիւնը (ինչպէս նաեւ Իրենէոսինը՝ որ յիշեցինք) աս առաւելութիւնն ալ ունի, որ եկեղեցւոյ ու իր նախնեաց աւանդութեամբ կը խօսի եւ կ'ըսէ թէ Պետրոս «կենացը վերջին ատենները Հռոմ գտնուելով՝ խաչի վրայ գլխիվայր գամուեցաւ, եւ այսպէս խաչին վրայ կախուած կ'աղօթէր» [2]:

Նոյնկէս տարբեր չիզրուցեր Պիերիոս Աղեքսանդրացի վկայն, որն որ իր խորին գիտութեան համար Կրսեր Որոգինէս կը կոչուէր, եւ կը պայծառանար երրորդ դարուն մէջ շուրջ 283ին. «Պետրոս՝ առաքելոց առաջինը, կ'ըսէ, շատ անգամ բռնուեցաւ եւ շատ անգամ բանտարկեցաւ, եւ նախատինք ու արհամարհանք կրելէն ետքը՝ վերջապէս Հռոմ խաչուեցաւ» [3]:

Իսկ Կիպրիանոս Կարքեդոնացւոց եպիսկոպոսը, երրորդ դարուն կէսին (247) այնչափ եւ այնպիսի պայծառութեան հասած էր, որ եկեղեցւոյ փառաւորութիւնն ու պարծանքը կը

1 Տերտ. Կանխագր. Գլ. 5: 3 Ս. Երոնիմ. ի Ցանկն Քահա-
2 Առ Եւս. Պատմ. Եկեղ. Գիրք Նոյնաբանութ.:
Զ. Գլ. 14:

կոչուէր։ Աս տուրք Հայրապետին՝ Հերետիկոսաց տուած մկրտութեան վաւերութեան խնդրոյն մէջ՝ Կոռնելիոս Քահանայապետին կարծեաց ու հրամանաց ցուցուցած հակառակութիւնն ու ընդդիմադրութիւնն ամենուն յայտնի է։ Թէպէտ եւ աս բիծն իր վրայէն իր մարտիրոսական արեամբ լուաց ու մաքրեց, այսու ամենայնիւ իր վկայութիւնը մեր հակառակորդաց աչքին առջեւ աւելի եւս արժէք մը պէտք է ունենալ։ Արդ ինք ալ նոյն Կոռնելիոս Քահանայապետա գրած թղթին մէջ կ'աղաղակէ. "Ասոնցմէ զատ (Նովատեան Հերետիկոսք) իրենց սուտնուն եպիսկոպոս մ'ալ դնելով՝ հերձուածողներէն ու առաքինիներուն ձեռքէն թղթեր կը ժողվեն, եւ ծովէ ու ցամաքէ անցնելով՝ զանոնք կը բերեն ու ընծայելու կը յանդգնին Պետրոսի աթոռին եւ գլխաւոր եկեղեցւոյն, ուսկից որ քահանայական միութիւնը յառաջ եկած է. եւ չեն մտածեր որ կը գիտեն Հռոմայեցւոց, (որոնց հաւատքը՝ Առաքելոյն հռչակելովը գովութիւն ընդունած է,) որոնց քով նենգութիւն մուտք չէր կրնար ունենալ„[1]։ Դարձեալ ուրիշ տեղ մ'ալ կը գրէ. "Կոռնելիոս եպիսկոպոսութիւնն առած է Աստուծոյ ու իր Օծելոյն Քրիստոսի վճռովը, գրեթէ բոլորանդակ կղերին վկայութեամբը, եւ հաճութեամբ ժողովրդեան՝ որ ընտրութեան ներկայ էր, երիցագոյն քահանայից եւ առաքինի մարդկան միաբանութեամբ, երբ դեռ իրմէ յառաջ ուրիշ մը չէր դրուած, երբ Փաբիանոսի տեղը, այսինքն՝ Պետրոսի աթոռն ու Քահանայապետական գահին աստիճանը դեռ դատարկ էր„[2]։

Ս. Կիպրիանոս ասոնցմէ զատ շատ ուրիշ վկայութիւններ ալ կու տայ զանազան գրուածներուն մէջ, զորոնք շատ երկայն կ'ըլլար հոստեղս յիշատակել. բայց անոնց տեղ աս խորհրդածութիւնն ընելը հարկաւոր կ'երեւայ, թէ այս ամենայն բազմաթիւ, շարունակեալ եւ անընդհատ հարազատ վկայութիւնները, որ ըստ ինքեան ի ներքուստ իրենց անկասկածելի վաւերականութեան դրոշմը կը կրեն, այնպիսի ատեն, այսինքն՝ երկրորդ ու երրորդ դարերու մէջ տրուած են, երբոր Հռոմայ Քահանայապետք՝ աղքատ, աշխարհական բռնութեան տակ ճնշուած, առանց անուան ու համբաւոյ, հալածուած եւ նեղութեան մէջ էին հեթանոս իշխաններուն ու կայսրներուն

1 Թղթ առ Կոռն. Քահանայապ. 55։ 2 Նոյն առ նոյն. 52։

էր, 50ին, որ Պօղոս առաքեալ Հռոմ՛ Եկեղեցւոյ քրիստոնեաներուն կը գրէր իր Թուղթը՝ զիրենք զօրացնելու համար, եւ ոչ թէ Քրիստոսի հաւատքին կրկին նոր քարոզելու՝ ինչպէս կը բաղձան մեկնել Բողոքականք, եւ ասիկա անհնարին բան է, ինչպէս ինք Պօղոս առաքեալ կը գրէ նոյն Հռոմայեցւոց Թղթոյն մէկ-բը, թէ "Անձկացեալ եմ տեսանել զձեզ, զի փափաքեցի ի ձեզ շնորհս ինչ հոգեւորս առ ի հաստատել զձեզ,, եւ ոչ թէ նորէն քարոզել, ասոր եւ կը մեկնէ իր միտքը. "Այսինքն է՝ մխիթարա-կից լինել ձեզ վասն ընդ միմեանց իմոյ եւ ձերոյ հաւատոցն,,[1]: Այս վկայութիւններէն յայտնի կը հետեւի ուրեմն որ Պօղոս առաքե-լոյն Թուղթը գրած ատեն՝ արդէն Հռոմի մէջ քրիստոնէական համայնքը քարոզուած հաստատուած ու տարածուած էր, եւ Առաքեալը կը բաղձար միայն իրենց մխիթարակից ըլլալ Քրիս-տոսի սիրոյն համար կրած նեղութիւններուն պատճառաւ, եւ միանգամայն զիրենք աւելի եւս հաստատել, եւ հեթանոս հաւա-ցողներուն աւետարանել:

Իսկ թէ ինչու համար Պօղոս առաքեալ Հռոմէն գրած Թղթերուն մէջ Պետրոսի անունը կամ անոր ողջոյնը չիտար, սրբազան մատենագրաց զգուշաւորութեան մասին ըլլա-ներն ասոր ալ պատճառը դիւրաւ կրնան իմանալ: Բաւական է միայն Գործոց առաքելոց ԺԲ. Գլուխը կարդալ, ուր որ յայտնի կը տեսնուի թէ ինչպէս Ղուկաս աւետարանիչ սրբազան մա-տենագիրը՝ որն որ Պետրոսին Հրեշտակի ձեռքով բանտէն ա-զատիլը, Յովհաննու կամ Մարկոսի տունն երթալը, հոն ա-ղախնոյն հետ եղած խօսակցութիւնը, անոր ապսպրելը որ այս ամենայն պատմեն Յակոբայ եղբօր Տեառն եւ ուրիշ եղբարց, մանր եւ պարագաներովը պատմելէն ետքը, երբ որ Պետրոսի Երուսաղէմէն երթալը կը պատմէ, ուրիշ բան մը չիդրուցեր՝ բայց եթէ "Ելեալ գնաց յայլ տեղի,,. այսինքն՝ Հռոմ, ինչպէս ուրիշ տեղ յիշեցինք, ուր որ ապահով էր իր կեանքը Հերովդ-գէսի նեղութիւնէն: Կը տեսնեն ընթերցողք որ սրբազան մատենագրին լռութիւնը պարզապէս զգուշաւորութեան համար էր, որ չըլլայ թէ Առաքելոյն թշնամիներն անոր ուր ըլլալն

բանտանալը բաւական ժամանակ ան-ցած է, որ կարող եղած է նաեւ Եր-կու Կաթողիկէ հովուական Թղթերը գրելու: Այս Թղթերուն երկրորդին մէջ (Գլ. Ա. 14.) կը յայտնէ իր մա-հուան մօտ ըլլալը, որն որ Քրիստոսի 67—68 տարին պատահած է:

1 Հռոմ. Ա. 12:

խմանալով՝ նորէն չարութիւն մը նիւթեն: Եւ իրաւցընէ չէկրնար մտածուիլ որ Ս. Ղուկաս Պետրոսի գացած տեղը գիտցած չըլլայ. ան՝ որ ամէն բան այնպէս մանր պարագաներովը կը գրէր, աղէկ գիտէր. բայց այնպիսի եղանակաւ կ'աւանդէր՝ որ հաւատացեալք կ'իմանային եւ թշնամիք բան չէին կրնար գուշակել: — Այսպիսի զգուշաւորութիւն կը բանեցընէր նաեւ Պօղոս առաքեալ՝ երբ որ Հռոմէն Եբրայեցւոց թուղթը կը գրէր, եւ Պետրոսի վրայ յիշատակութիւն մը չէր ըներ, որ չըլլայ թէ եկեղեցւոյ գլխոյն Հռոմ ըլլալը իմացուելով, անոր չարիք մը պատահի: — Այսպիսի զգուշաւորութեան համար, որն որ՝ ինչպէս ըսինք՝ սրբազան մատենագրաց սեպհական էր, նոյն իսկ Պօղոս առաքեալ Հռոմէն Տիմոթէոսի Բ. Թուղթը գրած ատեն՝ իրեն աւետել ուզելով թէ ինչպէս Ներոնի առանէն ազատեցաւ, այսպիսի գաղտնութեամբ կը գրէ թէ "Ապրեցայ ես ի բերանոյ առիւծուն,, [1]. այսինքն՝ ի ձեռաց Ներոնի: Ուզողը կրնայ նոյն Բ. Թղթին Դ. գլուխը կարդալ:

Երրորդ՝ թէ Պետրոս կաթողիկէ թղթերը Բաբելոն գրած է, միայն քանի մը յանդուգն գիտնոց կարծիքը կրնայ ըլլալ, բոլոր քրիստոնէական հնութեան, ամէն կորովամիտ իմաստնոց եւ տասնուինը դարերու հաստատուն ու անփոփոխ զրուցին հակառակ: Աս բանիս մէջ նոյն իսկ Բողոքականաց բանիբուն գիտունները ընդհանուր եկեղեցւոյ հետ կը միաբանին եւ կը խոստովանին թէ Պետրոս Բաբելոն ըսելով՝ Հռոմ կ'իմանայ եւ թէ աս Հռոմ քաղքին մէջ իր կաթողիկէ թղթերը գրած է: Բայց որովհետեւ հակառակորդք աս խնդրոյն ծանրութիւն մը կու տան, հարկ է որ քիչ մը կանգ առնենք հոստեղս ի ցոյց ճշմարտութեան:

Թող տանք այնչափ առաջին ու հնագոյն Հարց եւ աւանդութեան վկայութիւնները, զորոնք վերը յառաջ բերինք, եւ որոնք արդէն ըստ ինքեան բաւական են պատճառ հանկըցող մը համոզելու: Թող տանք նաեւ այն ներքին պատճառները, որ նոյն թղթերուն ոճէն եւ գրուածքին եղանակէն կը բղխեն, ցուցընենք նաեւ արտաքին՝ բայց ամենուն աչքին զարնող պատճառներով ալ, որ անկարելի էր թէ Պետրոս առաքեալ այն երկու թղթերը Հռոմէն դուրս ուրիշ տեղ մը գրած ըլլայ,

1 Բ. Տիմ. Դ. 17:

եւ ըստ Հեթեւորդի՝ թէ Բաբելոն բառը պէտք է որ Հռոմ նշանակէ։

Խէ Հին եւ թէ Նոր պատմութիւնը հողագնտիս վրայ Բաբելոն անուամբ միայն երկու տեղ կը նշանակէ, մէկը՝ բուն Հին Բաբելոն Ասորեստանի հռչակաւոր մայրաքաղաքը, եւ երկրորդը՝ Եգիպտոսի մէջ աննշան տեղ մը, բերդ մը կամ ամենափոքր գեղ մը։ Ս. Պետրոս ո՛չ մէկուն եւ ո՛չ մէկալին մէջ կրնար ըլլալ թղթերը գրած ատեն։ Ո՛չ առաջինին մէջ. վասն զի պատմութիւնը կը ցուցնէ որ արդէն Գայոս Աւգոստոս կայսեր ատեն Ասորեստանի եւ Բաբելոնի մէջ որչափ Հրեայք որ կային, ամէնքն ալ վերնատուեցան եւ բնաջինջ սպանուեցան, ինչպէս կը պատմէ Յովսեպոս[1]. եւ Դիոդոր[2] հեթանոս պատմիչը կը հաստատէ թէ Կղաւդիոսի ու Ներոնի ատեն բովանդակ Բաբելոն քաղաքը ջնջուած անմարդաբնակ եւ ամենեւին առանց բնակչաց էր։ Այսպէս նաեւ Պլինիոս զԲաբելոն՝ անապատ կը կոչէ[3], եւ Ստրաբոն բացայայտ կը ցուցնէ թէ "փլատակներու կոյտ մը եւ աւերակ մը դարձած է"[4]։ Ուրեմն Ս. Պետրոսի ատենը Բաբելոնի մէջ եկեղեցի կամ եպիսկոպոսական աթոռ չկար եւ ոչ ալ կրնար ըլլալ. թող թէ ծաղկեալ եւ հռչակաւոր եկեղեցի, ինչպէս էր "Ընտրելակից եկեղեցին", որմէ սուրբ Պետրոս ողջոյն կը գրէր։ Եւ ոչ երկրորդը, այսինքն՝ Եգիպտոսի Բաբելոնը կրնայ ըլլալ. վասն զի, ինչպէս նոյն Ստրաբոն կը ցուցնէ, անիկա ոչ քաղաք էր, ոչ աւան եւ ոչ ալ գեղ մը, այլ աննշան տեղ մը, ուր բերդ կամ ամրոց մը կար, որուն մէջ պատսպարուած էին Հին Բաբելոնին կոտորածէն ազատող սակաւաթիւ Հրեայք. ուստի եւ հոն ալ Ս. Պետրոսի ատեն ոչ կարգաւորեալ եկեղեցի կար եւ ոչ ալ կրնար ըլլալ, հազիւ թէ հինգհարիւր տարի ետքը եպիսկոպոս մը դրուեցաւ։

Ուրեմն հարկ է ըսել թէ Առաքեալը Բաբելոն ըսելով՝ չէր կրնար նկարագրական մտքով իրական Բաբելոն անունով քաղաք մ'իմանալ, հապա այլաբանական իմաստով Հռոմ կ'ուզէր նշանակել, իբրեւ Բաբելոն՝ [illegible] խառնակութեան։ Եւ իրաւցընէ՝ ինչպէս որ ատեն մը Հին Ասորեստանի Բաբելոնն էր, այսպէս Հռոմ ալ իր փառաւորութեան ու զեղծման ու

1 Գիրք ԺԸ. Գլ. 12։
2 Մատենագ. Գիրք Բ։
3 Բնակ. Պատմ. Գիրք Ա. 60։
4 Աշխարհագր. Գիրք ԺԶ։

գարշութեան ծայրը հասած էր, ուր ամենայն ազգաց խառնուրդը ժողված էր, ուր ամէն տեսակ լեզու կը խօսուէր, ամէն ազգերուն կուռքերը կը պաշտուէին, ամէն տեսակ զեղծ սովորութիւններն ու մեղկութիւնները հասարակ էին, եւ ուր վերջապէս վերջին աստիճանի խառնակութիւն մը կը տիրէր, բառին ճիշդ նշանակութեամբը։ Այսպիսի բաբելոնական խառնակութեան կամ խառնակ քաղքի մը մէջ, որն որ իրաւամբ Բաբելոն, այսինքն՝ խառնակութիւն կրնար կոչուիլ, կը ծաղկէր հաստատուն արմատով՝ մեծ, գեղեցիկ եւ սուրբ եկեղեցի մը, զորն որ Ս. Պետրոս "Ընտրելակիցն եկեղեցի„ կ՚անուանէ[1], եւ Ս. Պօղոս ալ եկեղեցւոյն հաւատքը բոլոր տիեզերաց առջեւ զարմանալի կը նկարագրէ։ Ասիկայ կը հաստատէ նաեւ Եւսեբիոս իր վկայութեամբը՝ զորն որ վերը յառաջ բերինք[2]։

Եւ արդէն յայտնի բան է թէ հին քրիստոնէից մէջ ալ սովորութիւնը կար, որ շատ անգամ նոյն կայսերական մայրաքաղաքը զանազան նկատմամբ Բաբելոն կը կոչէին։ Յովհաննէս աւետարանիչ իր Յայտնութեան գրքին մէջ, ուր որ Հռոմայ վրայ կ՚ուզէ խօսիլ, միշտ Բաբելոն կ՚անուանէ. այսպէս կ՚իմանան եւ այսպէս կը մեկնեն Յայտնութեան ալ բառը նոյն իսկ Բողոքականք։ Եթէ Ս. Յովհաննէս աւետարանիչ այսպիսի զգուշաւորութեամբ կը վարուէր, ապա ուրեմն նաեւ Ս. Պետրոս՝ որ Հրէից ատելութեան նպատակն եղած էր, եւ գիտէր թէ իր արեան ծարաւի են, իրաւամբ աւելի եւս պատճառ ունէր այսպիսի այլաբանական ոճով գրելու եւ ծածկելու օտարաց առջեւ իր տեղը։ Ունինք օրինակ նաեւ Ս. Պօղոս որ նոյնպէս ծածկութեամբ կը խօսէր՝ երբ որ կը գրէր. "Ապրեցայ ես ի բերանոյ առիւծուն[3]„ այս ինքն՝ Ներոնի, ինչպէս վերը յիշեցինք։

Բայց չէ թէ միայն քրիստոնէից մէջ, այլ նաեւ հեթանոսաց մէջ հին ատեններն կար սովորութիւն Հռոմ քաղաքը Բաբելոն կոչելու, չէ թէ միայն առանձնական կամ ընտանեկան գրութեանց՝ այլ նաեւ հրապարակական եւ դատաստանական

1 Ա. Պետր. Ե. 13։

2 "Պետրոս յառաջագոյն ի թղթի անդ իւրում՝ զոր գրեաց ի Հռոմ քաղաքի, զի գրոշմէ նա զքաղաքն իւր, եւ առակաւ կոչէ զնա Բաբելոն, եւ ասէ թէ հարցանէ զողջունէ ձերմէ ընտրեալ իբրեւ զձեզ Բաբելոն„։ Գիրք Բ. Գլ. 15։

3 Բ. Տիմ. Դ. 17։

գրութեանց մէջ: Հռոմէացւոց անդերու ազարակներու սահմաններն որոշող հին արձանագրութիւններու մնացորդներէն, որոնք Փաւստոսի եւ Վալերիոսի անուամբ կ'արձանագրուին, յայտնի կը տեսնենք որ նոյն իսկ Վեսպասիանոս եւ Դոմետիանոս կայսրներուն առենն ալ, Քրիստոսէ ետքը 69—96 տարիներուն մէջ, այսինքն՝ Ս. Պետրոսի մահուանէն քանի մը տարի ետքը, երբ Փաւստոս եւ Վալերիոս անդաստանաց սահմաններն որոշելու եւ չափելու վերակացու էին, Հռոմ քաղաքը հրապարակական արձանագրութեանց մէջ Բաբելոն կ'անուանուէր[1]:

Չորրորդ՝ եթէ ժամանակագրութիւնն ուղղութեամբ ու կարգաւ հաշուելու եւ կարգաւորելու ըլլանք, ինչպէս որ թէ ուղղափառաց[2] եւ թէ բողոքականաց[3] մէջէն քաջ ժամանակագիրք կը հաշուեն ու կը դնեն, ամենեւին անհամաձայնութիւն կամ ժամանակագրական վրիպակ մը չիգտնուիր Պետրոսի Հռոմ գալուն ու մեռնելուն վրայ, ինչպէս որ վերը պատմեցինք ծանօթութեան մէջ:

Հինգերորդ՝ ամենեւին երկիւղ մը կամ վտանգ մը չկայ եւ ոչ ալ կրնայ ըլլալ, որ այն սուրբ եւ իմաստուն անձինք խաբուած ըլլան, եւս առաւել յանդգնած ըլլան խաբելու, որովհետեւ այնպիսի դէպքի մը վրայ է առուած վկայութիւններն՝ որ բոլոր քրիստոնէութեան առջեւ յայտնի էր եւ յայտնի պէտք էր ըլլալ: Եթէ կուսի մը, մարտիրոսի մը, սուրբ եպիսկոպոսի մը վարքը կամ վկայաբանութիւնն անծանօթ չէր մնար ու կը տարածուէր քաղքէ քաղաք եւ գաւառէ գաւառ, կարելի՞ բան

1 Գուլիելմոս Գեզենիուս իր "Աէտօրա-խոյնէ եբրայ. մարինոփեէրէ եւ այլ—այլ օրէնք", բառարան մատեններին մէջ մեծ հմտութեամբ ժողված հին արձանագրութիւններու հատուածներուն մէջ այսպիսի երկու արձանագրութիւններ կը հրատարակէ.

1. FAUSTVS ET VALERIUS
VV. PP.
... Circa urbem Babylonis Romae maritimum fiet et Gallicum, jubeo te . . . .

Փաւստոս եւ Վալերիոս
ԱԱ. Խխ. (Արք Խոհականք.)
. . . . Զքաղաքաւն Բաբելոնի Հռոմայ ծովակողմն լեցի եւ Գաղղիականն, հրամայեմ քեզ . . . :

2. Contra (urbis Babylonis) Romam maritimi limites fient, et Gallicus impinget . . . .
Դէմ յանդիման (քաղաքին Բաբելոնի) Հռոմայ լեցին ծովեզերեայ սահմանք, եւ ի հանդիպոյ կացցէ Գաղղիականն . . . : Էջ. 307. 265

2 Ուղղափառաց մէջէն տես Պետաւիոս, Ռատիոն. թեմփոր. Գիրք ԺԱ. Գլ. 13. 14. եւ Ռիկկիոլիոս, Քրոնոլոգ. Նորոգ. Հատ. Ա. Գիրք Թ. Գլ. Բ. 5. 8. եւ այլն:

3 Բողոքականաց մէջէն տես Յովս. Սկալիգեր, Գանոն քրոնոլոգ., Ցեղեխոնիքոն ի քրոնոլոգիք. Եւսեբեայ. 197. եւ Յոհ. Ուսսերիոս, Ցարեգրութիւն Հին եւ Նոր կտակի եւ այլն:

***

էր արդեօք որ եկեղեցւոյ գլխոյն նահատակութիւնը, իր մահն ու գերեզմանն անծանօթ մնար բոլոր եկեղեցւոյն առջեւ, եւ տեղի տար խաբէութեան . . . ։ Այսու ամենայնիւ սուտ է ըսելը թէ Ս. Իգնատիոս եւ Պողիկարպոս միայն կը վկայեն, որովհետեւ, ինչպէս որ վերը յառաջ բերինք, Կղեմէս Քահանայապետը Ս. Պետրոսի յաջորդը, եւ Դիոնեսիոս Կորնթոսի եպիսկոպոսը, որոնց մէկը ժամանակակից էր եւ միւսը մերձաւոր ժամանակաւ, նոյնը կը վկայեն։ Բաց աստի՝ Պապիաս, Իրենէոս եւ Որոգինէս Հռոմ գացած ու հոն թէ Ս. Պետրոսի եւ թէ Ս. Պօղոսի գերեզմանները տեսած ըլլալով՝ ականատես ու ականջալուր վկաներէն լսած՝ այնպէս հաստատած են։

Վեցերորդ՝ զարմանալի բան է թէ ինչպէս կրնայ մէկը համարձակիլ Ս. Իգնատիոսի Թղթերուն հարազատութեան վրայ տարակուսիլ, ուր որ չէ թէ միայն ուղղափառք, այլ նոյն իսկ Բողոքականաց ամենէն հռչակաւոր փաստաբանները, կամ թէ ըսենք՝ բողոքականութեան ջահերը՝ Համմոնտ, Բէրսըն, Ուսսերիոս, Գոդելերիոս, Իսահակ Վոսսիոս եւ ուրիշները գրեթէ առ հասարակ ոչ միայն կ'ընդունին, այլ նաեւ կը պաշտպանեն[1] աս Թղթերուն հարազատութիւնը, եւ ոչ ալ օտար յաւելուած մ'եղած կ'ընդունին։ Բայց ով չիգիտեր հակառակորդաց այս սովորական փախուստը։ Իսկ Պապիասայ իմաստուն մնաց տէր չըլլալէն եւ մէկ երկու տեսական խնդիրներու մէջ խաբուած ըլլալէն՝ չեկրնար հետեւիլ որ այսպիսի աշխարհածանօթ դէպքի մը մէջ ալ, ինչպէս է Պետրոս առաքելոյն Հռոմ նահատակութիւնը, խաբուած ըլլայ։ Իրենէոս Պապիասէն առած կամ անկից խաբուած է ըսելն ալ բոլորովին անհիմն մտածութիւն է, որովհետեւ ինչպէս վերը ցուցցինք, Իրենէոս անձամբ Հռոմ գացած, անձամբ լսած ու ամէն բանի տեղեկացած էր։

Եօթներորդ՝ ամենեւին կասկած չեկրնար ըլլալ հին յիշատակարանաց ժամանակակից ըլլալուն վրայ, վասն զի, ինչպէս վերը ըսինք, Գայիոս Հռոմայեցին երրորդ դարուն սկիզբը, այսինքն՝ 210ին բարձրաբարբառ կ'աղաղակէր, եւ ժամանակին

1 Տես Բիրսըն ի վերնար. ընդդէմ առն ընդդէմ Պլոնտելայ։ Ուսսերիոս. Դաղղէասի։ Կոդելերիոս եւ Իսահակ Յառաջաբան յիգնատ.։ Վոսսիոս ի Թղթի առ Անդր. Ռիվէ.

Հերետիկոսները՝ որ հիմնկուածներէն նուազ յամառ չէին, Հռոմ գալու եւ նոյն յիշատակարանները տեսնելու եւ քննելու կը հրաւիրէր։

Մ՚ինչեւ ցայսօր այն բազմաթիւ յիշատակարաններուն մեծ մասը Հռոմայի մէջ կեցած են։ Դեռ կը ցուցուի Պաւտենցիոս Սենկղիտիկոսին տունը՝ ուր որ Պետրոս առաքեալ կը բնակէր, Մամերտինեան բանտը՝ ուր բանտարկուած էր, Վիա Լադայի դուռը՝ ուսկից հրաշքով ջուր բղխեցուց նորադարձ քրիստոնեաները մկրտելու համար, Ցանիկուլոս լեռը՝ ուր Պետրոս խաչուեցաւ, եւ իր գերեզմանը Վատիկանեան բլրին վրայ, ուր իր սուրբ ոսկորները կը հանգչին եւ ուր ի սկզբանէ քրիստոնէութեան մինչեւ ցայսօր յարեւելից եւ յարեւմտից, ծովով ու ցամաքով՝ այնչափ անչափ ուխտաւորք, հաւատացելոց բազմութիւն կը պանդխտէին եւ կը պանդխտին։ Այս ամէն յիշատակարանները, ինչպէս յայտնի կ՚երեւայ, չէ թէ երեկուընէ կամ մէկալ օրուընէ կը պատուէին ի Հռոմ, այլ հին եւ հնագոյն մատենագիրք ի սկզբանէ հետէ կը յիշատակեն։

Ս. Ցերոնիմոս յայտնապէս կը պատմէ թէ իր մանկութեան հասակին առջի անգամուն Հռոմ բնակած ատեն՝ ամէն շաբաթ օր վերոյիշեալ սուրբ տեղուանքն ու մարտիրոսաց գետնափոր գերեզմաններուն այցելութեան կ՚երթէր։ Եւսեբիոս ասոնց վրայ իբրեւ քրիստոնէութեան նուիրական նիւթերուն վրայ կը խօսի, եւ կ՚ըսէ համարձակ թէ միայն սա յիշատակարաններուն տեսքն իրենց արձանագրութիւններով մէկտեղ, որ հրապարակաւ կը կարդացուէին, բաւական էին Ս. Պետրոսի նահատակութեան վրայ մանր ճառելու եւ պատմելու, եւ թէ հարկ չկար ասոնցմէ աւելի բացայայտ գրելու եւ պատմելու։ «Ներոն, կ՚ըսէ, Աստուծոյ եւ բարեպաշտութեան յայտնի թշնամի էր, առաքելոց մահուան կը բաղձար, վասն զի առաջինն էր քրիստոնէից առաջնորդներն ու դրօշակիրները։ ԶՊօղոս գլխապարտութեան եւ զՊետրոս խաչուելու դատապարտեց Հռոմ քաղքին մէջ։ Աւելորդ կը սեպեմ ես սա իրական գործքերուն վրայ արտաքին վկայութիւններ մէջբերել, ինչու որ արդէն հոյակապ եւ ամենաշքեղ յիշատակարանները՝ որոնք այսօրուան օրս կը տեսնուին, ըստ բաւականին կը վկայեն [1]։ Նոյնպէս ար-

1 Եւսեբ. Կեսար. Պատմ. Եկեղ. Գիրք Բ. Գլ. 25։

ձանագրութիւններուն վաւերութիւնն ու հարազատութիւնը՝ որ իր ատենը առաքելոց գերեզմաններուն վրայ դեռ կը տեսնուէին, ամենեւին անտարակուսելի եւ ամենաստոյգ կ՚աւանդէ[1]։ Եւ վերջապէս Գայիոսի խօսքերը յառաջ կը բերէ, որոնք ամենուն ծանօթ են։

Արդէն յայտնի բան է որ հիներն իրենց կաւոյ, դիւցազանց ու նախնեաց պատկերը շինելու սովորութիւն ունէին, որով իրենց խնջոյից կամ սեղանի նուիրական անօթները կը նկարէին ու կը զարդարէին։ Առջի քրիստոնեայք աս սովորութիւնը պահեցին, եւ այսպէս իրենց հողէ անօթները Ս. Պետրոսի ու Ս. Պօղոսի պատկերներով կը զարդարէին, եւ որպէս զի նկարագիրներուն վրայ տարակոյս մը չըլլայ՝ ամէն մէկուն անունն իրեն քովը կը գրէին։ Ս. Յերոնիմոս աս բանիս վրայ իբրեւ սովորական եւ յայտնի բանի մը պէս կը խօսի. "Նոյն իսկ դդմաձեւ փոքր անօթներուն վրայ, կ՚ըսէ, որոնք ռամկօրէն Սաւկոմարիա կը կոչուէին, սովոր էին առաքելոց պատկերը նկարել"[2]։ Աս անօթներէն անթիւ բազմութիւն մը հետզհետէ գտնուած են եւ օրէ օր Ս. Կալիստոսի, Ս. Պրաքսլատոսի եւ Ս. Պրիսկեղեայ եկեղեցիներուն գաւիթներուն մէջ եւ գերեզմաննոցներուն մէջ, հասարակօրէն մարտիրոսներու եւ սրբոց գերեզմաններու քով կը գտնուէին, որոնք արեան նշաններ ու բծեր ալ վրանին ունենալով՝ յայտնապէս կը ցուցընեն թէ ստուգիւ եկեղեցւոյ հալածանաց ատենէն, այսինքն է՝ առջի դարերէն մնացած են։ Ասոնցմէ շատերուն պատկերները Ֆոճճինի[3] եւ ուրիշ հնախօսները կը նկարագրեն։ Եւ յայտնի կը տեսնուի որ աս անօթներն ու գերեզմանները՝ ուր որ կը գտնուին, մինչեւ Բ. դար կը հասնին։ — Նոյնը կը հաստատեն նաեւ պատկերները, յախճապակները (մոզայիքները), մետալներն ու դագաղները, որ առաքելոց իշխանին պատկերովը դեռ գերեզմաններու եւ ընդերկրեայ եկեղեցիներու մէջ Հռոմ

1 "Ներոնի թագաւորութեան ատեն Պօղոսի սակրով գլխատուիլը եւ Պետրոսի խաչուիլը պատմութեան յիշատակարաններով ցուցուած է։ Մանաւանդ որ այն հաչակաւոր ու աներկբայելի Պետրոսի ու Պօղոսի արձանագրութիւնները Հռոմ քաղաքին մէջ մինչեւ ցայսօր կեցած են, եւ աս եղածներուն կը վկայեն"։ Եւսեբիոս, Պատմութիւն Եկեղեցւոյ, Գիրք Բ։

2 In ipsis cucurbitis vasculorum, quas vulgo Saucomarias vocant, solent Apostolorum immagines adumbrari. (Hieron. in Cap. 4. Joann.)

3 Ֆոճճինի, Ս. Պետրոսի ճանապարհորդութեան վրայ եւայլն. Կըրթութիւն Ի։

կը գտնուին, որոնց սկիզբը քրիստոնէութեան սկզբան հետ կը միանայ կամ գոնէ շատ հեռու չէ։ Այս ամենայն հնութիւնները Վատիկանեան "Քրիստոնէական Թանգարանին" մէջ պահուած են, եւ բոլոր քրիստոնէութեան ու տիեզերաց աչքին առջեւը յայտնի դրուած են։

Արդ կը հաւաքենք. թէ որ այս այսպէս է, թէ որ այս ամենայն յիշատակարանները, այն ամէն առջի երեք դարերուն առաքելական սուրբ Հայրց եւ հետեւեալ տասնուինը դարերուն քահանայապետաց, երեւելի ու իմաստուն մատենագիրներուն եւ պատմագիրներուն միաբան հաստատուն վկայութիւնը, եւ նոյն իսկ ընդհանուր եկեղեցւոյ անխախտ, անընդհատ ու մշտնջենաւոր աւանդութիւնը, իր տիեզերական ժողովներուն[1] վճիռները՝ որ անսխալութեան դրոշմը կը կրեն, եւ նոյն իսկ եկեղեցին՝ այնպէս բարձրաբարբառ կը քարոզեն Պետրոսի Հռոմ գալը, հոն իր աթոռը հաստատելն ու մարտիրոսանալը, իրաւամբ ուրեմն կ'եզրակացընենք որ կամ աշխարհիս վրայէն բոլորովին պատմական հաւատքը պէտք է վերցընել, եւ կամ այս ամենայն պէտք է ընդունիլ, զորն որ մինչեւ ցայսօր, դարձեալ կը կրկնենք, ի սկզբանէ հետէ այնչափ հերետիկոսաց խմբերը, մանաւանդ Յոյնք՝ որ այնպէս հակառակ են Հռոմայ եկեղեցւոյն եւ այնպէս նախանձոտ են իր ամէն մէկ փոքր եւ ամենափոքր պատուոյն, չկրցան ուրանալ, եւ ոչ իսկ Բողոքականք խմբովին այսօրուան օրս կ'ուրանան։ Ա՜յնչափ յայտնի եւ պայծառ է աս դէպքերուն ճշմարտութիւնը։ Իր լոյսը նոյն իսկ իր անհաշտ թշնամիներուն աչքը կը շլացընէ ու մտքերնին կը յաղթահարէ. երանի՜ թէ սրտերնին ալ շարժէր անսալու ճշմարտութեան, եւ իր անխզելի հետեւութիւններուն յօժարամիտ գլուխ ծռելու։

1 Տիեզերական ժողովներուն վճիռներն ու սահմանադրութիւնները մէկիկ մէկիկ յառաջ բերելը հարկ չհամարեցանք, որովհետեւ գործքիս ընթացքին մէջ արդէն պիտի՛ որ յիշուին։ Տես նաեւ Պատմ. տիեզերական ժողովոց, ի Հ. Պօղոս Վ. Յովհաննեանց; Վիեննա, 1846։

# ԱԹՈՌ

## Ս. ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼԱՊԵՏԻ

### ՀԻՄՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ

### ԱՂԲԻՒՐ ԻՐԱՒԱՐԱՆՈՒԹԵԱՆ

### ԿԵՆԴՐՈՆ ՄԻՈՒԹԵԱՆ

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ՄԱՏԵՆԱԳՐԻՆ

Եթէ աս՝ ձեռօք եւ առանց մէկու մը խորհրդակցութեան կամ յանձնութեան գրած մատենագրութեանս մէջ ուղղափառ հաւատոյ հակառակ բան մ՚ըսուած է, եւ՝ որ դեռ նոյն հաւատոյ հաղորդութեան մէջ չեմ ընդունուած, հիմակուընէ ես կ՚առնեմ, կը դատապարտեմ եւ ամէնայն ինչ կաթուղիկէ սուրբ եկեղեցւոյ դատապարտածին ատի կը ձգեմ։

## ԱՌ ՄԵԾԱՐԳՈՅ ՏԷՐ

## ԳՈՒԼԻԵԼՄՈՍ ԷՈՒԷՐԴ ԳԼԷՏՍՏՈՆ

# ՊԱՏԳԱՄԱՒՈՐ

## ՕՔՍՓԸՐԴԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻՆ

## ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱՆՈՑԻՆ ՄԷՋ

*Իմ սիրելի Տէրս․*

*Ես մտերս Ձեր ինծի խրկած գրքուկին մէջ՝ խիստ մեծ զարմացմամբ ու ցաւով ակնարկութիւն կ'ընէք իմ մէկ առաջարկութեանս վրայ՝ զորն որ ուրիշ անգամ ըրած էի, այս ինքն թէ՝ «Նաեւ Հենրիկոս Ութերորդին ատենն ալ Հռոմի աթոռը՝ աղբիւր եւ կենդրոն էր Իրաւաբանութեան, ուստի նաեւ գերագոյն Ատեանն էր Հաւատոյ վարդապետութեան նիւթերուն մէջ։ Ես խօսքը թեթեւութեամբ կամ առանց մտադրութեան ըրած չէի։ Ինչու որ արդէն գիտէի թէ որչափ բազմաթիւ փաս-*

*տեր կան ի նպաստ ասոր։ Բայց Ձեզմէ ակնածելով՝ Ձեր ասոր վրայ խօսք բանալէն յառաջ՝ չհամարձակեցայ յառաջ բերել նոյն փաստերուն գոնէ ան մասը՝ զորն որ ժամանակն ինծի ներած էր հաւաքելու։ Այսու ամենայնիւ յուսամ թէ կը հաճիք որ Ձեզի ընծայեմ աս իմ գիրքս՝ որուն պատճառ եղած է Ձեր մէկ դիտողութիւնը։*

*Իմ մեծ յարգութեամբ*

Լոնտըն, Սեպտեմբեր 1850։

*Ձեր հաւատարիմ ծառան*

**ԹՈՎՄԱՍ Գ. ԱԼԱՑՍ**

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

## ՄԱՏԵՆԱԳՐԻՆ

ՔԱՆԻ մը տարիէ վեր աս մատենիս հեղինակը սաստիկ պլպլած ու վրդոված հոգւով կը դիտէր Անգղիական եկեղեցւոյն անցեալ ու ներկայ վիճակը։ Վասն զի նոյն եկեղեցին՝ թէ իր հաւատոյ հանգանակներուն մէջ տուած հրամաններովը, թէ պաշտամանց գործածութեան մէջ կերպ ու սկիզբ մը չունենալովը, եւ թէ առաւել եւս իբրեւ հասարակութիւն մը՝ իր ընդհանուր նկարագրովը ու կազմուածքովը՝ հին սրբոց Հարց հոգիէն բոլորովին օտար կ՚երեւար։ Ասոր համար խորին մտադրութիւնը՝ ՀՌՈՄԷ ԳԱՀԻՆ ԳԼԽԱՒՈՐՈՒԹԵԱՆ վրայ դարձուց. եւ աս նիւթին վրայ ուզեց ուրիշ ամէն բաներէն աւելի ծանրութեամբ զբաղիլ, որ կարող ըլլայ հաստատուն ու անսխալ որոշում ընել։

Ինք ան ատեն՝ ինչպէս նաեւ հիմակ՝ այնպէս համոզուած էր ու է, որ Հռոմէական, Անգղիական ու Արեւելեան հերձուածող եկեղեցւոյն մէջ եղած բոլոր խնդիրն ասոր վրայ կը դառնայ՝ թէ արդեօք Հռոմայ Քահանայապետին գլխաւորութիւնը, ինչպէս որ հիմայ կը դաւանուի, յաստուածային իրաւանց է։ Թէ որ յաստուածային իրաւանց է, ան ատեն ուրիշ բան չի մնար

մեզի ընելու, բայց եթէ հպատակիլ Հռոմի ծխու-
թեան։ Եւ լաւագոյն կ'ըլլայ եթէ ասիկա ընենք յա-
ռաջ քան պարտաւորուելնիս մերժելու այն թշնամւոյն
վերահաս յարձակումը՝ որն որ թէ Անգղիական եւ թէ
Հռոմայ եկեղեցւոյ դէմ հաւասար ատելութիւն կը
տածէ։ Ասիկայ ան գուշակուած թշնամին է, Մարդ-
կային բանը, ուրացող մարդկութեան առանձնական դա-
տումը կամ միտքը, որ յանդգնութեամբ ապստամբու-
թեան դրօշը կը բանայ Աստուածային բանին դէմ՝ որն
որ իր եկեղեցւոյն հետ միացած է։

Արդ՝ ահաւասիկ մատենագիրն ուրիշ մատենի մը
մէջ յառաջագոյն աս խնդրոյս վրայ հրապարակաւ այս-
պէս գրած էր թէ Միայն իմ միտքս գոհ ընելու համար
նոյն խնդիրը կը յուզեմ. եւ միանգամայն ըսած էր որ Ե-
թէ եկեղեցւոյ ժողովներէն ու ուրիշ Հարց կարդալէն
վկայութիւններէն երաշխաւորութիւն մը գտնելու ըլլամ նէ
Հռոմէական գերաւորութեան վրայ՝ ինչպէս որ հիմա կ'ու-
զուի, փոխանակ թերահաւատելու, իմ գլխուս պարտաւոր
կը ճանչնամ հնազանդելու, ինչու որ եթէ Անգղիայի եկե-
ղեցւոյն պաշտօնեայ մը՝ կը բողոքեմ, որչափ որ կարող եմ,
հաստատել ու սորվեցընել այն ամբողջ ու կատարեալ վար-
դապետութիւնը, զորն որ անբաժին եկեղեցին ամէն ատեն
պահած է[1]։

Աս յայտարարութիւնները ստոյգ է՝ պարզմտու-
թեամբ, բայց միանգամայն սրտի անկեղծութեամբ տրու-
ած էր, զորոնք Աստուծոյ ու մարդկան առջեւը կը հրա-
տարակէր։ Արդ նոյն ատեն հին ժամանակներուն վրայ
քննութիւն ընելով՝ մտքին մէջ որոշած էր թէ իրօք
յաստուածային սահմանադրութենէ՝ գլխաւորութիւն
մը տրուած է սրբոյն Պետրոսի աթոռին[2], բայց ան աս-

1 Իր մատենագրութեան անունն է Անգղիական եկեղեցւոյ սրբեւ է բնոյ Գրչութեան եւ այլն։

2 Այսպէս ընդունուած է վերյիշեալ մատենին մէջ (Բ. տպագր.) էջ 313, 315, 490, 491։ Մատենա-

տիճանը՝ ուր որ նոյն գլխաւորութիւնը վերջի պատենները մղուած է, առիթ մը կու տայ ջատագովելու այն եկեղեցիները, որոնք թէպէտեւ կաթողիկէ հաւատքը դեռ ամբողջ ու անարատ կը պահեն, բայց գործքով բաժնուած են նոյն աթոռէն։

Աս կարծիքն ունէր հեղինակը՝ երբոր միտքն այնպէս դրած էր թէ իր-վերը յիշուած տրամադրութիւնները զինքն իր վախճանին հասցուցած են։ Բայց հիմակ որ մէկ քանի տարուան ընթացքին մէջ նոյն տրամադրութիւնները զինքն ուրիշ բոլորովին տարբեր վախճանի մը տարին հասցուցին, կը պարտաւորի իր աս կարծիքը մերժելու։

Ինչու որ՝ թէպէտեւ վերոյիշեալ խնդրոյն քննութիւնն առ ժամն աս մի միայն կետին վրայ էր, այսու ամենայնիւ սրբոյն Պետրոսի աթոռին ընդհանուր եկեղեցւոյ վրայ բանեցուցած գլխաւորութիւնն իր սրտին մէջ շատ խորունկ տպաւորուած էր, եւ միանգամայն ուրիշ երկիրներուն մէջ Հռոմէական եկեղեցւոյն ներկայ վիճակը մտադրութեամբ դիտելով, թէ ինչ սկիզբ իրեն կանոն առած է եւ թէ որպիսի պտուղ կը բերէ, սիրտը մեծապէս կը շարժէր ու կը փղձկէր։ Իրեն անանկ կ՚երեւար որ աս Հռոմէական եկեղեցին կատարեալ տէր է թէ այն մեծ քահանայական ու խորհրդական դրութեան[1], որուն դէմ ընդունայն կը ճգնին յամառ Անգղիացիք, եւ թէ նաեւ նոյն այն կրօնական միութեան՝ որուն անունը Նախատանաց բառ-

գիրը պէտք է որ տեսած ու ճանչցած ըլլայ թէ ինչ ըսել է Աստուա- ծային սահմանադրութիւն։ Ինչու որ ոչինչ զեղծում, թերեւս եւ ցուցնելու ալ ըլլայ, կրնայ զմարդն ազատ կացուցանել յաստուածային սահմանադրութենէ դրուած բանն ընդունելէն։ Բարեկամ մը, զոր որ շատ կը յարգէր, անգամ մը վայելուչ եղանակաւ իրեն ըսաւ. "Թէ որ Աստուած մկրտութիւնը սահմանած է, մարդիկ չունին իշխանութիւն զանիկա մերժելու, թէ եւ եկեղեցին թէքով ալ մասնակա- բաժնել ուզէ"։

1 Systema sacerdotale et sacramentale.

մը կը հնչէ իրենց (Անգղիացւոց) բերանը, այնչափ տեւական ու գործնական անհնարին հակառակախօսութեանց մէջ, որոնց թոյլ կու տայ ու կը պաշտպանէ իրենց տէրութեան եկեղեցին։ Մի եւ նոյն ատեն պատահեցաւ որ այն Բողոքականութեան Նորոգութենէ ջնջուած բոլոր վարդապետութիւններուն մէջէն մի միայն հաւատոյ վարդապետութիւնը, որն որ իրեն անանկ կ'երեւար որ թէ անգղիական եւ թէ հին եկեղեցւոյ մէջ միաբան կ'աւանդուի, այսինքն՝ Մկրտութեան վերստին ծննդեան վարդապետութիւնը՝ անգղիական Նախագահին ատեանն ելաւ, եւ անկից՝ խորհրդի նստող թագուհւոյն բողոքուեցաւ[1]։ Այս դէպքը

1 Մատենագրին խօսքերն այն աստուածաբանական վէճին վրայ են՝ որն որ 1847—1850ին Անգղիա պատահեցաւ, ինչպէս որ ատենին Եւրոպա լրագրոյն մէջ ծանուցինք (1850, Թիւ 16)։ Ընթերցողաց լուսաւորութեան համար նոյն պատմութիւնը հոստեղս կը դնենք, վերոյիշեալ լրագրոյն խօսքերն ամբողջ բերելով։

"Հոս շատ նիւթ տուաւ լրագիրներու Կորհամ (անգղիական դաւանանք ունեցող) ժողովրդապետին ու Էքսէդէրի Ֆիլփոթս (նոյնպէս անգղիական) եպիսկոպոսին մէջ եղած աստուածաբանական դատը։ Ասկից երեք տարի մը առաջ (1847ին Նոյեմ. 2ին) թագուհին զԿորհամ, որ Ֆիլփոթս եպիսկոպոսին թեմին մէջ ժողովրդապետի տեղապահ մըն էր, նոյն թեմին ուրիշ մէկ տեղւոյն բուն ժողովրդապետ ընտրեց։ Բայց վերոյիշեալ Էքսէդէրի եպիսկոպոսը, Նոյեմբերի 13ին, ընտրուողին ըսաւ որ Ձեզ չհաստատած՝ պարտական եմ առաջ վարդապետութիւն ունենալդ քննել։ Իրաւ Դեկտեմբերի 17ին քննութիւնն սկսաւ եւ 5 օր տեւեց. 1848ին Մարտի մէջ նորէն սկսաւ եւ օրերով տեւեց. բոլորը մէկէն՝ 15 օր քննութիւն եղաւ եւ 70 խնդիրներէ աւելի հարցուեցաւ։ Ի վախճանի Էքսէդէրի եպիսկոպոսը յանձն չառաւ որ զԿորհամ պաշտօնին մէջ հաստատէ, ըսելով որ "Դուն անանկ վարդապետութիւններ ունիս, որոնք ճշմարիտ քրիստոնէական հաւատոյ եւ անգղիական եկեղեցւոյն յօդուածներուն ու որոշածներուն դէմ են„։

"Ասոր վրայ՝ Կորհամ Քէնդըրպըրիի եկեղեցական ատեանը (Էրչըզ Գորդ) բողոքեց արտնջելով։ Ան ատեն եպիսկոպոսն ալ յայտնի ըրաւ թէ ինչ է իր մոլորութիւնը. "Յամառութեամբ կը պնդէ, ըսաւ, որ մկրտութեան ատեն հոգեւոր վերստին ծնունդը առ սուրբ խորհրդով չըլլար, եւ ի մասնաւորի ալ կ'ըսէ թէ մանկունք մկրտութեամբ Քրիստոսի անդամ ու Աստուծոյ որդիք չեն ըլլար։ Եւ աս բանս հակառակ է անգղիական եկեղեցւոյն յայտնի վարդապետութեան՝ որ Յօդուածներուն եւ եկեղեցական արարողութեանց մէջ կայ„։ Ան եկեղեցական ատեանը եպիսկոպոսին գործքն արդար սեպեց, անանկ որ արտաքսուեցաւ Կորհամ անկէ անմիջապէս

մատենագրին միտքը բացաւ նոյն Թագաւորական գերագունութեան[1] ճշմարիտ որպիսութիւնը ճշդիւ քննելու ։ Մ՚ինչեւ ան ատեն դեռ մօտանց քննած չըլլալով՝ այնպէս կ՚ենթադրէր որ ան Թագաւորական գերագունութիւնը՝ գործադրութեան մէջ ստուգիւ մեծ բռնաւորութիւն մըն է իրեն հպատակ եղող եկեղեցւոյն վրայ. սակայն տեսական նկատմամբ ուրիշ բան չէ՝ բայց եթէ "Գերագոյն քաղաքական իշխանութիւն մը՝ ժամանակաւոր դատերուն եւ անձանց ու նաեւ հոգեւոր Թագուհւոյն (իրենց եկեղեցւոյն գլխոյն) դատաստանին դիմել ։

"Թագուհւոյն անուամբ ժողվուեցաւ տէրութեան խորհրդականաց ժողով մը, որուն մէջ կային Քենդըրպըրիի ու Եորքի արքեպիսկոպոսները, Լոնտոնի եպիսկոպոսը, Լենատունի մարգիզը եւ ուրիշ տէրութեան մարդիկ ։ Աս ժողովին ընդհատութեամբ քանի մ՚ամիս անցեց, ուրբ Հայրք եւ ուրիշ ամէն կարելի հին ու նոր ժամանակներու աստուածաբանից խօսքեր բերուեցան, որոնց մէջ նաեւ Միլթոնի Դրախտ կորուսեալ ըսուած բանաստեղծական գիրքն ալ, եւ երկու կողմանէ պատճառներն ու վկայութիւնները կշռելէն ետեւ՝ Կորհամի մկրտութեան վրայ ունեցած կարծիքն ստանկ ձեւի խաթուեցաւ ։ "Ստոյգ է մկրտութիւնը փրկութեան համար ի հասարակի հարկաւոր խորհուրդ մըն է, բայց վերստին ծնընդեան (կամ արդարացուցման) շնորհքը մկրտութեան գործողութեանը հետ անանկ հարկաւ չ՚ընկերանար, որ միշտ անմիջապէս ան գործողութեան հետ շնորհքն ալ գայ, հապա շնորհքը կրնայ կամ յառաջ [illegible] կամ մէկտեղ գալ ։ Մկրտութիւնը շնորհաց նշան մըն է, որով Աստուած աներեւոյթ եղանակաւ մը մարդկան վրայ կը ներգործէ, բայց միայն անոնց վրայ՝ որոնք ատ շնորհքը արժանաւորապէս կ՚ընդունին ։ Իսկ մկրտուած տղաք՝ որոնք առանց ներգործական մեղաց կը մեռնին, ստուգիւ կը փրկուին, բայց վերստին ծնունդը՝ ոչ երբեք միայն մկրտութեամբ կ՚ըլլայ առանց ուրիշ բան մ՚ալ պահանջելու"։ Աս Կորհամեան կարծիքը անգղիական եկեղեցւոյն վարդապետութեան հետ աղէկ բաղդատուելէն ետքը՝ Մարտի 8ին վերջապէս որոշուեցաւ 2 քուէի դէմ (որոնց մէկը Լոնտոնի եպիսկոպոսին քուէն էր) 9 քուէով. "Աս մկրտութեան զօրութեան վրայ եղած խնդիրն անանկ խնդիր մըն է որ պատուաւոր եղանակաւ ասանկ ալ անանկ ալ կրնայ մտածուիլ. եւ աս նիւթս ազատ թող տրուած է եկեղեցւոյ պաշտօնէից, որ սուրբ Գրքէն առաջնորդուելով՝ իրենց անկեղծ առանձնական դատաստանն ունենան առանց հակառակութիւն կամ տուգանք մը կրելու ։ Անոր համար ժողովքին աս մտաց վրայ է, որ Պր. Կորհամին վարդապետութիւնը Անգղիական եկեղեցւոյն վարդապետութեանց հակառակ չըլլալով՝ Էքսէթէրի Լորտ եպիսկոպոսը առանց պատճառի զլացած է Պր. Կորհամը ժողովրդապետութեան մէջ հաստատելու"։

Տես՛ նաեւ նոյն լրագրոյն մի եւ նոյն տարուան 20երորդ թիւը ։ Ծանօթ.—[illegible] ։

1 Regia suprematia.

գործոց հետ յարակից եղող ժամանակաւոր գործքերուն վրայ,,[1]։

Բայց որչափ աւելի կը մտածէր ասոր սկզբան ու այն իշխանութեան (Քահանայապետական գլխաւորութեան) հետ ունեցած յարաբերութեանը վրայ, զորն որ մերժած եւ որուն որ յաջորդած էր, եւ որչափ աւելի երեք դարերու գործածութեան մէջ անոր բռնած ճամբան ու որպիսութիւնը մանր կը զննէր նկատմամբ այն եկեղեցւոյն՝ զորն որ իբրեւ գերագոյն տեսուչ կը կառավարէր, այնչափ աւելի սրտի ցաւով կը համոզուէր որ աս վերը յիշուած գաղափարը անանկ բան մըն է՝ որուն կրնայ բաղձացուիլ նոյն (Անգղիական) եկեղեցւոյն պաշտօնեաներուն խիղճը սեթեւեթելու, բայց ոչ երբեք ջատագովելու եւ պաշտպանելու համար։ Կը վկայէր նաեւ իր խիղճը որ ինք՝ թէ անգղիական սարկաւագ ու երէց ձեռնադրուած ատեն եւ թէ ետքի ատեններն ալ՝ երդում ըրած էր հնազանդելու այնպիսի իշխանութեան մը՝ որուն ոչինչ եղանակաւ ոչ բնութիւնը եւ ոչ սահմանը կը ճանչնար։ Բայց երբոր կարող եղաւ ճանչնալ ու իմանալ, այնպէս կ'երեւար իր աչքին թէ այս իշխանութիւնը (Թագաւորական գերագունութիւնը)՝ չէ թէ միայն բոլորովին հակառակ է ան ամէն սկզբանց՝ որոնք իրեն՝ իբրեւ եկեղեցականի մը՝ սիրելի էին, այլ նաեւ հակառակ է այն յարաբերութիւններուն, զորոնք՝ սուրբ Գրոց եւ սրբոց Հարց ու ժողովներուն վարդապետութեան նայելով՝ եկեղեցւոյ ու տէրութեան մէջ հարկաւոր տեսած էր. կը տեսնէր թէ աս մի եւ նոյն թագաւորական գերագունութեան իշխանութիւնը՝ որ բոլոր քրիստոնէութեան պատմութեան մէջ սկզբէն ի վեր ամենեւին իր նմանը չունի, ոչ միայն զեկեղեցին գերի

1 Աս սահմանը կու տային Մէ- կաւլէյները եւ Միլ Վ. իրենց Նինկ ու Ուեսլըքերֆորս աւազաւր- չըհագերականին մէջ։

կ՚ընէ, այլ նաեւ անոր մշտնջենաւոր կեանքն ալ կը
բառնայ։ Վասն զի յայտնի կը տեսնէր որ աս քաղաքա-
կան իշխանութեան յափշտակած գերազանցութիւնը՝
գերագոյն իրաւասութիւն մըն է եկեղեցւոյ վրայ
հաւատոյ ու կարգաց[1] նիւթերուն մէջ, եւ թէ եպիս-
կոպոսաց առաքելութիւնն ու ծխութիւնը՝ չէ թէ
միայն իրենց ձեռնադրութեան կողմանէ, այլ առաւել
եւս պաշտաման գործածութեան նկատմամբ, արքունի
թագէն եւ ժողովրդենէ կը բղխէ։ Աս պատճառաւ ի-
րեն պարզ համարեցաւ առժամեայն չճանչնալ նոյն գե-
րազանցութիւնը, ապա թէ ոչ՝ հարկ էր որ բոլորովին մէկ
դի ձգէր եկեղեցւոյ ամէն ծանօթութիւնը, որն որ ու-
րիշ բան չէ՝ բայց եթէ աստուածային եղանակաւ հաս-
տատուած ընկերութիւն, որուն խօսք տրուած է որ
ճշմարտութիւնը միշտ իր մէջը պիտի մնայ եւ որուն
միանգամայն տրուած է Աստուծմէ մշտնջենաւոր առա-
քելութիւն մը՝ հոգիները կառավարելու եւ Քրիստոսի
արեամբ փրկուած մարդկային բնութիւնը՝ կատարեալ
մարդու չափուն ու գաղափարին վրայ ձեւելու։

Ուրեմն Թագաւորական գերազանցութիւնը եւ Աս-
տուծոյ եկեղեցին՝ իրարու բացարձակապէս հակառակ
ու անհաղորդական գաղափարներ են։

Բայց իմ սիրտս, իմ հոգիս, իմ խղճմտանքս, նոյն
իսկ իմ միտքս, ամէն կարողութիւններս, ամէն ներքին
սկզբունքներս կ՚անձկային, կը հառաչէին ու ծարաւի
էին Աստուծոյ եկեղեցւոյն, որ է Սիւն եւ հաստատու-
թիւն ճշմարտութեան։ Աս համար ինչ վճիռ որ տա-
լու ըլլայ Թագուհին իր խորհրդեան մէջ՝ աչքիս առ-
ջեւ ամենեւին արժէք մը չունէր։ Ինչու որ աս բանս
միայն սրտիս ծանր էր, թէ այն խորհրդեան մէջ Թա-
գուհին ինչպէս իշխանութիւն կ՚ունենայ վճիռ տալու

1 Disciplina.

հաւատոյ վարդապետութեան վրայ։ Մ․ ծիւր հրապարակուելէն յառաջ՝ այսպէս տրամադրուած էի։ Բայց հրապարակուելէն ետքը՝ անանկ ամօթոյ, նշաւակութեան ու լքման զգածում մը տիրեց վրաս, որուն նման երբեք յառաջագոյն չէի ունեցած, որովհետեւ գիտ այնպիսի եկեղեցւոյ մը անդամ կը տեսնէի, որուն վերին ատեանը կոչուած ըլլալով վճիռ տալու թէ իր տիրող վարդապետութեան կանոններուն նայելով՝ արդեօք տղաք յԱստուածմէ նորէն կը ծնանի՞ն ի մկրտութեան, (կամ թէ ըսենք՝ տղոց մկրտութիւնը վաւե՞ր է,) չկրցաւ որոշել՝ այո կամ ոչ. այլ ըսաւ թէ կրնայ հաւատալ ու սորվեցընել կամ մէկը կամ միւսը, եւ կամ ակտարբերութեամբ՝ թէ մէկը եւ թէ միւսը մի եւ նոյն ժամանակ։ Իրաւցընէ ունէի պատճառ այնպէս ցաւելու եւ ամչնալու, վասն զի ո՛ր եւ իցէ մոլորութիւն եւ հերետիկոսութիւն թեթեւ ու անվնաս է՝ եթէ համեմատուի այս վարդապետութեան հետ թէ մոլորութիւնը կամ հերետիկոսութիւնը կրնայ ինչպէս որ կ՚ուզուի՝ ընդունուիլ ու մերժուիլ։ Ո՛ր եւ իցէ օրէնսդրական վճիռ մը, թէեւ մոլորական ալ ըլլայ, պատուաւոր կ՚երեւայ այսպիսի վճռոյ մը քով՝ որն որ կը սորվեցընէ թէ հաւասարապէս օրինաւոր է հաւատալ ու սորվեցընել որ Հոգին Սուրբ կը տրուի եւ չիտրուիր տղու մը մի եւ նոյն ու որոշուած գործողութեան (մկրտութեան) մէջ։ Նաեւ ոչ իսկ եկեղեցական ատենին հրամանաւը՝ Գր. Կորհամին եղած տուչութիւնը, որուն Քէնդըրպըրիի արքեպիսկոպոսը Եղիցի ըսելով հաւանեցաւ, եւ զորն որ մեծափառ Թագուհին, Անգղիական եկեղեցւոյն վերին կառավարիչը, իր հրամանագրովը հաստատեց, ուրիշ կերպ կրնամ ես մտածել՝ բայց եթէ իբրեւ հրապարակական խոստովանութիւն մը, թէ աս իրեն հպատակող եկեղեցին հիմնուած է ամենէն անարգ

ու անվայել եւ վտանգաւոր հիման վրայ, այս ինքն՝ ուրանալու բոլոր քրիստոնէական հաւատքը եւ այսպէս նաեւ գործնական հաստատութիւն տալու անսանձ ու անկուպար անտարբերութեան [1]։

Այսու ամենայնիւ կը պարտաւորիմ խոստովանիլ որ աս վճիռները տուող իշխանութիւնը՝ մեր մէջը մի միայն օրինաւոր իշխանութիւնն է՝ որուն կ'իյնայ նոյները տալ։ Վասն զի աս ան իշխանութիւնն է, որուն անգղիական եկեղեցին առջի անգամ 1534ին եւ վերջապէս 1559ին հպատակեցաւ։ Աս ան իշխանութիւնն է, որուն տակ երեք դար է որ կ'ապրի, եւ որուն շնորհմունքէն իր հիմակուան ժառանգութիւնն ունի։ Աս ան իշխանութիւնն է, որուն բոլոր այսչափ ժամանակուան

1 Որովհետեւ "Նախ Հաւատամքի յօդուածին մէկուն՝ իր բնական իմաստին հակառակ մեկնութիւն տալը օրինաւոր սեպելը, նոյն յօդուածը ճշմարտապէս եւ իրօք մերժել է։ Երկրորդ՝ Հաւատքը մի միայն է եւ մի միայն հեղինակութեան սկզբան վրայ հիմնուած ըլլալով, Հաւատամքի մէկ յօդուածին ալ սեպհական ու բնական իմաստը՝ ազատութեամբ, կամաւ ու խորհրդածութեամբ մերժելը, կը քայքայէ ան միակ Աստուածային հիմը՝ որուն վրայ հաստատուելով՝ եկեղեցին մեզի կ'առաջարկէ հաւատքը։ Երրորդ՝ եկեղեցւոյ իւրաքանչիւր մասը, որ այսպէս Հաւատամքին մէկ յօդուածին սեպհական ու բնական իմաստը կը թողու, չէ թէ միայն նոյն յօդուածին մէջի ուղղափառ վարդապետութիւնը տակնուվրայ կ'ընէ, այլ նաեւ իբրեւ անդամ ընդհանուր եկեղեցւոյ՝ վկայելու եւ ուսուցանելու պաշտօնն ու հեղինակութիւնն ալ„։

Աս նախադասութեանց ստորագրեցին 13 հռչակաւոր անձինք։

* Յ. Է. Մէնինկ Չիչեսդըրի աւագասարկաւագը։

Ռոպերդ Ի. Ուիլպերֆորս, Իսդ Ռայտինկի աւագասարկաւագը։

Թոմաս Թորփ, Պրիստըլի աւագասարկաւագը։

Գ. Յ. Միլ, Թագաւորական Ուսուցիչ եբրայական լեզուի ի Քէմպրիճ։

Է. Բ. Բիուզէյ, Թագաւորական ուսուցիչ եբրայական լեզուի յՕքսֆորդ.

Ճոն Գիպլ, տեղակալ ի Հուրսլի։

*Գ. Տաուսըրթ, մշտնջենաւոր հոգաբարձու Ս. Պանգրատիոսի եկեղեցւոյն։

Գ. Ե. Է. Պէնէթ, մշտնջենաւոր հոգաբարձու Ս. Պօղոսի ի Նայդսպրիճ (knightsbridge).

*Բ. Գ. Ուիլպերֆորս, տեղակալ յիսդ Ֆարլի

Ճոն Գ. Գոլպըրթ, փաստաբան։

*Ռիչարտ Գէվէնտիշ

Եդուարդ Պէտլի, փաստաբան։

*Ճէմս Ռ. Հոբ, փաստաբան։

*Աստղով նշանակուած անձինքը բողոքականութիւնը մերժած ու Հռոմէական սուրբ եկեղեցւոյն գոգը դարձած են։ Ծանօթութիւն Թարգմանչին։

մէջ իր կղերն իբրեւ գերագոյն կառավարչէ մը հնազանդութիւն երդուած է, եւ նոյն իսկ գերագունութեան բնութիւնը կը պահանջէ՝ որ իր հպատակները զանիկա տարակուսի տակ չձգեն։ Աս ան իշխանութիւնն է, որ եպիսկոպոսները կ'անուանէ եւ անոնց իշխանութիւն կու տայ, եպիսկոպոսարանները կը կանգնէ, կը բաժնէ, կը փոխէ ու կը վերցընէ. ժողովք կը կոչէ կամ կը ցրուէ, անոնց ընդունելութիւն կու տայ գործքերը յառաջ վարելու կամ կ'արգելէ, իրենց գործքերը կը հաստատէ կամ կը ջնջէ. Համառօտ ըսելով՝ ան իշխանութիւնն է, որն որ կառավարութեան կերպին նկատմամբ՝ Անգղիական եկեղեցւոյն սեպհական նկարագիրը կը կացուցանէ, ու կը զանազանէ կաթողիկէ եկեղեցիէն եւ ուրիշ բողոքական աղանդներէն։ Վերջապէս ան իշխանութիւնն է, որ զանիկա մէկ անբաժին ամբողջ մը կը կացուցանէ եւ Անգղիականութեան Պետրոսի աթոռը կ'ընէ։

Աս ամէն պատճառներուն նայելով՝ ասիկայ անանկ իշխանութիւն մըն է, որ իրեն հետ կը կապէ զԱնգղիական եկեղեցին, զկղերը եւ զաշխարհականները, թէ իբրեւ մէկ ամբողջ մը եւ թէ իբրեւ անհատ առնելու ըլլանք։ Եւ ըստ հետեւորդի՝ այնպիսի իշխանութիւն մըն է, որ հաւատոյ նիւթերուն մէջ տուած խրատացի կամ անիրաւ վճիռներով Աստուծոյ առջեւը վտանգի կամ պարտաւորութեան տակ կը ձգէ անոնց ամենուն խղճմտանքը՝ որոնք նոյն եկեղեցւոյն եւ նոյն տէրութեան տակն են։

Արդ՝ թէ որ ես մկրտութեան վրայ տրուած թագաւորական վճռոյն գլուխ ծռել ուզէի, պէտք էր իբրեւ քրիստոնեայ՝ թողուլ հաւատոյ ամէն սկզբունքը, եւ իբրեւ մարդ՝ պատուոյ ու ազատութեան ամէն զգածմունքը։ Բայց աւելի կ'ընտրէի Արամազդին զոհ մատու-

ցանել եւ Պուտտային երկրպագութիւն ընել, քան թէ իմ հաւատքս տակաւին անանկ քաղաքական գերագոյնութեան մը հպատակ ունենալ։ Իսկ արդ՝ յայտնի է որ Անգղիական եկեղեցւոյն մէջ Թագն ալ՝ անոր հպատակիլ է։

Աս թագաւորական գերագոյնութեան ճիշդ քննութիւնը՝ աչքս բացաւ նաեւ իր ախոյանին, այս ինքն՝ Պետրոսի աթոռին գլխաւորութեան բնութիւնը ճանչնալու։ Վասն զի, ինչպէս քիչ մը յառաջ յիշեցի, անգղիական գերագոյնութիւնը իրաւաբանական իշխանութիւն մըն է՝ թէ վարդապետական խնդիրներու մէջ իբրեւ վերջին ատեան տուած վճիռներուն նկատմամբ, թէ նկատմամբ իր օրէնսդիր կարողութեան՝ որով ժողովք գումարելու եւ անոր վճիռները հաստատելու իշխանութիւն ունի, թէ իբրեւ դատաւոր բողոքման ատենի, եւ թէ վերջապէս նկատեալ իբրեւ իշխանութիւն մը՝ որն որ եպիսկոպոսական կարգին առաքելութիւն ու իշխանութիւն կու տայ իր սեպհական պաշտօնն ի գործ դնելու։

Աս յայտնի է որ ինչ եւ իցէ կրօնական դրութեան մէջ այսպիսի մէկ գլխաւորութիւն՝ տեղ մը պէտք է գտնուիլ։ Իսկ ո՞ւր է աս տեղը կաթողիկէ եկեղեցւոյն մէջ։ Ուրիշ պատասխան չկրցայ գտնել, բայց եթէ ըսել որ Պետրոսի աթոռն է։ Ասով տեսայ որ եկեղեցական պատմութեան մէջ բովանդակ վէճը՝ անդրալեռնական եւ գաղղիական կարծեաց մէջ չէ. հապա պատերազմ մը կայ, մէկ կողմանէ՝ Քրիստոսի եկեղեցւոյն ազատութեան, անկախութեան ու հոգեւորութեան մէջ, եւ մէկալ կողմանէ՝ տէրութեան ծառայական գործիք մը ըլլալու մէջ։ Ճշդիւ խօսելով՝ պատերազմն է Աստուածային եկեղեցւոյ մը՝ մարդկային եկեղեցւոյ դէմ։ Կրկին քննեցի հին ժամանակներուն բոլոր վկայութիւնները՝

զորոնք նոր ժողված էի եւ զորոնք հրատարակելու փոյթ չէի տարած, եւ տեսայ իմացայ որ իմ մտացս մէկ քանի քիչ շփոթութիւններն ու անհամաձայնութիւնները, եւ մանաւանդ ամենէն աւելի Կարգի իշխանութիւնը՝ Իրաւաբանութեան իշխանութենէն չզանազանելս իր հետեւութիւններովը մէկտեղ՝ մի միայն իմ մոլորութեանս պատճառ եղած էին։ Անկից յառաջ կու գար՝ որ ոչ յաստուածային սահմանադրութենէ գլխաւորութիւն մը կրնայի իմանալ, եւ ոչ թէ որչափ լի, առատ եւ զօրաւոր էր բովանդակ եկեղեցւոյն վկայութիւնը, արեւելեան եկեղեցւոյն՝ արեւմտեան եկեղեցիէն բաժնուելէն յառաջ, Պետրոսի աթոռին գլխաւորութեան վրայ, ինչպէս որ հիմակուան ժամանակը կ'ըմբռնուի, եւ թէ հիմակուան գլխաւորութիւնը նոյն է ամենեւին առաջինին հետ։

Ընթիւ անհամար վկայութիւններուն յայտնի ճշմարտութենէն աւոր ալ համոզուեցայ որ անհիմն ու կեղակարծ մանաւանդ թէ նենգաւոր ու ամբաստիշտ կարծիք է՝ այս (Հռոմէական) գլխաւորութեան սկիզբը Իսիդորոս Մերկատորի սուտ հրամանագիրներուն վրայ դնելը։ Անկից զատ՝ միանգամայն աղէկ տեսայ որ քահանայապետական գլխաւորութիւնն ուրացողները, եթէ ստուգիւ պատուաւոր մարդիկ են, կը հարկադրին կամ քրիստոնէութեան պատմութիւնը առվելէն դադրիլ, կամ զանիկա Ժ.Զ. դարէն սկսիլ, եւ կամ մեռած ու առանց ամենեւին հաւատքի եկեղեցւով մը գոհ ըլլալ։

Այսպէս այս որոշմանս հասնելէս ետքը հարկ եղաւ որ աւոր համեմատ ալ գործեմ, ինչպէս որ խիղճս ինծի կ'աղդէր, ուստի եւ հարկադրեցայ Անգղիական եկեղեցւոյ մէջ ունեցած վարդապետութեան պաշտօնէս ու պաշտամունքէս հրաժարիլ։ Բայց սով միայն չշատա-

ցայ, հապա որոշեցի զատուիլ հեռանալ այնպիսի ե-
կեղեցիէ մը՝ որուն մէջ չէ թէ միայն անկարելի էր ինծի
պահել ու սորվեցընել այն վարդապետութիւնը, զորն
որ Քրիստոսի անբաժանելի եկեղեցին կը խոստովա-
նի, այլ նաեւ եւ ոչ իսկ կրնայի ուրիշ կերպ սորվե-
ցընել, բայց եթէ իբրեւ ոչ խնդիր մը (Աստուած
պահէ զիս այսպիսի անարգութենէ) նոյն իսկ այն նա-
խնական վարդապետութիւնը՝ որն որ հոգւոյն կենացը
սկիզբ կու տայ։

Կը մերժեմ ուրեմն ու կը թողում աս Անգղիական
եկեղեցին, վասն զի հերետիկոսութեան մէջ ինկած
է[1] այն նոր վճռով՝ զորն որ տուաւ մեծափառ թագու-
հին իբրեւ նախագահ ժողովոյ, բայց աւելի եւս՝ վասն
զի նոյն իսկ թագաւորական գերագոյնութիւնը՝ որուն
զօրութեամբ մեծափառ թագուհին վճիռ կու տայ
հաւատոյ վարդապետութեան նիւթերու մէջ, այնպիսի
իշխանութիւն մըն է, որ ամենեւին ոչինչ եղանակաւ
Աստուծոյ եկեղեցւոյն գոյութեան հետ կրնայ միաբա-
նիլ։ Կը մերժեմ զանիկա, վասն զի Անգղիականք՝ իբրեւ
ամբողջ բարոյական մարմին՝ չէ թէ միայն սխալեցին եւ
եղծին եկեղեցւոյ ու խորհրդներուն բովանդակ վարդա-
պետութիւնը, այլ նաեւ՝ վասն զի իրենք իրենց հիմ
դրած են ուրանալու Պետրոսի այն գլխաւորութիւնը՝
որուն կողմը կը տեսնեմ սուրբ Գիրքն ու արեւելեան

1 Տես Մէնինկ աւագսարկաւագին վերջին մասնաւորութիւնը. «Եթէ բան մը կայ, որ նիւթական հերետիկոսութիւն բոլոր՝ աւելի քիչ մը յաւաչ օրէնքով հաստատուած նոյն իսկ վարդապետութիւնն է„։ Եր. 43։ — Բայց անգղիական եպիսկոպոսք աս վարդապետութեան համար ժողովքի նստան, խորհեցան, եւ ոչինչ որոշեցին. ուստի եւ աստ համար իբրեւ մարմին կ'ընդունեին զանիկայ. եւ ոչ ալ եկեղեցին իբրեւ մարմին մը զանիկա մերժեց։ Մէկ քանի անձինք բողոքեցին, բայց ասոնք շատ քիչուոր են համեմատութեամբ անոնց՝ որոնք համաձայնեցան։ Ի՞նչ կը պակսի ուրեմն այս վարդապետութեան՝ չէ թէ միայն նիւթական, այլ մանաւանդ կերպական հերետիկոսութիւն ըլլալու։

եւ արեւմտեան եկեղեցւոյն միաբան վկայութիւնը։ Իսկ ես՝ այսպիսի վկայութեան մը վրայ յեցած՝ կը հաստատեմ որ աս Պետրոսի աթոռը նոյն իսկ Աստուծմէ կանգնուած է, ժայռ ու հաստատուն հիմն է իր եկեղեցւոյն, եւ բարուց ապականութեան ու հերետիկոսութեան դէմ պատսպարան։

Ուրեմն իմ վերջին գործքս՝ իբրեւ անգղիական պաշտօնեայ, եւ իմ վերջին պարտքս Անգղիական եկեղեցւոյն աս է՝ որ հրատարակեմ աս փոքր մատենիս մէջ թէ ինչ էր ան պատճառը՝ որ զիս համոզեց զինքը յաւիտեան մերժելու, եւ ահաւասիկ նոյն գործքը կը կատարեմ։

# ԱԹՈՌ
# Ս. ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼԱՊԵՏԻ

---

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

Սրբոյն Պետրոսի Գլխաւորութիւնը կենդանի իշխանութիւն մըն է, որ կեանք ու զօրութիւն ունի:

ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԻՒՆԸ այսօրուան օրս տասն'ութը դարէն աւելի կեանք ունի, եւ եթէ դառնանք չորս կողմս նայելու ըլլանք, կը տեսնենք որ աս քրիստոնէութիւնը տնկուած ու քիչ շատ՝ երկրիս ամէն ազգերուն մէջ ծաղկած է, որոնք տէրութեամբ, իմաստութեամբ ու քաղաքակրթութեամբ պայծառացած են: Աս Քրիստոնէութեան բառը յայտնի ու ճշդիւ զանազանել կու տայ զայն ամենայն ուրիշ ազգերը՝ որոնք իր սահմանէն դուրս են: Բայց հարկ է երկրորդ հայեցուածով մ'ալ աս բառիս բաժանումը կամ լուծումը տալ. ինչու որ ասիկա կը պարունակէ այլեւայլ կրօնական դաւանանքներու եւ այլեւայլ հոգեւոր կառավարութիւններու անբաւ զանազանութիւն մը, նոյն իսկ անոնց մէջ՝ որոնք մի եւ նոյն քրիստոնէութեան անուան տակ կը պարունակուին: Նաեւ իրաւցընէ, աս քրիստոնեայ կոչուած ազգերէն գրեթէ երկու երրորդ մասը սերտ միացած է մի եւ նոյն գլխոյ հետ, զորն որ աստուածային սահմանադրութեամբ դրուած կը հաւատայ, եւ ասիկա՝ Հռոմայ եպիսկոպոսն է, սրբոյն Պետրոսի յաջորդը, գլխաւոր կապը՝ որ զանոնք ամէնքն ալ մէկ հաւատոյ ու հաղորդակցութեան մէջ կը պահէ:

Թէ՛ որ քննելու ըլլանք մնացած երրորդ մասը, ասոր ալ երկու երրորդ մասերը կը խոստովանին անանկ հաւատք մը՝ որ գրեթէ նոյն է Հռոմէականին հետ, բայց

ի մէկ յօղուածէն՝ որով՝ անկէց կը զանազանին, եւ առիկա է՝ Հռոմայ եպիսկոպոսն իբրեւ իրենց միութեան կեդրոն չճանչնալ, թէպէտ եւ աս ալ մտադիւր կը խոստովանին որ անիկա երբեմն եղած է գլուխ պատրիարքական ձեւով կառավարութեան՝ զորն որ իրենք ալ մինչեւ ցայսօր կը պահեն։ Յայսմ կը կայանայ արեւելեան Հաղորդակցութիւնը, որն որ թէ Յունական եւ թէ Ռուսական եկեղեցին կը պարունակէ։ Ուրիշ արեւելեան աղանդներուն վրայ հոս տեղս խօսիլ չարժեր։

Մնացածը, կ'ուզենք ըսել բոլոր քրիստոնէութեան երեքին մէկին երրորդ մասը, եւ կամ՝ բազմութեան նայելով՝ Քրիստոնէութեան կիսներորդ մասը, կրնայ մէկ անուան բողոքական եկեղեցին տակ իյնալ, կամ թէ որ կ'ուզուի, կրնայ Քրիստոնէութեան՝ Անգղիական-Գերմանական մասն անուանուիլ։ Ստոյգը զրուցելու համար՝ աս մասին մէջ գտնուողները, թէպէտ իրենց դաւանանքին շատ յօղուածներուն եւ իրենց մտածելու եւ զգալու եղանակին մէջ արեւելեան հերձուածող եկեղեցւոյն հակառակ են, բայց այսու ամենայնիւ կը համաձայնին անոր հետ սրբոյն Պետրոսի յաջորդին գլխաւորութիւնը մերժելու, որուն դէմ որ՝ իր ունեցած ու գործած իշխանութեան համար՝ սովորած են տալու այն ամենադառն ու թշնամանադիր ածականները՝ զորոնք լեզու մը կրնայ հնարել։

Բայց աս Անգղիական-Գերմանական քրիստոնէութիւնը եւ ոչ իր մէջը հոծութիւն մ'ունի՝ ոչ իր հոգեւոր կառավարութեան եւ ոչ հաւատոյ միութեան նկատմամբ։ Որովհետեւ թէպէտ Անգղիայի եւ կամ Ամերիկայի մէկ մասին մէջ դեռ եպիսկոպոսներէ կը կառավարուի, բայց Պրուսիայի, Սկովտիայի ու Միաբանեալ Նահանգաց մէջ մերժուած է անոնց կառավարութիւնը։ Եւ ոչ իսկ իր զանազան մասերը՝ մի եւ նոյն հաւատոյ հանգանակն ունին. որովհետեւ միշտ անկարելի եղած է այնպիսի դաւանութեան հանգանակ մը շինել, որուն ամէնքն ալ ուզեն համաձայնիլ։

Ի վերայ այսր ամենայնի աս Անգղիական-Գերմանական քրիստոնէութիւնը՝ մէկ միութիւն մ՚ունի։ Վասն զի, ուր եւ որ կողմն որ իր սկզբան մէջ նկատելու ըլլաս, կը գտնես թէ իբրեւ առանձին մէկ զանգուած մը՝ կամ ինք իրմէ փրթած եւ կամ փրցուած է այն մեծ Հաղորդակցութենէն, որն որ դեռ յարգութեամբ կը հնազանդի Պետրոսի յաջորդին։ Իսկ եթէ նաեւ իր դաւանանքին միութիւնը քննելու ըլլաս, կը գտնես որ իր ամբողջ զանգուածը կ՚ընդունի մէկ քանի հիմնական սկզբունքներ՝ զորոնք իր մասերը (կամ կողմնակցութիւնները) աստիճանաբար քիչ շատ կը չափաւորեն։ Ասոր օրինակի համար, ոմանք բոլորովին կը մերժեն, ոմանք կը նուազեցընեն, բայց ամէնքն ալ մէկանց կը յապաւեն ու կը կրճատեն հաւատոյ խորհրդական մեծ դրութիւնը (Ս. Խորհրդոց ամբողջ կարգը) զորն որ կ՚ընդունի քրիստոնէութեան մնացած մասը, եւ իրենց սկզբան համաձայն՝ ամէնքն ալ միաբան կ՚ուրանան աս վարդապետութիւնը թէ եկեղեցւոյ հոգեւոր կառավարութիւնը կը վերաբերի Աստուծմէ սահմանուած յաջորդութեան կարգաւ որոշեալ անձինքներու։

Աս գաղափարը նոյն բողոքական զանգուածին մէկ քանի մասերը բոլորովին կ՚անարգեն, ինչպէս Պրուսիայի ու Ամերիկայի բողոքական աղանդներուն մէջ։ Ուրիշ մէկ մասին, այսինքն՝ Անգղիական եկեղեցւոյն մէջ ասիկայ վիճաբանութեան տակ ինկած պարզ խնդիր մըն է, որովհետեւ իր կղերին մէկ մասն աս. գաղափարը քրիստոնէութեան եղծում կը համարի, իսկ մէկալ մասը՝ ջերմութեամբ կը պաշտպանէ իբրեւ եկեղեցւոյ գոյութեան հարկաւոր։ Բայց ամէնքն ալ միաբան կը մերժեն այն որոշեալ մեծարանքը՝ որով Հռոմ մեր առջեւը կը դնէ իրական Ներկայութեան մեծ խորհուրդը, ասկից եղանակաւ մը բղխող մրբոց պաշտօնը, սրբոց նշխարներուն հրաշագործ զօրութիւն մը տալը, եւ անոնց բարեխօսութեան զօրաւոր օգտակարութիւնը՝ զորն որ օրինաւորապէս եւ մեր օգտիւը կրնանք խնդրել մե-

զի համար։ Այս աս մտածելու եղանակը գուցէ համառօտիւ մը աղէկ կը նկարուի իր գլխաւոր օրինակին մէջ։ Յայտնի է որ Հռոմայ եկեղեցին, ինչպէս նաեւ արեւելեանը, մասնաւոր ու առանձին մեծ սէր ու մեծարանք ունի ամենասուրբ Կուսին Մարիամու՝ իբրեւ Աստուծոյ մեր փրկչին մօրը, ինչպէս որ նոյն եկեղեցւոյն մէջ ամենուն սիրած անոր աստուածամայրութեան գաղափարովը յափշտակուած է, ան աստիճանի՝ որ չեն կրնար աչուրնին դարձնել առ Աստուած մանկացեալ՝ առանց տեսնելու զինքն իր մօրը բազկաց մէջ, եւ ոչ ալ իրենց հայեցուածն ուղղել Անոր իր խաչին ցաւոցը մէջ՝ առանց մէյ մ'ալ իր մայրը տեսնելու ոտքին տակ սաստիկ ցաւով խոց վիրաւոր։ Այսպէս որդին ու մայրն իրարուհետ անբաժին միացած են, թէ երկրիս վրայ՝ մանկանացու կենաց օրերնուն մէջ եւ թէ երկինքը Հօր Աստուծոյ աջ կողմը։ Անոր համար է որ մեր փրկութեան խորհրդին մէջ՝ որ յՈրդին կատարելապէս կատարուեցաւ, նաեւ մայրը կը մտնէ՝ իբրեւ անոր մարդեղութեան գործիքը, եւ այսպէս իրեն ալ պաշտօն մը կը տրուի։ Արդ ուր որ թէ Հռոմէական եւ թէ արեւելեան եկեղեցիներուն անյողդողդ միտքն ու միտումն աս է, աստ հակառակ Քրիստոնէութեան Անգղիական-Գերմանական մասն իր կարծեաց մէջ խիստ միաբան է՝ թէ ամենասուրբ Կուսին տրուած մեծարանքն ու սէրը՝ վտանգաւոր սովորութիւն մըն է, որ կռապաշտութեան կը դիմէ եւ Աստուծոյ անիրաւութիւն կ'ընէ։

Մինչեւ հիմակ ըսածնիս համառօտելու համար՝ կրնանք մեր աչքին առջեւ դնել այսօրուան Քրիստոնէութիւնը՝ իբրեւ երեք գլխաւոր բաժին։

Կաթողիկէ Հռոմէական եկեղեցին, որն որ մինակ՝ հաւատոյ ու կառավարութեան միութիւնն ունենալով, քրիստոնէութեան երեք մասին երկուքը կը պարունակէ։

Արեւելեան եկեղեցին, Ռուսականը եւ ուրիշ անկից բաժնուած աղանդները։

Անգղիական-Գերմանական բողոքական եկեղեցին։

Արդ մեր օրերը՝ այնչափ այլեւայլ ազգեր, որոնք իրենց պէսպէս աշխարհային շահոււն իրարմէ զատուած, եւ ազգային, բարոյական ու քաղաքական նկարագիրներովն ալ իրարմէ բոլորովին տարբեր ու բաժնուած են, միաբան կը հաւատան որ Հռոմի եպիսկոպոսը՝ իրենց կրօնքին գլուխն ու Ս. Պետրոսի յաջորդն է: Եւ Քրիստոնէութեան այնչափ հերձուածներէն ու ներքին պատերազմներէն ու խռովութիւններէն ետքը՝ դեռ Քրիստոնէութեան երեք մասին երկուքը աս նիւթին մէջ մէկ միտք մէկ խորհուրդ ունին: Ուրեմն հարիւր վաթսուն միլիոն հոգիէն աւելի մարդիկ (ինչպէս մեր հակառակորդներէն մէկը կը խոստովանի) զիրենք ի մի զօդող երեւելի եկեղեցւոյն աստուածային կազմուածքին մէջ՝ կը ճանչնան գլխաւոր զսպանակ (զէմպէրէկ) եւ մէկ առաջին շարժող մը, որ ամէն բան կարգի կանոնի կը դնէ ու կը յարմարցընէ: Եւ ան մեծ շրջանակին՝ որն որ զիրենք եւ բոլոր աշխարհքս կը պատէ, մի միայն կենդրոնն՝ Պետրոսի աթոռը գիտեն, այն գահը, զորն որ Քրիստոսն ուղէն՝ յինքնորդին համար հաստատեց: Գիտեմ որ կրնայ մէկը առջեւս դնել զԱնգղիական եկեղեցին, որն որ նաեւ եպիսկոպոսութեան վրայ մէկ հաւատք ունի: Բայց պատասխանն աս է՝ որ հիմակ բոլոր աշխարհքիս վրայ գըտնուող հազար հարիւրի չափ եպիսկոպոսներէն՝ (յանձն առնելով հարիւրի չափ անգղիականներուն պահանջումները) ստուգիւ ութհարիւրը Քահանայապետին հպատակութիւն կը դաւանին: Այսպէս թէ որ ընդհանուր ժողովք գումարուելու ըլլայ, ամէն մարդ դիւրաւ կը տեսնէ թէ մեծագոյն կողմը որ եկեղեցւոյն հետ կ'ըլլայ. եւ եթէ հիմակ ալ ազգերը, ինչպէս Կոստանդիայ ժողովքին մէջ եղաւ, կարող ըլլային եկեղեցին ներկայացընել, հետեւութիւնը նուազ ստոյգ չէր ըլլար:

Այս է հիմակուան ատեններս իրաց որպիսութիւնը, բայց Քրիստոնէութիւնը մինչեւ հիմա տասն'ութը դարէն աւելի կեանք ունի:

"Յուշ լիցին քեզ աւուրքն յաւիտենից. խելացարուք զամն ազգաց յազգս. հարց զհայրն քո՛ եւ պատմեսցէ քեզ, զծերս քո՛ եւ ասասցեն քեզ"[1]։ Այս տասն'ութը դարերուն ընթացքին մէջ ետ երթանք երեքհարիւր յիսուն տարի. 1850էն՝ իջնանք 1500ին։

Ո՞ւր է Քրիստոնէութեան Անգղիական-Գերմանական մասը։ Ո՞ր ազգերն էին իր մէջը։ Աշխարհքիս ո՞ր տէրութիւններուն շարժում մը կու տար։ Դեռ ապագային մէջ փակուած էր. բայց իր սերմը Վիկղեփին անհանդարտ հոգւոյն մէջ ծածկուած էր. երեւցաւ, եւ ան շատ էր՝ որ Հուսին մտքին մէջ կը մըխէր։ Ի վերայ այսր ամենայնի տխուր ու նենգաւոր՝ կ'երթար կը թափառէր խռովեալ միտքերը Անգղիայի ու Գերմանիայի մէջ բորբոքելու, աղետաբեր թռչնոյ մը պէս Աստուծոյ եկեղեցւոյն հոյակապ աշտարակներուն բոլորտիքը թռչտելով կամ գարշահոտ ակումբներուն մէջ խոց վերալեց՝ զեղծեալ տէրութեանց վրայի օդը կը ծծէր։

Բայց դեռ չունէր գոյութիւն մը եւ որոշուած կերպարանք մը։ Նա այն եկեղեցին՝ որն որ հիմա յանդըգնութեամբ եւ անպատկառ կը պարծի իբրեւ սուրբ ու Նորոգեալ, դեռ գոյութիւն չունէր։ Անգղիական-Սաքսոնիական միտքերը Պետրոսի աթոռին կառավարութեան տակ կերպաւորուած ու կրթուած էին։ Նա Լուտերի ծննդեան երկիրը միաբան ու միասիրտ կը յարգէր զնոյն Վինեփրիդ՝ որ Ճամբայ եղած էր այն կղզիէն (Անգղիայէն), որն որ Գրիգոր Քահանայապետին արդեամբը Խաչին ստացուածքն եղած էր։ Վինեփրիդ՝ Գրիգորի յաջորդին այցելութեան կ'երթար եւ անկից կ'առնէր կը բերէր առաքելական օրհնութիւնը, եւ Մոգունտիա քաղքին մէջ կը կանգնէր իր հովուական գաւազանը՝ զորն որ Հռոմէն ընդունած էր։ Գերմանիայի ու Անգղիայի եկեղեցիներն առաքելական աթոռէն իրենց կարգաւորութիւնը կ'ընդունէին. առաջինները՝ ութը դարէ, եւ վերջինները՝ ինը դարէ վեր անոր

1 Բ. Օր. ԼԲ. 7։

Հայրախնամ հովանաւորութեան տակ աճած էին։ Ի վերայ այսր ամենայնի նոյն իրաւունքը՝ զորն որ Գերմանիա եւ Անգղիա հիմա չեն ճանչնար, ան ատեն իրենց եկեղեցական մատեաններուն ամէն մէկ երեսը գրուած էր։ Իրենց առաջին մետրապոլիտները քահանայապետներէն կ՚առնէին ամենայն իրաւաքանութիւնը. քահանայապետներէն որոշուած էին բոլոր Անգղիական ու Գերմանական եպիսկոպոսներուն թեմերը. քահանայապետներէն հաստատուած էր ամէն մէկ եպիսկոպոս իր սեպհական աթոռը, եւ այն եկեղեցիներուն ամէն մէկ հովիւներն իրենց կենաց ամենէն հանդիսական վայրկենին մէջ կ՚երդնուին թէ Պետրոսին աթոռը՝ Եպիսկոպոսական Պսակին իշխանը [1] պիտի համարին։

Բայց եթէ կ՚ուզէք երեքուկէս դար ալ առաջ եւս երթալ, կը տեսնէք որ Քրիստոնէութեան աս ինը մասին մէկը, կ՚ուզեմ ըսել Անգղիական-Գերմանական աղանդը, ան տատամնող, յետախոյզ եւ անհանդարտ հոգին, որն որ ամէն բան քննադատութեան տակ կը ձգէ ու ոչինչ կը հաւատայ, որն որ կը քայքայէ՝ բայց չի շիներ, որն որ կենդանական սկիզբը կը քննէ եւ առելորդ անդամազննութեամբ կը սպաննէ. ան հոգին՝ որն որ սուրբ Գրոց հետ անանկ կը վարուի, ինչպէս գեղացին՝ որ ժամացոյցը կտոր կտոր կը քակէր՝ ներքին կազմուածքը տեսնելու համար, եւ ետքը կը զարմանար որ ժամացոյցը շարժում չունի. ան հոգին՝ որն որ ակամայ կը թողու ժողովրդեան նոյն իսկ առաքելոց Հանգանակը, եւ թող չիտար որ մարդիկ հաւատան թէ կայ մկրտութիւն մը մեղաց թողութեան համար, բայց եթէ աս դաշամբ որ հաղորդակցին անոնց հետ՝ որոնք նոյն մկրտութիւնը կ՚ուրանան. ան հոգին՝ որն որ իր յառաջացման վերջին ծայրը հասնելով՝ բովանդակ քրիստոնէութիւնը կը մղէ ցքեհանի մը մէջ, որպէս զի անկից ամենաստուածեան մոլորութեան ցնդական հիւթը քա-

1 **Principem episcopalis coronae.** Վաղենտինիանոս կայսեր հրովարտակը, Ամ. Քրիս. 445։

մէ. վերջապէս կը տեսնէք որ ան հոգին, այս ինքն է Բողոքականութիւնը, դէպ ամենայն կողմ կ՚եր զօրացած:

Այնպէս որ անոնք՝ որոնք անպատկառութեամբ քահանայապետական գլխաւորութիւնը նոր ժամանակներու յաջողակութեան մը պէս կը մերժեն, կը տեսնեն թէ իրենց գոյութիւնը շատ դարերէ առջը սկսած է ան ենթադրուած ապականութենէն՝ որուն դէմ այնպէս կ՚աղաղակեն: Բայց քահանայապետական իրաւանց դէմ կան ուրիշ աւելի հին, աւելի հաստատուն ու աւելի պատուաւոր թշնամիներ քան զանոնք՝ որոնք Նորոգութեան առենն ելան: Անոնց դէմ յարձակելու համար չէ թէ երեքուկէս, այլ տասը դար ետ երթալ պաշած է: Յամի 850 Իտալիա, Սպանիա, Գաղղիա, Բրիտանիա, Գերմանիա, Հռոմայեցւոց բոլոր արեւելեան կայսրութիւնը, Կոստանդինուպոլսոյ, Աղեքսանդրիոյ, Անտիոքայ, Երուսաղէմի պատրիարքները, անոնց հպատակ եպիսկոպոսներն ու ժողովուրդները, առանց ամենեւին մտօք կամ խօսքով տարակուսելու՝ հաստատուն հաւատք ունէին Պետրոսի յաջորդին վրայ „Իբրեւ երկրիս վրայ առաջին եկեղեցւոյ հովուին"[1]: Այն թշնամիներն աւելի պատշաճաւոր եղանակաւ յաղթահարելու համար ուրիշ տեղ մը յառաջ պիտի բերեմ իրենց մէջ բարձր համբաւ ունեցող եւ միաձայն ընդհանուր ժողովքի գումարուած իրենց եպիսկոպոսներուն վկայութիւնները՝ որոնք այնպիսի վկայութիւններ են՝ որոնցմով քահանայապետական գլխաւորութեան ցուցուցած կատարեալ հնազանդութիւննին կը խոստովանին հաւատոյ ու բարուց նիւթերու մէջ:

Այսպէս 850ին հիմակուան Եւրոպան գոնէ ըստ մասին կարգի մտած էր, հիմակուան օրէնսդրութեան հիմունքը դրուած էին, եւ մէկ քանի տէրութիւններ՝ որոնք դեռ կը կենան, արդէն կանգնուած էին: Հիւսիս կողմէ դուրս հանեց վայրագ ազգերուն գունդագունդ

1 Ս. Թէոդորոս Ստուդիտս՝ Աբբայ Կոստանդնուպոլսի. Բարոնիոս Տարեգր. Ամ 809, Թիւ 14:

բազմութիւնը՝ զորոնք եկեղեցին պետութեանց կերպարանքէ խլեց, եւ ազատ ինքնագլուխ մարդիկներէն օրէնսդիրներ կերպարանեց։ Մեծն Կարոլոս Հռոմայեցւոց կայսր պսակուած էր Ս. Պետրոսի յաջորդին ձեռքովը, եւ նոյն Լոմպարդեան սուրբ նշխարաց քով։ Այսպէս՝ Հռոմ երթալու վրայ էր, որ հոն կօծուի Լեւոն Գ.-ին քահանայապետութեան ատենը։ Երթանք քիչ մ՚ալ եռեւ՝ հինգ դարու չափ՝ հին համեմատական զարգացման ատեն, երբոր Կոստանդնուպօլսոյ որդիքը հայրենական աթոռը կը նստէին, եւ Աթենաս իր հասարակքին համար դատաստան ելլելու կը պատրաստուէր։ Այսպիսի քաղաքն ընդհանուր ժողովք կը գումարուէր, ուր որ կը խոստովանէր թէ Ս. Պետրոսի յաջորդն իր գերագոյն իշխանութեան կատարեալ ու պատուապաշտած սեպհականութիւնն ունի, եւ կը հրամայէ որ ամէն եպիսկոպոս դժուարին դէպքերու մէջ "Գլխոյն դիմեն, այսինքն՝ Պետրոսի Առաքելական աթոռին"։ Եւ ատիկա չէ թէ իբրեւ նոր բան մը եւ կամ նոր իշխանութեան տուչութիւն մը կը պատուիրէ, հապա իբրեւ "ամենաբարի ու խիստ պատշաճաւոր միջոց մը, որն որ բոլորովին համաձայն է հին սովորութիւններուն։

Առաջին տիեզերական ժողովքն ալ՝ որուն մէջ բոլոր եկեղեցին ներկայացած էր, այն "Նիկիական ժողովքը՝" որ հռչակաւոր է ամէն դարերու մէջ, կը վճռէր՝ չէ թէ նոր արտօնութիւն կամ առանձնաշնորհութիւն մը տալով, այլ իբրեւ արդէն եղածին վկայելով եւ խոստովանելով այն իրաւունքը՝ որ միշտ քրիստոնէութեան սկիզբէն հաստատուած էր, թէ Հռոմէական եկեղեցին միշտ գլխաւորութիւնն ունեցաւ"։ Եւ ոչ ալ նոյնին էութիւնը սահմանեց, վասն զի աս իշխանութիւնն իր առատաձեռնութենէն յառաջ եկած չէր եւ ոչ ալ իր ճոխութեան տակ ինկած էր։

Արդ՝ եթէ քրիստոնէութեան երեք մասին երկուքը հիմա մեր ատենը Քահանայապետին գլխաւորութիւնը կը խոստովանին, եւ եթէ ան ժողովուրդներն ալ՝ որ

Ծնացած երրորդ մասը կը կազմեն իսկզբանէ եւ շատ դա-
րերով կը խոստովանէին, ուրեմն աս իշխանութիւնը կըր-
նայ ստացման իրաւունքը հաստատութեամբ իրեն սեպ-
հականել, հակառակը ցուցընելու պարտաւորութիւնն
անոնց վրայ ձգելով՝ որոնք զանիկա կ՚ուրանան։ Նա ա-
տիկա թեթեւ ու չնչին մտածութիւն մը չէ։ Քրիստոսի
եկեղեցւոյն նոյն իսկ կենդրոնին մէջ կայ իշխանութիւն՝
որ գործելու մէջ չափէ դուրս գործունեայ է եւ բազ-
մատեսակ, գերագոյն եւ ճոխ, յարդարիչ, պահպանող,
միաւորիչ, եւ գերագոյն դատաւոր այն մտաց մեծազօր
պետութեան՝ զորն որ նոյն ինքն Աստուած հաստատեց։
Ո՞վ է ատիկայ իրեն շնորհողը. նոյն ինքն այն իշխա-
նութիւնը քեզի պատասխանը կու տայ, թէ Աստուած
է։ Նա կը բերէ աչքիդ առջեւ ապացոյցներու անթաւ
բազմութիւն մը, որոնք ութեւտասն դարերու պատ-
մութեան մէջ իր գոյութիւնը կը ցուցընեն։ Արդ աս
ապացոյցներն այլեւայլ զօրութիւն ունին։ Գուցէ ա-
տոնց եւ ոչ մէկը այն գլխաւորութեան բովանդակ տա-
րածութիւնը կը սահմանէ կամ կրնայ սահմանել. սա-
կայն մէկը մասնաւոր ձեռնարկութեամբ եւ մէկալն այլ-
եւայլ փաստերով նոյնը յառաջ կը բերեն։ Օրինակի
համար. սուրբ Հայր մը յայտնի կը զրուցէ թէ “Ամէն
մէկ եկեղեցի հարկ է որ Հռոմայ եկեղեցւոյն հետ հա-
ղորդակցութեան մէջ ըլլայ՝ անոր իշխանութեան բար-
ձրութեանը համար„. ուրիշ մը “Միութիւնը անկից
կը բղխէ„ կ՚ըսէ. երրորդ մը կը գրէ “Ուր Պետրոսն է՝
հոն է եկեղեցին„. չորրորդ մը “Առաքելական աթոռին
գլխաւորութիւնը՝ Հռոմայ եկեղեցւոյն մէջ միշտ ծաղ-
կեցաւ„ կ՚ըսէ։ Արդ յայտնի է որ աս ամէն բացատրու-
թիւններուն բանալի մը կը պակսի։ Նա ահաւասիկ ա-
տիկա կը տրուի մեզի նոյն իշխանութեան ներկայ գոյու-
թեամբը, որով անկեղծաւոր ու յստակատես միտք ու-
նեցող մարդն ան վկայութիւններուն մէջ աւելի կը տես-
նէ՝ քան զոր նոյն վկայութիւններն առաջին տեսու-
թեամբ կը զրուցեն։

Մասն մը ան ատենուան գրողները իրենց վախճան չէին դրած աս իշխանութեան սահմանը տալու, զորն որ ըստ առթին կը յիշէին, ինչպէս որ հիմայ Քրիստոնեանական միապետութեան գլխաւորութեան հպատակները, երբ որ նոյնին վրայ միննակ յիշատակութիւն ընելու առիթ մը կը պատահի, ուրիշ կերպ չեն խօսիր՝ բայց եթէ անցողաբար յիշելով իբրեւ ներկայ գոյող բան մը։ Արդ՝ եթէ Հռոմէական աթոռին այս ձիրքերը՝ որ սրբոց Հարց շատերէն այսչափ սեպ յիշատակուած են, ամէնքն ալ կը պատշաճին իբրեւ դեռ տիրող իշխանութեան մը՝ որ միանգամայն զանոնք կը լուսաւորէ, եւ եթէ ասոնք ամէնքը մէկտեղ առնելով՝ երբեմն մէկը երբեմն մէկալը քիչ կամ շատ այսպիսի իշխանութեան մը պատկերը կը նկարեն; ուրեմն արդար է եւ իրաւ՝ որ այնպէս ալ մեկնենք զասոնք, որ կարող ըլլանք ըսել հաստատութեամբ թէ այս իշխանութիւնն ինչպէս որ հիմա կը գտնուի, այնպէս ան ատեննն ալ կը գտնուէր։ Ճշմարտութիւնը հասկընալու համար հարկ է հարկաւոր պայմաններովը սորվելու սկսիլ։ Ուրիշին խօսքերը մեկնելու ատեն՝ շատ անգամ մեծ տարբերութիւն կը գտնուի այն իմաստին մէջ՝ զոր ուզեր են ունենալ, եւ այն իմաստին մէջ՝ զոր կրնան ունենալ։ Եւ տիրող իշխանութիւն մը՝ արդար իրաւամբ կը պահանջէ որ նման դէպքերու մէջ ասոնք ի նպաստ իրեն մեկնուին։

Մտածեցէք ծանրութեամբ թէ աս գլխաւորութիւնը՝ հիմակուան ատենս աչքերնուս առջեւ ինչ երեւոյթ կը բերէ, որն որ մի միայն է առանց օրինակի։ Նախ առաջին ասիկա Եւրոպայի միապետութիւններուն մէջ ամենէն հինն է։ Քիչ է՝ եթէ ըսելու ըլլանք որ ասիկա անոնց ծննդեան վրայ հսկեց, անոնց աճումը կրթեց, անոնց զարգացման առաջնորդեց եւ հասունութիւնը տեւական ըրաւ. թէ ինքն ամրացած է այնպիսի անշարժ հաւատքով մը, որուն մէջ բազմաթիւ ու այլեւայլ ազգեր միաբան էին. թէ այս հաւատքն իրենց ազգային գոյութենէն յառաջ էր, եւ այնչափ դարերու

ընթացքին մէջ իրենց անփոփոխ կը մնայ՝ երբ նոյն ազգե-րուն մէջ ամենայն ինչ փոփոխութիւն կը կրէր: Ինչ՝ որ ամենուն վրայ հաւասար ու հայրական հոգ մը կը տարածէր, անոնց բազմատեսակ նախանձաւորութիւն-ները եւ իրենց ազգային հակառակութեան ու զանա-զան խառնուածքին հակառակ զաւկները ալ կարգի կը դնէր, այնպէս որ Գերմանացին ու Իտալացին՝ որ սառու-ցիւ մէկզմէկ չէին սիրեր, Լեհն ու Սպանիացին՝ որ այն-չափ իրարմէ տարբեր էն, այսու ամենայնիւ հաւասարա-կաց հայր մը կը գտնէին իրենց հաւատքին մէջ: Բայց անկից՝ աշխարհքիս ամէն հանգամանքները փոխուեցան, եւ մարդկային ընկերութիւնն իր շրջանը կատարեց՝ հե-թանոսական ջերմ քաղաքավարութենէն եւ քրիստո-նէութեան միշտ հակառակ եղող կոշտ բարբարոսու-թեան մէջէն՝ անցնելով իմաստուն ու պատկառելի կա-ռավարութեան ձեւի մը՝ որն որ հիմնեալ էր եկեղեցւոյ վրայ՝ որ իր հիւթովը զիրենք կը կենդանացնէ: Եւ այնպէս Տիբերի եզերքին վրայ յարգելի անձանց երկայն յաջորդութիւն մը աս անբաւ ու բազմամարդ հաւաքա-կանութիւնը ոչ թէ մահաբեր զէնքով, այլ բանիւ հոգւոյ կը կառավարէր: Ազգ ազգի վրայ ելան, ոմանք աշխարհակալեցին, ոմանք նուաճեցան. ազգք եւ ժողո-վուրդք կը փոխուէին, նոր ցեղեր կը պատուաստուէին. Գերմանք եւ Իտալացիք, Փրանկք եւ Գաղղիացիք, Գութք եւ Իբերացիք, Սաքսոնք եւ Բրիտանացիք, Սլաւք եւ Հոնք իրար յաղթեցին. ստոյգ է, տասն բարկութեան դա-րեր անցան, նշա՛ն երկանց Եւրոպայ՝ որ ծնանելու վրայ էր. բայց նոյն ատեն կար հոգի մը՝ որ ամենուն վրայ կը սիրէր եւ զաւկները կը կարգաւորէր, միութեան, կարգի եւ սիրոյ հոգին: Վերջապէս խաւարը փարատեցաւ, եւ տեսնուեցաւ որ ան բիրտ ազգերը Պետրոսի բանալիները կը յարգէին եւ Պօղոսի սրոյն կը հնազանդէին: Աս յաղ-թութիւնը մեծագոյն եւ բարեգուշակ նպաստաւորու-թիւն մ՚ունեցաւ աւելի հնագոյն ատեններ: Ս. Լեւ-ոն Մարդեղութեան խորհրդոյն ուղիղ վարդապետու-

թիւնը բացատրեց․ եկեղեցին լսեց, եւ ազատեցաւ հերետիկոսութենէն՝ զորս որ լոկ մնացին արեւելեան կայսրութեան քաղաքական իշխանութիւնը յարուցած էր։ Արեւմտեան կայսրութիւնը՝ Ատտիլայի մերձենալովը՝ ահու դողու մէջ ինկած էր․ բայց եկաւ միանգամայն Լեւոն այն բարբարոսին դիմացը․ եւ Ատտիլա անոր ներկայութեան պարզ ու անզարդ փառաւորութենէն, եւ Աստուծոյ իշխանութիւնն Անոր առաջին պաշտօնէին անձին վրայ տեսնելով՝ յաղթահարեցաւ մնաց։

Անցաւ վրայէն տասնուչորս դար, եւ Լեւոնի յաջորդը դեռ իր աթոռը կը նստի։ Հարիւրաւոր եպիսկոպոսունք եւ միլիոնաւոր հաւատացեալք դեռ կը հաւատան թէ անոր ձայնը ճշմարիտ հաւատքը կը քարոզէ, եւ թէ ամէն նոր հերետիկոսութեան դէմ զանիկա կը պաշտպանէ։ Իսկ Ատտիլայի հրամանատարութեան տակ եղող բարբարոս զօրքը՝ Լեւոնին ներկայացուցած իշխանութեան զօրութեամբը՝ սովրեցաւ օրինաց հպատակել յաջորդ դարերուն երկայն ընթացից մէջ։ Բայց թէպէտ եւ մեծ էր իր ազդեցութիւնը՝ իբրեւ գլուխ եկեղեցւոյ, սակայն աւելի եւ անհամեմատ մեծագոյն է իր յաջորդին ճոխութիւնը բոլոր երկրիս ազգերուն վրայ։ Ահաւասիկ աս ճոխութիւնը հաստատուն եւ անյողդողդ կեցած է աս վերջին ժամանակներուն անհաւատութեան մէջ, ուր որ "Շատերը մոլորութեան մէջ կը թափառին ու գիտութիւնն աճած է,, եւ նենգաւոր աէրութիւնք չորս կողմն առած՝ իրարու հետ խօսք ըրած են, որ մարդկային միտքը, արուեստներն ու կենաց ամէն վայելմունքները փոխանակեն Աստուծոյ փրկութիւնաբեր շնորհաց ու ճշմարտութեան հետ, զորն որ ինք (Աստուած) իր խորհրդական մարմնոյն հոգաբարձութեան յանձնած է։

Մոլորութիւնները, այլեւայլ ցեղերը, պետութիւնները փոխուեցան ու աներեւոյթ եղան, բայց Ս․ Պրոսպերի Ե․ դարուն (431) մէջ երգածն այսօրուան օրս ալ ճշմարիտ է․

Հռոմ՝ աթոռ Պետրոսի
Հովուական պատուոյ՝
Գլուխ եղեալ աշխարհի․
զոր առացեալ չէ զինուք՝
զայն կրօնիւքն ունի [1]։

Ս․ Օգոստինոս Գ․ դարուն վերջը Ս․ Պետրոսի աթոռը յաջորդող եպիսկոպոսներուն կարգն ու յաջորդութիւնը, որոնց յանձնած էր Աստուած իր հօտը արածելու հոգը, յառաջ կը բերէր իբրեւ պատճառ՝ իրեն կաթուղիկէ եկեղեցւոյն մէջ հաստատուն մնալուն։ Արդ թէ որ անիկայ ան ատենները հաստատուն փաստ մըն էր, աւելի եւս պէտք չէ՞ որ ըլլայ հիմակ՝ որ տասնուչորս ու կէս դարեր երկու հարիւրէ աւելի յաջորդք տուած են նոյն աթոռին, զորն որ առ նուազն քառասուն սրբունդք իրենց հպատակութեան մեծարանքովը աւելի եւս փառաւոր ըրած են։

Կարելի բա՞ն է՝ որ յաջորդականութիւն մը այսչափ հաստատուն կարենայ մնալ այսպիսի պարագաներու մէջ։ Այնչափ զանազան ազգեր կրնայի՞ն երբեք հաւանիլ որ իրենց կրօնին գլուխն օտարական մ'ըլլայ։ Այսչափ այլեւայլ ու նախանձայոյզ ազգերու հովիւները՝ որոնք իրենց եպիսկոպոսական իշխանութեամբը հաւասար են, կ'ուզէի՞ն արդեօք թոյլ տալ երբեք որ իրենց մէկ եղբայրակիցն իրենց յառաջնութեան կարգը հաստատէ, կարգաւորէ իրենց գործքերը, վճռէ որոշէ իրենց վէճերը եւ կառավարէ զիրենք իբրեւ մի միայն հօտ, եւ այս ամենայն տասնուհինգ դարերու երկայն ընթացքին մէջ։

Ո՛հ, ո՞ւր կրնանք գտնել այսչափ իշխանութեան հիմը։ Եկեղեցին ասոր կը վկայէ, բայց ինք չէ՛ զանիկա ստեղծողը։ Ժողովքները զինքը կը խոստովանին, բայց անիկա ժողովքներէն յառաջ էր։ Ժողովքներուն առա-

1 Sedes Roma Petri, quae pastoralis honoris
Facta caput mundo, quidquid non possidet armis
Relligione tenet.

Ջինը կը քարոզէր որ "Հռոմայ եկեղեցին միշտ գլխաւորութիւնն ունեցաւ"։ Ո՞վ ունի երբեք իշխանութիւն այսպիսի Հիմնարկութիւն[1] մը դնելու եւ պահպանելու, ժողվելու ճամբու քար մը՝ որ իր ոտքին տակն ինկած էր, եւ այն քարին վրայ անանկ հաստատուն աշտարակ մը շինելու, որ իր տեւողութեանը դարերով դիմանայ, եւ ոչ կործանիչ անձրեւներով, ոչ ողողիչ հեղեղներով, ոչ մրրկայոյզ հովերուն սաստկութեանը եւ ոչ թշնամեաց մոլեգին կատաղութեանը իր գագաթը կործանի։ Միայն Մէկն ասոր կարող էր. զայս կը յայտնէ նոյն ճոխութիւնը, ասոր նոյն իսկ եկեղեցին կը վկայէ, ասիկա դարէ դար կ'աղաղակեն անթիւ անհամար սուրբեր։ Ան որ ըսաւ "Եղիցի լոյս" եւ "Այս է մարմին իմ" ըսաւ նաեւ Պետրոսի "Դու ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն. եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից, եւ զոր միանգամ կապեսցես յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս, եւ զոր արձակեսցես յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս"։

Բայց ասոր վրայ՝ քիչ մը ետքը առանձին կը խօսինք։

1 Institutio.

Մնացած երրորդ մասը կը կազմէն Ինկղըլանէ եւ շատ դարերով կը խոստովանէին, ուրեմն աս իշխանութիւնը կրնայ ստացման իրաւունքը հաստատութեամբ իրեն սեփահականել, հակառակը ցուցընելու պարտաւորութիւնն անոնց վրայ ձգելով՝ որոնք զանիկա կ'ուրանան։ Իսկ անիկա թէեւ ու չնչին մտածութիւն մը չէ։ Քրիստոսի եկեղեցւոյն նոյն իսկ կենդրոնին մէջ կայ իշխանութիւն՝ որ գործելու մէջ չափէ դուրս գործունեայ է եւ բազմատեսակ, գերագոյն եւ ճոխ, յարդարիչ, պահպանող, միաւորիչ, եւ գերագոյն դատաւոր այն մտաց մեծազօր պետութեան՝ զորն որ նոյն ինքն Աստուած հաստատեց։ Ո՞վ է անիկայ իրեն շնորհողը. նոյն ինքն այն իշխանութիւնը քեզի պատասխանը կու տայ, թէ Աստուած է։ Իսկ կը բերէ աչքիդ առջեւ ապացոյցներու անբաւ բազմութիւն մը, որոնք ութեւտասն դարերու պատմութեան մէջ իր գոյութիւնը կը ցուցընեն։ Արդ աս ապացոյցներն այլեւայլ զօրութիւն ունին։ Գուցէ անոնց եւ ոչ մէկը այն գլխաւորութեան բովանդակ տարածութիւնը կը սահմանէ կամ կրնայ սահմանել. սակայն մէկը մասնաւոր ձեռնարկութեամբ եւ մէկալն այլեւայլ փաստերով նոյնը յառաջ կը բերեն։ Օրինակի համար. սուրբ Հայր մը յայտնի կը գրուցէ թէ "Ամէն մէկ եկեղեցի հարկ է որ Հռոմայ եկեղեցւոյն հետ հաղորդակցութեան մէջ ըլլայ՝ անոր իշխանութեան բարձրութեանը համար,,. ուրիշ մը "Միութիւնը անկից կը բղխէ,, կ'ըսէ. երրորդ մը կը գրէ "Ուր Պետրոսն է՝ հոն է եկեղեցին,,. չորրորդ մը "Առաքելական աթոռին գլխաւորութիւնը՝ Հռոմայ եկեղեցւոյն մէջ միշտ ծաղկեցաւ,, կ'ըսէ։ Արդ յայտնի է որ աս ամէն բացատրութիւններուն բանալի մը կը պակսի։ Իսկ ահաւասիկ անիկա կը տրուի մեզի նոյն իշխանութեան ներկայ գոյութեամբը, որով անկեղծաւոր ու յստակատես միտք ունեցող մարդն ան վկայութիւններուն մէջ աւելի կը տեսնէ՝ քան զոր նոյն վկայութիւններն առաջին տեսութեամբ կը գրուցեն։

Սակայն զի ան ատենուան գրողները իրենց վախճան չէին դրած աս իշխանութեան սահմանը տալու, զորն որ ըստ աւթին կը յիշէին, ինչպէս որ հիմայ Բրիտանանական միապետութեան գլխաւորութեան հպատակները, երբ որ նոյնին վրայ մինակ յիշատակութիւն ընելու առիթ մը կը պատահի, ուրիշ կերպ չեն խօսիր՝ բայց եթէ անցողաբար յիշելով իբրեւ ներկայ գոյող բան մը։ Արդ՝ եթէ Հռոմէական աթոռին այս ձիրքերը՝ որ սրբոց Հարց շատերէն այսչափ ստէպ յիշատակուած են, ամէնքն ալ կը պատշաճին իբրեւ դեռ տիրող իշխանութեան մը՝ որ միանգամայն զանոնք կը լուսաւորէ, եւ եթէ ասոնք ամէնքը մէկտեղ առնելով՝ երբեմն մէկը երբեմն մէկալը քիչ կամ շատ այսպիսի իշխանութեան մը պատկերը կը նկարեն; ուրեմն արդար է եւ իրաւ՝ որ այնպէս ալ մեկնենք զասոնք, որ կարող ըլլանք ըսել հաւտատութեամբ թէ այս իշխանութիւնն ինչպէս որ հիմա կը գտնուի, այնպէս ան ատենն ալ կը գտնուէր։ Ճշմարտութիւնը հասկընալու համար հարկ է հարկաւոր պայմաններովը սորվելու սկսիլ։ Աւրիշէն խօսքերը մեկնելու ատեն՝ շատ անգամ մեծ տարբերութիւն կը գտնուի այն իմաստին մէջ՝ զոր պէտք էր ունենալ, եւ այն իմաստին մէջ՝ զոր կրնան ունենալ։ Եւ տիրող իշխանութիւն մը՝ արդար իրաւամբ կը պահանջէ որ նման դէպքերու մէջ ասոնք ի նպաստ իրեն մեկնուին։

Մտածեցէք ծանրութեամբ թէ աս գլխաւորութիւնը՝ հիմակուան ատենս աչքերնուս առջեւ ինչ երեւոյթ կը բերէ, որն որ մի միայն է առանց օրինակի։ Նախ առաջին ասիկա Եւրոպայի միապետութիւններուն մէջ ամենէն հինն է։ Ինչ է՝ եթէ ըսելու ըլլանք որ ասիկա անոնց ծննդեան վրայ հսկեց, անոնց աճումը կրթեց, անոնց զարգացման առաջնորդեց եւ հասունութիւնը տեւական ըրաւ. թէ ինքն ամրացած է այնպիսի անշարժ հաւատքով մը, որուն մէջ բազմաթիւ ու այլեւայլ ազգեր միաբան էին. թէ այս հաւատքն իրենց ազգային գոյութենէն յառաջ էր, եւ այնչափ դարերու

ընթացքին մէջ իրենց անփոփոխ կը մնար՝ երբ նոյն ազգե-
րուն մէջ ամենայն ինչ փոփոխութիւն կը կրէր ։ Ինչ՝
որ ամենուն վրայ հաւասար ու հայրական հով մը կը
տարածէր, անոնց բազմատեսակ նախանձաւորութիւն-
ներուն եւ իրենց ազգային հակառակութեան ու զանա-
զան խառնուածքին հակառակ զամենքն ալ կարգի կը
դնէր, այնպէս որ Գերմանացին ու Իտալացին՝ որ սաստու-
գիւ մէկզմէկ չեն սիրեր, Լեհն ու Աւստրիացին՝ որ այն-
չափ իրարմէ տարբեր են, այսու ամենայնիւ հաւասար-
կաց հայր մը կը գտնեն իրենց հաւատքին մէջ ։ Բայց
տակէց՝ աշխարհաքիս ամէն հանգամանքները փոխուեցան,
եւ մարդկային ընկերութիւնն իր շրջանը կատարեց՝ հե-
թանոսական զերծ քաղաքավարութենէն եւ քրիստո-
նէութեան միշտ հակառակ եղող կոշտ բարբարոսու-
թեան մէջէն՝ անցնելով իմաստուն ու պատկառելի կա-
ռավարութեան ձեւի մը՝ որն որ հիմնեալ էր եկեղեցւոյ
վրայ՝ որ իր հիւթովը զիրենք կը կենդանացընէ ։ Եւ
այնպէս Տիբերի եզերքին վրայ յարգելի անձանց երկայն
յաջորդութիւն մը աս անբաւ ու բազմամարդ հաւատա-
կալութիւնը ոչ թէ մահաբեր զէնքով, այլ բանիւ
հոգւոյ կը կառավարէր ։ Ազգ ազգի վրայ ելաւ, ոմանք
աշխարհակալեցին, ոմանք նուաճեցան. ազգք եւ ժողո-
վուրդք կը փոխուէին, նոր ցեղեր կը պատուաստուէին.
Գերմանք եւ Իտալացիք, Փրանկք եւ Գաղղիացիք, Գութք
եւ Իբերացիք, Սաքսոնք եւ Բրիտանացիք, Սլաւք եւ
Հոնք իրար յաղթեցին. ստոյգ է, տասն բարկութեան դա-
րեր անցան, նշա՜ն երկանց Եւրոպայ՝ որ ծնանելու վրայ
էր. բայց նոյն ատեն կար հոգի մը՝ որ ամենուն վրայ կը
սփռէր եւ զամէնքը կը կարգաւորէր, միութեան, կարգի
եւ սիրոյ հոգին ։ Վերջապէս խաւարը փարատեցաւ, եւ
տեսնուեցաւ որ ան բիրտ ազգերը Պետրոսի բանալիները
կը յարգէին եւ Պօղոսի սրոյն կը հնազանդէին ։ Աս յաղ-
թութիւնը մեծագոյն եւ բարեգուշակ նպաստաւորու-
թիւն մ'ունեցաւ աւելի հնագոյն ատենները ։ Ս. Լեւ-
ոն Մարդեղութեան խորհրդոյն ուղիղ վարդապետու-

թիւնը բացատրեց. եկեղեցին լռեց, եւ ազատեցաւ հերետիկոսութենէն՝ զորն որ ըստ մասին արեւելեան կայսրութեան քաղաքական իշխանութիւնը յարուցած էր: Արեւմտեան կայսրութիւնը՝ Ատտիլայի մերձենալովը՝ ահու դողու մէջ ինկած էր. բայց եղաւ միանգամայն Լեւոն այն բարբարոսին դիմացը. եւ Ատտիլա անոր ներկայութեան պարզ ու անզարդ փառաւորութենէն, եւ Աստուծոյ իշխանութիւնն Անոր առաջին պաշտօնէին անձին վրայ տեսնելով՝ յաղթահարեցաւ մնաց:

Անցաւ վրայէն տասնաչորս դար, եւ Լեւոնի յաջորդը դեռ իր աթոռը կը նստի: Հարիւրաւոր եպիսկոպոսունք եւ միլիոնաւոր հաւատացեալք դեռ կը հաւատան թէ անոր ձայնը ճշմարիտ հաւատքը կը քարոզէ, եւ թէ ամէն նոր հերետիկոսութեան դէմ զանիկա կը պաշտպանէ: Եւ Ատտիլայի հրամանատարութեան տակ եղող բարբարոս զօրքը՝ Լեւոնին ներկայացուցած իշխանութեան զօրութեամբը՝ սովրեցաւ օրինաց հպատակել յաջորդ դարերուն երկայն ընթացից մէջ: Բայց թէպէտ եւ մեծ էր իր ազդեցութիւնը՝ իբրեւ գլուխ եկեղեցւոյ, սակայն աւելի եւ անհամեմատ մեծագոյն է իր յաջորդին ճոխութիւնը բոլոր երկրիս ազգերուն վրայ: Ահաւասիկ աս ճոխութիւնը հաստատուն եւ անյողդողդ կեցած է աս վերջի ժամանակներուն անհաւատութեան մէջ, ուր որ "Շատերը մոլորութեան մէջ կը թափառին ու գիտութիւնն աճած է,, եւ նենգաւոր տէրութիւնք չորս կողմն առած՝ իրարու հետ խօսք ըրած են, որ մարդկային միտքը, արուեստներն ու կենաց ամէն վայելմունքները փոխանակէն Աստուծոյ փրկութիւնաբեր շնորհաց ու ճշմարտութեան հետ, զորն որ ինք (Աստուած) իր խորհրդական մարմնոյն հոգաբարձութեան յանձնած է:

Սովորութիւնները, այլեւայլ ցեղերը, պետութիւնները փոխուեցան ու աներեւոյթ եղան, բայց Ս. Պրոսպերի Ե. դարուն (431) մէջ երգածն այսօրուան օրս ալ ճշմարիտ է.

Հռոմ՝ աթոռ Պետրոսի
Հովուական պատուոյ՝
Գլուխ եղեալ աշխարհի.
զոր ստացեալ չէ զինուք՝
զայն կրօնիւքն ունի [1]:

Ս. Օգոստինոս Գ. դարուն վերջը Ս. Պետրոսի աթոռը յաջորդող եպիսկոպոսներուն կարգն ու յաջորդութիւնը, որոնց յանձնած էր Աստուած իր հօտը արածելու հոգը, յառաջ կը բերէր իբրեւ պատճառ՝ իրեն կաթուղիկէ եկեղեցւոյն մէջ հաստատուն մնալուն: Արդ թէ որ ասիկայ ան ատենները հաստատուն փաստ մըն էր, աւելի եւս պէտք չէ՞ որ ըլլայ հիմակ՝ որ տասնուչորս ու կէս դարեր երկու հարիւրէ աւելի յաջորդք տուած են նոյն աթոռին, զորն որ առ նուազն քառասուն սերունդք իրենց հպատակութեան մեծարանքովը աւելի եւս փառաւոր ըրած են:

Արժէ՞ք բա՞ն է՝ որ յափշտակութիւն մը այսչափ հաստատուն կարենայ մնալ այսպիսի պարագաներու մէջ: Այնչափ զանազան ազգեր կրնայի՞ն երբեք հաւանիլ որ իրենց կրօնին գլուխն օտարական մ՚ըլլայ: Այնչափ այլեւայլ ու նախանձայոյզ ազգերու հովիւները՝ որոնք իրենց եպիսկոպոսական իշխանութեամբը հաւասար են, կ՚ուզէի՞ն արդեօք թոյլ տալ երբեք որ իրենց մէկ եղբայրակիցն իրենց յառաջնութեան կարգը հաստատէ, կարգաւորէ իրենց գործքերը, վճռէ որոշէ իրենց վէճերը եւ կառավարէ զիրենք իբրեւ մի միայն հօտ, եւ այս ամենայն տասնուհինգ դարերու երկայն ընթացքին մէջ:

Ո՛հ, ո՞ւր կրնանք գտնել այսչափ իշխանութեան հիմը: Եկեղեցին աստ կը վկայէ, բայց ինք չէ զանիկա ստեղծողը: Ժողովքները զինքը կը խոստովանին, բայց անիկա ժողովքներէն յառաջ էր: Ժողովքներուն առա-

1 Sedes Roma Petri, quae pastoralis honoris
Facta caput mundo, quidquid non possidet armis
Relligione tenet.

Ջինը կը քարոզէր որ "Հռոմայ եկեղեցին միշտ գլխաւորութիւնն ունեցաւ,,: Ո՞վ ունի երբեք իշխանութիւն այսպիսի հիմնարկութիւն[1] մը դնելու եւ պահպանելու, ժողվելու ճամբու քար մը՝ որ իր ոտքին տակն ինկած էր, եւ այն քարին վրայ անանկ հաստատուն աշտարակ մը շինելու, որ իր տեւողութեամբը դարերով դիմանայ, եւ ոչ կործանիչ անձրեւներով, ոչ ողողիչ հեղեղներով, ոչ մրրկայոյզ հովերուն սաստկութեամբը եւ ոչ թշնամեաց մոլեգին կատաղութեամբը իր գագաթը կործանի: Միայն Մէկն ասոր կարող էր. զայս կը յայտնէ նոյն ճոխութիւնը, ասոր նոյն իսկ եկեղեցին կը վկայէ, ասիկա դարէ դար կ'աղաղակեն անթիւ անհամար սուրբեր: Ան որ ըսաւ "Եղիցի լոյս,, եւ "Այս է մարմին իմ,, ըսաւ նաեւ Պետրոսի "Դու ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն. եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից, եւ զոր միանգամ կապեսցես յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս, եւ զոր արձակեսցես յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս,,:

Բայց ասոր վրայ՝ քիչ մը ետքը առանձին կը խօսինք:

1 Institutio.

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

Քահանայապետական իշխանութեան սուրբ Պետրէն առաջացածներ։

«Ինծի կ'երեւայ որ մեր կենաց ընթացքին մէջ, որչափ որ կրնանք դատաստան ընել, շատ բան կայ՝ զորն որ ի հարկէ ստիպուած կը գործենք, եւ շատն ալ պատահմունքներէ կ'առաջնորդուինք գործելու։ Բայց Քրիստոս՝ զօրութիւն եւ իմաստութիւն Աստուծոյ՝ չէր կրնար ոչ անոր եւ ոչ ասոր տակ ճնկած ըլլալ։ Կան դէ՛ որպիսի՞ հարկաւորութենէ՝ Աստուածային զօրութիւնը, եւ որպիսի՞ դիպուածով՝ իր իմաստութիւնը կրնայ արդեօք կանոնաւորիլ գործելու ատեն։ Ասոր համար ամէն բան՝ զոր ինք ըսաւ, գործեց ու կրեց, բոլորն ալ ստուգիւ ազատութեամբ եւ լի խորհրդով եղած է»[1]։

Թէ որ աս խորհրդաւորութիւններն իրաւ են նկատմամբ այն ամենայն խօսքերուն՝ զորոնք Քրիստոս երկրիս վրայ իր մարդկանացու կենաց օրերուն մէջ ըսաւ, աւելի եւս պատշաճական են այն փոքր ու համառօտ վճիռներուն, որոնց մէջ ամփոփեց ան ճոխութիւնը՝ զորն որ նոյն ատեն իր առաքեալներուն կու տայր իր եկեղեցին հաստատելու եւ շինելու համար։ Ասոնք սահմանիչ, ամենակարող եւ յաւիտենական խօսքեր են. ասոնց ամէն մէկն իր մէջը մարգարէութիւններ, հրաշքներ եւ շատ տեսակ խորհուրդներ կը փակէ։

Ասկա ուրեմն առանց մասնաւոր դիտաւորութեան չէր՝ որ աս վճիռներէն ոմանք առաքեալներուն ընդհանրապէս ըսուեցան, եւ ոմանք ալ՝ առանձին Պետրոսի։ Զանազանենք ուրեմն իրարմէ, զանազանենք նաեւ խօսքը՝ կարգաւորմանէն։ Այդ՝ յիշատակաց արժանի խոստում մ'եղած է Աստուծմէ առանձինն Պետրոսի՝ եկեղեցւոյ կառավարութեան նկատմամբ, ուրիշ խոստում մ'ալ՝ ամէն առաքեալներուն մէկէն՝ Պետրոսի հետ

1 Ս. Բեռնարդոս, ի տօնի համբարձ. ճառ Դ։

միատեղ: Ասոնք շատ մեծ կապակցութիւն ունին մէջերնին, եւ որպէս զի զօրութիւննին աղէկ իմանանք, գրենք երկուքն ալ դիմացէ դիմաց:

| ՊԵՏՐՈՍԻ (Մատթ. ԺԶ. 18—20.) | ԱՌԱՔԵԱԼՆԵՐՈՒՆ (Մատթ. ԺԸ. 18.) |
|---|---|
| Ա. Եւ ես քեզ ասեմ. զի դու ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ. | |
| Բ. Եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն. | |
| Գ. Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից. | |
| Դ. Եւ զոր միանգամ կապեսցես յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս. եւ զոր արձակեսցես յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս: | Ամէն ասեմ ձեզ, զի զոր կապիցէք յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս, եւ զոր արձակիցէք յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս: |

Ասով յայտնի կ'երեւայ որ նախ առաջին չորս բան Պետրոսի մինակ խոստացուեցաւ, եւ միայն չորրորդը ետքէն խոստացուեցաւ ամէն առաքեալներուն՝ Պետրոսն ալ մէկտեղ առնելով:

Աս չորրորդ խոստմանս կատարումը հաստատուեցաւ նաեւ ամէն առաքելոց մէկտեղ աս խօսքերով.

“Ողջոյն ընդ ձեզ. որպէս առաքեաց զիս Հայր իմ, եւ ես առաքեմ զձեզ: Եւ զայս իբրեւ ասաց, փչեաց ի նոսա եւ ասէ. Առէք Հոգի սուրբ. եթէ ումեք թողուցուք զմեղս՝ թողեալ լիցի նոցա, եւ եթէ զուրուք ունիցիք՝ կալեալ լիցի,,[1]:

Մէկալ տեղուանքը՝ որոնք առաքեալներուն ամենուն մէկանց տրուած իշխանութիւնը կը ցուցընեն, ասոնք են:

Ա. Կոր. ԺԱ. 23—25. “Տէր Յիսուս ի գիշերին յորում մատնէր, առ հաց, գոհացաւ, եբեկ եւ ասէ. Այս է մարմին իմ՝ որ վասն ձեր բաշխի (մատնի ի մահ),

1 Յովհ. Ի. 21:

զայս արարէք առ իմոյ յիշատակն։ Նոյնպէս եւ զբաժակն յետ ընթրեացն առ եւ ասէ. Այս բաժակ նոր ուխտ է իմով արեամբ. զայս արարէք քանիցս անգամ ըմպիցէք՝ առ իմոյ յիշատակն,,[1]։

Մատթ. ԻԸ. 18—20. “Եւ մատուցեալ Յիսուս խօսեցաւ ընդ նոսա եւ ասէ. Տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս եւ յերկրի. որպէս առաքեաց զիս Հայր, եւ ես առաքեմ զձեզ։ Գնացէք այսուհետեւ, աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։ Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ որ ինչ պատուիրեցի ձեզ։ Եւ ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչեւ ի կատարած աշխարհի,,։

Մարկ. ԺԶ. 14. “Եւ ասէ ցնոսա. Երթայք յաշխարհ ամենայն եւ քարոզեցէք զաւետարանն ամենայն արարածոց,,։

Ղուկ. ԻԴ. 49. “Եւ ահա ես առաքեմ զաւետիս Հօր իմոյ ի ձեզ. եւ դուք նստարուք ի քաղաքիս յԵրուսաղէմ, մինչեւ զգենուցուք զօրութիւն ի բարձանց,,։

Գործ. Ա. 4. 5. 8. “Եւ ի հաղորդել ընդ նոսա հացի՝ պատուէր տայր նոցա յԵրուսաղեմէ մի մեկնել, այլ սպասել աւետեացն Հօր՝ զոր լուայքն ինէն։ Զի Յովհաննէս մկրտեաց ի ջուր, այլ դուք մկրտիցիք ի Հոգին սուրբ՝ ոչ յետ բազում ինչ աւուրց։ . . . Այլ առջիք զօրութիւն ի հասանել Հոգւոյն սրբոյ ի վերայ ձեր, եւ եղիջիք ինձ վկայք յԵրուսաղէմ, եւ յամենայն Հրէաստանի, եւ ի Սամարիա, եւ մինչեւ ի ծագս երկրի,,։

Այս ամենայն կը ցուցընէ մեզի որ աս մինակ Պետրոսի եղած չորս խոստմունքներէն՝ երեքը մէկալ առաքեալներուն չէ եղած. բայց դեռ կը մնան երկու տեղւանք՝ որոնք առանձին եւ մասնաւորապէս միայն Պետրոսի կը վերաբերին։

1 Տես Ղուկ. ԻԲ. 19։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս իր չարչարանաց ա-
ռենները՝ երբոր ամէն առաքեալները բոլորտիքն առած էին, զՊետրոս յուցընելով. ըսաւ. «Սիմոն Սիմոն, ահա սատանայ խնդրեաց զձեզ խարբալել. իբրեւ զցորեան. այլ ես աղաչեցի վասն քո՝ զի մի պակասեսցեն հաւատք քո, եւ դու երբեմն դարձցիս եւ հաստատեսցես զեղբարս քո[1]:

Եւ ամէն առաքելոց մէկտեղ տալէն ետեւ առաքելութիւնը, ինչպէս որ ինքն իր Հօրմէն ընդունած էր, եւ միանգամայն շնորհելէն ետեւ մեղաց թողութիւն տալու իշխանութիւնը, որ բաներն որ արդէն իրենց առաքելութեան մէջ կը պարունակուէին, Քրիստոս յարմար ատենը գտաւ՝ երբ որ Պետրոս, Յակոբոս եւ Յովհաննէս իր սիրելի աշակերտները եւ ուրիշ չորս աշակերտ մէկտեղ էին, աս յիշատակաց արժանի խօսքերը մինակ Պետրոսին ուղղելու[2]:

«Եւ իբրեւ ճաշեցին, ասէ ցՍիմոն Պետրոս Յիսուս. Սիմոն Յովնանու, սիրես զիս առաւել քան զսոսա: Ասէ ցնա. Այո Տէր, եւ դու գիտես զի սիրեմ զքեզ: Ասէ ցնա. Արածեա զգառինս իմ[3]:

«Դարձեալ ասէ ցնա. Սիմոն Յովնանու, սիրես զիս: Ասէ ցնա. Այո Տէր եւ դու գիտես զի սիրեմ զքեզ: Ասէ ցնա. Արածեա զոչխարս իմ[4]:

«Ասէ ցնա երիցս անգամ. Սիմոն Յովնանու, սիրես զիս: Տրտմեցաւ Պետրոս զի ասաց ցնա երիցս թէ սիրես զիս, եւ ասէ ցնա. Տէր, դու զամենայն գիտես, եւ դու իսկ զամենայն ճանաչես, եւ եթէ սիրեմ զքեզ: Ասէ ցնա Յիսուս. Արածեա զոչխարս իմ»[5]:

Ասոնք են սուրբ Գրոց բովանդակ այն տեղերը՝ որոնցմով կամ առաքեալներուն ընդհանրապէս եւ կամ մինակ Պետրոսի խօսուած է՝ իրենց պաշտամանց ու պաշտօնին վրայ. ստուգիւ շատ քիչ էին ասոնք ընդ-

1 Ղուկ. ԻԲ. 31. 32:
2 Յով: ԻԱ. 15—17:
3 Βόσκε τὰ ἀρνία μοῦ.
4 Ποίμενε τὰ πρόβατά μου.
5 Βόσκε τὰ πρόβατά μου.

հանուր եկեղեցւոյ կառավարութեան կարգաւորութեան նկատմամբ, թէ որ բոլորն Առաքեալ չըլլար. բայց բաւական են Անոր՝ որն որ միայն խօսքով կը սահմանէ: Բովանդակենք ուրեմն աս իրենց տրուած իշխանութիւնները, եւ նախ առաջին՝ առհասարակ ամէն առաքեալներուն մէկանց տրուածները, եւ ետքը՝ միայն Պետրոսի անձնականապէս տրուածները:

Առհասարակ առաքեալներուն տրուած իշխանութիւններուն մէջ աս յետագաները հաստատունքն են, այսինքն՝ եկեղեցւոյ մշտնջենաւոր կառավարութեան հարկաւորները:

Ա. Մատուցանել սուրբ պատարագը "Զայս արարէք (պատարագի խօսքերը) առ իմոյ յիշատակի". ասով իրենց իշխանութիւն տրուեցաւ Քրիստոսի ընական մարմնոյն վրայ:

Բ. Մեղաց թողութիւն տալ ապաշխարութեան խորհրդին մէջ. "Եթէ ումեք թողուցուք զմեղս՝ թողեալ լիցի նոցա", եւ այլն. ասով իշխանութիւն ընդունեցան Քրիստոսի խորհրդական մարմնոյն վրայ:

Աս երկու իշխանութիւնները Քահանայութիւնը կը կացուցանեն:

Գ. Մկրտել. "Մկրտեցէք զնոսա յանուն Հօր" եւ այլն:

Դ. Սորվեցընել եւ մատակարարել մէկալ խորհուրդներն ու ծէսերը, իշխանութիւն ունենալով զանոնք ուրիշներուն ալ պահել տալու. "Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ որ ինչ պատուիրեցի ձեզ":

Ե. Կապել տալ եւ վերցընել. } "Զոր կապիցէք
Զ. Օրէնքով պարտաւորել. } յերկրի", եւ այլն:

Է. Քրիստոսի իրենց ներկայ ըլլալը՝ աս պաշտօններուն մէջ մինչեւ վերջը. "Ահաւասիկ ես ընդ ձեզ եմ", եւ այլն:

Ասոնք եպիսկոպոսութիւնը կը կացուցանեն:

Իսկ որոնք որ ասոնցմէ ետքը կու գան, այն արտաքոյ կարգի իշխանութիւններն են, որոնք միայն առաքե-

լութեան սեպհական են, որչափ որ եպիսկոպոսական կարգէն կրնան զանազանուիլ։

Բ. Քրիստոսէն անընդմիջապէս կարգադրուիլ. «Որպէս առաքեաց զիս Հայր», եւ այլն։

Գ. Ընդհանուր առաքելութիւն. «Գնացէք ընդ ամենայն աշխարհ», եւ այլն։

Աս ամէն իշխանութիւններն ունեցաւ Ս. Պետրոս մէկալ առաքեալներուն հետ մէկտեղ, եւ այսպէս ասոնց ամենուն մէջն ալ մէկալ առաքեալներուն հաւասար էր։ Բայց հետեւեալները՝ միայն իրեն սեպհական բաներ են։

Ա. Ինքն Պետրոս Վէմ դրուեցաւ, կամ հիմն եկեղեցւոյ՝ Քրիստոսէն ետքը, եւ իրեն միայն ըսուեցաւ «Դու ես վէմ (Կեփաս, Պետրոս), եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ»։

Բ. Աս իրեն (Պետրոսի) վրայ շինուած եկեղեցւոյն՝ տրուեցաւ անսխալութիւն ու մշտնջենաւոր յաղթութիւն. «Դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն»։

Գ. Երկնից արքայութեան փականքը կամ գերագոյն իշխանութեան նշանակը, Աստուծոյ տան պաշտպանութիւնն ու Աստուծոյ քաղաքին խնամակալութիւնն իրեն միայն յանձնուեցան. «Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից»։

Դ. Մեղքերն արձակելու եւ կապելու, եկեղեցական պատիժներ տալու եւ վերցընելու եւ հոգեւոր օրէնքներ հրատարակելու իշխանութիւնը, թէպէտ եւ ուրիշ տեղ ուրիշ առաքեալներուն հետ միատեղ տրուած է, բայց հոստեղս իրեն անձին մասնաւորապէս կը շնորհուի. «Եւ զոր կապեսցես», եւ այլն։

Ե. Իր եղբայրները հաստատելու կարողութիւնը, որովհետեւ իր հաւատքը երբեք պիտի չպակսի։

Զ. Գերագոյն հովուական խնամակալութիւն Քրիստոսի բոլոր հօտին վրայ. «Արածեա զգառինս իմ։ Լեր հովիւ հօտի իմոյ, արածեա զոչխարս իմ»։

Այսպէս առաքեալներուն առհասարակ տրուած

զայս արարէք առ իմոյ յիշատակի։ Նոյնպէս եւ զբաժակն յետ ընթրեացն առ եւ ասէ. Այս բաժակ նոր ուխտ է իմով արեամբ. զայս արարէք քանիցս անգամ ըմպիցէք՝ առ իմոյ յիշատակի„[1]։

Մատթ. ԻԸ. 18—20. “Եւ մատուցեալ Յիսուս խօսեցաւ ընդ նոսա եւ ասէ. Տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս եւ յերկրի. որպէս առաքեաց զիս Հայր, եւ ես առաքեմ զձեզ։ Գնացէք այսուհետեւ, աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։ Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ որ ինչ պատուիրեցի ձեզ։ Եւ ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչեւ ի կատարած աշխարհի„։

Մարկ. ԺԶ. 14. “Եւ ասէ ցնոսա. Երթայք յաշխարհ ամենայն եւ քարոզեցէք զաւետարանն ամենայն արարածոց„։

Ղուկ. ԻԴ. 49. “Եւ ահա ես առաքեմ զաւետիս Հօր իմոյ ի ձեզ. եւ դուք նստարուք ի քաղաքիս յԵրուսաղէմ, մինչեւ զգենուցուք զօրութիւն ի բարձանց„։

Գործ. Ա. 4. 5. 8. “Եւ ի հաղորդել ընդ նոսա հացին՝ պատուէր տայր նոցա յԵրուսաղեմէ մի մեկնել, այլ սպասել աւետեացն Հօր՝ զոր լուարուքն յինէն։ Զի Յովհաննէս մկրտեաց ի ջուր, այլ դուք մկրտիցիք ի Հոգին սուրբ՝ ոչ յետ բազում ինչ աւուրց։ . . . Այլ առջիք զօրութիւն ի հասանել Հոգւոյն սրբոյ ի վերայ ձեր, եւ եղիջիք ինձ վկայք յԵրուսաղէմ, եւ յամենայն Հրէաստանի, եւ ի Սամարիա, եւ մինչեւ ի ծագս երկրի„։

Այս ամենայն կը ցուցընէ մեզի որ աս մինակ Պետրոսի եղած չորս խոստմունքներէն՝ երեքը մէկալ առաքեալներուն չէ եղած. բայց դեռ կը մնան երկու տեղուանք՝ որոնք առանձին եւ մասնաւորապէս միայն Պետրոսի կը վերաբերին։

1 Տես Ղուկ. ԻԲ. 19։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս իր չարչարանաց աւուրներն՝ երբոր ամէն առաքեալները բոլորտիքն առած էին, զՊետրոս ցուցընելով ըսաւ. "Սիմոն Սիմոն, ահա սատանայ խնդրեաց զձեզ խարբալել իբրեւ զցորեան. այլ ես աղաչեցի վասն քո՝ զի մի պակասեսցեն հաւատք քո, եւ դու երբեմն դարձցիս եւ հաստատեսցես զեղբարս քո[1]:

Նաեւ ամէն առաքելոց մէկտեղ տալէն ետեւ առաքելութիւնը, ինչպէս որ ինքն իր օրմէն ընդունած էր, եւ միանգամայն շնորհելէն ետեւ մեղաց թողութիւն տալու իշխանութիւնը, որ բաներն որ առջէն իրենց առաքելութեան մէջ կը պարունակուէին, Քրիստոս յարմար տեսնը գտաւ՝ երբ որ Պետրոս, Յակոբոս եւ Յովհաննէս իր սիրելի աշակերտները եւ ուրիշ չորս աշակերտ մէկտեղ էին, աս յիշատակաց արժանի խօսքերը մինակ Պետրոսին ուղղելու[2]:

"Նաեւ իբրեւ ճաշեցին, ասէ ցՍիմոն Պետրոս Յիսուս. Սիմոն Յովնանու, սիրե՞ս զիս առաւել քան զսոսա: Ասէ ցնա. Այո Տէր, եւ դու գիտես զի սիրեմ զքեզ: Ասէ ցնա. Արածեա զգառինս իմ[3]:

"Դարձեալ ասէ ցնա. Սիմոն Յովնանու, սիրե՞ս զիս: Ասէ ցնա. Այո Տէր եւ դու գիտես զի սիրեմ զքեզ: Ասէ ցնա. Արածեա զոչխարս իմ[4]:

"Ասէ ցնա երիցս անգամ. Սիմոն Յովնանու, սիրե՞ս զիս: Տրտմեցաւ Պետրոս զի ասաց ցնա երիցս թէ սիրես զիս, եւ ասէ ցնա. Տէր, դու զամենայն գիտես, եւ դու իսկ զամենայն ճանաչես, եւ նթէ սիրեմ զքեզ: Ասէ ցնա Յիսուս. Արածեա զոչխարս իմ"[5]:

Ասոնք են սուրբ Գրոց բովանդակ այն տեղերը՝ ուրոնցմով կամ առաքեալներուն ընդհանրապէս եւ կամ մինակ Պետրոսի խօսուած է՝ իրենց պաշտամանց ու պաշտօնին վրայ. ստուգիւ շատ քիչ էին ասոնք ընդ-

1 Ղուկ. ԻԲ. 31. 32:
2 Յով. ԻԱ. 15—17:
3 Βόσκε τὰ ἀρνία μοῦ.
4 Ποίμενε τὰ πρόβατά μου.
5 Βόσκε τὰ πρόβατά μου.

հանուր եկեղեցւոյ կառավարութեան կարգաւորութեան նկատմամբ, թէ որ բառղն Աստուած չըլլար. բայց բաւական են Անոր՝ որն որ միայն խօսքով կը ստեղծանէ։ Բովանդակենք ուրեմն աս իրենց տրուած իշխանութիւնները, եւ նախ առաջին՝ առհասարակ ամէն առաքեալներուն մէկանց տրուածները, եւ ետքը՝ միայն Պետրոսի անձնականապէս տրուածները։

Առհասարակ առաքեալներուն տրուած իշխանութիւններուն մէջ աս յետադասները հասարակներն են, այսինքն՝ եկեղեցւոյ մշտնջենաւոր կառավարութեան հարկաւորները։

Ա. Մատուցանել սուրբ պատարագը "Զայս արարէք (պատարագի խօսքերը) առ իմոյ յիշատակի„. առով իրենց իշխանութիւն տրուեցաւ Քրիստոսի բնական մարմնոյն վրայ։

Բ. Մեղաց թողութիւն տալ ապաշխարութեան խորհրդին մէջ. "Եթէ ումեք թողուցուք զմեղս՝ թողեալ լիցի նոցա„, եւ այլն. առով իշխանութիւն ընդունեցան Քրիստոսի խորհրդական մարմնոյն վրայ։

Աս երկու իշխանութիւնները Քահանայութիւնը կը կացուցանեն։

Գ. Մկրտել. "Մկրտեցէք զնոսա յանուն Հօր„ եւ այլն։

Դ. Սորվեցընել եւ մատակարարել մէկտեղ խորհուրդներն ու ծէսերը, իշխանութիւն ունենալով զանոնք ուրիշներուն ալ պահել տալու. "Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ որ ինչ պատուիրեցի ձեզ„։

Ե. Պատիժ տալ եւ վերցընել. } "Զոր կապիցէք
Զ. Օրէնքով պարտաւորել. } յերկրի„ եւ այլն։

Է. Քրիստոսի իրենց ներկայ ըլլալը՝ աս պաշտօններուն մէջ մինչեւ վերջը. "Ահաւասիկ ես ընդ ձեզ եմ„ եւ այլն։

Ասոնք եպիսկոպոսութիւնը կը կացուցանեն։

Իսկ որոնք որ ասոնցմէ ետքը կու գան, այն գերագոյն կարգէ իշխանութիւններն են, որոնք միայն առաքե-

լութեան սեպհական են, որչափ որ եպիսկոպոսական կարգէն կրնան զանազանուիլ։

Ը. Քրիստոսէն անընդմիջապէս կարգադրուիլ. «Որպէս առաքեաց զիս Հայր» եւ այլն։

Թ. Ընդհանուր առաքելութիւն. «Գնացէք ընդ ամենայն աշխարհ» եւ այլն։

Աս ամէն իշխանութիւններն ունեցաւ Ս. Պետրոս մէկալ առաքեալներուն հետ մէկտեղ, եւ այսպէս ա-տոնց ամենուն մէջն ալ մէկալ առաքեալներուն հաւա-սար էր։ Բայց հետեւեալները՝ միայն իրեն սեպհական բաներ են։

Ա. Ինքն Պետրոս Վէմ դրուեցաւ, կամ հիմն եկեղեցւոյ՝ Քրիստոսէն ետքը, եւ իրեն միայն ըսուեցաւ «Դու ես վէմ (Կեփաս, Պետրոս), եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ»։

Բ. Աս իրեն (Պետրոսի) վրայ շինուած եկեղեցւոյն՝ տրուեցաւ անսխալութիւն ու մշտնջենաւոր յաղթու-թիւն. «Դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն»։

Գ. Երկնից արքայութեան փականքը կամ գերա-գոյն իշխանութեան նշանակը, Աստուծոյ տան պաշտ-պանութիւնն ու Աստուծոյ քաղաքին խնամակալութիւնն իրեն միայն յանձնուեցան. «Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից»։

Դ. Մեղքերն արձակելու եւ կապելու, եկեղեցական պատիժներ տալու եւ վերցընելու եւ հոգեւոր օրէնքներ հրատարակելու իշխանութիւնը, թէպէտ եւ ուրիշ տեղ ուրիշ առաքեալներուն հետ միատեղ տրուած է, բայց հոստեղս իրեն անձին մասնաւորապէս կը շնորհուի. «Եւ զոր կապեսցես» եւ այլն։

Ե. Իր եղբայրները հաստատելու կարողութիւնը, որովհետեւ իր հաւատքը երբեք պիտի չպակսի։

Զ. Գերագոյն հովուական խնամակալութիւն Քրիստոսի բոլոր հօտին վրայ. «Արածեա զգառինս իմ։ Լեր հովիւ հօտի իմոյ, արածեա զոչխարս իմ»։

Այսպէս առաքեալներուն առհասարակ տրուած

իշխանութիւնները՝ Պետրոսի առանձին տրուած իշխանութեան հետ համեմատելով՝ կը հետեւցընեմ, թէ

Ա. Ինքն Պետրոս շատ բաներ ընդունեցաւ առանձինն մէկալ ամէն առաքեալներէն զատ, իսկ անոնք առանց Պետրոսի մասնակցութեան բան մը չընդունեցան։

Բ. Պետրոսի իշխանութիւնները մինակ մէկ անձէ մը կրնան գործածուիլ, իսկ անոնցը՝ շատերէն։

Գ. Իր իշխանութիւնները կը պարունակեն մէկալ առաքեալներուն իշխանութիւնները ալ, բայց առանց անդրադառնալու։

Դ. Եկեղեցւոյ սովորական կառավարութիւնք՝ որն որ խոստացուած ու նշանակուած է երկնից արքայութեան բանալիներով, եւ տրուած ու ամփոփ նկարագրուած է աս խօսքով՝ «Արածեա զգառինս իմ», եւ կամ Հովուական պաշտօնը, իր (Պետրոսի) անձէն կը բղխէ. Եպիսկոպոսութիւնն ամփոփուած է Գլխաւորութեան մէջ։

Դարձեալ աս իշխանութեան շարունակութեան ու բղխման նկատմամբ, այն սկիզբը՝ որով ամէն մէկ եկեղեցական կը հաւատայ որ եկեղեցւոյ բարւոյն համար ամէն առաքելոց մէկանց տրուած հասարակ իշխանութիւնը կը շարունակուի նաեւ զանիկա (զեկեղեցին) ի մշտնջենաւորս կառավարողներուն վրայ, նոյն սկիզբը նաեւ կը ստիպէ խոստովանելու որ եկեղեցւոյ բարւոյն համար Պետրոսի տրուած իշխանութիւնն ալ հաւասարապէս իր յաջորդաց վրայ կը շարունակուի։ Եւ իրաւցընէ աս նիւթին վրայ ալ կը տարածուի այն խոստումը՝ որուն զօրութեամբ ապահովցած է Պետրոսի վրայ հիմնուած եկեղեցւոյն մշտնջենաւոր տեւողութիւնք։

Իմացանք նաեւ թէ ինչ բանի մէջ առաքեալք հաւասար էին Պետրոսի, եւ ինչ բանի մէջ ինք անոնցմէ վերադոյն էր։ Հաւասար էին եպիսկոպոսական իշխանութեանց մէջ, հաւասար էին դարձեալ եպիսկոպոսութեան վրայ աւելցած առաքելութեան մէջ, այս ինքն՝ իրենց անընդմիջապէս Քրիստոսէ կարգեալ ըլլալուն ու

ընդհանուր առաքելութեան մէջ։ Ուրեմն աւելին էին քան զՊետրոս մինակ անոր մէջ՝ որ իր գլխաւորութիւնը կը կացուցանէր, այս ինքն՝ կը պարտաւորէին գործածել իրենց իշխանութիւնը Պետրոսի հետ միանալով եւ իրմէ կախում ունենալով։ Ինչ որ առաքեալք իրեն հետ միաձայնաբար կամ համաձայնաբար ունէին, ինք առանձին ունէր։ Յիսուս Քրիստոս խոստացած ու տուած էր միայն իրեն եւ յառաջագոյն այն գերագոյն կառավարութիւնը՝ որուն մէկ մասը ետքէն խոստացուեցաւ իրեն հետ միացեալ եղողներուն։ Ամենուն առհասարակ տրուած առաքելութենէն զատ՝ ինք ունեցաւ նաեւ վերին տեսչութիւն ամենուն վրայ՝ որոնք իրեն միայն յանձնուեցան։ Ինչու որ նաեւ անոնց հոգը Պետրոսի յանձնուեցաւ աս խօսքերով. «Արածեա զոչխարս իմ»։ Նաեւ այսպէս ինք միայն եղաւ պահապան, ինք միայն՝ հովիւ հօտին. ինք միայն՝ վէմ, որուն վրայ իրենք ալ ուրիշ քրիստոնեաներուն պէս շինուեցան։ Համառօտ ըսելով՝ ինքն էր անոնց գլուխը, եւ այսպէս իր գլխաւորութիւնն էական մաս մըն է, եւ կրնամ ըսել՝ պսակ եւ կատարումն եկեղեցւոյ աստուածային կառավարութեան։ Վասն զի գլուխ չունեցողը՝ մարմին չիկրնար անուանուիլ։ Այսպէս ամէնքն ալ եղան վարդապետ աշխարհի, ինչպէս որ զիրենք կը կոչեն սուրբ Կիւրեղ եւ սուրբ Ոսկեբերան, բայց մէկու մը միայն իշխանութեան տակ՝ որն որ բոլոր ան գունդը կը կառավարէր։

Իրենք կարողութիւն ունէին իրաւաբանութիւննին գործածելու, եւ այնպէս ալ գործեցին. եպիսկոպոսարաններ կանգնելով եւ աշխարհքիս ամէն կողմն եկեղեցիներ հիմնագրելով. բայց այս ամենայն կ՚ընէին միացեալ ընդ Պետրոսի եւ իբրեւ անոր հպատակ։

Ուրեմն անոր գլխաւորութիւնը՝ աւագութիւն կարգի չէր, այլ՝ իրաւաբանութեան։

Առաքեալները ցրուելէն ետքը՝ գլխաւորութեան այս իրաւաբանական աւագութիւնն աւելի եւս յայտնի կը տեսնուի։ Վասն զի անոնք մէկու մը չհաղորդեցին

ան ընդհանուր առաքելութիւնը՝ զորն որ Քրիստոսէ ընդունեցան, որովհետեւ անոնց ձեռնադրած եպիսկոպոսները շատ ամփոփած սահման մ'ունեցան իրենց իշխանութիւնը գործածելու։ Աս ալ յայտնի է որ Քրիստոս իրենցմէ եաքը անձամբ ուրիշ եպիսկոպոսներ չըրաւ։ Այսպէսով առաքելութեան երկու առաւելութիւնները, այսինքն՝ ընդհանուր առաքելութեան եւ անընդմիջական աստուածային կարգման առաւելութիւնները դադրեցան. բայց Պետրոսի գլխաւորութիւնը, որովհետեւ իր առաքելութենէն կը զանազանէր, ոչ երբեք դադրեցաւ։ Միշտ եղաւ մէկը՝ որ հարկաւ պէտք էր երկնից արքայութեան բանալիները կրել եւ Քրիստոսի հօտին ոչխարներն արածել։ Աս իշխանութիւնը՝ որն որ ի սկզբան խոստացուած էր եւ եաքը տրուեցաւ Պետրոսի՝ որ կամարին պսակն ու գագաթն էր, աս իշխանութիւնը՝ որն որ բովանդակ եկեղեցին մէկ փարախ մը կը ժողվէ, ընդհանուր եպիսկոպոսութիւն մըն էր։ Աստր համար գլխաւորութիւնն ամէն եպիսկոպոսաց վրայ ալ իր իրաւաբանութիւնը կը բանեցընէ, ինչպէս որ առաքելոց վրայ կը գործածէր։ Ուստի եւ աստուածային օրէնսդրութեամբ՝ երկու իշխանութիւն կը բղխէ եկեղեցւոյ կառավարութեան համար մինչեւ ի վախճան ժամանակաց, գլխաւորութիւն եւ եպիսկոպոսութիւն։

Այն իշխանութիւնը՝ որ այսպէս առանձինն Պետրոսի տրուած է խոստմամբ որ ըլլայ վէմ, եկեղեցւոյ հիմ, անշարժ իր տեղը, բանալիներու իշխանութեամբն ամրացած, կարողութեամբ՝ երկնից ու երկրիս վրայ ամէն բան արձակելու եւ կապելու, եւ աղօթեամբ որ ինք մինակ պէտք է ըլլալ հովիւ՝ ի պաշտօնէ հօգացող բովանդակ հօտին, այն իշխանութիւնը, կ'ըսեմ, ի բնէ Գերագոյն է։ Ասիկա թէ ամբողջ հօտին եւ թէ ամէն մէկ ոչխարին վրայ կը տարածի, հաւաքապէս՝ ամբողջ եկեղեցւոյ, եւ տրամաբաշխապէս՝ ամէն մէկ անդամին վրայ։ Ասիկա կը պարունակէ ամէն դէպք՝ որ կրնայ պատահիլ։ Մտադրութեամբ քննեցէք իր բուն եւ բնա-

կան ուղղախոհութիւնք, եւ դիւրաւ կը տեսնենք որ ասիկա չկրնար մէկ ուրիշ իշխանութենէ մը սահմանաւորիլ կամ ամփոփուիլ. որովհետեւ ինք ամէն իշխանութեան կարգաւորելու համար հաստատուած է։ Այսու ամենայնիւ մի միայն թէութեամբ կը չափաւորուի, զորն որ Աստուած աս իշխանութիւնք հաստատելու անոր դրած է. «Սիմոն, որդի Յովնանու, սիրե՞ս զիս առաւել քան զդոսա,,. առաւել քան զՅակոբո՞ս եւ քան զՅովհաննէ՞ս. աս գերագոյն սէրը ստուգիւ մի միայն հարկաւոր բանն է անոր՝ որն որ այսպիսի իշխանութեան մ'առած է այն թագաւորութեան մէջ՝ որ շինուած է ինք ղինքն աշխարհքիս համար զոհող Միոյն վրայ։ Աս պատճառաւ նոյն իշխանութիւնն ալ շինելու, չէ թէ քակելու համար տրուած է, ուստի եւ գերագոյն է, եւ պատասխան է համար տալու միայն Անոր՝ որն որ զինքը հաստատեց եւ ուզեց որ երկրիս վրայ իր անձը ներկայացընէ։

Ամէն բան տրուեցաւ մեզի Աստուծոյ Որդիէն, մարմնացեալ Բանէն, այսպէս ամէն բան վերէն կարգաւորուած է, եւ ոչ թէ աս խոր անդունդին մէջէն, ուր կը գտնուինք։ Ամէն բան մէկէ կը բղխէ եւ ամէն բան մէկուն վրայ ժողվուած է։ Հայր գերագոյն է, բայց այսու ամենայնիւ Հայր է։

Արդ՝ աս ամէն յառաջ բերուած սուրբ Գրոց վկայութիւններն այնպէս յայտնի են, այնպէս իրարու համաձայն, այնպէս ճիշդ՝ որ եւ ոչ կրնամ երեւակայել թէ գտնուի անկեղծ հոգի մը՝ որն որ կարող ըլլայ մեր գրածներէն տարբեր հետեւութիւններ հանել անոնցմէ։

Բայց ես ուրիշ ձեռնարկութեան, մանաւանդ թէ ուրիշ ճշմարտութեան մը կ'անցնիմ, այս ինքն թէ աս մինչեւ հիմա ստորագրուած Գլխաւորութիւնը՝ մի միայն բանալին է, որ մեզի կը բանայ եկեղեցւոյ բովանդակ հին պատմութեան իմաստը։ Կը տեսնենք յաստուածային կարգադրութենէ՝ եկեղեցւոյ գօգը ի սկզբանէ առան-

դուած իշխանութիւն մը, որն որ նոյն իսկ եկեղեցւոյ աճելովը կ՚աճի, նոյն տնկոյն (եկեղեցւոյն) արմատն ու բոլոր կազմուածքին զսպանակն է, եւ ինք իր մէջը կը փակէ ու իրմէ դուրս կը տարածէ ուրիշ ամենայն իշխանութիւնները՝ տալով ամէն մէկուն զօրութիւն եւ ամենուն մէկանց՝ ներդաշնակութիւն։

Մինչեւ հիմա սուրբ Գրոց տրուած մեկնութիւնները զօրացընելու համար՝ հին ու նոր պատմութենէ երկու մեծ քահանայապետներու ճոխութիւնը կ՚ընտրեմ, որոնց մէկը՝ սրբոց հարց, իսկ մէկալը՝ հիմակուան եկեղեցւոյն անուամբը պիտի խօսին։

Մեծն Լեւոն եկեղեցւոյ Ե. դարուն, բոլոր Իտալիայէն գումարուած եպիսկոպոսաց ծերակուտին մէջ՝ իր քահանայապետական աթոռն ելլելուն տարեդարձը յիշելով, իր տանը եկեղեցւոյն այն Պետրոսի աթոռին վրայ ինչ զգածմունք ունենալը աս խօսքերով յայտնի առջեւնիս կը դնէ։

“Սիրելիք, թէ եւ այսպիսի պաշտաման մասնակցութեան վիճակակից ըլլալնուս համար շատ առիթ ունինք հասարակաց ուրախութեան, այսու ամենայնիւ աւելի ճշմարիտ եւ աւելի բարձրագոյն պատճառ ուրախութեան կ՚ունենանք, եթէ չէք կանգ առներ մեր նուաստութեան վրայ խորհելու. վասն զի շատ աւելի օգտակար եւ արժանաւոր է մտաց ուշադրութիւնն երանելի Պետրոս առաքելոյն փառաւորութեան վրայ վերցընելը ու իր մեծարանացը համար մասնաւորապէս տօնախմբելը այսօրուան օրս, որ այնչափ առատ վտակներով ողողած է իրմէ՝ որ ամենայն երկնային պարգեւաց աղբիւրն է։ Ինչու որ ինք մինակ այնչափ շնորհքներ իր վրայ ժողված է, եւ ուրիշներուն վրայ ուրիշ կերպ զեղում մը եղած չէ՝ բայց եթէ իրեն հետ հաղորդակից ըլլալով։ Բանն մարմին առած էր, եւ նոյն ինքն Քրիստոս՝ որպէս զի ինք զինքը բոլորովին մարդկային ազգի նորոգութեան համար զոհէ, մեր մէջն եկաւ բնակեցաւ։ Աստուածային իմաստութեան առջեւ ամենայն

ինչ աղէկ կարգաւորուած էր, եւ ոչինչ դժուարին էր աստուածային ամենակարողութեան ։ Ցարերը իրեն կը սպասաւորէին, հրեշտակները կը ծառայէին եւ ոչինչ եղանակաւ կրնար պարապի երթալ այն խորհուրդը՝ որուն մէջ նոյն իսկ Աստուածութեան միութիւնն ու Երրորդութիւնը գործակից կ՚ըլլային ։ Ի վերայ այսր ամենայնի բոլոր տիեզերաց մէջէն միայն Պետրոս ընտրուած էր նոյն խորհուրդն ընդհանուր ազգաց կոչմանը, ամէն առաքեալներուն եւ եկեղեցւոյ ամէն Հարցը վրայ տրամադրելու. այնպէս որ՝ Թէպէտեւ Աստուծոյ ժողովրդեան մէջ շատ եպիսկոպոսներ կան, բայց յատկապէս Պետրոսին կ՚իյնայ կառավարել զանոնք ամէնքը՝ զորոնք ինքն Քրիստոս գլխաւորապէս կը կառավարէ ։ Սիրելիք, Աստուծոյ մարդասիրութիւնը՝ իր աստուածային կարողութեան մեծ ու հրաշալի մասին հաղորդակից ըրաւ աս անձը. եւ Թէպէտ ուզեց նաեւ որ (եկեղեցւոյ) ուրիշ իշխաններն ալ ինչ ինչ ի հասարակի իրեն հետ ունենան. բայց ինչ որ ուրիշներուն ալ չզլացաւ նէ՝ նոյնն ուրիշ կերպ չշնորհեց՝ բայց եթէ անոր միջոցովը ։

Վերջապէս Տէրն մեր հարցուց ամէն առաքեալներուն, թէ մարդիկ ինչ կը կարծեն իր վրայ ։ Աս հարցման ամէնքն ալ մի եւ նոյն կերպով պատասխան կու տային, որչափ որ անստոյգ էր մարդկան վրայ ունեցած կարծիքնին ։ Բայց երբոր խնդրուեցաւ թէ ինչ կարծիք ունին իրենք՝ առաքեալները, անիկայ եղաւ առաջին զՏէր խոստովանելու, որն որ առաջինն էր առաքելական պատուոյն մէջ ։ Եւ երբոր ըսաւ. “Դուն ես Քրիստոս Աստուծոյ կենդանւոյ որդին„ իրեն պատասխան տուաւ Յիսուս. “Երանի՜ քեզի, Պետրոս Յովնանու որդին, որ ո՛չ մարմին եւ ո՛չ արիւն քեզի ասիկա յայտնեցին, այլ իմ Հայրս՝ որ երկինքն է„ ։ — Կ՚ուզէ ըսել. Երանելի ես՝ որ իմ Հայրս քեզի սորվեցուց, եւ ոչ երկրաւոր կարծիք զքեզ մոլորութեան ձգեց, այլ երկնային ազդեցութիւնը քեզի Թելադրեց, եւ ոչ թէ

մնացածին ու արիւնը քեզի ծանօթ ըլլալ զէթ, այլ Ընծ-կա՝ որուն ես անդրանիկ որդին եմ։ «Բայց ես, աւելորդաց վասն, կ'ըսեմ քեզի. — այս խօսքն՝ ինչպէս իմ Հայրս յայտնեց քեզի իմ Աստուածութիւնս, այնպէս ես ալ քու բարձրութիւնդ քեզի կը ծանուցանեմ. — որ դու (Պետրոս) Վէմ ես». այսինքն է՝ ես եմ Վէմ անփշրելի, վէմ անկեան, որ երկու ազգէ մէկ ազգ կ'ընեմ. եւ թէպէտ ես եմ հիմը, որմէ դուրս ոչ ոք ուրիշ հիմ կրնայ դնել, այսու ամենայնիւ դուն ալ վէմ ես, վասն զի իմ զօրութենէս ամրութիւն կ'առնես, եւ ան ամէն բան՝ որ ինծի սեփհական է իմ բնածին կարողութենէս, կ'ուզեմ որ քեզի ալ ինծի հետ հաւասար ըլլայ մասնակցութեամբ։

«Նոյն աս վէմին վրայ պիտ'որ շինեմ իմ եկեղեցիս, եւ դժոխոց դռները պիտի չկարենան զանիկա յաղթահարել»: Աս ամրութեան վրայ, կ'ըսէ, պիտի կանգնեմ յաւիտենական տաճար մը, եւ իմ եկեղեցւոյս բարձրութիւնը՝ որուն գագաթը մինչեւ երկինք պիտ'որ հասնի, աս հաւատոյ հաստատութեան վրայ պիտի կանգնուի։ Դժոխոց դռներն աս դաւանութեան վրայ իշխանութիւն պիտի չունենան, եւ ոչ մահուան շղթաները զինքը պիտի կապեն, վասն զի ինքն է կենաց ձայն, եւ ինչպէս զինքը խոստովանողները երկինք կը բարձրացընէ, այնպէս զինքն ուրացողներն ալ դժոխք կը հալածէ։ Աս պատճառաւ երանելւոյն Պետրոսի ըսուեցաւ «Քեզի պիտ'որ տամ ես երկնից արքայութեան բանալիները, եւ ինչ որ կապելու ըլլաս երկրիս վրայ՝ կապուի նաեւ երկինքը, եւ ինչ որ արձակելու ըլլաս երկրիս վրայ՝ արձակուի նաեւ երկինքը»։ — Ասոր պակոյս աս իշխանութեան իրաւունքն անցաւ ուրիշ առաքեալներուն վրայ ալ, եւ ամէն եկեղեցւոյ իշխաններուն վրայ տարածուեցաւ աս իրաւունքը. բայց ամենուն հրամայուածը՝ պարապ տեղ մէկու մը առանձինն չյանձնուիր։ Ասոր համար Պետրոսին առանձինն աս գործքս կը յանձնուի, վասն զի Պետրոս իբրեւ գաղափար դրուած է եկեղեցւոյ ամէն

կառավարիչներուն վրայ։ Ընդարատ կը մնայ ուրեմն Պետրոսի արտօնութիւնք կամ առանձնաշնորհութիւնք, ուր որ արդար որոշմամբ ըստ արդարութեան դատաստան կ'ըլլայ։ Ոչ աւելորդ խստութիւն եւ ոչ աւելորդ ներողութիւն է հոն՝ ուր որ ոչինչ կը կապուի եւ ոչինչ կ'արձակուի, բայց նոյն զօրն որ Պետրոս կ'արձակէ կամ կը կապէ։ Քրիստոս՝ իր չարչարանաց մօտենալու ատենը, որն որ առաքելոց համարձակութիւնք պիտի տկարացընէր, ըսաւ Պետրոսի. „Սիմոն, Սիմոն, ահաւասիկ սատանան ուզեց զձեզ ցորենի պէս մաղել։ Բայց ես քեզի համար աղաչեցի որ չպակսի քու հաւատքդ, եւ դուն երբեմն դառնաս ու հաստատես քու եղբայրքդ, որ փորձութեան մէջ չիյնան“։ — Ամէն առաքեալներուն հասարակ էր փորձութեան ու երկիւղի վտանգը, եւ ամէնքն ալ հաւասարապէս աստուածային պաշտպանութեան կը կարօտէին. վասն զի սատանան զամէնքն ալ ցնցելու, զամէնքն ալ կործանելու կը բաղձայ. եւ ի վերայ այսր ամենայնի Տէր մասնաւոր հոգ մը կ'ունենայ Պետրոսի վրայ եւ առանձինն Պետրոսի հաւատքին համար կ'աղաչէ, իբրեւ թէ միւսներուն հաստատութիւնն աւելի ապահով կ'ըլլայ՝ եթէ իրենց իշխանին միտքը չծնշուի։ Ի Պետրոս ուրեմն ամենուն ամրոցն ամուր պաշտպանութիւն կը գտնէ, եւ աստուածային օգնութիւնն այնպիսի եղանակաւ տրամադրուած է՝ որ Քրիստոսի միջնորդութեամբ Պետրոսի տրուած հաստատութիւնը՝ Պետրոսի միջնորդութեամբ առաքեալներուն մատուցուի։

„Ասա ուրեմն տեսնելով, սիրելիք, որ մեզի այսպիսի պաշտպանութիւն մը ի մշտնջենաւորս տրուած է, ըստ պատշաճի եւ իրաւամբ պէտք է ուրախանանք մեր առաջնորդին արդեանց ու բարձր աստիճանին վրայ, շնորհակալ ըլլալով մեր յաւիտենական Թագաւորին ու Փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ այնչափ կարողութիւն շնորհեց անոր՝ զորն որ բովանդակ եկեղեցւոյ իշխան դրած է։ Եւ եթէ մեր օրերն ալ մեր միջնորդութեամբը

բան մը ըստ պատշաճի գործուելու եւ ըստ պատշաճի հրամայուելու ըլլայ, պէտք է անոր կառավարութեան ու գործողութեան համարուիլ՝ որուն որ ըսուեցաւ. «Դու դուն երբեմն դառնաս ու հաստատես քու եղբայրքդ», եւ որուն որ յաջորդութենէն ետեւ՝ երեք անգամ սիրոյ դաւանութիւնը տալէն վերջը՝ խորհրդաւոր դիտմամբ ըսաւ երեք անգամ. «Արածէ իմ ոչխարներս»: Զորն որ հիմակ ալ ինք անտարակոյս կը գործէ, եւ գթած հովուի մը պէս Տիրոջ հրամանը կը կատարէ, զօրացընելով զմեզ իր յորդորանքներովը, անդադար մեզի համար աղօթելով՝ որ ամենեւին փորձութենէ մը չյաղթուինք: Եթէ ան իր հոգածութիւնն ամէն կողմ կը տարածէ Աստուծոյ բոլոր ժողովըդեան վրայ, ինչպէս ուղղութեամբ կը հաւատանք, ո՛րչափ աւելի իր պաշտպանութիւնը պիտ՚որ աւելցընէ մեր՝ իր աշակերտաց օգտին համար, որոնց քով իր երանելի հանգստեան սուրբ գահին վրայ կը հանգչի նոյն ան մարմինը՝ որով ապրեցաւ եւ մեզի գահերէց եղաւ: Ապա ուրեմն մեր ծառայութեան տարեդարձը, այս հանդիսական օրն ընծայենք իրեն՝ որուն պաշտպանութեամբն աթոռոյն մասնակից ըլլալու արժանի եղանք՝ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ շնորհքը մեզի յամենայնի օգնութեան հասնելով, որն որ Հօր ու Հոգւոյն սրբոյ հետ կենդանի է եւ կը թագաւորէ յաւիտեանս յաւիտենից, ամէն»:

Երթանք յառաջ եւ տասուերկու դար ետեւնիս ձգելով՝ կանգ առնենք ուրիշ եպիսկոպոս մը նկատելու, որն որ մեծազօր ու իր թագաւորական իրաւանց վրէժխնդիր իշխանի մը արքունեաց մէջ, Գաղղիական եպիսկոպոսներուն հանդիսաւոր ժողովքին առջեւ վարդապետութիւն մը կը դնէ, որն որ վերոյիշեալ սուրբ Գրոց վկայութիւններէն կը բղխէ [1]:

«Լսեցէք ինծի, ո՛վ եղբարք, ահաւասիկ կաթողիկէ միութեան խորհուրդը, ու եկեղեցւոյ գեղեցկութեան անմահ սկիզբը:

1 Պոսիւէ, Խօսք ի վերայ միութեան եկեղեցւոյ:

«Ճշմարիտ գեղեցկութիւնն առողջութենէ կը ծագի. այն՝ որ եկեղեցւոյ զօրութիւն կու տայ, միանգամայն իրեն գեղեցկութիւնը կու տայ։ Միութիւնը զանիկա կը գեղեցկացընէ, միութիւնը կը զօրացընէ։ Նոյնքան Հոգւով որով միացեալ՝ ինք ունի դարձեալ հասարակաց կապ մը իր արտաքին հաղորդակցութեան մէջ, եւ պէտք է միացեալ մնայ կառավարութեան կապովն ալ՝ որն որ երկրիս վրայ Քրիստոսի իշխանութիւնը կը ներկայացընէ։ Այսպէս միութիւնը կը պահպանէ զմիութիւնը, եւ եկեղեցական կառավարութեան կնքոյ տակ՝ հոգւոյ միութիւնը կը պահպանուի։ Ո՞րն է աս կառավարութիւնը, ո՞րն է աս կառավարութեան կեդրոնը։ Ըստ քմաց բան չըսուցենք, այլ բանանք Աւետարանը։ Գտան բացին աս սրբազան գրքին կնիքը, եւ եկեղեցւոյ աւանդութիւնն ամէն բան բացատրեց։

«Աւետարանին մէջ կը տեսնենք թէ Յիսուս Քրիստոս՝ երբ որ եկեղեցւոյ միութեան խորհուրդը սկսիլ ուզեց, բոլոր իր աշակերտներուն մէջէն տասուերկու միայն ընտրեց. բայց երբ որ ուզեց եկեղեցւոյն նոյն միութեան խորհուրդը կատարել, տասուերկուքին մէջէն՝ մէկը միայն ընտրեց։ Կոչեաց, կ՚ըսէ Աւետարանը[1], զաշակերտսն իւր, ահաւասիկ ամէնքը. եւ ընտրեաց ի նոցանէ երկոտասան, ահա առաջին մէկ բաժանումը, ահաւասիկ կ՚ընտրուին առաքեալք։ Եւ առաքելոցն երկոտասանից՝ էին անուանք այսոքիկ։ Առաջին Սիմոն՝ անուանեալն Պետրոս[2], ահաւասիկ երկրորդ բաժանման մէջ Ս. Պետրոս առաջին տեղը կը դրուի եւ Պետրոս անունով կը կոչուի, զորն որ Յիսուս Քրիստոս, կ՚ըսէ Ս. Մարկոս[3], իրեն տուած էր. որպէս զի, ինչպէս որ պիտի տեսնէք, յառաջագոյն պատրաստէ այն գործքը՝ զորն որ կը մտածէր բովանդակ իր շինուածքովն աս վիմին վրայ կանգնելու։

«Սակայն այս ամենայն ուրիշ բան չէր, բայց եթէ

1 Ղուկ. Զ. 13։
2 Մատթ. Ժ. 2։
3 Մարկ. Գ. 16։

միութեան խորհրդոյն սկզբնաւորութիւն մը։ Յիսուս Քրիստոս աս բանիս սկիզբ մը տալով՝ իր խօսքերը նաեւ ուրիշներուն ալ կը դարձընէ. Գնացէք, քարոզեցէք ես զձեզ կը խրկեմ. Երթայք, քարոզեցէք, ես առաքեմ զձեզ[1]։ Բայց երբոր կ՚ուզէ միութեան խորհըրդոյն վերջին կատարումը տալ, ալ շատերուն չիդառնար. ուստի եւ զՊետրոս առանձինն անձամբը կը նշանակէ իր նոր անունովը՝ զորն որ իրեն տուած էր։ Մինակ մէկը՝ մինակ մէկու մը հետ կը խօսի. Յիսուս Քրիստոս Աստուծոյ որդին՝ Սիմոնի Յովնանու որդւոյն հետ, Յիսուս Քրիստոս ինք իրմէ ճշմարիտ վէմն ու հզօրը՝ Սիմոնի հետ, որ վէմ էր միայն՝ Քրիստոսէն իրեն հաղորդուած զօրութեամբ։ Անոր հետ կը խօսի Յիսուս Քրիստոս, եւ խօսելովը կը գործէ անոր վրայ, եւ անոր վրայ կը տպաւորէ իր հաստատութեան նկարագիրը. Եւ ես քեզ ասեմ. Դու ես վէմ. եւ վրան կը յաւելցընէ. Եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, ու վճիռը կու տայ. Եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն։ Այսպիսի պատուոյն զՊետրոս պատրաստելու համար՝ Յիսուս Քրիստոս, որ աղէկ գիտէր թէ իր վրայ եղած հաւատքը հիմն էր իր եկեղեցւոյն, ընչեց Պետրոսի անանկ հաւատք մը՝ որ արժանի էր հիմն ըլլալու աս հրաշալի շինուածքին. Դու ես Քրիստոս որդի Աստուծոյ կենդանւոյ։ Աս հաւատոյ բարձր խոստովանութեամբ՝ արդիւնաւորեցաւ այն անեղծ խոստումը, որն որ եկեղեցւոյ հիմը կը դնէր։ Յիսուսի Քրիստոսի խօսքը՝ որն որ ուզածն ոչնչէ կը ստեղծէ, այն զօրութիւնը մահկանացուի մ'ալ կու տայ։ Բայց [illegible] Ս. Պետրոսի [illegible] եկեղեցւոյ [illegible]։ Պետրոս պիտի ապրի ի յաջորդս իւր, Պետրոս միշտ պիտ'որ խօսի իր գահէն. ասիկայ կը սորվեցընեն Հարք, եւ ասիկայ կը հաստատեն 630 եպիսկոպոսք Քաղկեդոնի ժողովքին մէջ[2]։

1 Մատթ. Ժ. 6, 7, 16։ 2 Ժող. Քաղկ. Գործ. Բ. Գ. Լաբ. Հատ. 4։

"Մինչ դնենք համառօտիւ մը հետեւեալներուն ալ. Յիսուս Քրիստոս իր նպատակին մէջ կը յառաջանայ, եւ Պետրոսին՝ հաւատոյ մշտնջենաւոր քարոզչին՝ ըսելէն ետքը թէ Դուն ես վէմ եւ ես աս վիմին վրայ իմ եկեղեցիս պիտի շինեմ, կը յաւելցընէ Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից: Ասնիս դուն առանձնաշնորհութիւն հաւատքը քարոզելու, ունենաս նաեւ բանալիները, կառավարչական իշխանութեան նշանակները: Զոր միանգամ կապեսցես յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս: Ամենայն ինչ աս բանալիներուն տակ ինկած է, ամէնքը, եղբայրս, թագաւորներն ու ժողովուրդները, հովիւներն ու հօտերը: Մենք ուրախութեամբ աս իրկայ կը հրատարակենք, ինչու որ միութիւնը կը սիրենք եւ մեզի փառք կը համարինք մեր հնազանդիլը: Պետրոսի՝ ամենէն յառաջ եւ ամէն առաքեալներէն աւելի սիրելու պատուէր տրուեցաւ: Եւ ետքը՝ արածելու եւ կառավարելու զամէնքը, թէ ոչխարները եւ թէ գառինքը[1], թէ որդիքը, թէ մայրերը եւ թէ նոյն իսկ հովիւները, որպէս հովիւ էն՝ նշանամանք ժողովրդեան, եւ հօր՝ նշանամանք առ Պետրոս. ասոնք ի Պետրոս կը պատուեն զՅիսուս Քրիստոս, խոստովանելով միանգամայն թէ ամենայն իրաւամբ աւելի սէր կը պահանջուի իրմէ, որովհետեւ իր աւելի ծանրաբեռնութեան հետ՝ աւելի ալ աւագութիւն ունի, մանաւանդ որ մեր մէջը՝ այնպիսի Վարդապետի մը կրթութեան տակ՝ կը պատրաստուի որ, իրեն խօսքին համաձայն, առաջինը՝ իրեն պէս սիրով ամենուն ծառան ըլլայ[2]:

"Ըստ այսմ կը տեսնուի որ Ս. Պետրոս ամէն բանի մէջ առաջինն է. առաջին՝ հաւատքը դաւանելու մէջ: առաջին՝ սիրոյ պարտաւորութեան մէջ. առաջին՝ առաքեալներուն մէջ՝ որ զՔրիստոս ի մեռելոց յարուցեալ տեսաւ, որովհետեւ առաջինն ալ պիտ՚որ ըլլար Յիսուսի Քրիստոսի համար բոլոր ժողովրդեան առջեւը վկայելու. առաջին՝ առաքեալներուն թիւը լեցընելու

1 Յովհ. ԻԱ. 15, 16, 17: 2 Մարկ. Ժ. 44:

խորհրդեան մէջ. առաջին՝ հրաշքով հաւատքը հաստատելու մէջ. առաջին՝ Հրեաները դարձընելու մէջ. առաջին՝ հեթանոսներն ընդունելու մէջ, եւ առաջին ամէն բանի մէջ . . . :

Միութիւնը Ս. Պաւհին վրայ տեսնելէն ետքը, կ՚ուզէք տեսնել նաեւ բովանդակ եպիսկոպոսական կարգին եւ բովանդակ եպիսկոպոսական խմբին մէջ: Ա-կոյն աս ալ՚ի Ս. Պետրոս պէտք էր յայտնուէր, աս ալ պէտք էր յայտնուէր այն խօսքերուն մէջ թէ Ինչ որ դուն կապելու ըլլաս՝ կապուի, ինչ որ արձակելու ըլլաս՝ արձակուի. աս բանս ամէն քահանայապետք, ամէն Ս. Հայրք միաբան խորհրդով սորվեցուցին: Այո, եղբարք, աս մեծ խօսքերը՝ որոնց մէջ այնչափ յայտնի ճանչցաք Պետրոսի գլխաւորութիւնը, նաեւ եպիսկոպոսներուն դրութիւնը տուին, ինչու որ իրենց պաշտաման զօրութիւնը բոլորովին կը կայանայ կապելու կամ արձակելու մէջ զանոնք՝ որոնք կը հաւատան կամ չեն հաւատար իրենց խօսքին: Այսպէս աս կապելու եւ արձակելու աստուածային կարողութիւնը հարկաւոր յատկութիւնն ու դրեթէ վերջին կնիքն է քարոզութեան՝ զորն որ Յիսուս Քրիստոս իրենց յանձնեց, եւ այսպէս դուք ալ իբրեւ ամփոփ պատկերի մը մէջ կը [illegible]էք եկեղեցական իրաւաբանութեան բոլոր կարգը: Ահ[illegible]ւասիկ անոր համար նոյն ինքն Քրիստոս՝ որ Պետրոսի ըսաւ. Ինչ որ կապելու ըլլաս՝ կապուի, եւ ինչ որ արձակելու ըլլաս՝ արձակուի, նոյն բանն ըսաւ նաեւ ամէն առաքեալներուն՝ աւելցընելով միանգամայն թէ Թողուին անոնց մեղքերը՝ որոնց կը թողուք, եւ պահուին՝ որոնց որ կը պահէք[1]: Իսկ ի՞նչ կը նշանակէ կապելը, թէ ոչ՝ բռնել, եւ ի՞նչ կ՚ուզէ ըսել արձակելը, թէ ոչ՝ թողուլ: Իսկ ինք՝ որ Պետրոսի շնորհեց աս կարողութիւնը, շնորհեց նաեւ իր բերնովը ամէն առաքեալներուն. Որպէս առաքեաց զիս Հայր, ըսաւ, եւ ես առաքեմ զձեզ: Չենք կրնար գտնել ուրիշ ասկից աւելի ա-

1 Յովհ. Ի. 23:

ղէկ հաստատուած իշխանութիւն մը եւ ոչ ալ աւելի անմիջական առաքում մը։ Բաց ասկից՝ փչեց նաեւ հաւատարապէս ամենուն վրայ, եւ ան փչմամբ՝ հաւասարապէս ամենուն վրայ սփռեց մի եւ նոյն Հոգին, ըսելով՝ Ընդունեցէք զՀոգին սուրբ. Թողուին անոնց մեղքերը՝ որոնց կը թողուք, եւ պահուին անոնց որ կը պահէք։

«Ուրեմն Յիսուսի Քրիստոսի դիտաւորութիւնը յայտնապէս աս էր, նախ մէկու մը հաղորդել ինչ որ ետքը շատերուն հաղորդել կ՚ուզէր։ Բայց ետքէն եկածը՝ սկզբնաւորութիւնը չ՚եղծանէր, եւ ոչ ալ զառաջինն իր պատուէն կը ձգէ։ Աս առաջին խօսքը՝ թէ Ինչ որ դուն կապելու ըլլաս, որն որ մինակ մէկու մ՚ըսուեցաւ, արդէն անոր իշխանութեան տակ ձգեց զանոնք ամէնքն ալ՝ որոնց պիտ՚որ ըսուէր. Ինչ որ երկրիս վրայ կապելու ըլլաք, եւ այլն։ Ինչու որ Յիսուսի Քրիստոսի թէ՛ խոստմունքն ու թէ՛ իր պարգեւները անզեղջ են, եւ ինչ որ անգամ մը առանց սահմանի եւ ընդհանուր եղանակաւ տրուած է, անդառնալի է. մանաւանդ որ շատերուն մէկտեղ տրուած իշխանութիւնը՝ սեղմում մը մէկտեղ կը բերէ, որովհետեւ կը բաժնուի. ուր որ մէկու մը միայն՝ ամենուն վրայ առանց բացառութեան տրուած իշխանութիւնը՝ լիութիւն մը կը ցուցընէ, եւ եթէ հարկ ըլլայ ուրիշ իշխանութեան հետ բաժնուելու, սահման մը չունի՝ բայց եթէ ինչ որ կանոնները կը սահմանեն . . . ։

«Այսպէս կ՚իմացուի աս խորհուրդը։ Ամէնքն ալ նոյն իշխանութիւնը կ՚ընդունին, եւ նոյն աղբիւրէն, բայց չէ թէ ամէնքն ալ մի եւ նոյն աստիճանաւ ու մի եւ նոյն տարածութեամբ։ Վասն զի Յիսուս Քրիստոս կը հաղորդէ ինչ չափով որ կ՚ուզէ, եւ միշտ այնպիսի եղանակաւ՝ որ պատշաճագոյն է իր եկեղեցւոյն միութիւնը հաստատելու։ Ասոր համար է որ առաջինէն կը սկսի եւ առաջինին մէջ բոլորը կը կերպարանէ, անկից ետքը տարածելով կարգաւ ինչ որ մէկու մը մէջ բո-

վանդակած էր։ Նաեւ Պետրոս, կ'ըսէ Ս. Օգոստինոս[1], որն որ իր գլխաւորութեան պատուովը բովանդակ եկեղեցին կը ներկայացընէր, ամենէն յառաջ եւ մինակ՝ ի սկզբան ընդունեցաւ բանալիները, որոնք վերջէն ուրիշ ամենուն ալ պիտի հաղորդուէին։ Որպէս զի սորվինք, ինչպէս եկեղեցւոյ Ս. Եպիսկոպոս մը[2] կը վարդապետէ, թէ ի սկզբան մինակ մէկու մը անձին վրայ հաստատուած եկեղեցական ճոխութիւնը, ուրիշներուն վրայ այսու պայմանաւ սփռեցաւ՝ որ միշտ իր միութեան սկիզբը դառնայ, եւ որպէս զի զանիկայ գործածողներն ամէնքն ալ անբաժանելի եղանակաւ միացեալ մնան նոյն աթոռին հետ։ Նաեւ այս հռոմէական աթոռն է՝ զորն որ սուրբ հարք այնչափ հռչակեցին, եւ գրեթէ իրարու հետ մրցելով՝ կը փառաւորէին առաքելական աթոռին գլխաւորութիւնը[3], գերագոյն իշխանութիւնը[4], միութեան աղբիւրը[5], եւ Պետրոսի վիճակին մէջ՝ քահանայական աթոռին ամենէն բարձրագոյն աստիճանը եւ այլն, եւ դարձեալ ամենասուրբ գահը՝ որ աշխարհքին ամէն եկեղեցիներուն գահերէցն[6] է. եպիսկոպոսութեան գլուխը, ընդհանուր եկեղեցւոյ նախագահը[7], հովուական պատուոյն գլուխը բոլոր աշխարհքիս վրայ[8], անդամոց գլուխը[9], եւ մի միայն աթոռը՝ ուր որ ամէնքն ալ միութիւնը կը պահեն[10]։ Աս խօսքերուս մէջ լսեցիք Օպտատոսի, սրբոյն սրբոյն Օգոստինոսի, սրբոյն Կիպրիանոսի, սրբոյն Իրանոսի, սրբոյն Պրոսպերի, սրբոյն Աւիտոսի, սրբոյն Թէոդորետոսի, Քաղկեդոնի ժողովոյն եւ ուրիշներուն խօսքերը։ Լսեցիք որ ասոր վրայ միաբան կը խօսին Ափրիկէ, Գաղղիա, Յունաստան, Արեւելք եւ Արեւմուտք„։

Հիմակ ըսէք ինծի ճշմարիտը, երբ որ Ս. Լեւոն

1 Ս. Օգոստ. Ճառ. ի Յովհ. ՃԻԴ. Հատ. Գ. Մասն Բ։
2 Ս. Կեսարիոս Արեղ. Թուղթ. առ Սիւմմ.։
3 Ս. Օգոստ. Թուղթ. 43։
4 Ս. Իրեն. 3. 3։
5 Ս. Կիպր. Թուղթ. 73։
6 Թէոդորետ. Թուղթ. 116։
7 Ս. Աւիտ. Թուղթ. առ Փաւստ։
8 Ս. Պրոսպ. վասն ապախտ։
9 Ժող. Քաղկ. առ Լեւոն։
10 Ս. Օպտատ. Բ. ընդդ. Պարմ։

հրապարակաւ եւ ճշդիւ Ս. Պետրոսի աթոռին մասնաւոր առանձնաշնորհութիւնները Ս. Գրքէն յառաջ կը բերէր, արդեօք իր ունկնդիրներուն միտքէն դուրս եւ կամ իր գարուն դաւանութենէն աւելի բա՞ն կը խօսէր։ — Ոչ երբեք. եւ սակայն այնչափ աւելի անհաւատալի է՝ որչափ որ արեւելեան եկեղեցին, որն որ միշտ նախանձախնդիր է աս նիւթին մէջ, ժողովք նստած ըլլալով՝ իր վեցհարիւր եպիսկոպոսներովը (որոնց մէջ մինակ քահանայապետական երկու հրեշտակներն արեւմուտքէն էին,) միակամ եւ միախորհուրդ եւ հանդիսաւոր կերպով սինհոդոսական թուղթ մը կը գրէր առ Լեւոն Մեծ, որուն մէջ ըսուած բառերն այնպէս հաւասար են Ս. Քահանայապետին գործածած բառերուն, որ ուրիշ կերպ նշանակութիւն մը չեն կրնար ունենալ՝ բայց եթէ Քահանայապետին վերը յիշուած ճառին սկզբանցը համեմատ[1]։

Կը ճանչնան աս վեցհարիւր հայրապետները եւ յայտնապէս կը խոստովանին յանձն քահանայապետին՝ Ս. Պետրոսի տեղակալը, "Մի միայն Թարգման երանելւոյն Պետրոսի ձայնին„. կը յայտնեն թէ Քահանայապետն "Իրենց գահերէց կը նստի՝ ինչպէս գլուխը անդամներուն„. կը խնդրեն որ իրենց գործքերը հաստատէ, "Վասն զի որչափ բարիք ալ որդիք գործեն՝ ծնողաց կը վերադառնան„, եւ զինքն իբրեւ իրենց սեպհական ծնողը կը համարին. կ'ըսեն իրեն թէ "Փրկիչն իր այգւոյն պահպանութիւնն անոր յանձնած է, եւ թէ՝ թէպէտ իր անձին վրայ ժողված է առաքելական պայծառութեան լրութիւնը, ինք շատ անգամ ան պայծառութիւնը տարածած է նաեւ Կոստանդնուպոլսի եկեղեցւոյն վրայ, ինչպէս որ սովոր էր, աննախանձ իր բարեացը հաղորդակցութեան կոչելով զանոնք՝ որոնք սիրով իրեն հետ միացած են„. կ'աղաչեն որ "Ինչպէս իրենք գլխոյն հետ միաբան են ամէն բանի մէջ՝ որ բարի կ'երեւայ, այսպէս գլուխն ալ հաճի զիջանել իր

1 Մանսի, Զ. 147. 155։

որդւոց պատշաճաւոր բաներու մէջ». եւ վերջապէս կը վկայեն թէ «Կրօնից գործոց զօրութիւնը իր հաստատուելէն կախուած կը համարին»:

Աս բաներս աղէկ կշռելով՝ ես չեմ կրնար երբեք համոզիլ որ Ս. Պետրոսի իրաւանց ամենէն եռանդուն պաշտպանն աւելի մեծ իշխանութիւն մը պահանջած ըլլայ՝ քան զոր Ս. Լեւոն Քաղկեդոնի ժողովքին մէջ գործածեց, եւ կամ աւելի՝ քան զոր նոյն իսկ ժողովքն իր յօժար կամօքն անոր կը մատուցանէր:

Սուրբ Գրոց նոյն հիման վրայ՝ Լատերանու ժողովքը 1215ին հետեւեալ կանոնը հանեց. «Հռոմէական եկեղեցին աստուածային կարգադրութեամբ Գլխաւորութիւն ունի ուրիշ ամէն եկեղեցիներուն վրայ, իբր ըլլալով մայր եւ ուսուցիչ՝ Քրիստոսի ամէն հաւատացեալներուն» [1]:

Լիոնի ժողովքին մէջ 1274ին Յոյներն ընդունեցան ի հաղորդակցութիւն, որովհետեւ խոստովանեցան որ «Հռոմէական սուրբ եկեղեցին ունի գերագոյն լրացեալ գլխաւորութիւն եւ իշխանութիւն բովանդակ կաթողիկէ եկեղեցւոյն վրայ, եւ աս գլխաւորութիւնը նոյն եկեղեցին ճշմարտապէս եւ խոնարհութեամբ նոյն իսկ Աստուծմէ ընդունած կը ճանչնայ յանձն Երանելւոյն Պետրոսի՝ առաքելոց իշխանին ու գլխոյն, որուն յաջորդն է Հռոմէական Քահանայապետը՝ իշխանութեան լրութեամբը» [2]:

Փլորենտեան ժողովքը 1439ին կը յայտնէ [3] թէ «Ս. առաքելական գահը եւ Հռոմէական Քահանայապետը բոլոր աշխարհքիս վրայ ունի գլխաւորութիւն, եւ թէ Հռոմէական Քահանայապետը՝ երանելւոյն Պետրոսի՝ առաքեալներուն իշխանին յաջորդն է ու Քրիստոսի ճշմարիտ փոխանորդը, գլուխ բովանդակ եկեղեցւոյն, հայր եւ վարդապետ ամէն քրիստոնէից, որուն՝ յանձն երանելւոյն Պետրոսի՝ Յիսուս Քրիստոս Տէրն

1 Մանսի, ԻԲ. 990:
2 Մանսի, ԻԴ. 71:
3 Մանսի, ԼԱ. 1031:

մեր շնորհեց կատարելապէս իշխանութիւն պատժելու, կառ-դաւորելու եւ կառավարելու ընդհանուր եկեղեցին, ինչ-պէս միաձայն եւ միաբերան կը հաստատէ ընդհա-նուր ժողովոց գործքերուն եւ սուրբ կանոններուն մէջ»:

Արդ՝ եթէ աղէկ դիտելու ըլլանք, աս վերջին ե-րեք ժողովներուն վճիռները՝ որոնց ճշդութենէն ան սահմանուան Անգղիկայի եկեղեցին ստուգիւ ինք զինքը պա-րտաւորուած կը ճանչնայ եւ որոնց հնազանդելէն զինքը օրինաւորապէս ազատած երբեք չկրնար ճանչնալ, աւելի բան մը չեն հաստատեր՝ բայց եթէ ինչ որ սուրբ Գրոց եւ նոյն իսկ Աստուծոյ եւ կամ հինգերորդ դարուն կէսին Քաղկեդոնի ժողովքին խօսքերը յայտնեցին, որոնց որ Անգղիկայի եկեղեցին դեռ հնազանդութիւն կը խոստո-վանի:

Նաեւ ոչ իսկ կը համարձակիմ երեւակայել՝ թէ ինչ-պէս ուղղութիւն սիրող հոգի մը Տեառն մերոյ խօսքե-րուն ու գործքերուն կարող է ուրիշ իմաստ մը տալ, քան զոր տուին Ս. Լեւոն Ե. դարուն եւ Պոսիւէ ԺԷ. դարուն մէջ:

Ահաւասիկ տեսանք թէ ինչ է սուրբ Գրոց վկայու-թիւնը, եւ թէ ինչ է եկեղեցւոյ մեկնութիւնը հռո-մէական գլխաւորութեան վրայ: Իսկ որ տասն'ութը դա-րուց ընթացքին մէջ երկու բան անխախտ մնացին, քրիս-տոնէական հաւատքն ու առաքելական աթոռը, ասիկայ անկից յառաջ եկաւ, վասն զի ան՝ որ կը խոստովանէր թէ «Դու ես Քրիստոս Որդի Աստուծոյ կենդանւոյ» եղաւ միանգամայն ժայռ՝ որուն դէմ [illegible] տեղ ամէն փոթորիկները կը փրփրան:

# ՀԱՏՈՒԱԾ Գ.

Գլխաւորութեան վախճանն ու պայմանը:

“Հայր սուրբ, պահէ զասոնք յանուն քո, որով ինծի տուիր, որպէս զի մէկ ըլլան ինչպէս որ մենք ալ մէկ ենք . . . : Ինչպէս դուն զիս աշխարհք խաւրեցիր, ես ալ զանոնք աշխարհք խրկեցի: Եւ անոնց վրայ ես սուրբ կ՚ընեմ իմ անձս, որպէս զի անոնք ալ ճշմարտութեամբ սրբուած ըլլան: Բայց չէ թէ անոնց համար միայն կ՚աղաչեմ, այլ նաեւ անոնց խօսքովը ամէն ինծի հաւատացողներուն համար. որպէս զի ամէնքն ալ մէկ ըլլան, ինչպէս դուն, Հայր, յիս, եւ ես՝ ի քեզ, որպէս զի անոնք ալ ի մեզ մէկ ըլլան, որպէս զի աշխարհք ալ հաւտայ որ դուն զիս խաւրեցիր: Եւ ես ան փառքն՝ որ ինծի տուիր, անոնց տուի, որպէս զի մէկ ըլլան, ինչպէս մենք ալ մէկ ենք: Ես՝ ի նոսա, եւ դուն՝ յիս, որպէս զի կատարեալ ըլլան ի մի: Եւ աշխարհք գիտնայ որ դուն զիս խաւրեցիր. ես զանոնք սիրեցի, ինչպէս դուն ալ զիս սիրեցիր,,[1]:

Յիսուսի Քրիստոսի խոստմունքներն ու պարգեւներն անզեղջ են, նոյնպէս եւ Յիսուսի Քրիստոսի աղօթքները միշտ լսելի եղած են: Աս աստուածային աղօթքին մէջ մեր առջեւը կը դնէ իր աշխարհք գալուն վախճանը. Կատարեցի այն գործը՝ զոր դուն ինծի տուիր որ գործեմ. եւ աս գործքն էր՝ աշխարհքիս վրայ հաստատել, բայց չէ թէ աշխարհային տարրներով, մէկ միութիւն մը՝ որուն գաղափարն ու նախատիպը նոյն իսկ Երրորդութեան միութիւնն ըլլայ. Որպէս զի ամէնքն ալ մէկ ըլլան, ինչպէս դուն, Հայր, յիս եւ ես ի քեզ, որպէս զի անոնք ալ ի մեզ մէկ ըլլան. միութեամբ՝ որ տեսանելի է; վասն զի իր արդիւնքն ալ աս պիտ՚որ ըլլայ Որ աշխարհք գիտնայ թէ դուն զիս առաքեցիր:

Յիսուս Քրիստոս կ՚աղաչէ հոստեղս իր եկեղե-

1 Յովհ. ԺԷ. 11. 18—23:

ցւոյն համար, եւ աստով մեր առջեւը կը դնէ զեկեղեցին իր ունեցած կրկին միութեամբը, որ է՝ միութիւն մարմնոյ եւ միութիւն հոգւոյ. միութիւն՝ իբրեւ տեսանելի ընկերութիւն մը, եւ միութիւն՝ իբրեւ հոգեւոր կապգաղրութիւն մը: Ասոնք անանկ միութիւններ են՝ որոնք այս մտքով կը զանազանուին. եւ թէպէտ առանձին կրնան մտածուիլ, բայց սեպհական իրական գոյութեամբ իրարու մէջ կը պարունակուին ու բոլորովին անբաժանելի են: "Մի մարմին եւ մի հոգի," ինչպէս նաեւ "Մի է Տէր," որն որ յերկուս բնութիւնս է՝ որոնց մէկը մարդկային մարմին ունի, եւ աստուածային բնութիւնը պարզ հոգի է, եւ "մի հաւատք," [1] ի մի եւ ի նոյն Քրիստոս՝ Որդի Աստուծոյ կենդանւոյ:

Համեմատենք հիմակ աս երկու միութիւններուն բնութիւնը՝ իր մեծ նախագաղափարին եւ օրինակին, այս ինքն աստուածային Երրորդութեան հետ:

Ա. Սկսատենք նախ նկատմամբ միութեան մարմնոյ:

Ի՞նչ է ան միութիւնը՝ որով Հայր եւ Որդի մի են: Ասիկայ էութեան եւ սկզբան միութիւնն է: Հայր՝ Աստուած է, Որդին ալ՝ Աստուած է. այսու ամենայնիւ երկու Աստուած չեն, ինչու որ Որդւոյն աստուածութիւնը՝ սկզբնաւորեալ է Հօրմէ. եւ ոչ ալ երեք Աստուած են, թէպէտ եւ Հոգին սուրբ ալ հաւասարապէս Աստուած է, ինչու որ իր աստուածութիւնը կը բխէ նոյն աստուածութեան աղբիւրէն, այսինքն՝ ի Հօրէ եւ յՈրդւոյ:

Ի՞նչ է միութիւն եկեղեցւոյ՝ իբրեւ տեսանելի ընկերութիւն մը, այն Միակ, Սուրբ, Կաթողիկէ եկեղեցւոյն՝ զորն որ մենք ամէնքս ալ այնչափ յաճախ կը խոստովանինք ու կը դաւանինք: Ասիկայ է միութիւն էութեան եւ սկզբան իր կառավարութեան մէջ, մի միայն անբաժանելի եպիսկոպոսութիւն. "Մի է եպիսկոպոսութիւն, որոյ մասն յիւրաքանչիւրոցն ըստ բոլորին գրաւի,"[2]:

1 Եփես. Դ. 5:

2 Episcopatus unus est, cujus a singulis in solidum pars tenetur. Ս. Կիպր. Վասն միութ. եկ.:

Յիսուս Քրիստոս Տէրն մեր իր առօթքին մէջ ամէն բան իր աստուածային առաքելութենէն յառաջ կը բերէ. "Ինչպէս դուն զիս աշխարհք խրկեցիր, ես ալ խրկեցի զանոնք աշխարհք": Այս տեսանելի միութեան աղբիւրը, այս աստուածային ընկերութեան արմատը եւ զանիկայ կարգաւորելու բովանդակ իշխանութեան ակունքը՝ այն աստուածային անձին վրայ էին, որուն Պետրոս ըսաւ. "Դուն ես Քրիստոս՝ Որդի Աստուծոյ կենդանւոյ": Նաեւ "Կամքն Հօրն Աստուծոյ շնորհքն ու կոչումն անզեղջ են [1]", նոյն աղբիւրը, արմատն ու իշխանութիւնը կը հաղորդուէր անոր՝ որ զինքն այսպէս կը խոստովանէր: "Դուն վէմ ես, եւ ես աս վիմին վրայ իմ եկեղեցիս պիտի շինեմ, եւ դժոխոց դռներն անոր պիտի չկարենան յաղթել, եւ քեզի պիտ'որ տամ երկնից արքայութեան բանալիները": Հոս Տէրն մեր մինակ մարդ մ'որոշեց իրմէ ետքը՝ իբրեւ գլուխ այն տեսանելի միութեան՝ զորն որ երկրիս վրայ հաստատելու համար եկած էր: Նաեւ երբ որ փրկութեան գործքը կատարուեցաւ, ան ատեն ինք աս մարդուն խոստացած իշխանութիւնը շնորհեց. "Սիմոն, որդի Յովնանու, արածէ իմ գառնուկներս": Այսպէս Ս. Օգոստինոս սրբոյն Կիպրիանոսի վարդապետութիւնը ժառանգելով՝ կը բացատրէ. "Ինչ Քրիստոս կ'ըսէ Պետրոսի՝ որուն միայն անձին վրայ իր եկեղեցւոյն կերպարանքը կը ձեւացնէ, Պետրոս, կը սիրե՞ս զիս" [2]:

Բոլոր աւետարանին մէջ աս տեսանելի ընկերութիւնը՝ Քրիստոսի արքայութիւն (թագաւորութիւն) կ'անուանուի, որոյ բանալիները կը տրուին Պետրոսին. կը կոչուի հօտ, եւ Պետրոս է անոր հովիւը. կ'անուանի գերդաստան, եւ Պետրոս է անդրանիկը, որուն ըսուեցաւ. Հաստատէ քու եղբայրքդ. կ'անուանուի տուն մը, եւ ինքն է բարի եւ հաւատարիմ ծառան՝ որ Աստուծմէ անոր վրայ իշխան սահմանուած է. Աղամն կ'անուանէ զեկեղեցին զօրաց բանակ, եւ Պետրոս է

1 Հռոմ. ԺԱ. 29:  2 Ս. Օգոստ. Ճառ. ԳԼ. 2:

առաջնորդը. Ս. Պօղոս կը կոչէ մարմին[1], եւ ինքն է՝ Քրիստոսէն ետքը՝ անոր գլուխը։

Եւ որովհետեւ աս եկեղեցին՝ Քրիստոսի առաջին գալստենէն մինչեւ երկրորդ գալուստը պիտի մնայ իբրեւ թագաւորութիւն, փարախ, գերդաստան, տուն, զօրք, մարմին, որոնց ամէնն ալ տեսանելի միութիւններ են, պէտք չէ՞ր որ անոնց ամենուն ալ տեսանելի գլուխ մ՚ըլլար։ Ա՜հ. ինչպէս կրնար ըլլալ որ մեր Փրկչին՝ աշխարհքէս բաժնուելու ատեն՝ իր գառնուկներուն արածելու համար Պետրոսի ձեռքը յանձնած իշխանութիւնը չշարունակուէր իր յաջորդներուն անձին վրայ, որպէս զի գառնուկք ի մշտնջենաւորս արածեն, մինչեւ որ Մեծ Հովիւը նորէն երեւայ իր յայտնութեան ատեն։

Այսպէս միայն կրնան իմացուիլ ընդհանուր ժողովներուն հրատարակածները, թէ «Պետրոս Լեւոնի բերնով խօսեցաւ»։ «Պետրոս Ագաթոնի բերնով խօսեցաւ»[2]։ Այս է հաւատքը՝ զորն որ այնչափ սրբոց երկայն յաջորդութիւնը խոստովանեցաւ, եւ ասոր մէջն ապրեցան ու մեռան։ «Երանելին Պետրոս՝ որն իր աթոռին վրայ կ՚ապրի ու կը կառավարէ, կը շնորհէ ճշմարտութիւն եւ հաւատք անոնց՝ որոնք կը խնդրեն»[3]։

Թագաւորութեան մը միութիւնն ուստի՞ է. անկից է՝ որ ամենայն իշխանութիւն իր իշխանէն յառաջ կու գայ։ Զօրքի մը միութեան կացուցիչն ո՞րն է. ան է՝ որ բովանդակ ճոխութիւնը կամ իշխանութիւնն իր զօրավարին վրայ կը բովանդակի։ Ուսկի՞ց է տան մը միութիւնը. իր տանուտիրոջը կառավարութենէն։ Ուստի՞ է մարմնոյն միութիւնը. գլխոյն մշտնջենաւոր ազդեցութենէն։ Եւ ի՞նչ բան է՝ որ տեսանելի եկեղեցւոյն

1 Աստ համաձայն կը գրէ նաեւ Ս. Յովհ. Ոսկեբերան. Ի՞նչ ըսել է, Որ Վերջաւորներն ու Հեռաւորները ժողվէ. Մէկ մարմին ըրաւ, Հռոմ նստողը՝ Հնդիկներն իր անդամը կը համարի։ Ի՞նչ հաւասար է աս հաւաքման։ Τὶ ἔστιν, ἵνα συναγάγῃ τοὺς ἐγγὺς, καὶ τοὺς μακράν; ἓν σῶμα ἐποίησεν, ὁ ἐν Ῥώμης καθήμενος, τοὺς Ινδοὺς μέλος εἶναι νομίζει ἑαυτοῦ. Τὶ ταύτης τῆς συναγωγῆς ἴσον;

2 Ժող. Քաղկ. եւ Զ. Հռոմէական, յամի 680։

3 Ս. Պետր. Ոսկիաբան առ Եւտիքէս հերետիկոս։

անթիւ անհամար հօտերը երկրիս վրայ մէկ փարախի մէջ կը ժողովէ. ուրիշը չէ՝ բայց եթէ մէկ հովիւ մը միայն, որ զԱստուած կը ներկայացընէ։ Երկու թագաւոր, երկու վերին զօրավար, երկու տանուտէր, երկու գլուխ, երկու հովիւ՝ աս միութեան գաղափարը կ'եղծանէին։

Բայց Յիսուս Քրիստոս Տէրն մեր զմեզ աւելի բարձրագոյն բաներու կը վերացընէ։ Ինք կ'աղաչէ որ “Մէկ ըլլան՝ ինչպէս որ մենք ալ մէկ ենք„։ Արդ՝ ինչպէս որ երկու կամ աւելի Աստուածութեան աղբիւրներ՝ երկու կամ աւելի աստուածներ կու տային, այնպէս նաեւ իր եկեղեցւոյն մէջ, նկատելով զանիկայ իբրեւ տեսանելի ընկերութիւն մը, երկու կամ աւելի իշխանութիւններ՝ երկու կամ աւելի եկեղեցիներ կը կացուցանէին։ Բայց ինք ուզեց որ աս եկեղեցին միշտ մի միայն ըլլայ, եւ մի ալ հաստատեց միութեամբ մշտնջենաւոր կառավարութեան՝ որ միակ աղբերէ կը բղխէ։ Դրաւ մի միայն անբաժանելի եպիսկոպոսութիւն, որուն նմանը երկրիս վրայ երբեք պիտի չըլլայ. վասն զի աստ օրինակը պիտ'որ ըլլայ միայն աստուածային էութիւնը, այսինքն՝ այն երեք անձանց միութիւնը, որ Աստուածութեան մի միայն աղբերէն կը ծագի։ Ս. Կիպրիանոս, որն որ կը ստորագրէ եպիսկոպոսութեան միութիւնը՝ թէ “Իւրաքանչիւր ոք մէկ մասը կ'առնէ, առանց բոլորին վրայ հերձուած մ'ըլլալու„, նոյն տեղը ճշդագոյն եւս եկեղեցւոյ միութիւնը՝ մի միայն աղբերէ մը բղխած կը հաստատէ։ Կը հայցընէ թէ ինչո՞ւ համար մարդիկ խաբէութեան մեծ վտանգի մէջ կ'իյնան, եւ պատասխան կու տայ թէ՝ վասն զի “Չեն դիմեր ճշմարտութեան աղբիւրը գտնելու եւ ոչ ալ գլուխը կը փնտռեն„։ Աս “Գլխոյն հանելէն ետքը, կ'ըսէ, ձեռնարկութիւններու հայկաւորութիւն չէր ըլլար„։ Կը հայցընէ դարձեալ, ո՞րն է աս սկիզբը, ո՞րն է աս գլուխը։ Տէրն մեր ըսաւ Պետրոսի. “Դուն ես վէմ„ եւ այլն. եւ աս անձին վրայ ինք Քրիստոս շինեց իր եկեղեցին։ Ինք կը ցուցընէ աս Պետրոսի անձը՝ իբրեւ շատ ճառագայթներու կենդրոն մը, իբրեւ

խիտ ճիւղերով տարածուած ծառի մը արմատ, եւ իբրեւ երկրիս արգասաւորութիւն տուող անթիւ վտակներու աղբիւր մը։ Բայց ասոնց ամենուն մէջն ալ, կ'ըսէ, “Միութիւնը սկզբանը մէջ պահուած է„։ Յայտնի է ուրեմն թէ ցորչափ որ միութիւնը կը կենայ, սկիզբն ալ պէտք է կեցած ըլլայ, եւ յայսմ կը տեսնէ մշտատեւ իշխանութեան մշտաբուխ աղբիւր մը։ Եւ կ'ակնարկէ աստուածային Երրորդութիւնը իբրեւ առոր մէկ նախագաղափարը։ Տէրն մեր ըսաւ. “Ես ու Հայր մէկ ենք„. եւ դարձեալ գրուած է Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ համար, թէ “Երեքն ալ մէկ են„։ Եւ արդեօք կա՞յ մէկը՝ որ կարող ըլլայ կարծել թէ աս անբաժանելի Աստուածութենէն յառաջ եկած եւ անոր հետ երկնային խորհուրդներով կապուած միութիւնը կարող ըլլայ եկեղեցւոյ մէջ պատռուիլ եւ բաժնուիլ՝ օտար կամքերու հակառակելովը։

Սիւմմաքոս Քահանայապետը (500ին) կ'ըսէ. “Երրորդութեան օրինակաւը՝ որուն իշխանութիւնը մէկ ու անբաժանելի է, մի միայն եպիսկոպոսութիւն՝ այլեւայլ առաջնորդներու վրայ կը գտնուի„։ Հայրն Աստուած Աստուածութեան մէջ աս իշխանութեան աղբիւրն է, եւ եպիսկոպոսութեան մէջ աս միութեան աղբիւրն է Պետրոսի աթոռը։ Կիպրիանոս եւ Սիւմմաքոս մի եւ նոյն եղանակաւ կը մեկնեն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի աս աղօթքը։ Տարածուի եկեղեցին՝ որչափ որ կ'ուզէ իր եպիսկոպոսութեան բազմութեամբը, այսու ամենայնիւ ինք մէկ կը մնայ, եւ անոնք ամէնքն ալ կ'ըլլան մի միայն “միութեամբ սկզբան„։ Եկեղեցին մէկ էր, չէ թէ միայն այն Պետրոսին անձին վրայ՝ “որմէ նոյն իսկ եպիսկոպոսութիւնն ու աս անուան ճոխութիւնը բխեց„[1], այլ նաեւ մինչեւ ցայսօր մէկ է ի Պետրոս եւ հիմակ իննեւտասներորդ դարուս մէջ այնպէս է՝ ինչպէս էր ըստ ամենայն մասին երբ որ Ս. Լեւոն կ'ըսէր. “Եթէ բան մը նաեւ հիմակուան ատենն ալ մեզմէ ուղղու-

1 Ս. Իննովկ. առ. Ժող. Կարքեդոն։

թեամբ գործուած կամ հրամայուած է, այլայց է անոր գործողութեանց եւ կատարելութեան համաձայն, որուն ըսուեցաւ «Դու դուն երբեմն դառնաս ու հաստատես քու եղբայրդ», եւ որուն Տէրն մեր՝ երեք անգամ սիրոյ դաւանութիւնն առնելէն ետքը՝ երեք անգամ խորհրդաւոր դիտանիք ըսաւ. «Արածէ իմ գառնուկներս»։ Ամենուրեք տարակոյս չվերցըներ, որ նոյն գթած Հովիւը մինչեւ հիմայ կը գործէ եւ կը կատարէ իր Տիրոջը յանձնարարութիւնը»։

Իրաւցընէ ալ՝ մենք կենդանի մարմնոյ մէջ կենդանի հոգիներ ունինք. ուրեմն չէ թէ մեռած՝ այլ կենդանի եկեղեցւոյ կը կարօտինք։ Որոնք որ կը կարծեն թէ Քրիստոսի խորհրդական մարմինը կրնայ ապականիլ, կրնան նաեւ պաշտպանել թէ երբեմն կենդանի էր՝ իսկ հիմայ մեռած է, կամ թէ անգամ մը մէկ էր՝ իսկ հիմայ երեքպատիկ է։ Աս երեք գաղափարներն աղէկ կրնան սահմանուիլ (առանց խիստ բառ մը գործածելու) եթէ պարզ եղջերուաքաղ ըսելու ըլլանք, եւ ստուգիւ որոնք որ աս գաղափարները կ'ընդունին, իրօք չեն հաւատար ոչ մարմնոյ եւ ոչ հոգւոյ միութեան, որովհետեւ յայտնի բան է որ մարմնոյ միութիւնը կ'ոչընչանայ՝ երբոր հոգւոյ միութիւնն իրեն կենդանութիւն տալէն կը դադրի։

Ինչ քաջալերութիւն կրնայ արդեօք տալ տարակուսի մէջ ինկած հոգւոյ մը՝ ըսելը թէ երբեմն Աստուծմէ ուսուցիչ մը խրկուեցաւ, բայց հիմայ դադրած է աս աստուածային յանձնարարութենէն. կամ ինչ խրախոյս՝ ալեկոծեալ նաւորդի մը՝ ըսելը թէ անգամ մը կար նաւ մը՝ որ ծովուն ալեաց դէմ աներկիւղ կ'արշաւէր, բայց հիմակ ալ կարելի բան չէ նոյն նաւը տեսնալ. կամ ինչ մխիթարութիւն արդեօք կրնայ ըլլալ հոգւոյ մը՝ որ անհամբերութեամբ կը հառաչէ ու կը հիւծի ճշմարտութիւնը ճանչնալու, պատասխան տալ թէ ատեն մը կը գտնուէր եկեղեցի «Սիւն եւ հաստատութիւն ճշմարտութեան», եւ թէ աս ասանկ

ալ. Միայն՝ ցորչափ որ անդամահանելի կեցած էր, այսինքն՝ շատ զարկեր. բայց հիմայ բաժնուած է, ուստի եւ ոչ ալ ճշմարտութեան սիւնն ու հաստատութիւնն է. աւսոր համար կեցէք ուր որ էք, հաւատացէք որչափ որ անիկայ կը հաւատար, եւ կը փրկուիք: Աս է անզգածութիւնը[1]:

Միթէ սուտ՞ր համար Տէրն մեր կ՚աղօթէր որ «Ամէնքն ալ մէկ ըլլան, ինչպէս դուն յիս ես, Հայր, եւ ես՝ ի քեզ. որպէս զի անոնք ալ մեզ ըլլան ի մեզ, եւ աշխարհքս ալ հաւատայ որ դուն զիս խրկեցիր»: Եւ կամ՞ դեռ կը նայի՞ պարգեւք աւելին Պետրոս իր աթոռը. դեռ ի՞նչն է կենդանի երբեմն յաջորդութեան մը կենդանի աղբիւրը. դեռ կը խոստովանի՞ ընդհանուր եկեղեցւոյ ձայնովը թէ «Դու ես Քրիստոս՝ Որդի Աստուծոյ կենդանւոյ», ցայսօր նոյն պատասխանը չէ՞ տրուիր պարգեւք իրեն «Դու ես վէմ, եւ ես աս վէմին վրայ իմ եկեղեցիս պիտ՚որ շինեմ, եւ դժոխոց դռները չկրնան պիտի զանիկա յաղթահարել»: Աս է ուղղափառութիւնը:

«Պետրոս, կ՚ըսէ Ս. Օգոստինոս[2], եկեղեցւոյ ընդհանրութիւնն ու միութիւնը կը ներկայացընէ»: Եւ աս եպիսկոպոսութիւնը՝ որուն կենդանի աղբերականքը Պետրոսի յաջորդին անձն է եւ որուն կեդրոնն անոր աթոռին վրայ է, ուսկից որ աս պատճառաւ ալ կը բղխէ ու նորէն հոն կը դառնայ, կրնայ պարունակել եւ իրօք ալ կը պարունակէ բոլոր աշխարհքս, կը տարածի ամէն ազգաց վրայ՝ առանց ազգի ու լեզուի զանազանութեան, որովհետեւ Սրբոց տուեալ ստորական չեզքիտեր եւ կը միացուցանէ ամէն լեզուները, մինչեւ ցայսօր Պենտեկոստէին շնորհքները պահելով, եւ աս է անհակառակելի ընդհանրութիւն. այսու ամենայնիւ ժողվուած, կարգաւորուած, կեդրոնացած եւ միաւորուած է մէկէ

1 Աս է ամէն աղանդաւորաց հիմնականն սկիզբն ալ. որն որ ուրիշ բան չէ՝ բայց եթէ Կրօնական անտարբերութիւն, եւ որուն մերձաւոր հետեւութիւնն է Անկրօնութիւն:

2 Խօսք ՄՂԵ:

մը՝ որն որ մի եւ նոյն ատեն հովիւ է մանաւանդ հօտի՝ իբրեւ եպիսկոպոսներու եպիսկոպոս, եւ հովիւ ընդհանուր հօտին՝ իբրեւ հովիւ ամէն հաւատացեալներու, եւ աս է ճշմարիտ միութիւն։ Այս կերպով բոլոր եպիսկոպոսութիւնը Պետրոսի ժայռին վրայ հաստատուած է, որով կ՚ըլլայ մէկ եւ անխորտակելի։ Եթէ ասոր մէկ մասը նոյն ժայռէն բաժնես, ալ չըլլար "Մէկ եպիսկոպոսութիւն, որուն մէկ մասն իւրաքանչիւրին տրուած է՝ առանց բոլորին բաժանման"։ Այնպիսի բաժանումը բոլորը կ՚եղծանէ։ Թէ որ միութիւնը վերցուի՝ եպիսկոպոսական իշխանութեան զօրութիւնը, խրախոյսը, ազդեցութիւնը կը վերցուի, տեղ մը չիկրնար կենալ, եւ ոչ ալ շուքը կը մնայ։ Իր հետքը կը ջնջուի, աշխարհային իշխանութիւնք իր պարանոցը ոտքի տակ կ՚առնեն։ Եւ ան ատեն մեծ բան է, եթէ եպիսկոպոսութիւնը, երբ որ աշխարհքս զինքն ամբաստանելու ըլլայ, չաղաղակէ թէ "Ոչ գիտեմ զայրն"[1]. փոխանակ արձագանգ տալու այն մի միայն ձայնին՝ որ դեռ նոյն ժայռէն կը հնչէ. "Դու ես Քրիստոս՝ Որդի Աստուծոյ կենդանւոյ"[2]։ Առ այս "Մի մարմին եւ մի հոգի, մի Տէր եւ մի հաւատ[3]" ի՞նչ կը յաւելցուի. "Մի մկրտութիւն"։ Անոնց՝ որոնք Պետրոսի ժայռին վրայ չեն հիմնուած, աս մկրտութեան միութիւնը ի թողութիւն մեղաց՝ ստուգիւ դժուարին եւ խորհրդական վարդապետութիւն մը պիտի երեւայ, զորն որ պաշտօնասէր միտքերը զանազան եղանակաւ կ՚ուզեն իմանալ, բայց այնպէս՝ որ մէկու մ՚ալ պարտաւորիչ չըլլայ։ Ասկից կ՚երեւայ որ Աստուծոյ ճշմարտութիւնը պարզ վիճաբանական վճռոյ մը դարձընելը՝ իրօք զԱստուած ուրանալ է, մանաւանդ երբ որ իր աշակերտները համարուած էք։

Ասոր հակառակ՝ այս մէկ եւ ճշմարիտ եպիսկոպոսութիւնը հաղորդեցէք որչափներու որ կ՚ուզէք, ինք միշտ իշխանութեան միութիւնը, վարդապետութեան

1 Մատթ. ԻԶ. 72։
2 Մատթ. ԺԶ. 16։
3 Եփես. Դ. 4. 5։

միաբանութիւնը կը պահէ, իր կառավարութիւնը խաղաղ է, քաջալերութիւնն՝ արիական։ Վասն զի՝ իր սկզբան միութիւնը մէկ է, եւ «Բոլոր աշխարհքիս վրայ տարածուած կաթողիկէ եկեղեցին միշտ Քրիստոսի հարսանեաց առագաստը պիտ՚որ ըլլայ»[1]։

Ուրեմն գլխաւորութեան՝ դէպ առ եկեղեցին, իբրեւ առ տեսանելի ընկերութիւն, ունեցած վախճանն ու պաշտօնն է միութեան պահպանութիւնը, որն որ հիմակ այնպէս անարատ կեցած է՝ ինչպէս որ ամէն ժամանակ եւ ամէն տեղ, եւ նոյն եղանակաւ՝ ինչպէս էր Երուսաղէմի մեծ Ժողովրդանոցին կամ Հրէից հին եկեղեցւոյն մէջ, ինչու որ իր հիմնադրութեան աղբիւրը մի միայն է։

Բ. Բայց աս միութիւնն ուրիշ աղնուական միութեան մ՚ալ տակ ինկած է։ Տեառն մերոյ աստուածային մարմինն իր բանական հոգիէն զատ՝ Աստուածութեան յաւիտենական Հոգւոյն բնակարան եղած է. իր խորհրդական մարմինն ալ ունի նաեւ իր հոգին, Հոգին ճշմարտութեան եւ ամենայն ճշմարտութեան առաջնորդը։

Աս արտաքին կազմածքն ունի աւագութիւն մը աստուածային ուսման, եւ մէկ մշտնջենաւոր աւանդ մը իր ձեռքը յանձնուած։ Ասոր համար ալ կ՚ըսէ Տէրն մեր. «Այն փառքը՝ զորն որ ինծի տուիր, տուի անոնց, որպէս զի մէկ ըլլան՝ ինչպէս մենք ալ մէկ ենք։ Ես անոնց մէջ եւ դուն յիս, որպէս զի անոնք ալ ըլլան կատարեալ ի մի, եւ որպէս զի ճանչնայ աշխարհք՝ որ դուն զիս խրկեցիր[2]»։ Ի՞նչ եղանակաւ Հայրն ու Որդին մէկ են. — Հոգւով սրբով՝ որ իրենց սէրն է։ Ի՞նչպէս մէկ է եկեղեցին. — Հոգւով սրբով՝ որ իր մէջը կը բնակի։ Ի՞նչպէս կը յայտնուի աս Հոգւոյն ձայնը. — Նոյն իսկ տեսանելի միութեան միջոցովը, նոյն իսկ վիմին միջոցովը՝ ուստի որ արձագանգ մը կը հնչէ. «Դու

1 Հրամանագիր Քահանայապ. յամի Տեառն 147. Մանուի Ը։ Գելասիոսի եւ 70 եպիսկոպոսաց, 2 Յովհ. ԺԷ. 22. 23։

եւ Քրիստոս՝ Որդի Աստուծոյ կենդանւոյ„: Անոր ձեռքովը, որն որ իր եղբայրքը միշտ պիտի հաստատէ: Անոր ձեռքովը՝ որուն ամենէն աւելի սիրելու հրամանն տրուած է, բովանդակ հօտին հոգն ինքն ունենալուն համար: Պետրոս իր եղբայրքը կը գումարէ. Պետրոս անոնց խորհուրդը կը հարցնէ. Պետրոս անոնց քուէները կը ժողվէ. Պետրոս անոնց ձայնը կը վաւերացնէ: Այսպիսի գործքերով անոնց ընդհանրութիւնը կը ներկայացնէ: Իբրեւ գերագոյն հովիւ, իբրեւ գլուխ պահապան, իբրեւ բանալիներու պաշտօնեայ, ինք ունենալով արձակելու եւ կապելու իշխանութիւնը նաեւ իր եղբարցը վրայ՝ թէ միացեալ եղեր են եւ թէ իրենց այլեւայլ աթոռներուն մէջ ցրուած, ինք ճոխութեամբ կը խօսի, եւ ասով իրենց միութիւնը կը ներկայացնէ: Ընդհանուր ժողովքի մէջ նստելով՝ աշխարհքիս կը յայտնէ թէ եկեղեցին ընդհանուր է: Իր երկնաբերձ գլխանոցէն նոյնպէս կը հրատարակէ թէ ինք մի է[1]:

Թող խօսի Պետրոս, եւ դուք կ'ունենաք հաւատոյ միութիւն, եւ միազգի ու միօրինակ կարգ ուսման եւ խորհուրդներու կարգ մը՝ հոգեւոր կենաց մէկ ծայրէն մէկալ ծայրը, խանձարուրէն մինչեւ գերեզման: Ինք կ'ուսուցանէ թէ մանկունք չեն կրնար ուրիշ կերպ մտնել Աստուծոյ արքայութիւնը՝ բայց եթէ վերստին ծննդեան աւազանովը. աս վարդապետութիւնն իր աշակերտներուն խիստ չ'երեւար: Ինք կը սորվեցնէ միանգամայն թէ աստուածային շնորհքն անգամ մ'որ կորսուի մեղօք՝ մկրտութենէ ետքը, չկրնար ուրիշ կերպ ստացուիլ՝ բայց եթէ ապաշխարութեամբ, եւ թէ միանգամայն նորէն Աստուծոյ արքայութիւնը մտնելու համար՝ ուստի որ դժբախտութեամբ հեռացան, հարկաւոր է իրենց՝ արտասուաց երկրորդ մկրտութիւնը, ան մի միայն տախտակը՝ որն որ ալեկոծութենէ ետքը իրենց մնացած է: Բայց ուր որ Պետրոսի ձայնին ականջ չդրուիր, մկրտութեան վարդապետութիւնը կամ կը

1 Տր. Մէթր, վասն Քահանայապետի:

սորվեցուցի՛ առանց տպաշխատութեան, որով շուտով քար գայթակղութեան կ'ըլլայ, եւ կամ ամենեւին չ'ու-սուցուիր, եւ այսպէս բովանդակ խորհրդոց կարգաւո-րութիւնը կը խանգարի։ Ինք կը սորվեցընէ նաեւ թէ Տէրն մեր հաստատեց ճշմարիտ վարդապետական աւա-դութիւն մը մեղաց թողութեան համար, եւ թէ դրա-մադրին տալով անոնց ճշմարիտ իշխանութիւն իր մար-մինը քահանայագործելու, որ մարդուս համար անպա-տում բարիքներու աղբիւրն է, անհատնում սրբութեան աղբիւր եւ գերբնական սիրոյ գործիք։ Անկից կը հետեւ-ւի որ Ինքն ալ՝ իր վարդապետութիւնը լսողներէն կը պահանջէ որ իրենց ամենէն հաճոյական իղձերն իրենն ընծայեն, եւ երկրիս վրայ հրեշտակային կեանք մ'ան-ցընեն։ Այս ամենայն չսորվեցըներ երկդիմի եւ երկ-բայական կերպով, (ինչպէս կ'ընէ անփեկայ՝ որ իր առա-քելութենէն կ'ամչնայ, եւ անոր համար աւելի կ'ու-զէ ըսածը կերպով մ'ընդունելի ընել՝ քան թէ պաշտ-պանել։) Ինք բացայայտ կը խօսի իր առաջնորդութիւ-ներուն մէջ, եւ զօրաւոր ու հաստատուն են իր հե-տեւութիւնները։ Յիսուսի Քրիստոսի աստուածութե-նէն կը հետեւցընէ անոր Մօրը սրբազան պաշտօնն ու աւագութիւնը սիրոյ թագաւորութեան մէջ։ Անոր ամենասուրբ Հաղորդութեան մէջ իրական ներկայու-թենէն յառաջ կը բերէ թէ սուրբերն անոր հետ կ'ա-պրին ու կը թագաւորեն, մեր աղօթքները կը լսեն ու հրաշքներ կը գործեն։ Աշխարհքս կը լսէ. կը ժպտի, վրան ստութիւններ կը կցկցէ եւ կը թերահաւատի, կը գայթակղի, կը թշնամանէ եւ կը հալածէ։ Բայց ըն-տրեալք կը դառնան եւ կը փրկուին։

Գնացէք մէկ մը անոնց քով՝ որոնք ատեն մը ի Պե-տրոս իրենց վարդապետն եւ ուսուցիչը կը ճանչնային, բայց ետքը պարզ հերձուածով մը կամ բաժնուելով՝ թողուցին զինքն իր ժառանգութեան ստացուածքին մէջ։ Ասոյգ է կը գտնէք հոն ալ սերտ ու ներդաշնակաւոր կարգաւորութիւնը արիութեամբ մը պաշտպանուած,

բայց անբեղմնաւորութեամբ կամ անարգասաւորութեամբ մ'ալ զարնուած. այնպէս որ կրնայ ըսուիլ՝ Եկեղեցի մը փոքրանալու վիճակի մէջ, ինչպէս իրաւամբ կը սահմանէր մէկը։

Գացէք անոնց՝ որոնք մերժեցին զՊետրոս զրպարտելով իբր թէ Աստուածային ճշմարտութիւնն աղաւաղած ըլլայ, եւ թէ Նեռին պէս նստի նոյն Քրիստոսի աթոռին վրայ։ Կը տեսնէք որ աս աստուածային կարգաւորութիւնն իրենց մէջ զանազան կերպով զեղչած, յապաւած է. մէկն՝ աս մասը, մէկալն՝ ան մասը կ'առնէ. ամէնքն ալ ունեցածնին կը բարձրացընեն, չունեցածնին կ'արհամարհեն. բայց ատոյգն ան է՝ որ բովանդակը չեն ճանչնար։ Չկայ ալ անոնց մէջ միաբանութիւն, չկայ եւ ոչ հաւատոյ միութեան ստուեր։ Այլախորհները[1] անթիւ կողմնակցութիւններու կը բաժնուին, որոնցմէ ամէն մէկն ալ ժամանակին յառաջանալովն աւելի մանր կը բաժնուի։ Ու թէպէտ ի սկզբան կը ճանչնային հեղինակութիւն մը, բայց ետքէն նոյնը իւրաքանչիւրքն իրենց վրայ առին, եւ վերջապէս ուրացան ամենայն հեղինակութիւն։ Անկից է որ իբրեւ իրենցմէ անբաժանելի իրաւունք մը կը քարոզեն Ս. Գիրքը մեկնելու ազատութիւնը՝ իւրաքանչիւր իր խելաց համաձայն, եւ անկից մակաբերելու ինչ որ աղէկ կ'երեւայ իրենց առանձնական դատման։ Ասոր հետեւութիւններն աս մեր ազատութեան ու ներողամտութեան դարուն մէջ այնպէս կը հնչեն՝ իբրեւ թէ ամէն մարդ ունի ճշմարիտ իրաւունք իր սեպհական կարծեաց վրայ սեւեռած կենալու, բայց ոչ ոք իրաւունք ունի զանիկայ իր ընկերին առաջարկելու։ Այսպէս ահաւասիկ ամենեւին ճշմարտութեան մը եւ ոչ հետքը կը մնայ։

Այսու ամենայնիւ թէ որ դեռ գտնուելու ըլլար այն Այլախորհներուն մէկ մասը, որոնց մէջ ի սկզբան աւելի մարդկային քաղաքականութիւն մը կար քան թէ հաւատոյ անկեղծութիւն մը՝ թէպէտ մոլորական հա-

1 Dissidentes.

ւատոյ, թէ որ Քրիստոսի խորհրդական թագաւորութեան մէկ գաւառը գտնուէր՝ որուն վրայ Կեսար մը աչք ձգած ըլլար, եւ ըսէր իր սրտին մէջ՝ "Տուէք ինծի Քրիստոսի արքունական գաւազանը եւ ես կ'ըլլամ ամենակարող„. կարծէք թէ ան աշխարհային օրէնքը, ան Կեսարու քաղաքականութիւնը կարող էր արգելել դառն կործանումը, պահել հաւատոյ յաջորդական ժառանգութիւնը, եւ քարոզել իր պարզութեան ու մաքրութեան մէջ: Բայց ո՛հ, աչքերնուդ առջեւն ինչ կ'ելլէ հիմայ. երկդիմի կերպեր, որոնք մասնաւորապէս անանկ շինուած են՝ որ իրենց անորոշ ու տարտամ իմաստներուն համար կարող ըլլան անոնց համաձայնիլ ամէնքը՝ որոնք նոյն խորանին կը ծառայեն. կը գտնէք կարգաւորութիւն մը անանկ գէշ շինուած՝ որ խորհրդոց հաւատացողները կը տանջուին ու կը տագնապին անոնց կէսը միայն պահելու ստիպուած ըլլալնուն համար, իսկ չհաւատացողները կը պարտաւորին իրենց խղճմտանքն անանկ յամարցընելու՝ որ գոնէ խորհրդոց մէկ կէսն ընդունին: Եւ աս ամէն իրենց հաւատոյ սկզբանց մէջ երկու իրարու հակառակ կողմերը, աս Լուտերական-Կալվինական հերետիկոսութեանց՝ կաթողիկէ ճշմարտութիւնները խեղդիչ խրձուկքները կանգուն կեցած են թէ քաղաքական օրէնքներով եւ թէ տէրութեան շահասիրութեամբը, որ ամենեւին խղճմտանք չունի. եւ հաւատոյ ամէն վարդապետութեան վրայ ցուրտ անտարբերութեամբ մը կը նայի, բաղձալով միշտ որ ձեռքը զէնք մ'ունենայ հոգւոց վրայ տիրելու:

Ալ գտնէք, համառօտ ըսելով, կարգաւորութիւն մը՝ աշխարհային վայելմանց վրայ գրուած, եւ մինակ արտաքին շքեղութիւն մը՝ փոխանակ ճշմարիտ հաւատոյ, սուրբ ու երկնային բաղձանքներուն, մահացեալ կենաց, միակ հարսին Քրիստոսի: Եւ երբեք կրնա՞ն այսպիսի կարգաւորութեանց պատշաճիլ Փրկչին խօսքերը թէ "Մէկ ըլլան, ինչպէս մենք ալ մէկ ենք: Ես՝ անոնց մէջ, եւ դուն՝ յիս, որպէս զի միութեան մէջ

կատարեալ ըլլան եւ աշխարհք գիտնայ որ դուն զիս խրկեցիր,,։

Ասկէ կ'ողոքմնէ ինչ է այն դաւանութիւնը՝ զոր որ ի սկզբանէ այնպէս գրուած է եկեղեցին, որ դարէ դար անդադար կը քաջալերէ իր անդամները՝ աշխարհքիս դէմ զինելու, անոր սրտանուէրներն արհամարհելու, մանաւանդ մի կեանքն աղէկ ծախուած համարելու՝ թէ որ հաւատոյ վարդապետութեան մէկ մասը պաշտպանելու համար տրուած ըլլայ, եւ փառաւոր մահ ու մարտիրոսութիւն սեպելու՝ երբ որ աստուածային վարդապետութեան մը եւ խեղճ մասն արեանը կնքուի։ Ուրիշ բան չէ, բայց եթէ սա՝ որ մի միայն հաւատք կայ եկեղեցւոյ աւանդուած, եւ իրեն յանձնուած՝ որ անաւրատ պահէ, քարոզէ, ըստ պատշաճի մեկնեցընէ, անոր բովանդակ կատարեալ եւ հասուն պտուղ հասցընէ, սուրբ Գրոց արգասաւոր վճիռներն ու հանգանօտ յայտարարութիւնները քարոզէ, ներդաշնակէ, մեկնէ, բաշխէ ու բաժնէ, այնպէս որ այր եւ կին եւ տղայ՝ ամէնքն ալ հաւասարապէս կարող ըլլան անկէ իրենց պտուղ քաղել, սուրբերն աս սնունդեանը ամէն եւ աս պտուղներուն զօրութեանը ազդեր առողջ եւ կենդանի մնան։ Նաեւ աս դաւանութեան հոգին ան է՝ որ ինչպէս այն ատեն առաքեալները Տէրն մեր իր առաքելութեանը կ'օգնէր Պետրոսի, առաքեալներուն եւ իրենց պաշտօնէից, այնպէս նաեւ աս ներկայութիւնը մինչեւ պիտի շարունակէ, եւ թէ իր խոստացած Մխիթարիչը՝ չէ թէ միայն մէկ սերնդեան եւ կամ մէկ կամ երկու կամ չորս դարերու պիտ'որ տրուէր եւ վերջէն ետ առնուէր։ Այլ՝ թէ որ Քրիստոս չէր կրնար թողուլ լքանել ան մարմինը (եկեղեցին)՝ ուր կը բնակէր երբ որ դեռ Պետրոս անձամբ անոր կ'առաջնորդէր, նոյնպէս չէր կրնար թողուլ լքանել Ն․ դարուն մէջ, երբ որ Պետրոսի յաջորդներէն մէկն անոր առջի նախագահութիւնն առնուած էր, եւ ոչ ալ Թ․ կամ ԺԲ․ կամ ԺԵ․ նոյնպէս եւ ոչ ԺԹ․ եւ կամ ո՞ր եւ իցէ դարը դարերուն

հաստատուն կը բռնէր իր արտաքին կազմուածքին միութիւնն ու ընդհանրութիւնը, ի ներքուստ ալ գործիք եղած է Հոգւոյն սրբոյ, որն որ իր հաւատքը կը սահմանէ ու կը հրամայէ։

Այլ ոչ ալ ամէն մէկ տէրութիւններուն քաղաքական բաժանումն իր եպիսկոպոսութիւնն ալ նոյնչափ բաժիններու բաժնեց։ Վասն զի թէպէտ եպիսկոպոսութիւնը պատշաճապէս փոքր փոքր կառավարութիւններու բաժնուած է, որոնց ամէն մէկն իր հօտին ցանկապատէն դուրս չիտարածուիր, այսու ամենայնիւ որովհետեւ իր միութեան ու լրութեան մշտնջենաւոր աղբիւրը՝ Պետրոսի աթոռն է, ով որ եպիսկոպոսութեան մէկ մասը կ'ունենար՝ ուրիշ կերպ չէր ունենար զանիկա՝ բայց եթէ առանց ամբողջէն բաժնուելու։ Իր հաւատքն ալ մնաց համազգի եւ կատարեալ, իբրեւ Պետրոսի հաւատքը՝ որ չէր կրնար պակսիլ, ինչու որ մինակ մէկ հովիւ մը ամբողջ հօտը նոյն արօտին մէջ կ'արածէր, որովհետեւ ինչպէս Պետրոս Լեւոնի եւ Աղաթոնի բերնովը խօսած էր, այսպէս նաեւ նոյն Պետրոս Իննովկենտիոսի եւ Պիոսի բերնովը խօսած էր, եւ աս ետքինս նաեւ հիմայ ութհարիւր գաւառներէն իր եղբարցը մի միայն իր աթոռին ուղղուած ձայները ժողվելով՝ իմաստութեամբ զանոնք կը կշռէ, կը ներդաշնակէ եւ այսպէս անոնց մէկ ընդհանուր զօրութիւն մը կու տայ։ Ասոր ով որ ընդհանրական հովուին մարմնէն կը բաժնուի, հերձուածոյ յանցանք կը գործէ. ով որ ընդհանրական հովուին ձայնը կ'անարգէ, հերետիկոսութեան յանցաւոր կ'ըլլայ։ Ս. Կեղեստինոս դատապարտեց զՆեստոր, Ս. Լեւոն՝ զԵւտիքէս, որոնց հերետիկոսութիւնները եկեղեցիէն ալ մերժուեցան, թէպէտ մէջերնին եկեղեցւոյ խորհրդոց ամբողջ կարգաւորութիւնը եւ անհակառակելի եպիսկոպոսական յաջորդութիւն մը կը պահուէր, մէկ քանի ազգեր ալ իրենց կողմն անցած էին եւ քանի մը դարեր տեւեցին։ Աղէկ գիտեմ որ ասոնց հերետիկոսութիւնները, աշ-

խարհքիս տկար աչքովը նայելով, կրնան բնազանցական խակ իմաստակութիւններ երեւալ։ Մանաւանդ թէ իբրեւ հաստատուն կը համարիմ որ Անգղիայի ամենէն պայծառատես եւ կորովամիտ իրաւագէտներէն վեց հոգի եւ ոչ վայրկեան մը կը դանդաղէին վճիռ տալու թէ ան հերետիկոսութիւնները ղուրղ խնդիրներ են, որոնք կրնան անմեղութեամբ պաշտպանուիլ եւ թէ մարդկանց խղճմտանքը՝ երբ որ այսպիսի ոչինչ բաներով կը նեղուին, իրենք իրենցմէ կ'ուզեն պրտուին վրայ սա կամ ծնկակապ փնտռել։ Թող իրենք այնպէս համարին. բայց երբ քահանայապետները նոյն հերետիկոսութիւնները դատապարտեցին, Աստուած ալ նոյները դատապարտեց, անոնց հետքն ալ անցաւ գնաց, հիմայ եւ ոչ մէկ քաղաքական իշխանութիւն մը կը գտնուի՝ որ անոնց վրայ յենուլ մ'ուզենայ։ Ասոր հակառակ՝ Աստուծոյ եկեղեցին իր ճամբան կ'երթայ, եւ Պետրոսի ձայնը դեռ կենդանի է իր մէջը։ Ինք մինչեւ ցայսօր մի եւ նոյն է իր արտաքին կազմուածքին եւ աւելի եւս ներքին դաւանանքին մէջ։

Ինք մինչեւ ցայսօր իրաւունք ունի հնազանդութիւն ու վստահութիւն պահանջելու, վասն զի Պետրոսի աթոռը հոն է, եւ այն ներկայութիւնը՝ որ չէկրնար պակսիլ, այն իշխանութիւնը՝ որ ճշմարտութիւնները կը քարոզէ եւ սուրբեր կը կերպաւորէ, անոր ձայնն իրեն գործիք ըրած է եւ ան ժայռին վրայ կը հանգչի։

լան։ Տեղւոյ տարածութեանց խրապէս բաժնուած՝ մեզ խումբ մեկ մարմին կը կազմեմք։ Ահաւասիկ աս եկեղեցին այսպէս մեկ է եւ մեկ ալ պէտք է ըլլայ, ինչպէս որ Կոստանդնուպոլսոյ առաջին տիեզերական ժողովքն ալ իր Հանգանակին մէջն ասաւ, ըսելով, "Հաւատամք ի մի սուրբ կաթողիկէ եւ առաքելական եկեղեցի," եւ ինքն Քրիստոս ալ չէ թէ բազում՝ այլ մի միայն եկեղեցի հաստատեց, եւ իր աստուածային շրթունքն ալ թափեց "Զի զորդիսն Աստուծոյ զցրուեալսն ժողովեսցէ ի մի"[1]։ Այս ինքն՝ ի հրէից եւ ի հեթանոսաց հաւատացեալներն ի մի եկեղեցի ժողվէ, ինչպէս որ Պօղոս առաքեալ ալ կը գրուցէ "Նա է խաղաղութիւն մեր, որ արար զերկոսեան մի"[2]։ Այս միութիւնը՝ աս եկեղեցւոյն գլխաւոր նշանն է, որուն համար որ իր աստուածային հիմնադիրն այնպէս ջերմ խնդրուածքով իր Հօրը կ՚աղօթէր ու կը յանձնէր[3]։

Բայց աս միութիւնն ինչ բանի մէջ պէտք ըլլայ. — Հաւատոյ մէջ, որով բոլոր աս երեւելի եկեղեցին՝ իբրեւ բարոյական մարմին մը՝ իր երեւելի գլխովը մեկտեղ մի եւ նոյն հաւատքը կը դաւանի ու կը խոստովանի առանց մէկ այլայլութեան, առանց խրթնութեան, պարզ եւ անպատրուակ. այնպէս որ եթէ աս հաւատոյ միութիւնը պակսելու ըլլայ՝ եւ ոչ ալ եկեղեցւոյ միութիւնը կը մնայ, վասն զի՝ "Մի է Տէր, մի հաւատք, մի մկրտութիւն"[4]։ Պօղոս առաքեալ Քրիստոսի եկեղեցին կը նմանցընէ մարմնոյ, որ շատ անդամներէ բաղկացած է, որոնք այնպիսի օգուտով եւ այնպիսի զգածմամբ իրարու կապուած են, որ եթէ մէկ անդամը վշտանայ՝ ամէն անդամներն ալ կը վշտանան, մէկը փառաւորուի՝ ամէնքն ալ կ՚ուրախանան։ "Եթէ վշտանայ ինչ մի անդամն, կ՚ըսէ, վշտանան ամենայն անդամքն ընդ նմա. եւ եթէ փառաւորի մի անդամն, խնդան ամենայն անդամքն

1 Յովհ. ԺԱ. 52։
2 Եփես. Բ. 14։
3 Զի եղիցին մի՝ որպէս եւ մեք մի եմք։ Յովհ. ԺԷ. 11։
4 Եփես. Դ. 5։

ընդ նմա,,. եւ կ'աւելցընէ "Այլ դուք մարմին Քրիստոսի էք եւ անդամք յանդամոց նորա,,[1]. ուստի կը հետեւի ուրեմն որ եկեղեցւոյ, Քրիստոսի մարմնոյն, անդամներն ալ հարկ է որ իրարու եւ իրենց գլխոյն հետ փոփոխակի սէր ու հոգւոյ կապ մ'ունենան[2]: Ասիկայ առանձին կերպով մը պէտ'որ ըլլայ Ս. Խորհրդոց հաղորդակցութեան մէջ, այնպէս որ ամենայն հաւատացեալք մի եւ նոյն աստուածային խորհրդոց հաղորդակցութեամբ իրարու հետ կապուին: "Մի մարմին եմք բազումքս, կ'ըսէ Պօղոս առաքեալ, զի ամենեքին ի միոջէ հացէ անտի (ի մարմնոյ եւ յարենէ Տեառն) վայելեմք,,[3]: Ահաւասիկ կրկին միութիւնն ասոր մէջ կը տեսնուի, միութիւն հաւատոյ՝ երբ որ մի եւ նոյն հաւատքն ունինք առ սուրբ խորհուրդն մարմնոյն Քրիստոսի, եւ միութիւն հաղորդութեան՝ երբոր միաբան եւ միախորհուրդ կը մերձենանք առ մի եւ նոյն խորհուրդն, ինչպէս ինք Պօղոս առաքեալ յայտնի կը մեկնէ իր միտքը Հրէից օրինակաւը՝ որոնք զոհից միսն ուտելով՝ սեղանին հաղորդ կը համարուէին. "Ո՞չ ապաքէն որ ուտեն ի զոհիցն, հաղորդք են սեղանոյն,,[4]:

Արդ ըսածներնէս յայտնի կը տեսնուի որ գլխաւոր միութեան կացուցիչն ան է՝ որ հաւատացեալները մի եւ նոյն հաւատքն ունենան: Վասն զի, ինչպէս Ս.

1 Ա. Կոր. ԺԲ. 26. 27:

2 Ասոր համաձայն կ'ուսուցանէ նաեւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ. "Նոյնին միաբանութեամբ (հաւատոյ) ընդունելին անդամքն ի միմեանց զօգնութիւն առ շինութիւն իւրաքանչիւր կարգի: Եւ ամենայն որ պակսի ի փոխանակութիւնս հասարակաց եւ ի սուրբ վարուցն, ոչ միայն հրաժեշտ լինի յերանութենէ անտի, այլ եւ ի պատիժ մտանի, որպէս անդամ է մարմնոյ հատեալ՝ անպիտան լինի, եւ կամ ոստ ի ծառոյ կտրեալ ի հուր,,: Յաճախապատ. Եր. 114: — Աստուած մի է, եւ Քրիստոս՝ մի, եւ մի՝ նորա եկեղեցի, եւ հաւատք՝ մի, եւ ժողովուրդ՝ մի, ի մի ողջոյն միութիւն մարմնոյ՝ խաղաղութեանն զօդիւ կապեալ: Չմարթի միութեանն հերձուլ եւ ոչ միայն մարմնոյ յօդուածս անդամոցն հատանել բաժանել, կամ ազեացն խլեալ պատառ պատառ կատարել: Որ ի բունն արմատոյ անտի քակի ինչ՝ ուրոյն կենդանի չկարէ մնալ, չմարթի շաւիղ եւ ոչ ի կրել, եւ զհաստատութիւն փրկութեանն կորուսանէ,,: Ս. Կիպր. Գիրք վասն միութ. Եկեղ:

3 Ա. Կոր. Ժ. 17:

4 Անդ. 18:

Ամբրոսիոս կ'ըսէ, “Հաւատք են հիմն եկեղեցւոյ„[1]: Մէկ հիմ մը՝ մինակ մէկ շինուածք կրնայ բռնել, արդ թէ որ հաւատքը մէկ է՝ ըստ առաքելոյն, ուրեմն եկեղեցւոյ շինուածքն ալ մէկ պէտք է որ ըլլայ: Ուստի նաեւ Կիւրիոս ալ իր մահուընէն յառաջ եկեղեցւոյ միութեան համար Հօրը աղաչած ատեն, չէ թէ մինակ առաքելոց համար՝ այլ նաեւ անոնց ամենուն համար կ'աղաչէր, որոնք իրեն հաւատալով՝ նոյն հաւատոյ միութեամբ՝ աս մի միայն իր եկեղեցին պիտի կանգնէին: “Այլ ոչ վասն նոցա միայն աղաչեմ. այլ եւ վասն ամենայն հաւատացելոց բանիւն նոցա յիս. զի ամենեքին մի իցեն, որպէս դու, Հայր, յիս, եւ ես ի քեզ, զի եւ նոքա ի մեզ իցեն„[2]: Ասոր համաձայն եւ իր առաքեալը Պօղոս Եփեսացւոց կը գրէր. “Մինչեւ հասցուք ամենեքեան ի մի միաբանութիւն հաւատոյ, եւ գիտութեան Որդւոյն Աստուծոյ . . . : Զի մի յայսմ հետէ իցեմք տղայք խռովեալք եւ տատանեալք յամենայն հողմոյ վարդապետութեան„[3]: — Աս հաւատոյ միութեան համար եկեղեցին մի կ'անուանէին սուրբ Հարք. Տերտուղիանոս իր Կանխագրութեանց մէջ բովանդակ տիեզերաց երեսը ցրուած ամէն եկեղեցիները մէկանց ասոր համար միայն մէկ կը կոչէ՝ վասն զի ամէնքն ալ մի եւ նոյն հաւատքն ունենալով՝ “Ամէնքն ալ մէկ միութիւն կը ցուցնեն„: Ասոր համաձայն կը գրէ Եւթիմիոս. “Թէ տեղերու նայելու ըլլաս, կ'ըսէ, շատ են եկեղեցիները. Եթէ նկատէք ու հաւատոյ հաղորդակցութեան, ուր որ ըլլան՝ ամէն եկեղեցիք մէկ հաւատացելոց եկեղեցի մը կը կացուցանեն„[4]:

Աս էր առաքելոց գաղափարը եկեղեցւոյ վրայ, ինչպէս տեսանք. աս էր եւ է նաեւ սրբոց Հարց եւ եկեղեցւոյ վարդապետութիւնը: Նոյն իսկ բնական օրինաց մէջ՝ որո՞վ կը զանազանէին որդիք Աստուծոյ յորդւոց մարդկան: — Միայն հաւատքով, եւ նոյն հա-

1 Գիրք Ա. վասն մարդեգ. Գլ. 5:
2 Յովհ. ԺԷ. 20:
3 Եփես. Դ. 13. 14:
4 Ի Սաղմ. ՁԸ:

ւատքով յուսալով յԱստուած. «Նա (Սէթ) յուսա-
ցաւ կոչել զանուն Տեառն Աստուծոյ»[1]: Նոյն սա Աս-
տուծոյ որդիքներէն էին, որ համաշխարհական ջրհեղե-
ղէն ազատեցան՝ Նոյեան տապանին՝ եկեղեցւոյ օրինակին
մէջ[2]: Նոյն սոյն՝ Նոր օրինաց մէջ կրնայ՝ պատերք մէկը
զինքը մէկ հօր՝ երկնաւոր Հօր[3], եւ մէկ մօր՝ Հարսին
Քրիստոսի՝ եկեղեցւոյ որդի անուանել, որն որ ի Հօրէ
յայտնուած եւ յեկեղեցւոյ մեր գթած մօրմէն առաջ-
նորդուած ճշմարտութիւններուն մէջ անհամաձայն կը
գտնուի, զոմանս չընդունիր եւ զոմանս կը զեղչէ ու կը
մերժէ, ինչպէս՝ որ կ'ուզէ՝ «Խոստովանել եւ ուսուցանել
յամենայն հոգւոց վարդապետութեան»: Նոր համոզ
էր՝ որ նաեւ առաքելաշնորհ Ս. Գրիգոր մեր Լուսա-
ւորիչը անգէն խնկըսն իր ժողովուրդը կը զգուշացնէր
չանսալ ամենայն հոգւոց վարդապետութեան, այլ «Ո-
ղջը մեծքահանո-Ռնդ հաւատոյ», ունենալ. «զի նորա հաւա-
տոյն (հաւատացեալքն) ի մի կամս Քրիստոսի եւ ի
մի հաւատ»[4]: Նա որն է սա հաւատքը: — Այն հա-
ւատքն եկեղեցւոյ, որ Պետրոսի վիմին վրայ հաստա-
տուած է, ինչպէս որ ինքն իր վարդապետութեան մէջ
քիչ մը առաջ կը զգուշացնէ, թէ «Տէրն յաւետարանին առ
Պետրոս ասաց. Դու ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի
շինեցից զեկեղեցի իմ, այս ինքն՝ զհաւատացեալ ժողո-
վուրդն Աստուծոյ (որուն մէկ մասն ալ իր ժողովուրդն
էր). եւ դրունք դժոխոց զնոսա մի յաղթահարեսցեն,
զարձակեալսն յերկրէ սուրբս եւ արդարս ճշմարիտ հա-
ւատով յերկինս, եւ զոր կապիցես յերկրի զանօրէնս
եւ զանիրաւս եւ զայլահաւատս՝ եղիցին կապեալ յեր-
կինս ի պատիժս սպառնալեացն»[5]: Արդ յայտնի է, մե-
կնութեան կարօտ չէ, թէ մեր նախահայրը Ս. Գրիգոր

1 Ծնն. Դ. 26:
2 Թէ կարող ոք ապրել որ ար-
տաքոյ տապանին Նոյի էր, ապա
եւ որ արտաքս քան զեկեղեցի ի-
ցէ, ապրի: Ս. Կիպր. Գիրք վասն
միութ. Եկեղ.:
3 Զմիթէ հայր զԱստուած ու-
նել՝ որոյ մայր չէ եկեղեցի: Ս.
Կիպր. Գիրք վասն միութ. Եկեղ.:
4 Յաճախապ. էջ 118:
5 Անդ. էջ 163:

անսուրբ եւ անիրաւ կ'անուանէ զանոնք ամէնքը՝ որոնք սուրբ Պետրոսէն ու իր յաջորդներէն կապուած են, եւ դարձեալ անսուրբ ու անիրաւ կը կոչէ զանոնք՝ որոնք այլադաւանող են ; այսինքն ուրիշ բան կամ ուրիշ կերպ կը հաւատան, քան զոր կը հաւատայ Ս. Պետրոս հիմն եկեղեցւոյ եւ իր աթոռը...:

Եկեղեցւոյ միութեան հարկաւոր է նաեւ միութիւն սիրոյ եւ հաղորդակցութեան: — Ուր հաւատացելոց մէջ հերձուած կայ, հոն հաւատոյ միութիւնը մեծ վտանգի մէջ ինկած է: «Քանզի չէ մարթ, կ'ըսէ Ս. Օգոստինոս, պառակտման եւ հերձուածոյ լինել, եթէ ոչ զատալ կամ զայլակերպ ինչ իրաց զհետ երթիցեն այնոքիկ՝ որք զհերձուածսն առնիցեն»[1]: Ուստի եւ ասոր համար Պօղոս առաքեալ մեծապէս կը յորդորէ եւ կ'աղաչէ. «Աղաչեմ զձեզ... փութալ պահել զմիաբանութիւն հոգւոյն յօդիւ խաղաղութեան»[2]. եւ Փիլիպեցւոց կը պատուիրէ. «Զնոյն խորհեսջիք, զնոյն սէր յանձին ունիջիք, համաշունչք միախորհուրդք»[3]: — Այս սիրոյ եւ հաղորդակցութեան միաբանութիւնը կամ միութիւնը այնչափ հարկաւոր բան է եկեղեցւոյ, որ մինչեւ հերետիկոսներն անգամ՝ զանիկայ եկեղեցւոյ կարեւոր կը համարին:

Բայց սրբոց Հարց եւ եկեղեցւոյ ուզած սիրոյ ու հաղորդակցութեան միութիւնը՝ չէ այն սէրը, որով մենք իրար պէտք սիրենք իբրեւ մարդ. (ինչու որ այսպիսի սիրով պէտք ենք կապուիլ նաեւ հրէին, անհաւատին եւ հեթանոսին հետ. եւ ոչ ալ մէկը՝ եթէ աս սէրը չունենայ՝ եկեղեցւոյ միութենէ բաժնուած կ'ըլլայ.) այլ այն քրիստոնէից իրարու հետ առանձին սէրն ու հաղորդակցութիւնը, որով հաւատացեալք՝ իրենց հովիւներուն ու եպիսկոպոսներուն հետ, եւ սոնք՝ իրարու եւ եկեղեցւոյ գլխոյն սրբոյն Պետրոսի աթոռին, միութեան կեդրոնին հետ կը կապուին հաւատոյ մի

1 Ս. Օգոստ. Գիրք Բ. առ Կրեսկոնիոս:
2 Եփես. Դ. 3:
3 Փիլիպ. Բ. 2:

եւ նոյն վարդապետութեան, սիրոյ ու սուրբ խորհրդոց հաղորդակցութեան եւ խաղաղութեան կապովը: Ըս հոգւով է որ Պօղոս առաքեալ կը գրէ Կորնթացւոց. "Աղաչեմ զձեզ, եղբարք, անուամբն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զի զնոյն բան ունիցիք ամենեքեան. եւ մի լիցին ի ձեզ հերձուածք. քանզի էիք հաստատեալք ի նոյն միտս եւ ի նոյն հանճար,,[1]: Նոյն Տերտուղիանոս կ'ըսէ. "Մը հաղորդինք առաքելական եկեղեցիներուն հետ, որ հաւատոյ վարդապետութեան մէջ տարբերութիւն մը չունինք,,: (Ի կանխագր:) Ուրեմն նաեւ Տերտուղիանոսի ատեն առաքելական եկեղեցիներուն հետ ալ հաղորդակցութիւն չէր ըլլար, թէ որ հաւատոյ տարբերութիւն մը գտնուէր:

Ըասծներնէս յայտնի կը տեսնուի որ աս հաւատոյ ու հաղորդակցութեան միութիւնները հարկաւոր են Քրիստոսի ճշմարիտ եկեղեցւոյն եւ իր ամէն մէկ անդամներուն միութեան, այնպէս որ եթէ մէկը ասոնցմէ մէկէն կամ մէկալէն զրկուած ըլլայ, ճշմարիտ եկեղեցւոյ մէջ չիկրնար համարուիլ: Նոյն ասկից կը հետեւի նաեւ որ երկու բան գլխաւորաբար զմարդիկ եկեղեցիէն դուրս կը հանէ, հերետիկոսութիւն՝ որով կը բարձուի հաւատոյ միութիւնը, եւ հերձուած՝ որով սիրոյ ու հաղորդակցութեան միութիւնը կը կտրուի:

Արդ՝ մեր աստուածային Փրկիչն աս երկու չարեաց առջեւն առնելու եւ իր եկեղեցւոյն միութիւնն անսասան պահելու միջոց՝ դրաւ բովանդակ իր եկեղեցւոյն համար զՍ. Պետրոս եւ անոր յաջորդները այնպիսի վէմ ու հիմ մը՝ որ իր եկեղեցին այն միայն ըլլայ ու սեպուի, որն որ աս հիմանն վրայ շինուած ու յարած է. ուստի եւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ աղէկ տեսնելով աստ ճշմարտութիւնը՝ համարձակ կը քարոզէ. "Զայս, կ'ըսէ, զնա (զՊետրոս) հիմն հաստատութեան ամենայն եկեղեցեաց,,[2]. եւ Ս. Ամբրոսիոս Քրիստոսի այն խօսքը մտածելով՝ որ ըսաւ Պետրոսի, Թէ Դու ես վէմ եւ ի վերայ

1 Ա. Կոր. Ա. 10:

2 Ագաթ. տպ. Վենետ. էջ 340:

այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, կ'աղաղակէ. Այդ ուր Պե-տրոսն է, (նոյնը պէտք է ըսել իր յաջորդներուն համար ալ, որոնց անձին վրայ Պետրոս կենդանի է,) անդ եկե-ղեցի։ Այսպէս ուրեմն ըստ Ս. Լուսաւորչին ամենայն եկե-ղեցիք չունին հաստատութիւն, թէ որ Պետրոսի հիման վրայ չեն յենած, եւ ըստ Ս. Ամբրոսիոսի՝ ուր Պետրոս չ'ընդունուիր՝ հոն չէ Քրիստոսի եկեղեցին։ Ասիկայ կ'ակնարկէ նաեւ Ս. Յակոբ Մծբնայ հայրապետը երբ որ կ'ըսէ. "Շմաւոն՝ որ վէմն կոչեցաւ, վասն հաւատոց իւրոց, կոչեցաւ նա վէմ ճշմարիտ,,[1]. եւ դարձեալ ա-ւելի բացայայտ "Շմաւոն գլուխն աշակերտաց . . . (ի-բրեւ) լուաց զմեղս իւր արտասուօք լալոյ իւրոյ՝ ընկա-լաւ զնա Տէր. եւ արար զնա հիմն, եւ կոչեաց զնա վէմ շինուածոյ եկեղեցւոյ,,[2]։

Աս միութեան հարկաւորութեան վրայ ոչ ոք կրնայ տարակուսիլ, ուստի եւ ով որ աս միութիւնը կը մերժէ, չէ թէ միայն Հռոմայ Քահանայապետէն կը բաժնուի, այլ նաեւ ասով կը մերժէ նոյն իսկ հիմը՝ Պետրոսի աթոռը, որուն վրայ Քրիստոս իր եկեղեցին դրաւ. եւ այսպէս կը բաժնուի Քրիստոսի ճշմարիտ եկեղեցիէն եւ նոյն իսկ կաթողիկէ միութենէ ու հա-ղորդակցութենէ։ Ասոր ճիշդ օրինակն ունինք եկեղե-ցւոյ հին ժամանակները, երբոր Ս. Իրենէոս՝ Բ. դարուն վերջերը զատկական խնդրոյն պատճառաւ Ասիացւոց ու Վիկտոր Քահանայապետին մէջ եղած վէճը դադրե-ցընելու միջնորդ եղած էր, կ'աղաչէր Քահանայապե-

1 Ս. Յակ. Մծբն. Ճառ Ա. վասն հաւատոյ։ — Այսպէս նաեւ Ս. Յովհ. Ոսկ. զՍ. Պետրոս "Հիմն եկեղեցւոյ,, կը կոչէ։ Մեկն. Մատթ. Ճառ Դ։

2 Մծբն. Ճառ Է. վասն ապաշխարութեան։ Այսպէս կը խօսի նաեւ Ս. Յովհ. Ոսկ. "Եւ յորժամ Պետրոսն ասեմ՝ զվէմն ասեմ զան-խախտելի, զհիմն զանշարժ, զա-ռաքելոյն զմեծ, զառաջին աշակեր-տացն, զառաջին կոչեցեալն եւ զա-ռաջին հնազանդեալ,,։ Վասն ողջախ. Գ։ Դարձեալ ուրիշ տեղ կը գրէ. "Պետրոս յետ զժնդակ ուրացու-թեանն, զի իսկ եւ իսկ զյանցանսն յիշեաց, եւ մինչ չեւ ուրուք յան-դիմանեալ՝ խոստովան զմեղսն եղեւ եւ լալով դառնապէս, այնպէս ջըն-ջեաց զուրացութիւնն ի բաց՝ մինչ զի առաջին իսկ առաքելոցն լինել եւ զհամօրէն տիեզերս աւանդել յանձն,,։ Ընդդ. Հրէից։

ավին, որ բանադրանաց տակ չձգէ զԱսիացիները, որպէս զի բոլորովին ընդհանուր եկեղեցւոյ մարմնէն արմատաքի չըլլէ այնչափ բազմաթիւ եկեղեցիները՝ աւանդութեան մը պահպանութեան համար, որ հին սովորութեամբ իրենց մէջ կը կատարուէր[1]: Այսպէս նաեւ նոյն հին ժամանակները՝ երբ որ տարակոյս մը կ'ելլէր՝ թէ մէկն ընդհանուր եկեղեցւոյ մարմնոյն մէջն է, կամ թէ կաթուղիկէ միութեան ու հաղորդակցութեան մէջ կը գտնուի, միշտ սա կանոնը պահուելով՝ կը քննուէր թէ արդեօք Հռոմի աթոռին հետ կը հաղորդակցի, թէ ոչ: Սատիրոս Ս. Ամբրոսիոսի եղբայրը երբ որ տեղ մը խրկուած ատեն՝ կ'ուզէր գիտնալ թէ նոյն տեղւոյն եպիսկոպոսը կաթողիկեա՞յ է՝ թէ չէ, կը հարցնէր թէ Հռոմայ եկեղեցւոյն հետ հաղորդակցութեան մէջ է, թէ չէ[2]: — Արեւելեան եկեղեցւոյն մէկ մասը, այս ինքն Կոստանդնուպոլսոյ Ակակիոս պատրիարքին կողմնակիցները՝ որ Եւտիքականաց կողմն անցած ըլլալնուն համար՝ Հռոմայի աթոռը զիրենք եկեղեցւոյ միութենէն կտրած էր, անոր մահուանէն ետքը թախանձանօք կ'աղաչէին Հռոմայ քահանայապետին որ զիրենք դարձեալ ի հաղորդութիւն ընդունի, որպէս զի նորէն կաթողիկէ եկեղեցւոյն կամ միութեան մէջ գտնուին:

“Նոյնպէս Յովհաննէս Կոստանդնուպոլսոյ պատրիարքը Որմիզդաս Քահանայապետին գրած թղթին մէջ յայտնապէս կ'ըսէր թէ “Առաքելական (Հռոմայ) աթոռին վրայ միշտ անեղծ պահուած է կաթողիկէ կրօնը”. եւ դարձեալ թէ “Ամէն բանի մէջ առաքելական աթոռին հետեւելով, կը քարոզենք զայն ամենայն՝ որ անկից վճռուած է, եւ ասոր համար կը յուսամ որ ձեզի հետ մի եւ նոյն հաղորդակցութեան մէջ ըլլամ, զորն որ կը քարոզէ առաքելական աթոռը՝ որուն մէջ կրօնի ամբողջ ու կատարեալ ամրութիւնն է, խոստա-

1 Ne tam multas Ecclesias omnino propter traditionis ex antiqua consuetudine inter illos usurpata observationem, a corpore universae ecclesiae penitus amputaret. *Euseb. Lib. V. Hist. Eccles.*

2 Ս. Ամբր. Գիրք. Ա. 47:

նարով որ անկից ետեւ ալ չկրկնէին եկեղեցին մեր-ժուածներուն անունները, այս ինքն՝ անոնց ամենուն անունները, որոնք ամէն բանի մէջ չէին համաձայնիր առա-քելական աւանդին, սուրբ խորհրդոց մէջ պիտի չյիշատա-կուէին...։ Եւ դաւանութեան ստորագրեցի իմ ձեռ-քովս, եւ գրով ուղղեցի քեզի՝ Սրբազան սուրբ ու ե-րանելի եղբօր՝ մեծին Հռոմայ Քահանայապետութեանդ„[1]։

Նոյն իմաստով եւ եղանակաւ կը գրեր նաեւ Փոքր Թէոդոս կայսրը՝ Ակակիոսի եւ ուրիշ եպիսկոպոսնե-րուն եւ պատրիարքներուն, ինչպէս Եփեսոսի ժո-ղովքին մէջ կը յիշատակուի, որով յայտնի կ'երեւայ որ նոյն խսկ արեւելեան եկեղեցին՝ Հռոմէական հա-ւատքը, հաղորդակցութիւնն ու եկեղեցին կ'անուանէր ու կ'իմանար կաթողիկէ հաւատք, հաղորդակցութիւն ու եկեղեցի։

Նոյնպէս աւանդած է նաեւ մեզի Ս. Գրիգոր Լուսաւորիչ, եւ այս հաւատքն ու դաւանութիւնն է՝ որ Հայաստանեայց եկեղեցին կը խոստովանի՝ երբ որ ի պատիւ Ս. Պետրոսի իր եկեղեցական պաշտամանց մէջ հանդիսիւ կ'երգէ. «Վէմ անվանելի է դրանց դժոխոց„[2]. ուր Քրիստոսի իր եկեղեցւոյն շնորհած անյաղթելիու-թիւնը Պետրոսի ընծայելով՝ զեկեղեցին եւ զՊետրոս իբրեւ թէ մի եւ նոյն կը խոստովանի։

Այսչափ հաստատուն էր այս հաւատքը եկեղեցւոյ մէջ, վասն զի այսպէս նոյն ինքն Քրիստոս սահմանած էր, եւ այսպէս ալ աւետարանը մեզի կ'աւանդէ ան երեք ստեղծիչ ու հիմնադրիչ խօսքերուն մէջ, զորոնք Քրիստոս ըսաւ Պետրոսի. «Դու ես վէմ եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ...։ Եւ դու երբեմն դարձցիս եւ հաստատեսցես զեղբարս քո...„։ Եւ դար-ձեալ երեք անգամ, «Արածեա՛ զգառինս իմ, արածեա՛ զոչխարս իմ„. զորոնք մի առ մի մեկնելն ու բացատրե-

1 Թուղթ Յովհաննու Պատրի-արքի Կոստանդնուպոլսոյ առ Որ-միզդաս Քահանայապետ։

2 Շարական, Օրհնութիւն Գըլ-խաւոր Առաքելոցն Պետրոսի եւ Պաւղոսի։

ըլ՝ ուրիշ տեղւոյ եւ ժամանակի պահելով, կը յիշենք միայն Յունաց եկեղեցւոյն ամենէն հռչակաւոր սուրբ Հօրը, սրբոյն Ոսկեբերանի, մէկ քանի խօսքերը, որ կ'ըսէ. «Պետրոս չէ թէ նոյն աթոռին (Երուսաղէմի), այլ ընդհանուր տիեզերաց ի Քրիստոսէ վարդապետ դրուեցաւ[1]». Եւ դարձեալ Անտիոքայ եկեղեցւոյն կողմանէ կը գրուցէ. «Չունինք քովերնիս Պետրոսի մարմինը, այլ Պետրոսի հաւատքը՝ իբրեւ զՊետրոս կը պահենք, վասն զի երբ որ Պետրոսի հաւատքը կը պահենք, զինքն զՊետրոս կ'ունենանք[2]»։ Եւ կը կնքենք խօսքերնիս նոյն արեւելեան եկեղեցւոյն ուրիշ հնագոյն ու հռչակաւոր մէկ սուրբ Հօր գեղեցիկ խօսքերովը, որով Հին Հռոմայ անեղծ հաւատքը՝ Նոր Հռոմին (Կոստանդնուպոլսոյ) վրայ բարձրացընելով, կ'երգէր այսպէս.

Վաղուց էր ուղիղ հաւատք Հռոմայ հնոյն,
Եւ արդ իսկ ուղիղ կայ տեւէ հանգոյն,
Զօդելով զվայրսն ի բան կենարար
Յորս հայի արեւ յիւր մտանս ի խոնարհ,
Որպէս է վայել նմին եւ արժան
Որ գահերէց կայ համաշխարհական,
Երկիր պագանէ նա աստուածեղէն
Միաբանութեան ողջ եւ համօրէն[3]:

1 Ս. Յովհ. Ոսկեբեր. Մեկն. Յովհ. ճառ ՁԸ:
2 Անդ. Յարձանագր. Գործոց Բ:
3 Ս. Գրիգ. Նազիանզ. Կոստանդ. Եպիսկոպոսաց. Երգ վասն կենաց իւրոց:

# ՀԱՏՈՒԱԾ Դ.

## Գլխաւորութեան իշխանութիւնը։

Մինչեւ հիմա տեսանք թէ Աստուած աս գլխաւորութիւնն ան վախճանաւ հաստատեց, որպէս զի միութիւնը պահպանուի իր խորհրդաւոր մարմնոյն մէջ, թէ՛ իբրեւ ընդարձակ տեսանելի ընկերութեան մէջ եւ թէ՛ իբրեւ հաւատոյ ընդարձակ հոգեւոր կարգադրութեան մէջ. համառօտ ըսելու համար՝ իր վախճանն էր հաղորդակցութեան եւ հաւատոյ միութեան անարատ պահպանութիւնը։ Իր աստուածային անձէն՝ որ Աստուած եւ մարդ էր, ծագեցաւ տեսանելի ընկերութիւնն ու հաւատքը՝ որ այն ընկերութեան կենդանութիւն կու տայ։ Բայց հոգւոյ եւ մարմնոյ կրկին միութիւնները հաստատուն ու ամբողջ պահելու համար, կ'ընտրէր մարդ մը՝ որն որ գալու դարերուն մէջ մշտնջենապէս իր աստուածային անձը պիտի ներկայացընէր, եւ որն որ իրեն նկարագիրը վրան առած՝ չէ թէ պարզապէս եկեղեցին կառավարելու հարկաւոր իշխանութիւններուն մշտնջենաւոր աղբիւր պիտ'որ ըլլար, այլ մանաւանդ անոր հաւատքը յայտնող կենդանի բարբառ մը։

Այսպիսի պաշտօնի ընտրուած մարդը՝ Պետրոսն էր, եւ ինչ որ Պետրոս առաքելական ծերակուտին մէջն եղած էր, իր ամէն յաջորդները նոյնն եղան եւ միշտ պիտ'որ ըլլան եպիսկոպոսութեան մարմնոյն կամ բովանդակութեան մէջ, որուն իւրաքանչիւր մասն ամէն մէկին տրուած է, առանց ամբողջը բաժանելու։

Այն նպատակը՝ որուն համար աս գլխաւորութիւնը տրուեցաւ, ըստ ինքեան կը մղէ զմեզ իր իշխանութեան բնութիւնը քննելու. եւ ասիկա նկատելով՝ կը տեսնենք որ տիեզերական, անընդմիջական եւ գերագոյն իրաւասութիւն մըն է։

Բայց ասիկա ի՞նչ եղանակաւ տրուեցաւ։ Այնպի-

սի եղանակաւ՝ որ մեր Փրկչին հասարակ գործելու եւ սովորցընելու եղանակէն տարբեր չէ։ Եւ իր սովորութիւնն ան չէ՞ մի արդեօք որ իր բոլոր առակները կամ պարզեւները ծանրակշիռ ու խորին իմաստներով լեցուն քիչ խօսքերու մէջ ամփոփէ, զորոնք մեկնելու՝ եւ ոչ դարեր բաւական են։ Ի՞նչ են իր առակները՝ եթէ ոչ մէյ մէկ նկարներ, որոնց ամէն մէկը մանրանկարի ու փոքր միջոցի մէջ կը ներկայացընէ մեզի իր Թագաւորութեան ուղղութիւնը, իր շնորհաց ներգործութիւնը եւ իր եկեղեցւոյն բախտը։ Կ'երեւայ. որ Քրիստոս իր խօսքերուն մէջ, որոնք մարդկային խորհրդոց հաղորդակցութեան նուազ միջոցներն են, հաճեցաւ կրկնել այն հրաշքները՝ զորոնք բնութեան մէջ կը գործէր, երբոր աչքին ցանցակերպին վրայ անհամար ու տեսակ տեսակ լեռներ ու դաշտեր եւ ամէն մէկ առարկաներն իրենց պատշաճաւոր համեմատութեամբը նկարեց՝ իրենց գոյնն ու ձեւը այսպիսի անձուկ կէտի մը մէջ պահելով։

Ամենէն հին մարգարէութեան մէջ ինք իր բովանդակ յայտնութիւնը մարդկան համառօտեց, թէ ո՛րչափ եւ ինչ պիտ'որ ըներ եւ թէ ո՛րչափ դեռ կը մնայ կատարուելու մինչեւ "նորոգութիւն ամենայնի", երբոր հրատարակեց թէ կնոջ մը զաւակը՝ օձին գլուխը պիտի ջախջախէ. ուստի եւ անկից ետքը եկած ամէն մարգարէութիւններն ուրիշ բան չէին՝ բայց եթէ ասոր բացատրութիւնը։ Այսպէս նաեւ իր խորհրդաւոր մարմնոյն ստեղծման ատենը մէկ խօսքով յառաջ բերաւ թէ այն անձը՝ որ զանիկա պիտի կառավարէր, եւ թէ իր մշտընջենաւոր կառավարութեան ուղղութիւնը։ Եւ ստուգիւ՝ ի սկզբան խոստանալով մ'ըստ Պետրոսին. "Դու ես վէմ, եւ աս վիմին վրայ ես իմ եկեղեցիս պիտի շինեմ, եւ դժոխոց դռները զանիկա պիտի չյաղթահարեն. եւ ես քեզի երկնից արքայութեան բանալիները պիտի տամ". իսկ ետքը խոստմունքը կատարելով՝ ըսաւ. "Արածէ իմ գառնուկներս, իմ ոչխարներուս հովիւ եղիր, արածէ իմ ոչխարներս"։ Այս էր Առաջին

ձայնը, որ մէկ խօսքի մէջ իր բոլոր գործողութիւնները կ'ամփոփէ, վասն զի ասիկա իր եկեղեցւոյն բոլոր կազմուածքը յարդարեց։ Պապերն իրաւամբ յաջորդելով՝ աս խօսքերուն արժէքին վրայ նոր լոյս պիտ՚որ ծագէին։ Ժամանակը դեռ բոլորովին չըլուծեց մեզի առջի մարդարէութիւնը, եւ ոչ ալ դեռ լման մեզի թէ որչափ բան կը պարունակուի Պետրոսին ըսուած խօսքերուն մէջ։

Նոյնպէս նախ եւ առաջին՝ գլխաւորութիւնը կ'ամփոփէր իր մէջը գերեպիսկոպոսութիւնը, այնպէս որ թէ մետրապոլիտներուն, թէ նախապահներուն եւ թէ պատրիարքներուն առաւելութիւններն ուրիշ բան չէին՝ բայց եթէ բխում մը ան ակունքէն, ուսկից որ վտակներ կը յառաջանան՝ հարկաւորութեան պահանջածին համեմայն՝ երբեմն մեծ եւ երբեմն փոքր, եւ ինք միշտ իր լրութեան մէջ կը մնայ։

Քահանան կենդրոն է միութեան հաղորդակցութեան ու հաւատոյ իր ժողովրդապետութեան, եպիսկոպոսը՝ իր թեմին. բայց անիկա՝ որուն ըսուեցաւ, "Արածէ իմ գառնուկներս,, նոյնպէս կենդրոն է բոլոր եպիսկոպոսութեան՝ զորն որ ինք կը ներկայացընէ եւ իր անձին վրայ կը կրէ, որովհետեւ սկզբնաբար իրմէ բխած է եւ հիմակ ալ իրմէ կը պահպանուի։

Գուցէ նոր հաւատք մըն է ասիկա։ Ստուգիւ չէ. որովհետեւ նոյն իսկ բովանդակ հին ժամանակներուն վարդապետութիւնն աս է. աս է մի միայն գաղափարը՝ զորն որ սուրբերը՝ Քրիստոսի եկեղեցւոյն կառավարութեան վրայ մեզի կ'աւանդեն. մի միայն գաղափարը՝ որ եկեղեցական պատմութեան դէպքերն իրարու կը կապէ եւ գեղեցիկ կը ներդաշնակէ։ Աս է Ս. Կիպրիանոսի միտքը՝ երբ որ Ս. Պետրոսի աթոռը կը կոչէր "Արմատ ու արգանդ կաթողիկէ եկեղեցւոյ [1],,։

Բայց դառնանք ամենէն հին քահանայապետներէն մնացած ու դեռ պահուած շրջաբերական թղթերուն, որոնք որպիսի՜ եւ ինչ Ս. Հօր մը խօսքերէն աւելի

1 Թուղթ 45 առ Կոռնելիոս Քահանայապետ։

անհամեմատ մեծագոյն ճոխութիւն ունեցող յիշատակարաններ են, վասն զի Թէպէտ եւ աս յիշատակարաններն մինակ քահանայապետէ մը ստորագրուած են, այսու ամենայնիւ իր ժողովքին արձանագրութիւններն էին՝ զորոնք կը խրկէր գաւառաց Նախագահներուն, որպէս զի իրենց եպիսկոպոսներուն հաղորդեն, եւ անոնց առջեւն ալ օրինաց զօրութիւն ունէին։

Ինոկենտիոս Ա. Քահանայապետը (422), որուն Ս. Օգոստինոս իր գործքէն մէկն ընծայած էր, Թեսաղիայի եպիսկոպոսներուն այսպէս կը գրէ։

«Ընդհանուր եկեղեցւոյ կերպաւորութիւնը՝ իր ծննդեան առեն՝ երանելւոյն Պետրոսի առաքեալէն սկսաւ, որուն անձին վրայ եկեղեցւոյ տեսչութիւնն (կառավարութիւնն) ու բարձրութիւնը կը կայանայ։ Վասն զի այն աղբիւրէն եկեղեցական բարեկարգութեան վտակը բղխեց ամէն եկեղեցիներուն մէջ՝ ինչ չափով որ կրօնական մշակութիւնը կը յառաջանար։ Ասկից զատ բան մը չեն վկայեր Նիկիոյ ժողովքին կանոնները. նոյն ժողովը եւ ոչ համարձակեցաւ անոր բան շնորհելու՝ աղէկ մտադիր ըլլալով որ ունեցածէն աւելի բան մը չէր կրնար իրեն տալու. բաց ասկից՝ ճանչցաւ որ արդէն ամէն բան Տեառն մերոյ խօսքերուն մէջ անոր տրուած էր։ Ուրեմն ամենեւին տարակուսի տակ չ'իյնար որ աս եկեղեցին ուրիշ բոլոր աշխարհքիս երեսը տարածուած եկեղեցիներուն նկատմամբ՝ գլուխ է իր մարմնոյ անդամներուն, ուսկից որ բաժնուողը՝ միանգամայն քրիստոնէական կրօնէն ալ կը հեռանայ, որովհետեւ իր գոյութիւնն ուրիշ կերպ չսկսաւ, բայց եթէ աս մի միայն հօծ եւ խիտ կազմուածքին մէջ։

«Առաքելական աթոռն աս վախճանաւ ունի գլխաւորութիւնը, որպէս զի ամենուն արդար բողոքն ալ կարող ըլլայ ընդունիլ»[1]։

Հինգերորդ դարուն սկիզբը Քահանայապետն աս բանիս վրայ կը խօսի իբրեւ հին, ծանօթ եւ անհակա-

1 Կոստան. Թուղթ. Հռ. Քահան. էջ 1037։

ռակերն, սուրբ Գրոց խօսքին վրայ հիմնուած եւ ա-
ռաջին ընդհանուր ժողովքէն ընդունուած բանի մը վրայ։

Ուրիշ վկայութիւն մ'ալ կը բերեմ, որպէս զի
ցուցընեմ որ կարգի եւ իրաւաբանութեան զանազանու-
թիւն կար նոյն իսկ առաքելական ծերակոյտին մէջ,
ուստի եւ ըստ հետեւորդի՝ նաեւ եպիսկոպոսական մար-
մնոյն մէջ։ Աստն զի աս զանազանութեան ուղիղ իմա-
ցուածէն եւ անկից յառաջ եկած հետեւութենէն
կախում ունի եկեղեցւոյ ամբողջ կազմուածքին ըմբռ-
նումը՝ իբրեւ տեսանելի ընկերութիւն։

Աս նիւթին մէջ մի միայն շլացում եւ մի միայն
անյարիր մտածութիւն բաւական է բովանդակն անտանկ
շփոթելու, որ մարդ՝ թէպէտեւ սաստիկ կարօտամտու-
թիւն ունենայ ճշմարտութեան հասնելու՝ չէկրնար իր
առջեւը դրուած ամենէն վաւեր ցայցերուն ալ յարգն
ըստ արժանւոյն իմանալ։ Ս. Լեւոն իր գլխաւորու-
թեան մէկ մասը կը շնորհէր Թեսաղոնիկէի եպիսկո-
պոսին, այսինքն զանիկա՝ իբրեւ Թեսաղոնիկեցւոց ե-
պիսկոպոս իրեն պաշտօնող սահմանէն վեր կը բար-
ձրացընէր, տալով իրեն իշխանութիւն զՔահանայա-
պետը ներկայացընելու, եւ զինքը պատրիարք դնելով
Արեւելեան Իլիւրիկէի տասը մետրապոլիտներուն վրայ՝
Յունաստանն ալ մէկտեղ առնելով, ինչպէս որ Աղե-
քսանդրիայի եպիսկոպոսը՝ Եգիպտոսի, եւ Անտիոքայ
եպիսկոպոսը՝ Արեւելից պատրիարքն էին։ Ահաւասիկ
Ս. Լեւոնի խօսքերը։

"Ինչպէս մեր նախորդները՝ քու նախորդներուդ,
այսպէս մենք ալ՝ մեր նախնիքը մեզի օրինակ առնե-
լով՝ քու խնամքիդ կ'աւանդենք մեր պաշտօնման փո-
խանորդութիւնը, որպէս զի դուն ալ մեր հեզութեան
նմանող ըլլալով՝ մեր հոգաբարձութեան մասնակից ըլ-
լաս, զորն որ մենք գլխաւորաբար, աստուածային կար-
գաւորութեամբ՝ ամենայն եկեղեցեաց պարտական ենք,
եւ կերպով մը զգալի ընես մեր այցելութեան ներկայու-
թիւնը այն մեզմէ այդչափ հեռու գաւառաց մէջ...։

«Բայց մեր փոխանորդութիւնք քու սիրոյդ կ'ա-ւանդուին՝ այն կերպով որ մասնակից ըլլաս մեր հոգա-բարձութեան, չէ թէ իշխանութեան լծութեան . . . ։

«Եւ թէ որ քու եղբարցդ հետ քննել ու որոշել ուզած խնդիրներուդ մէջ՝ անոնց կարծիքը քու ուզածէդ տարբեր ըլլայ, պէտք է որ ամէն բան ժողովքին արձա-նագրութեամբը մեր առջեւը դրուի, որպէս զի երկ-բայութիւնները վերցուելով՝ աստուածային կամաց հա-ճոյ եղածը կարենանք վճռել . . . ։

«Վասն զի մեր միութեան զօդը չկրնար երբեք հաստատուն ըլլալ՝ եթէ սիրոյն խնամոց կապը՝ զմեզ իրարու հետ անբաժանելի ամրութեամբ չկապէ ։ Որով-հետեւ ինչպէս որ մէկ մարմնոյ վրայ շատ անդամներ ու-նինք, եւ ամէն անդամները նոյն պաշտօնը չունին, այս-պէս ամէնքս ալ մէկ մարմին ենք ի Քրիստոս, եւ ամէն մէկերնիս ալ՝ փոփոխակի իրարու անդամ ։ Բոլոր մար-մնոյն կապակցութիւնը մէկ առողջութիւն ու գեղեց-կութիւն մը կը կացուցանէ ։ Եւ այս բովանդակ մարմնոյ կապակցութիւնը՝ միակամութիւն եւ գլխաւորաբար քահանայից միաբանութիւն կը պահանջէ ։ Անոնց թէ-պէտ պատիւը հաւասար է, բայց ընդհանուր (նուի-րապետութեան) կարգը հաւասար չէ ։ Ինչու որ նաեւ երանելի առաքելոց մէջ՝ պատուոյ նմանութեամբն ալ՝ կար իշխանութեան զանազանութիւն մը. եւ թէպէտ ամենուն ընտրութիւնը հաւասար էր, բայց մէկու մը միայն տրուեցաւ որ մէկալներէն գերազանց ըլլայ ։ Ես գաղափարէն ծագեցաւ նաեւ եպիսկոպոսաց զանազա-նութիւնը, եւ բարձրագոյն կարգաւորութեամբ մը հո-գացուեցաւ որ ամէնքն ալ ամէն իշխանութիւն իրենց չսեպհականեն, այլ ամէն մէկ գաւառի մէջ գտնուի մէ-կը՝ որուն վճիռը գերագոյն ըլլայ իր եղբարց մէջ, եւ դարձեալ ոմանք մեծագոյն եւս ընդարձակութիւն ու-նենալով՝ աւելի ընդարձակ հոգատարութիւն մը վրա-նին առնուն, եւ ասոնց միջոցովը մի միայն Պետրոսի ա-թոռին վրայ ընդհանուր եկեղեցւոյ հոգը գայ միանայ,

որով ամենուն եւ ոչ մէկ բանի մէջ գլխոյն հետ ան-
միաբանութիւն մը գտնուի[1],,։

Սուրբ Լեւոն աս խօսքերը կը գրէր Չորրորդ ընդ-
հանուր ժողովքէն հինգ տարի յառաջ, որն որ (Չոր-
րորդ ժողովը) զինքը կը կոչէր «Ամէն անդամներու գլուխ,
որդւոց հայր եւ Տիրոջ այգւոյն պահպանութեան պաշ-
տօնեայ,,։ Անկարելի է ասկից աւելի խօսելու յարմար
եղանակ մը գտնուիլ, որն որ աս ժողովքին եւ աս Քա-
հանայապետին խօսքերէն աւելի ազդու ըլլայ։

Ուրեմն հոս կենանք, եւ քննենք ու կշռենք թէ
ինչ կը քարոզէ Ս. Լեւոն։

Ա. Ս. Լեւոն կը նկատէ որ թէպէտ առաքեալք
հաւասար էին Կարգի իշխանութեան մէջ, կամ քա-
հանայութեան լրութեան մէջ՝ որչափ որ ձեռնադրու-
թեամբ կը տրուի, այսու ամենայնիւ աս իշխանութեան
գործադրութեան եղանակին, տեղւոյն եւ մանաւանդ
պարագաներուն նկատմամբ՝ մինակ Պետրոսի հպատակ
էին, այնպէս որ թէպէտ եւ ինք Քրիստոս տուած էր
անոնց առաքելութիւն բովանդակ աշխարհքիս վրայ,
ի վերայ այսր ամենայնի հարկ էր որ աս առաքելութիւնը
մէկուն միայն գերակայութեամբն ի գործ դրուէր։ Որն
որ, ուրիշ բառերով խօսելով, կը նշանակէ թէ Ս.
Պետրոսի գերազանցութիւնը կը կայանար իրեն անոնց
վրայ ունեցած իրաւաբանութեան վրայ, ինչպէս կ'ըսէ
Ս. Յերոնիմոս թէ «Տասներկուքին մէջէն մէկը մինակ
ընտրուեցաւ, որպէս զի գլուխ մը հաստատելով՝ հեր-
ձուածոյ կարելիութիւնը հեռանայ,,։

Բ. Աս գաղափարին վրայէն օրինակուած է եպի-
սկոպոսաց մէջի զանազանութիւնը, այնպէս որ՝ թէ-
պէտ եւ ամէնքն ալ հաւասար են քահանայութեան
մէջ, (ինչպէս նոյն Ս. Յերոնիմոս կը զրուցէ թէ «Ո՛ւր
որ եպիսկոպոս մը գտնուի, Հռոմ եղեր է, Գուղջութա
եղեր է, Կոստանդնուպոլիս եղեր է, Հռեգիոն եղեր է,
Աղեքսանդրիա եղեր է, Տանայիս եղեր է, անիկա նոյն

1 Ս. Լեւոն Թղթ. ԺԲ. առ Անաստաս Եպիսկոպոս Թեսաղ։

կարգէն՝ նոյն քահանայութենէն է,, [1].) այսու ամենայնիւ մէկուն իրաւարանութիւնը կը տարբերի իր ընդարձակութեամբը մէկալին իրաւարանութենէն, ինչպէս ինք իրմէ ալ յայտնի է՝ նկատմամբ Հռոմայ, Կոստանդինուպոլսի եւ Աղեքսանդրիոյ. բայց եւ այնպէս (գաղափարը կատարելապէս նկարելու համար) միայն մէկ իրաւարանութիւն մը կը գտնուի, որ հաւասարապէս ամենուն վրայ կը տարածուի, որովհետեւ ինչպէս մի միայն է Պետրոս առաքելոց մէջ, այսպէս մի միայն է Պետրոսի յաջորդը եպիսկոպոսաց մէջ: Ասիկայ աւելի աղէկ բացայայտելու համար՝ Ս. Լեւոն աւելի եւս յառաջ կ՚անցնի վասն զի կ՚ըսէ.

Գ. Եպիսկոպոսը գահերէց է իր թեմին մէջ, մետրապոլիտն՝ իր գաւառին, նախագահը [2] կամ կաթողիկոսը կամ պատրիարքն՝ իր պատրիարքութեան մէջ. բայց այս ամենայն կը դիմէ մէկ միայն նպատակի՝ "Յորում կառավարութիւնն ու գագաթը կը կայանայ,, ինչպէս Բոնիփակիոս քահանայապետը կը նկատէ. այսինքն՝ որպէս զի իրենց միջոցովը ընդհանուր եկեղեցւոյ տեսչութիւնը միանայ Պետրոսի աթոռին հետ, եւ գլխոյն հետ անմիաբանութիւն կամ երկպառակութիւն չըլլայ:

Արդ ով որ ուղիղ նկատելու ըլլայ, թէ առաքելոց խմբին եւ թէ եպիսկոպոսաց բովանդակութեան մէջ, կ՚ուզենք ըսել՝ թէ սկզբնական գաղափարին եւ թէ անոր օրինակին մէջ, ուրիշ բան չիգտներ՝ բայց եթէ երկու իշխանութիւն աստուածային կարգաւորութեամբ հաստատուած. Պետրոսի գլխաւորութիւնը, եւ առաքելոց եպիսկոպոսակցութիւնը. Պետրոսի յաջորդին գլխաւորութիւնը, եւ իր եղբարց եպիսկոպոսակցութիւնը: Վասն զի ասկէց զատ՝ ինչ որ Մետրապոլիտներուն, Նախագահներուն կամ Պատրիարքներուն համար որոշուած է, ամենն ալ եկեղեցական կարգաւորու-

1 Թէ մատենագիրը եւ թէ նոյն նորէն հրատարակուած տետրակ
ինէ Ս. Ցերոնիմոս, իր վերը բերուած մը օտար իմաստներու կը տանի:
վկայութեամբը, աղէկ կը մեկնեն Ծան. Թարգ.:
ու խօսքերուն բուն միտքը, զորոնք

2 Primas.

թեամբ սկսուած է, ուստի եւ պակսելու, աւելնալու կամ փոփոխուելու ենթակայ է։ Իրենք ուրիշ բան չեն ըներ՝ բայց եթէ թեթեւցընել այն խնամակալութիւնը, զորն որ ընդհանուր Նախագահն իր աստուածային սահմանադրութենէ ընդունած իշխանութեան զօրութեամբն ամէն եկեղեցիներուն վրայ ունի։ Ասկից կը հետեւի որ աս գերագոյն Նախագահին իշխանութիւնն ամենեւին նուազութիւն մը չիկրեր անոնց գոյութեամբը։ Ինչու որ անոնք իրեն դէմ ելլելու համար չըրուեցան, այլ իրեն հպատակելու համար, չէ թէ իրմէ վերցընելու համար այն խնամակալութիւնը՝ որն որ իր գերխաւորութեան զօրութեամբը բովանդակ եկեղեցւոյն հետ կը կապուի, այլ մինակ նոյնը դիւրինցընելու համար։

Կրնան այս այնպիսի դիպուածներ պատահիլ՝ որոնց համար հարկ կ'ըլլայ զանազան ամբողջ գաւառներու մետրապոլտական իրաւունքները տարածել, կամ միացընել միայն մէկու մը ձեռք՝ որն որ պարտաւորի իրեն հպատակ եպիսկոպոսներն ու նաեւ արքեպիսկոպոսները հաստատել։ Բայց ասոր հակառակ կրնան այնպիսի պարագաներ պատահիլ՝ որոնց համար պատշաճաւոր կը համարուի որ ընդհանուր Նախագահն ամէն եպիսկոպոսներուն ալ ինք ուղղակի կամ անընդմիջապէս շնորհէ իշխանութեան տուչութիւնը։ Սակայն թէ մէկ եւ թէ մէկալ դիպուածին մէջ ինք միշտ գերագոյն կը մնայ։ Թէ որ պատրիարք մ'ամբաստանուելու ըլլայ, ինքն է՝ որ զանիկա կը լսէ, զանիկա կը դատէ, կ'արձակէ կամ կը դատապարտէ. եթէ անոր ձեռնադրութիւնը տարակուսի տակ կ'իյնայ, ինքն է՝ որ զանիկա կը հաստատէ կամ կ'ոչընչացընէ. եթէ անոր հաւատքին վրայ ամբաստանութիւն մ'ելլէ, ինք զանիկա անմեղ կամ յանցաւոր կը հրատարակէ. եթէ անոր կառավարութիւնը տիրապետական[1] է, իրեն հպատակ եպիսկոպոսները Գլխոյն կը բողոքեն, եւ անկից արդարութիւն կը գտնեն։

Առջի ատենները, երբ որ հալածանաց երեք դարե-

1. Despotique.

րը նորաձեւին եկեղեցին պիտի փորձէին, շատ պատճառներու համար պատշաճագոյն էր որ այն իշխանութիւնները՝ որոնք իրենց լրութեամբն ընդհանուր Նախագահին կը վերաբերէին, առատ չափով մը իր հպատակ եպիսկոպոսաց վրայ տարածուէին. բայց որպէս զի աս իշխանութիւններուն ազդիւրը յայտնի ցուցուի, վերի երկու դիպուածներուն մէջ ալ առաքելութիւնը կամ տուչութիւնը Պետրոսէն կը յառաջանար։ Աղեքսանդրիա՝ Հռոմայեցւոց կայսրութեան երկրորդ քաղաքը՝ Պետրոս իր Մարկոս աշակերտը խրկեց պատրիարքական իշխանութեամբ. Անտիոք՝ կայսրութեան երրորդ քաղաքը՝ ինք անձամբ եօթը տարի նստեցաւ, եւ հոն իր առաքելութեան հետքը թողուց։ Բայց Հռոմի մէջ վերջապէս հաստատեց իր իշխանութեան լրութիւնն ու ճշմարիտ գլխաւորութիւնը՝ զորն որ Աստուած իրեն յանձնած էր իր խորհրդաւոր մարմնոյն միութեան համար։ Արդ՝ եթէ ստոյգ է որ առջի չորս դարերուն մէջ աս Պետրոսի երեք աթոռներէն զատ ամենեւին ուրիշ աթոռ մը պատրիարքական իշխանութիւն չունէր, ինչպէս եղաւ որ առաքեալներէն եւ ոչ մէկը եկեղեցւոյ մը իր առաքելական իրաւասութիւնը չթողուց։ Ս. Պօղոս ստուգիւ Եփեսոսի եկեղեցին հաստատած էր, եւ Ս. Յովհաննէս իր առաքելական իշխանութիւնն ի գործ կը դնէր թէ նոյն եկեղեցւոյն եւ թէ նաեւ Պետրոսի մահուանէ ետքը Ասիայի բոլոր գաւառներուն մէջ. ի վերայ այսր ամենայնի Եփեսոսի եպիսկոպոսը միշտ ստորին աստիճան մ'ունեցած է։ Կոստանդինուպոլիս պատրիարքական աթոռ եղաւ՝ միայն Յունաց կայսրներուն ծանրակշիռ տէրութեան համար. իսկ Երուսաղէմ նոյն աստիճանը հինգերորդ դարէն յառաջ չունեցաւ, ան ալ՝ մինակ Աստուծոյ քաղաքը յարգելու համար։

Արեւմուտից ամէն բաներուն դէմ հին նախանձաւորութիւնները՝ որոնք յունական մտաց մէջ կը խմորուէին, եւ որոնք բազմաթիւ մանր հերձուածներէն ետքը՝ վերջապէս Փոտիոսին ատենը յայտնի ու բոլորա-

կան պատմութեան դարձան, առջի դարերուն մէջ Աղեքսանդրիայի ու Անտիոքայ աթոռներուն մեծ իշխանութիւններ տրուելուն պատճառներէն մէկն եղան։ Բայց ասով ալ, երբ որ քահանայապետը մեծ դատերու մէջ, զանոնք՝ ըրած գործքերնուն համար պատասխան ու համար տալու կը կանչէր, եւ ոչ ձայն մը կը հանէին անոր գլխաւորութեան նկատմամբ։

Վերջի ատենները հարկաւոր տեսնուեցաւ որ ի սկզբանէ Ս. Պետրոսի գլխաւորութենէ բղխած ու տարածուած իշխանութիւնները, ինչպէս Թեսաղոնիկէի դիպուածին մէջ տեսանք, նորէն իր աթոռը դառնան, եւ բովանդակ մարմնոյն գլուխն ուղղակի հաստատէ իր եղբայրները։ Աս որոշումն ընելու շատ պատճառներ կը ստիպէին։ Եւ իրաւցընէ, միայն մէկ քանին հոս յիշելու համար, այն ամենազօր ազգային սէրը՝ որն որ մեր ժամանակներուն սեպհական յատկութիւններուն մէջ գլխաւորն է, արդեօք եկեղեցւոյ շէնքը հազարումէկ կտոր չէ՞ր ըներ, եթէ ամէն մէկ ազգի Նախագահը պատրիարքական իշխանութիւն ունեցած ըլլար. ուր որ գիտենք թէ նոյն իսկ Հռոմէական պետութեան անյաղթ բազուկը՝ որն որ այնչափ իրարու հակառակ ազգեր մէկ ամբողջի մը կերպարանած էր, չկրցաւ Յունաց՝ Լատինացւոց դէմ ունեցած բնածին հակառակութիւնը (հակակրութիւնը) մարել։ Եւ նոյն իսկ քաղաքական իշխանութեան բռնական նախանձաւորութիւնը ամէն մէկ ազգին մէջ չէ՞ր բռնադատեր արդեօք իր հպատակները՝ իրենց հոգեւոր իրաւանց գործածութիւնն իր ձեռքը յանձնելու, թէ որ ատոնք իրենց պաշտպանութիւնը չգտնէին մի միայն աստուածային սահմանադրութեան կապանաց տակ՝ որով Քրիստոս ամէն ազգ Պետրոսի աթոռին հետ կապած էր։ Վա՜յ ան դժբախտ եկեղեցւոյն՝ որ այսպէս նոյն կապը խզած է, ինչու որ վրան շատ չանցնիր՝ ամենեւին հաւատք չունեցող քաղաքագէտք զինքն իրենց ցեխոտ ոտուըներուն տակ կ՚առնեն, իրաւագէտք հաւատոյ խնդիրներու մէջ իր դատաւոր-

ները կ'ըլլան, եւ ասոնց ամենուն իշխանութեան ձեռքը կ'իյնայ մարդուս խիղճը սպաննելը, ինչպէս կը պատահի (Անգղիա) ծովապետական ատեանին բողոքին մէջ։

Բայց դառնանք մեր առաջարկութեան։ Ուրեմն Ժ․ դարուն կէսերը, Պետրոսի աթոռին գլխաւորութիւնը տեսանելի եկեղեցական ընկերութեան կառավարութեան նկատմամբ՝ հրապարակաւ ճանչցուած ու քահանայապետներէն եւ ընդհանուր ժողովքներէն որոշուած էր, եւ ասով՝ եկեղեցական հրահանգաց կազմուածքին հիմերը՝ ան ատենէն հաստատուն դրուած էին ապագայ դարերուն համար, որոնց իրարու յաջորդելու ատեն՝ նոյն տիեզերական գլխաւորութիւնը պահուեցաւ ամենայն ճշդութեամբ իր էութեան ու լրութեան մէջ, ինչպէս որ հիմայ կը գտնուի՝ ոչ աւելի եւ ոչ նուազ։ Եւ այլազգ ալ չէր կրնար ըլլալ, ինչու որ աս գլխաւորութիւնը Աստուծմէ դրուեցաւ եկեղեցւոյ ծննդեան ատենը, եւ միացած ամէն ստորին իշխանութիւններն անոր մէջ բովանդակեցան։

Բայց աս գլխաւորութիւնը հաւատոյ նիւթերու մէջ ալ հաւասարապէս անհակառակելի բա՞ն էր։ Արնայի պատասխան տալ թէ իրաւաբանութեան աղբիւր եղողը՝ նոյնպէս պէտք է որ վարդապետութեան վերին դատաւոր ըլլայ։ Վասն զի այն մեծ ու տեսանելի ընկերութիւնը մինակ հաւատքովը կ'ապրի ու անոր վրայ յենած է, եւ ով որ անոր արտաքին կերպարանաց միութիւնը կը պահէ, հաւասարապէս անպատ պէտք է որ պահէ նաեւ հաւատքն ալ, որն որ այն մարմնոյն կերպաւորիչ հոգին է։ Բաց ասկից՝ երբ որ արտաքին հաղորդակցութիւնը հաւատոյ պակսութեամբը վտանգի մէջ ինկած է, դաւանութեան խնդիրը հաղորդակցութեան խնդրոյն հետ խիստ մեծ կապակցութիւն կ'ունենայ, ու մի միայն վճիռ՝ երկու խնդիրն ալ մէկտեղ կ'որոշէ, եւ այսպէս հոգեւոր իրաւաբանութեան իրաւունքը՝ ուրիշ ամէն իշխանութիւն կը ջախջախէ, բաց ի մէկէն՝ զորն որ Քրիստոս դրած է զանիկա հա-

տատուն բռնելու համար։ Կրնայի դարձեալ պատասխան տալ թէ մենք Աստուծմէ ետքը՝ իրօք Ս. Լեւոնի շնորհակալ ըլլալու ենք Մարդեղութեան ճշմարիտ վարդապետութեան համար. վասն զի արեւելեան եկեղեցին նուաճուած ըլլալով քաղաքական իշխանութենէ մը, որուն առաջին պաշտօնեան հերետիկոսապետին (Եւտիքեսին) բարեկամն էր, եւ դարձեալ նաեւ ինկած ըլլալով ներքին ու խորունկ քաղցկեղի մը մէջ՝ զորն որ բժշկելու զօրութիւնը հատած էր, օրինաւորապէս գումարուած ընդհանուր ժողովքի մը մէջ քիչ մը ատեն Եւտիքեսի վարդապետութիւնն ընդունած եւ իբրօք անոր հերետիկոսութեան մէջ ինկած էր։ Բայց Ս. Լեւոն շուտով ոչընչացուց ան ժողովքը. Ս. Լեւոն դատապարտեց այն վարդապետութիւնը եւ հրաման հանեց որ նորէն ու աւելի եւս թուով ժողովքի նստի նոյն արեւելեց աշխարհքը, որն որ շատ դարերէ վեր ամէն նկատմամբ իր իշխաններուն կամացը գերի եղած էր։ Պատուիրեց վեցհարիւր եպիսկոպոսաց որ բառ առ բառ կապուին իր թղթերուն՝ որոնց մէջ ճշմարիտ հաւատքը ճոխութեամբ սահմանուած էր, եւ աս մի միայն միջոցն եղաւ՝ որ զիրենք, այնպէս ըսելու համար՝ իրենց կամացը դէմ, չորս դար ալ եկեղեցւոյ միութեան մէջ պահեց։

Բայց գանք ուրիշ մէկ ամենանուրբ հակաճառութեան մը՝ որն որ ամենէն աւելի եկեղեցին չարչարեց, այնպէս՝ որ երկայն տարիներով շատ յոգնեցուց զնոյն իսկ Ս. Օգոստինոս՝ որն որ այն Պեղագեան խնդրոյն մէջ՝ այնչափ աշխատութիւններէն, այնչափ գրուածներէն ու աղօթքներէն ետքը, վերջապէս որո՞ւն դիմեց վերջնական որոշումն ընդունելու. — Պետրոսի աթոռին։ Ափրիկեցւոց երկու ժողովներն արդէն դատապարտած էին եւ իրենց վճիռները՝ զորոնք Ս. Օգոստինոս գրած էր, Իննովկենտիոս Ա. Քահանայապետին խրկուեցան հաստատութիւնն ընդունելու համար, նոյն վարդապետին ու մէկ քանի իր բարեկամներուն թղթովը մէկտեղ, որուն մէջ կը գրէր. "Չէ թէ մենք մեր

փոքր վիճակը՝ ձեր լայնածաւալ ու առատ աղբիւրին վրայ կը հեղունք՝ զանիկա անձեցընելու համար. այլ աս ժամանակիս մեծ փորձութեան մէջ, (որմէ ազատէ զմեզ Անիկա՝ որուն կ՚ըսենք. Մի տանիր զմեզ ի փորձութիւն,) կը բաղձանք որ աս բանս ձեզմէ որոշուի, եւ մեր փոքր վիճակն ալ ծորէ ան վիճակներուն գլխէն՝ ուստի որ ձերը յորդութեամբ կը բխէ, եւ ձեր պատասխանովը մի եւ նոյն շնորհաց հաղորդակցութեան մէջ գտնուելնուս վրայ մխիթարուինք»[1]: Ս. Իննովկենտիոս (416) ասոր պատասխան տալով՝ կը գովէ Կարքեդոնի ժողովքը՝ աս խօսքերով. “Աս խնդիրներուն մէջ, կ՚ըսէ, (որոնք եպիսկոպոսներէն եւ առաւելապէս աս ճշմարիտ օրինաւոր եւ ուղղափառ ժողովքէն արժանի էին ամենանուրբ ճշդութեամբ քննուելու,) հին աւանդութեան օրինակներուն հետեւելով եւ եկեղեցական հրահանգները չմոռնալով, անչափ աւելի հիմայ ձեր կրօնին զօրութիւնը ճշմարտապէս ցուցուցիք խորհուրդ հարցընելովնիդ, որչափ որ առկից յառաջ ձեր վճիռը տալէն ետքը՝ զանիկա մեր դատաստանին տակ ձգելը հարկաւոր համարելովնիդ. աղէկ խելամուտ ըլլալով ատ առաքելական աթոռն ունեցած ձեր պարտականութեան, մանաւանդ՝ երբ մենք ամէնքս ալ՝ որ աս պաշտօնիս մէջ դրուած ենք, նոյն իսկ Առաքելոյն ետեւէն երթալու կը բաղձանք, որմէ որ նոյն եպիսկոպոսութիւնն ու անոր իշխանութիւնները բղխեցին: Առաքելոյն հետեւելով՝ մենք ալ չարը դատապարտել եւ գովելին ընդունել ու յարգել սորվեցանք: Աս վերջնոյս կարգն է ձեր գործքն ալ, որ նախնի Հարց սահմանադրութիւններն ոտքի տակ առնել չուզելով, քահանայական պաշտօնին համաձայն՝ կատարեցիք զայն ամենայն՝ զորն որ անոնք չէ թէ մարդկային՝ այլ աստուածային խորհրդով սահմանեցին, թէ ինչ խնդիր որ մերձաւոր կամ հեռաւոր գաւառներու մէջ քննութեան կամ որոշման տակ լինայ, վերջնական վճիռը չտրուի՝

1 Ս. Օգոստ. Թուղթ. 177:

մինչեւ որ աս աթոռին չծանուցուի, որպէս զի անոր քն եւ կատարեալ ճոխութեամբն այն վճիռը՝ (թէ որ իրաւացի է,) հաստատուի։ Եւ անկից՝ ուրիշ եկեղեցիք ալ (ջրերու ալեաց պէս, որ իրենց բնական աղբիւրներէն կը բղխեն եւ աշխարհքին ամէն կողմը յստակ աղբերակունքի մը անպղտոր ջրոց պէս կ'ընթանան,) պիտի սորվին թէ ինչ պէտք են հրամայել եւ ինչ բան մաքուր մարմնոց արժանի՝ ջրոյ պէս պիտ'որ մաքրեն, եւ ինչ բանէ՝ իբրեւ անմաքրելի ցեխով աղտոտած՝ պիտի հեռանան,,[1]։

Հոս աւասիկ սուրբ Իննովկենտիոս կը հաստատէ թէ Ա. Հաւատոյ վերաբերեալ խնդիրները պէտք են սուրբ գահին որոշման տակ իյնալ։ Բ. Այս աւանդութիւնը սուրբ Գրոց վրայ հիմնած էր, այսինքն՝ մեր Փրկչէն սրբոյն Պետրոսի տրուած առանձնաշնորհութեանց վրայ։ Գ. Սուրբ գահին վճիռներն անսխալ են. "Ականակիտ ակունքէն յստակ ջրեր կը ծորեն,,։ Դ. Աշխարհքիս ամէն եկեղեցիները միշտ պարտաւոր եղած են ան որոշմանց գլուխ ծռելու, "որպէս զի ուրիշ եկեղեցիք ալ սորվին թէ ինչ պէտք են հրամայել,,[2]։

Նոյն սուրբ Իննովկենտիոս Նումիդիայի ժողովքին կը գրէր. "Զգուշութեամբ ուրեմն եւ պատշաճօրէն (հին կանոնին հետեւելով, զորն որ դուք ալ գիտէք թէ բոլոր տիեզերք կը պահեն,) առաքելական ճոխութեան գաղտնի դատաստանաց, ան ճոխութեան, կ'ըսեմ, որուն արտաքին երեւցած առաւելութիւններէն զատ՝ ամէն եկեղեցիներուն խնամակալութիւնը տրուած է, խորհուրդ կը հարցընէք թէ ինչ վճիռ պէտք է տալ տարակուսական բաներու մէջ։ Բայց ասոնց վրայ խօսելը կը թողում, ինչու որ գիտեմ թէ աղէկ տեղեակ էք, զորն որ ձեր խոհեմութեամբը գործքով ալ հաստատեցիք, գիտնալով որ ամէն դատերու մէջ առաքելական աղբիւրէն անդադար պատասխանը կը հոսէ անոնց՝ որոնք զանիկա կը խնդրեն։ Եւ մանաւանդ երբոր հաւատոյ վրայ խնդիր մը կը բացուի, ես անանկ կը դա-

1 Բըզի Տիտիէ, Անախալ. Ք. Հռ.։ 2 Կառ. Թուղթք Ք. Հռ. 868։

տիմ որ մեր ամէն եղբայրքն ու եպիսկոպոսակիցները պէտք է որ դիմեն առ Պետրոս՝ իրենց անուան եւ ճոխութեան աղբիւրը, ինչպէս որ ձեր սիրելութիւնն ալ ըրաւ, որն որ ընդհանուր տիեզերաց վրայ ամենայն եկեղեցեաց օգտակար պիտ՚որ ըլլայ: Վասն զի պատիւ ամէն չարեաց գտիչները պիտ՚որ հարկադրին մեղմանալու, երբոր իրենք զիրենք՝ կրկին ժողովոց տուած տեղեկութեանց համաձայն՝ մեր վճռոյն որոշմամբն եկեղեցւոյ հաղորդութենէ կտրուած կը տեսնեն: Ուրեմն ձեր սիրելութիւնն ասով կրկին բարիք կը վաստըկի, որովհետեւ թէ դուք կ՚օգտիք կանոնները պահելովնիդ, եւ թէ ձեր արդեամբը բոլոր տիեզերք ալ կ՚ազատին: Ինչու որ ասկից ետքը ուղղափառաց մէջէն ո՞վ պիտի հաղորդակցի Քրիստոսի հակառակորդաց հետ„[1]:

Հոս ալ վերը գրուածներնէս զատ՝ կրնանք նկատել, թէ Ա. Ամենեւին հաւատքի վերաբերած բան մ՚որոշուած չէր համարուեր՝ ցորչափ Պետրոսի աթոռին առջեւն եկած ու Քահանայապետն անոր վրայ վճիռ տուած չէր: Բ. Իր վճիռ տալէն յառաջ՝ մասնական ժողովներուն որոշումները պարտաւորիչ արժէք չունէին. “[illegible] տարակուսական բաներու մէջ՝ ինչ վճի-[illegible] է տալ„: Գ. Աս որոշումները քահանայապետական վճռէն յառաջ ուրիշ զօրութիւն չունէին՝ բայց եթէ իբրեւ խորհրդակցութիւն ու տեղեկութիւն մը Քահանայապետին առջեւը դրուած դժուարութեան մը վրայ. “Կրկին ժողովոց տուած տեղեկութեանց համաձայն„: Դ. Քահանայապետին վճիռը՝ որով ժողովները կը հաստատէր, գերագոյն դատաստան էր, որն որ դատապարտուածները եկեղեցւոյ հաղորդութենէն կը մերժէր. “Երբոր իրենք զիրենք մեր վճռոյն որոշմամբն եկեղեցւոյ հաղորդութենէն կտրուած կը տեսնեն„: Ե. Ինչպէս եպիսկոպոսք իրենց ժողովուրդները կը հպատակէին այսպիսի վճռոյ. “Ուղղափառաց մէջէն ո՞վ պիտի հաղորդակցի Քրիստոսի հակառակորդաց հետ„:

1 Բըզի Տիտիէ, վասն անսխալ. Ք. Հա:

Ս. Իննովկենտիոս ասկից աւելի բան չէր կրնար ընել իր աթոռին իշխանութեան վրայ։ Ի վերայ այսր ամենայնի ի՞նչ կ'ըսէր ասոր վրայ Ս. Օգոստինոս. ահաւասիկ իր խօսքերը։ «Ինք (Ս. Իննովկենտիոս) ամէն բանի ան պատասխանը տուաւ, որն որ իրաւացի էր եւ պատշաճ առաքելական աթոռին առաջնորդին»[1]։ Բայց Քահանայապետին աս տուած պատասխանւոյն ազդեցութեան վրայ Ս. Օգոստինոսին ըսած խօսքերն այնչափ հռչակաւոր եղան՝ որ առակ եղած են։ Ասոնք են իր խօսքերը. «Արդէն աս նիւթին նկատմամբ գումարուած երկու ժողովներուն գործքերն առաքելական աթոռին խրկուեցան, ուստի որ պատասխանն ալ եկաւ. Խնդիրը վերջացաւ, Աստուած տայ որ մոլորութիւնն ալ անգամ մը վերջանայ»[2]։

Ալ հարկ չերեւար կրկնելու թէ ի՞նչ կ'իմանար Ս. Օգոստինոս այն «Իշխանութեամբ՝ որն որ, կ'ըսէ, միշտ ծաղկած էր առաքելական աթոռին վրայ»։ Ասիկա, ինչպէս մեզի կ'երեւայ, կը պարտաւորէ ուրիշ ամէն եկեղեցիները հաւատքով միացած ըլլալու անոր հետ՝ որն որ իր վրայ կը բովանդակէ այն առաքելական խոստովանութեան արմատը, որ Տեառն մերոյ երկու բնութեանց դաւանութեան կը վերաբերի, որուն հատուցում մ'ընելու համար խոստում տրուեցաւ՝ եկեղեցին իր վրայ շինելու։ Ս. Օգոստինոս եւ Ս. Իննովկենտիոս կը բացատրեն ճշմարիտ հաւատքը՝ Ս. Կիպրիանոսին բերած աղբիւրի նմանութեամբը, որն որ եպիսկոպոսութեան միութեան վրայ ըսած ատեն թէ Ամէն մէկը մէյ մէկ մաս ունի՝ առանց ամբողջին բաժանմանը, կը գրուցէ թէ «Դորբոր միակ աղբերէ մը շատ վտակներ կը վազեն կ'իջնան, թէպէտ աս վտակներուն բազմութիւնն անանկ կը ցուցընէ որ ան յորդ ու առատ բղխող ակերները ցիր ու ցան կը տարածին, այսու ամենայնիւ այն բազմութեան միութիւնը՝ անարատ իրենց սկիզբներուն վրայ կը մնայ . . . ։ Այսպէս նաեւ եկե-

1 Ս. Օգոստ. Հատ. Ե. 645։    2 Ս. Օգոստ. Թղթ. 43։

ըսեցին ... իսկ կը բղխէ եւ կը տարածէ որչափ որ կարելի է յորդ առատ վտակներ, այսու ամենայնիւ մի միայն է գլուխը, մի միայն՝ ակունքը,,[1]:

1 Այսչափ եւ այսպիսի յայտնի ու անտարակուսելի վկայութիւնները տեսնելէն ետքը, զորոնք գլխաւորաբար երկու մեծանուն Հայրապետները, Ս. Օգոստինոս եւ Ս. Կիպրիանոս՝ Ափրիկեցւոց եկեղեցւոյն առաջին ջահերը, եկեղեցւոյ միութեան եւ սրբոյն Պետրոսի ու անոր յաջորդաց՝ ընդհանուր եկեղեցւոյ վրայ ունեցած գլխաւորութեան վրայ բոլոր տիեզերաց առջեւ տուած են, զարմանալի ու անըմբռնելի բան կ'երեւայ, թէ ինչպէս մօտերս հրատարակուած տետրակի մը մէջ աս երկու Հայրապետներուն խօսքերը եղծած ու կըրճատած՝ քահանայապետական գըլխաւորութեան դէմ յառաջ կը բերուին:

Սուրբ Օգոստինոս յայտնի կը վկայէ, կ'ըսէ գրողը, թէ "Քրիստոս ասաց Պետրոսի ես աղաչեցի վասն քո, զի մի պակասեսցին հաւատք քո. եւ դու երբեմն դարձցիս եւ հաստատեսցես զեղբարս քո. մի՞ թէ միայն վասն Պետրոսի աղաչեաց ի բաց հանելով զՅակոբոս զՅօհաննէս՝ եւ զայլ առաքեալսն. եւ յայտնի է, որ ի դէմս Պետրոսի՝ ի միասին իմացեալ լինին բովանդակ առաքեալքն. վասն այսորիկ ընդ աղաչելն վասն Պետրոսի՝ առանց երկբայութեան աղաչեաց վասն ամենեցուն,,:

Նախ առաջին ան Խնդիրք ի հին եւ ի Նոր կտակարանաց ըսուած մատենագրութիւնը, ուստի որ աս հատուածն առնուած է, Սուրբ Օգոստինոսին մատենագրութիւնը չէ, ինչպէս առհասարակ ամենուն յայտնի է, այլ անծանօթ հին հեղինակի մը. (տես Յ. Պ. Մինեի Սրբոց Հարց գործքերուն Նոր տպագրութիւնը. Ս. Օգոստ. Հատ. Գ. Մասն Բ. եր. 2206.): Այսու ամենայնիւ նոյն իսկ բնագիրն աղաւաղ ու կրճատ թարգմանութեամբ յառաջ բերուած է. Լատին բնագիրը կ'ըսէ Et Petro dicit: *Ecce Satanas expostulavit, ut vos ventilet sicut triticum: ego autem rogavi pro te, ut non deficiat fides tua; et tu aliquando conversus confirma fratres tuos.* Quid ambigitur? Pro Petro rogabat, et pro Jacobo et Joanne non rogabat, ut caeteros taceam? Manifestum est *in Petro omnes contineri:* rogans enim pro Petro, pro omnibus rogasse dignoscitur. Semper enim *in praeposito populus aut corripitur aut laudatur.* (J. P. Migne. Patrologiae Curs. S. Aug. Tom. III. P. alt. Quest. ex N. T. c. LXXV.) Ճիշդ թարգմանութիւնն աս է. "Եւ ասէ ցՊետրոս, Ահա սատանայ խնդրեաց զձեզ խարբալել իբրեւ զցորեան. այլ ես աղաչեցի վասն քո, զի մի պակասեսցեն հաւատք քո, եւ դու դարձեալ հաստատեսցես զեղբարս քո: Երկբայեսցի՞ ինչ ոք արդեւք: Վասն Պետրոսի աղաչէր, իսկ վասն Յակոբու եւ Յովհաննու, զի զայլոց լռեալ իսկ եղէց, ո՞չ աղաչէր: Յայտ է թէ ի Պետրոս ամենեքին բովանդակեալ էին. զի յորժամ վասն Պետրոսի աղաչէր, վասն ամենեցուն երեւի աղաչեցեալ: Քանզի միշտ իսկ ի գլխաւորն անդ կշտամբի կամ յարգեալ գովի ժողովուրդն,, (Անդ. Խնդիրք ի Ն. Կտակ. Գլ. ՀԵ): Իմաստը յայտնի է մեկնութեան չկարօտիր: Իրաւամբ ուրեմն Պօսիւէ, նոյն իսկ Գաղիական կղերին ծանօթ յաւակնութիւններուն առաջին ախոյեանն ու պաշտպանը, այսպէս կը խօսի (Մտածութիւնք ի վերայ Աւետա-

Աւոր համար է որ նոյն իշխանութիւնը՝ որ հաւատոյ ու հաղորդակցութեան միութիւնը պահելու պարտքն ունի, այնչափ կը գործէ եւ այնչափի ալ մինակ կարող է,

բանի, օր. Հ։) «Ո՞վ կրնայ տարակուսիլ որ սուրբն Պետրոս առ աղօթքով ընդունած չըլլայ հաստատուն, անպարտելի, անշարժ, եւ դարձեալ այնպիսի առաւ հաւատք մը՝ որ կարող պիտ'որ ըլլար հաստատել ոչ միայն հաւատացելոց համարձակութիւնը, այլ նաեւ իր եղբարքը՝ զառաքեալները, եւ հօտին հովիւները, արգելելով զատանան որ զիրենք չմաղէ։ Եւ աս բանս յայտնապէս կը պատշաճի ան խօսքին՝ որ ըսաւ. Դու ես վէմ. եւ քու Սիմոն անունդ Վէմի (Պետրոսի) փոխեցի՝ ի նշան հաստատութեան, զորն որ կ'ուզեմ քեզի հաղորդել, ոչ միայն քեզի համար, այլ նաեւ բոլոր եկեղեցւոյ համար, ինչու որ կ'ուզեմ զանիկայ աս վէմին վրայ շինել»։ Դարձեալ մեկնելով Քրիստոսի աս խօսքերը, Այլ ես աղօթեցի վասն քո, յառաջ կը տանի իր խօսքն ու կ'ըսէ. «Պետրո՛ս, ես քեզի համար աղօթեցի, քեզի համար մասնաւորապէս, քեզի համար առանձինն եղանակաւ. չէ թէ Քրիստոս մէկալները զանց առաւ, այլ, ինչպէս Ս. Հայրը կը մեկնէ, գլուխը հաստատելով՝ անով կ'ուզէր արգելել որ անդամները չդեղեւին։ Աւոր համար է որ ըսաւ. Ես աղօթեցի վասն ՔՈ, եւ չէ թէ՝ Ես աղօթեցի վասն ՁԵՐ»։

Նոյն վերոյիշեալ Գրիշը կը համարձակի նաեւ սրբոյն Կիպրիանոսի բերանին այս խօսքերս ալ դնել. «Փականքն ոչ տուան նմա միայնակ (այս ինքն՝ Պետրոսի), այլ միութեանն եկեղեցւոյ»։ Եւ դարձեալ թէ «Մի միայն է եկեղեցին ի բազում անդամս բաժանեալ, եւ մի միայն հովուութիւն տուեալ բազմաց հովուաց որք համաձայն են ի վարդապետութիւնս հաւատոյ»։

Աս խօսքերը բոլորովին հակառակ են Ս. Վարդապետին մտացն ու բանիցը։ Ս. Կիպրիանոս կը գրուցէ. *Et erit unus grex et unus pastor.* Et esse posse uno in loco, aliquis existimat, aut multos pastores aut plures greges? Apostolus item Paulus, hanc eamdem nobis insinuans unitatem, obsecrat et hortatur dicens: Obsecro inquit vos, fratres, per nomen domini nostri Jesu Christi, ut id ipsum dicatis omnes, et non sint in vobis schismata. Sitis autem compositi in eodem sensu et in eadem sententia, etc. (lib. de unit. *Ecc.*) «Եւ եղիցի մի հօտ եւ մի հովիւ։ Համարիցի՞ ոք ինչ արդեօք թէ գուցէ հնար զի ի միում վայրի հովիւք բազումք լինիցին եւ հօտք բազումք։ Նոյն գունակ եւ Պաւղոս առաքեալ զնոյն միութեան թելադրեալ աղաչէ յորդորելով եւ ասէ. «Աղաչեմ զձեզ, եղբարք, յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զի միաբանքեան զնոյն խօսիցիք, եւ մի իցեն ի ձեզ հերձուածք. այլ իցէք միամիտք համակամք համակարծիք» (Գիրք վասն միութեան Եկեղ.)։ Եւ դարձեալ «Ecclesia est una, et super unum, qui claues ejus accepit, Domini voce fundata est. (Ep. 73. Ad Jubaianum) որ է. «Մի է եկեղեցի եւ հիմն նորա ի վերայ Միոյն, որ զփականս նորա ընկալաւ, Տեառն բանիւ եդեալ» (Թղթ. 73.) Այսպէս նաեւ եկեղեցւոյ միութեան վրայ գրած ճառին մէջ, ուստի որ առաջիկայ հատուածը կ'առնենք, իր բուն միտքն ու հարազատ խօսքերն ասոնք են։ «Հանդէս հաւանութեան ճշմարտութեանն, կ'ըսէ, դիւրին առ համա-

մը կ'ընէր, որովհետեւ այնպիսի իշխանութիւն մըն էր՝ որ Քրիստոսի կարգադրութենէն՝ իբրեւ իր սկզբանէն կը բխէր, եւ նախընթաց դարերուն մէջ իր գործադրութեան օրինակն ունէր, ամենեւին յափշտակութեան կասկած վրան չունենալով: Եւ հոս՝ տասը դար ետ ձգելով՝ գանք Կոստանդիայ ժողովին ատենները մտնենք, որպէս զի կարող ըլլանք այն անձին վկայութիւնը յառաջ բերել՝ որն որ նոյն ժողովոյն հոգին էր եւ առաջին սկիզբն եղաւ ան Գաղղիական ըսուած կարծիքներուն. ի վերայ այսր ամենայնի ինքն ալ կը խոստովանի, ինչպէս պիտ'որ տեսնենք, այն վարդապետութիւնը՝ զորն որ Իննովկենտիոս ու Լեւոն կը սորվեցընեն քահանայապետութեան ու եպիսկոպոսութեան իրարու հետ ունեցած յարաբերութեան վրայ:

“Քահանայապետական աւագութիւնը դրուեցաւ Քրիստոսէ գերբնապէս եւ անընդմիջաբար՝ իբրեւ միապետական ու արքունական իշխանութիւն մը եկեղեցական նուիրապետութեան[1] մէջ, եւ անով (քահանայապետական աւագութեամբ)՝ որ Քրիստոսէ ետքը մի միայն ու գերագոյն է, զինուորեալ եկեղեցին մի կ'ըսուի: Ուստի ով որ ասոր դէմ ելլելու կամ նուաղեցընելու եւ կամ նոյն արքունական իշխանութիւնն ուրիշ իշխանութիւններու հաւասար դնելու յանդգնի յամառութեամբ՝ հերետիկոս, հերձուածող, ամբարիշտ, սրբապիղծ է: Ինչու որ այնպիսին կ'ըլլայ անանկ հերետիկոսութեան մէջ՝ որն որ շատ հեղ եւ յայտնապէս դատապարտուած է եկեղեցւոյն սկզբնաւորութենէն, Ս. Պետրոսի ամէն առաքելոց վրայ ունեցած գլխաւորութեան աստուածային սահմանադրութենէն, եւ դարձեալ բովանդակ եկեղեցւոյն աւանդութենէն՝ որ ընդհանուր ժողովքներու մէջ յայտնի ընդունուած ու հրատարակուած է, մինչեւ աս մեր օրերը,,: Կ'աւելցընէ դարձեալ թէ “Իսկզբան եպիսկոպոսութեան կարգը եկեղեցւոյ մէջ Քրիստոսէ անընդմիջաբար առաքեալ-

1 Hyerarchia.

ներուն շնորհեցաւ, նոյնպէս եւս քահանայապետական գլխաւորութիւնը՝ Պետրոսի։ Բայց թէ առաքելոց եւ թէ անոնց յաջորդներուն մէջ եպիսկոպոսական կարգը իր իշխանութեան կիրառութիւնը կամ գործադրութիւնը այնպէս Պետրոսի հպատակութեան տակ ունեցաւ ու պահեց, ինչպէս Մաքսիմոս քահանայապետին ու անոր յաջորդներուն։ Ինչու որ թէ ինք ունեցաւ եւ թէ ասոնք ունին եպիսկոպոսական ճոխութեան սկզբնական լրութիւնը։ Անոր համար այսպիսի գործքերու մէջ անոնք՝ որ ստորին կարգի են կամ հոգւոց հոգ ունին, ստորակարգեալ են եպիսկոպոսներու՝ որոնցմէ իրենց իշխանութեան գործածութիւնը երբեմն կը սեղմուի եւ երբեմն ի կախ կը պահուի։ Նոյնն առանց տարակուսի մը՝ նկատմամբ բարձր աստիճանաւորներուն՝ Քահանայապետին ալ կը պատշաճի, որ կարող է նոյնպէս անոնց հետ վարուիլ՝ մասնաւոր ու բանաւոր պատճառներու համար„։

Նոյն հեղինակն ուրիշ տեղ մ'ալ այսպէս կը խօսի։ "Նոյն իշխանութեան (իրաւաբանութեան) լրութիւնը ծայրագոյն Քահանայապետին վրայ կը հանգչի, եւ անոր վրայ ամէն բան ստորին է. բայց ուրիշներուն ալ կը հաղորդուի այլեւայլ աստիճանաւ, ինչպէս որ օրինաւորապէս կը սահմանուի այն առաջին սկզբնական իշխանութենէն„ [1]։

Գերսոն առենադպիրը հոս ան միայն կը հրատարակէ՝ որն որ մինչեւ իր ատենը սերտիւ կը հաւատացուէր, մինչեւ որ արեւմտեան մեծ հերձուածն իրեն ետեւէն ձգեց ան ամէն թշուառութեանց շարքը, որոնք դեռ չդադրեցան քրիստոնէութիւնը վրդովելէն։ Բայց ուրիշ բանի մը անցնելէն յառաջ՝ մէկ քանի խօսք ալ ըսեմ աս Հոգեւոր իշխանութիւն բառերուն նշանակութիւնը սահմանելու համար, որոնք օրինական եւ

1 Գերսոն, Վասն վիճակի եկեղ. իշխան. կառ. եւ արձակ. վերջին խորհրդած. Ա. Վասն վիճակի եւ վկայութիւնն առնուած է Պալէպէոյ. խորհրդ. Բ եւ Գ. եւ վասն բինիէն։

միանգամայն աստուածաբանական բառեր են, զորոնք պէտք է զատել ամէն երկդիմի նշանակութենէ՝ որ կրնան տրուիլ ուր որ աղէկ մեկնուած չեն։

Ամէն եկեղեցականք կը հաւատան, որ քահանայական ձեռնադրութեան զօրութեամբը մէկ քանի հոգեւոր իշխանութիւններ կ՚ընդունուին, դարձեալ եպիսկոպոսական ձեռնադրութեան զօրութեամբն ալ ուրիշ իշխանութիւններ կը տրուին, եւ ասոնք կը կոչուին իշխանութիւն կարգի. ուստի եւ առաջինները մի եւ նոյն են ամէն քահանաներու վրայ, նոյնպէս ետքինները ալ՝ ամէն եպիսկոպոսներու վրայ։ Աս տեսակ իշխանութիւններու նկատմամբ Ս. Պետրոս ամենեւին առաւելութիւն մը չունեցաւ իր եղբարցը վրայ առաքելութեան մէջ, նոյնպէս Քահանայապետն ալ չունի առաւելութիւն մը իր եղբարցը վրայ եպիսկոպոսութեան մէջ։ Աս պատճառաւ եպիսկոպոս մը ուրիշ եպիսկոպոսէ մը վեր չէ կարգին իշխանութեամբը, եւ ոչ ալ քահանայ մը՝ ուրիշ քահանայէ մը վեր է կարգին զօրութեամբը։ Հիմակուան ճառուած բովանդակ նիւթին մէջ՝ մեր խօսքն ամենեւին աս կարգին իշխանութեան վրայ չէ։

Բայց ձեռնադրուողը՝ քահանայական ձեռնադրութիւնն ընդունելէն ետքը՝ ո՞ւր եւ ի՞նչպէս, ո՞ւր տեղ եւ ի՞նչ պայմանով ու սեղմամբ պիտի գործածէ իրեն տրուած իշխանութիւնը։ Ասոնք ամէնն ալ կ՚որոշուին եպիսկոպոսէն՝ որն որ անոր հոգաբարձութեան չափաւոր հօտ մը կը յանձնէ, որ ըսել է թէ կու տայ անոր առաքելութիւն մը, թէպէտ ինք եպիսկոպոսը չիդադրիր երբեք անընդմիջական հովիւ ըլլալէն նոյն հօտին, որուն վրայ ուրիշ ստորակարգեալ հովիւ մը կը սահմանէ։

Իսկ երբոր եպիսկոպոս մը ձեռնադրուած է, ո՞վ է որ կ՚որոշէ թէ ո՞ւր եւ ի՞նչպէս եւ ի՞նչ պայմաններով պիտի գործածէ ընդունած իշխանութիւնը. կամ թէ ուրիշ բառերով ըսենք, ո՞վ կու տայ եպիսկոպոսին առաքելութիւնը, ո՞վ կ՚ընտրէ նոյն անձը աս կամ ան թեմը կառավարելու։

Ըս առաքելութիւն տալու իշխանութիւնը պարզապէս հոգեւոր է, եւ գերագոյն ու բարձրագոյն տուրք Աստուծոյ, եւ ասոր վրայ իրենց հիմն ունին՝ Գործածութեան նշանակմամբ՝ ուրիշ որ եւ իցէ ամէն իշխանութիւնները, որոնք Աստուծմէ աւանդուած են եկեղեցւոյ՝ հոգւոց փրկութեան եւ իր խորհրդաւոր մարմնոյն շինութեան համար։ Եւ ո՞ր այն անկեղծ միտքը կամ սիրտն է՝ որ կը սիրէ իր Փրկիչը, եւ կամ ո՞ր այն վեհանձն հոգին՝ որ սիրտ ունենայ ու կարենայ պաշտպանել թէ այսպիսի առաքելութեան իշխանութիւնը՝ տէրութեան մը քաղաքական կառավարութենէ յափշտակուած՝ բայց իրեն սեպհական եղած է։

Ի՞նչ պատասխան կու տան ուղղափառք աս հարցման՝ թէ Ո՞վ է եպիսկոպոսի առաքելութիւն տուողը։ — Կու տամ պատասխանը հեղինակի մը խօսքերով, զորն որ ես մեծապէս կը յարգեմ։

“Եպիսկոպոսական իրաւաբանութիւնը չիկրնար տրուիլ՝ բայց եթէ միայն Քահանայապետէն եւ կամ եպիսկոպոսներուն մարմնոյն բովանդակութենէն՝ Քահանայապետով մէկտեղ։ Ժողովուրդներն առ յաւիտենական փրկութիւն կառավարելու, կրթելու, հնազանդութեան պարտաւորելու եւ հոգեւորական պատիժներով բռնադատելու իշխանութիւնը, մէկ խօսքով ըսենք, եկեղեցական իրաւաբանութիւնը, իրաւցընէ Յիսուսէ Քրիստոսէ տրուած է, եւ ոչ ալ իսկզբան իրմէ զատ ուրիշէ մը կրնար տրուիլ։ Խօսքերնիս յաւիտենական փրկութեան հոգեւոր վախճանին համար ընկերութեան մը մէջ մտած մարդկանց վրայ է, աս ընկերութիւնն է՝ որ Եկեղեցի կը կոչուի։ Կը խօսինք գերագոյն եւ յաւիտենական Հովուին անգին արեամբը գնուած գառնուկներուն վրայ։ Կը խօսինք այնպիսի թագաւորութեան մը վրայ՝ որն որ հոգեւոր թագաւորութիւն մըն է, որ իր սեպհական աշխարհակալութեամբը՝ խաւարի իշխանութեան ձեռքէն առնուած է խաչին յաղթութեամբը եւ դժոխոց վրայ կանգնած փառաւոր յաղ-

թանակաւը։ Եր խօսինք վերջապէս ժողովուրդներու վրայ, զորոնք Հայրն Աստուած իր մարդացեալ Որդւոյն ընծայեց, ասոնց վրայ ամէն իշխանութիւն իրեն ձեռքը տալով։ Արդ՝ աս իշխանութիւնը Յիսուս Քրիստոս որուն հաճեցաւ հաղորդել։ Ս. Պետրոսի մինակ առանձինն եւ ամենէն յառաջ, անկէ ետքը՝ մէկալ առաքեալներուն ալ, բայց միշտ Պետրոսի հետ՝ որ անոնց Գլուխ որոշուած ու դրուած էր։ Աստուծոյ խօսքերուն մէջ, թէ գրուած ըլլան եւ թէ աւանդուած, ուրիշ բան չենք կրնար կարդալ, եւ է ստոյգ՝ որ Յիսուս Քրիստոս աս իշխանութիւնն անձամբ կամ անընդմիջաբար ուրիշներուն չտուաւ։ Սուրբ Գիրքը յայտնապէս կը գրէ թէ երբոր Յիսուս Քրիստոս իր եկեղեցին կառավարելու իշխանութիւնը տուաւ, տասնումէկ առաքեալներէն զատ ուրիշ մը չէր գտնուէր, եւ իր խօսքերն ուրիշի մը չուղղեց՝ բայց եթէ իրենց միայն։ Ս. Մատթէոս աւետարանիչն աս երեւելի պարագան աչքերնուս առջեւը կը դնէ թէ Յիսուս Քրիստոս հրամայեց տասնումէկ առաքեալներուն որ Գալիլիա առանձին տեղ մ'երթան, ուր որ ինքն ալ երեւնալով՝ ամենայն ազգերը սորվեցընելու եւ մկրտելու իշխանութիւն տուաւ իրենց,,։

"Երթայք ասացէք եղբարցն իմոց, զի երթիցեն ի Գալիլեա, եւ անդ տեսցեն զիս . . . ։ Իսկ մետասան աշակերտքն գնացին ի Գալիլեա ի լեառնն՝ ուր ժամադիր եղեւ նոցա Յիսուս։ Եւ մատուցեալ Յիսուս խօսեցաւ ընդ նոսա եւ ասէ. տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս եւ յերկրի։ Գնացէք այսուհետեւ աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա,,։

"Ուրեմն եկեղեցին կառավարելու իշխանութիւնը՝ որն որ եպիսկոպոսութեան տարածուելովը հետզհետէ ուրիշներուն ալ հաղորդուեցաւ, եւ կը շարունակուի մինչեւ մեր ժամանակը, Քրիստոս երկինք համբառնալէն առաջ իր տասնումէկ առաքեալներուն տուաւ, եւ ուրիշներուն չէր կրնար տրուիլ՝ բայց եթէ առաքեալ-

ներուն մէկէն, որոնք մինակ Քրիստոսէն նոյն իշխանութիւնն անմիջապէս ընդունեցան։ Եպիսկոպոսութեան լրութեան ու ընդհանրութեան մէջ, եպիսկոպոսք առանձին առանձին մտածելով, չեն յաջորդեր առաքեալներուն։ Միայն Հռոմայ Քահանայապետը Ս. Պետրոսի յաջորդը, եւ բովանդակ եպիսկոպոսաց գումարութիւնը՝ որ Հռոմայ Քահանայապետն իրեն գլուխն ունենալով՝ առաքելական խմբին կը յաջորդէ, ունին եպիսկոպոսութիւնը՝ իր ամենայն լրութեամբը, ընդհանրութեամբն ու իշխանութեամբը, ինչպէս Քրիստոսէ հաստատուեցաւ։ Ուրեմն միայն Հռոմէական Քահանայապետն ու բովանդակ եպիսկոպոսաց գումարութիւնն է՝ որ բոլոր քրիստոնեայքն իրեն հպատակ ունի եւ իր իրաւաբանութիւնը բովանդակ եկեղեցւոյ վրայ կը տարածէ։ Աստի եւ ի հարկէ կը հետեւի թէ մինակ Հռոմայ Քահանայապետը կամ ամբողջ եպիսկոպոսաց գումարութիւնը կրնայ կառավարուելու հպատակներն որոշել, եւ շնորհել եպիսկոպոսական իրաւաբանութիւնը։ Ուրիշ ով որ ըլլայ՝ որ այսպիսի բան մը փորձել ուզէ իրեն չվերաբերած հպատակներու վրայ, այնպիսի գործք մը կը գործէ՝ որ էապէս եւ ներքուստ բնապէս ոչինչ է եւ ոչինչ զօրութիւն ունի։ "Ոչ ոք կու տայ ինչ որ չունի„[1]։

Յառաջ բերեմ ուրիշ վկայութիւն մ'ալ, որն որ շատ յարմար եւ սքանչելի է անգղիական սուտ գաղափարները եկեղեցւոյ կառավարութեան վրայէն փարատելու։

"Յիսուս Քրիստոս իր հօտն այնչափ մասերու չբաժնեց, եւ ոչ աշխարհքս՝ այնչափ թեմերու, որ մէկը՝ Յովհաննու, մէկը՝ Անդրէասի եւ մէկալը՝ Մատթէոսի եւ այլն, յանձնէր. Յիսուս Քրիստոս եպիսկոպոսութիւնն. իր բովանդակ լրութեամբը, ընդհանրութեամբն ու իշխանականութեամբը սրբոյն Պետրոսի տուաւ, եւ նոյնը շնորհեց նաեւ ամբողջ առաքելական

1 Պոլճենի Եպիսկոպոսութիւն, Գլ. Ը. 81։

խմբին՝ միշտ սրբոյն Պետրոսի նախագահութեամբը. առմէն մէկ առաքեալ ունէր լիակատար եւ ընդհանուր իշխանութիւն բոլոր եկեղեցւոյ մէջ, բայց հպատակելով սրբոյն Պետրոսի։ Առաքեալք առաջինն եղան ժողովուրդը բաժնելու եւ թեմեր որոշելու մէջ, Աստուծոյ խօսքին սերմանց պտղաբեր ըլլալուն եւ քրիստոնէական կրօնքին բոլոր երկրիս վրայ հետեւողներ ունենալուն համաձայն։ Առաքելոց ընտրած եպիսկոպոսներէն ոմանք՝ մէկ ժողովրդեան ու տեղւոյ մը վրայ կապուած չէին, այլ երբեմն հոն, երբեմն հոս կը խրկուէին, ինչպէս որ քրիստոնէից պիտոյքը կը պահանջէր. աս եպիսկոպոսները կը գործէին առաքեալներէն յանձնառական իշխանութեամբ։ Ուրեմն կ'ընդունէին անընդմիջաբար առաքեալներէն՝ ինչ որ անոնք Քրիստոսէն ընդունած էին։ Իսկ ոմանք ալ որոշուած աթոռի մը վրայ կապուած եւ մէկ սահմանաւոր վիճակի մը կառավարութիւնն առած էին։ Ասոնք միայն եւ կարգաւոր իրաւաբանութիւն ունէին. բայց յայտնի բան է որ զանիկայ անընդմիջաբար առած էին առաքեալներէն՝ որոնք զիրենք եպիսկոպոս դրած էին աս որոշեալ տեղւոյն վրայ՝ քան թէ ուրիշ տեղ մը, եւ աս մասնաւոր ժողովրդեան՝ քան թէ ուրիշ ժողովրդեան մը վրայ։ Առաքելոց աշակերտներն ալ եպիսկոպոսութեան հետզհետէ տարածուելու ատեն՝ նոյն ընթացքը բռնեցին. եպիսկոպոսներուն շատնալովը թեմերն ալ միշտ աւելի եւս պզտիկցան, նոյնպէս նաեւ եպիսկոպոսաց իրաւաբանութիւնն ալ աւելի եւս ամփոփեցաւ։ Յայտնի է ուրեմն որ աս իրաւաբանութիւնը կը տրուէր անոնցմէ՝ որոնք եպիսկոպոսները կը սահմանէին, եւ զիրենք աս կամ ան որոշուած ժողովրդեան վրայ կը դնէին. եւ որովհետեւ աս հիմնադիրներն առաքեալներէն ընդունած սահմանադրութիւններուն ու հրահանգներուն համաձայն կը գործէին, կը հետեւի որ եպիսկոպոսներն ալ զանիկայ՝ սկզբնաւորութեանը նայելով՝ անընդմիջապէս Քրիստոսէ ընդունած կ'ըլլային։ Այսպէս վտակները (Ա.

Ափրիկանոսին խօսքը բանեցընելով, Գիէզէ ֆօն Ճօռլինկեան Տէկէլէյգոյ.) որչափ ալ իրենց ընթացքին մէջ բաժանուելին ու շատնան՝ աս եւ ան կողմերն ուռօգելու համար, եւ որչափ որ ալ մէկը մէկալէն ելլելու ըլլայ, այսու ամենայնիւ եթէ դէպ ի վեր երթալու ըլլանք, կը գտնենք որ ամէնքն ալ յառաջ եկած են մէկ աղբիւրէ մը՝ որն որ իրենց առաջին ջրերն ու շարժումը տուաւ„[1]։

Ի վախճանի աս մինակ կ՚աւելցընեմ թէ անիկա՝ որն որ ընդունեցաւ "Զօշխարս արածելու„ պաշտօնը, չզատուեցաւ երբեք անոնց հովիւն ըլլալէն՝ երբոր զանոնք եղբայրցը բաժնեց, ինչպէս որ եպիսկոպաս մը հօտին մէկ մասն իրեն հպատակ քահանայի մը ձեռքը յանձնելովը՝ չդադրիր երբեք անոր բուն հովիւն ըլլալէն։ Ասոր համար աս յանձնապարութիւնք միշտ պէտք տեւէր եւ մշտնջենաւոր յաջորդութիւն մը պիտ'որ ունենար, (ինչու որ իրեն վրայ շինուած եկեղեցին երբեք պիտի չյաղթուէր.) այսպէս իր յաջորդն ալ կը շարունակէր նոյն լրացեալ եւ որոշուած իշխանութեան մէջ "ընդհանուր եկեղեցին յանձանձելու, կառավարելու եւ կառավարելու„[2]։ Ինք ուրեմն՝ որ իբրեւ ընդհանուր եկեղեցւոյ գլուխ եւ ներկայացուցիչ՝ առաջին աթոռները Հռոմայի, Աղեքսանդրիայի ու Անտիոքայ եպիսկոպոսներուն եւ անոնցմէ յառաջ եկողներուն առաքելութիւնը կ՚աւանդէր, եւ նոր աթոռներս ալ կուտայ ան եպիսկոպոսաց առաքելութիւնը, որոնք ուղղակի իրմէ յառաջ եկած են, աս երկու դէպքերուն մէջ ալ ինքն իր վրայ անբաժանելի ակունքը կը պահէ, եւ ասիկայ է ան տիեզերական, անընդմիջական եւ գերագոյն իրաւաբանութիւնը՝ որն որ մինակ գլխաւորութեան բնութեան կը պատշաճի։

1 Պոլէնի, Եպիսկոպոսութիւն. Գլ. Է. 94։ 2 Սահմանք Փլորենտեան ժողովոյն։

## ՀԱՏՈՒԱԾ Ե.

Վկայութիւն եկեղեցւոյ է նշանակ ճշմարտութեան։

Ա. Մինչեւ հիմայ տեսանք Հռոմայ դահին գլխաւորութիւնը, որ մեր օրերս կը վայելէ իր խաղաղական ստացուածքը, զորն որ բազմատեսակ ազգեր կը ճանչնան, եւ ինք Աստուծոյ միանաւոր մէկ նախախնամութեանքն առանց նման օրինակի մը տասն՛ութը դարեր վեր կը տեւէ, ուր որ իր բոլորտիքն ամէն բան, պետութիւններ, ազգեր, սովորութիւններ, մշակութիւն, դրագիտութիւն, քաղաքական իշխանութեան եւ բարոյական հզօր ազդեցութիւններու աթոռներն անդադար կը փոխուէին. դեռ կը կենայ աս ամէնէն հնագոյն իշխանութիւնը՝ որն որ իր բոլորտիքն իբրեւ որդիք՝ բոլոր Եւրոպայի թագաւորութիւններուն ծնանիլը, եւ բոլոր ազգերուն սորվելու համար իր ոտքը գալը տեսած է. իշխանութիւն մը՝ որ մարդկային մտաց առջեւն արդար իրաւամբ իր իրաւանցը խիստ հեռամուտ կ'երեւայ, եւ իրաւամբ կը պահանջէ որ ըստ արդարութեան՝ իր կողմը մեկնուին իրաւունքները, եթէ երբեք մեկնութեան հարկաւորութիւն ըլլայ. աս իշխանութեան վրայ խօսող հին հեղինակներն արդէն դոյզն բանի մը պէս կը ճառեն, եւ ոչ ալ հարկաւոր կը համարին անոր սահմանը տալու։

Բ. Տեսանք որ աս իշխանութիւնը չէ թէ Աստուծոյ եկեղեցւոյն մէկ քանի զիջման եւ ոչ ալ անոր եպիսկոպոսներուն դարէ դար ըրած զիջումներուն վրայ յենած է, այլ եկեղեցւոյ Հիմնադրին յայտնի խօսքերուն վրայ, որոնք այնպէս բացայայտ եւ նշանաւոր են՝ որ իրենք իրենցմէ կը վկայեն թէ Անոր խօսքերն են, որն որ այնպէս խօսեցաւ՝ ինչպէս որ երբեք մարդ մը չէր խօսած։ Նոյն խօսքերը կը քարոզեն միանգամայն այն գերագոյն իշխանութիւնը՝ որն որ միշտ կանոն եւ առաջնորդ է եկեղեցւոյ, եւ իրաւցընէ արժանի են որ եկե-

ղեցւոյ սիրտը տպաւորուին եւ շարժեն անոր բազուկը։ Որ փակեն իրենք իրենց մէջ այն կենդանարար սերմը՝ ուստի որ եկեղեցւոյ բովանդակ կարգաւորութիւնը ծլեցաւ։ Ըս խօսքերուն մէջ ամէն բանի Արարչէն տընկուած է սկիզբ մը՝ որն որ զօրութեամբ կը պարունակէ թէ ամբողջ ծառը իր լայն ու ընդարձակ ճիւղերովը եւ թէ միանգամայն անոր բազմաթիւ ու բազմատեսակ տերեւներէն ամենափոքր տերեւներն ալ։

Գ. Տեսանք որ աս կենդրոնական իշխանութեան հաստատուելուն վախճանն ու առաջկան ուրիշ բան չէ՝ բայց եթէ հաւատոյ եւ հաղորդակցութեան միութիւնը, եւ խորհրդական մարմնոյն կազմութիւնը՝ ըստ չափու կատարեալ մարդուն։ Եւ ասիկայ չէ թէ միայն Աստուածորդւոյն մարդեղութեան գլխաւոր վախճանն էր, հապա նաեւ կ'ակնարկէ ան փառքը՝ որն որ պիտի յայտնուի “ի նորոգել ամենայնի„։

Դ. Ըս իշխանութեան էութիւնը կը կայանայ բովանդակ եկեղեցւոյ վրայ տարածեալ տիեզերական, անընդմիջական եւ գերագոյն իրաւաբանութեան մը վրայ, ինչպէս որ հարկաւ կը պահանջեն անոր հիմնադրութեան բառերուն բնական իմաստն ու ան վախճանը՝ զորն որ Աստուած այս իշխանութիւնը հաստատելու ատեն դիտած էր, եւ որուն համար ալ կրնամ ըսել թէ ինք մարդկային մարմին առաւ։

Արինակ բան մը կը մնայ մեզի հոս տեղս ըսելու, այս ինքն թէ նոյն աս եկեղեցին է, որ իր գոյութեան առաջին վայրկենէն՝ շարունակ վկայած է աս իշխանութեան մշտնջենաւոր գոյութեան՝ որն որ իր շէնքը չէ, եւ որուն մէջ սերտ միութեան, զօրութեան եւ կարողութեան ամենայն բաւական պատճառը կայ։ Ըս բանս ես վերը արդէն ըստ մասին ցուցուցի՝ քանի մը պատճառներով, որոնք թէպէտ ստոյգ է՝ սակաւաթիւ, բայց միանգամայն հին ժամանակուան ամենէն աւելի ստիպողականներն էին։ Սակայն կ'ուզեմ դարձեալ ուրիշ աւելի եւս բազմաթիւ վկայութիւններ յառաջ բերել,

այնպիսի վկայութիւններ՝ որոնց նախապաշարմունքէ ազատ հոգի մը դիմադրելու բան չկրնար գտնել:

«Նորածին եկեղեցին առջի երեք դարերուն մէջ անդադար եւ մշտատեւ դառն հալածանաց տակ ըլլալով, ընդհանուր ժողովքի մը նստելու երբեք դիւրութիւն չկրցաւ ունենալ: Ուստի եւ բոլոր այնչափ ժամանակ կառավարուեցաւ առաքելական դասուն գլուխն եղող սուրբ Պետրոսէն ընդունուած կանոնին համաձայն կարգադրուած եպիսկոպոսութենէ: Սուրբ Պետրոս՝ Հռոմ, Աղեքսանդրիա եւ Անտիոք հաստատեց անձամբ երեք մետրապոլտական աթոռները՝ որոնք երեք մեծ պատրիարքութեան մայր եղան: Կ'ուզենք ըսել որ թէպէտ նոր եկեղեցիները՝ որոնք ժամանակին յառաջանալովը առնցմէ կը ծնանէին եւ առանձին իրենց եպիսկոպոսն ու կառավարութիւնը կ'ունենային, այսու ամենայնիւ իւրաքանչիւր մետրապոլտական եկեղեցի իր նորածին եկեղեցիներուն վրայ հայրական ազդարարութեան ու խնամակալութեան իրաւունքը կը պահէր: Վերջէն աս երեք աթոռներէն՝ Աղեքսանդրիայ ու Անտիոքայ աթոռները Հռոմայ աթոռոյն ստորակայուեցան. եւ երկուքին եպիսկոպոսներն ալ իրենց հաւատոյ անբծութեան ու եկեղեցիներուն աղէկ կառավարութեան վրայ անոր համար կու տային: Իսկ թէպէտ աս առաջին երեք դարուց յիշատակարաններուն մեծ մասը կորսուած է, այսու ամենայնիւ դեռ այնպիսի յիշատակարաններ պահուած են, որ յայտնի եւ պայծառ լուսով կը ցուցընեն Հռոմէական գլխաւորութեան գոյութիւնը: Իսկ ասիկայ այնպէս ստոյգ է՝ որ ասկից յառաջ կը բերենք թէ մինակ Հռոմայ եպիսկոպոսն ունի իրաւունք վերին կառավարութեան աշխարհքիս բոլոր եկեղեցիներուն վրայ, այնպէս որ երբեմն զիրենք իր հաղորդակցութենէն կտրելու հանելու կը սպառնայ, երբեմն ալ իրօք կը մերժէ իր հաղորդակցութենէն զանոնք՝ որոնք չեն պահեր կամ հաւատոյ անբծութիւնը՝ որուն պահպանութեան ինք հսկող դրուած է, եւ կամ

ղեցւոյ սիրտը տպաւորուելն եւ շարժեն անոր բազուկը։ Ալ փակեն իրենք իրենց մէջ այն կենդանարար սերմը՝ ուստի որ եկեղեցւոյ բովանդակ կարգաւորութիւնը ծլեցաւ։ Աս խօսքերուն մէջ ամէն բանէ Արարչէն տընկուած է արմատ մը՝ որն որ զօրութեամբ կը պարունակէ թէ ամբողջ ծառը իր լայն ու ընդարձակ ճիւղերովը եւ թէ միանգամայն անոր բազմաթիւ ու բազմատեսակ տերեւներէն ամենափոքր տերեւներն ալ։

Գ. Տեսանք որ աս կենդրոնական իշխանութեան հաստատուելուն վախճանն ու առարկան ուրիշ բան չէ՝ բայց եթէ հաւատոյ եւ հաղորդակցութեան միութիւնը, եւ խորհրդական մարմնոյն կազմութիւնը՝ ըստ չափու կատարեալ մարդուն։ Եւ ասիկայ չէ թէ միայն Աստուածորդւոյն մարդեղութեան գլխաւոր վախճանն էր, հապա նաեւ կ'ակնարկէ ան փառքը՝ որն որ պիտի յայտնուի “ի նորոգել ամենայնի„։

Դ. Աս իշխանութեան էութիւնը կը կայանայ բովանդակ եկեղեցւոյ վրայ տարածեալ տիեզերական, անընդմիջական եւ գերագոյն իրաւաբանութեան մը վրայ, ինչպէս որ հարկաւ կը պահանջեն անոր հիմնագրութեան բառերուն բնական իմաստն ու ան վախճանը՝ զորն որ Աստուած այս իշխանութիւնը հաստատելուն դիտած էր, եւ որուն համար ալ կրնամ ըսել թէ ինք մարդկային մարմին առաւ։

Մինակ բան մը կը մնայ մեզի հոս տեղս ըսելու, այս ինքն թէ նոյն աս եկեղեցին է, որ իր գոյութեան առաջին վայրկենէն՝ շարունակ վկայած է աս իշխանութեան մշտնջենաւոր գոյութեան՝ որն որ իր շէնքը չէ, եւ որուն մէջ սերտ միութեան, զօրութեան եւ կարողութեան ամենայն բաւական պատճառը կայ։ Աս բանս ես վերը արդէն ըստ մասին ցուցուցի՝ քանի մը պատճառներով, որոնք թէպէտ ստոյգ է՝ սակաւաթիւ, բայց միանգամայն հին ժամանակուան ամենէն աւելի ստիպողականներն էին։ Սակայն կ'ուզեմ դարձեալ ուրիշ աւելի եւս բազմաթիւ վկայութիւններ յառաջ բերել,

այնպիսի վկայութիւններ՝ որոնց նախապաշարմունքէ ազատ հոգի մը դիմադրելու բան չիկրնար գտնել։

«Նորածին եկեղեցին առջի երեք դարերուն մէջ անդադար եւ մշտատեւ դառն հալածանաց տակ ըլլալով, ընդհանուր ժողովքի մը նստելու երբեք դիւրութիւն չկրցաւ ունենալ։ Ուստի եւ բոլոր այնչափ ժամանակ կառավարուեցաւ առաքելական դասուն գլուխն եղող սուրբ Պետրոսէն ընդունուած կանոնին համաձայն կարգադրուած եպիսկոպոսութենէ։ Սուրբ Պետրոս՝ Հռոմ, Աղեքսանդրիա եւ Անտիոք հաստատեց անձամբ երեք մետրապոլտական աթոռները՝ որոնք երեք մեծ պատրիարքութեան մայր եղան։ Կ'ուզենք ըսել որ թէպէտ նոր եկեղեցիները՝ որոնք ժամանակին յառաջանալովը առնցմէ կը ծնանէին եւ առանձին իրենց եպիսկոպոսն ու կառավարութիւնը կ'ունենային, այսու ամենայնիւ իւրաքանչիւր մետրապոլտական եկեղեցի իր նորածին եկեղեցիներուն վրայ հայրական ազգաքալութեան ու խնամակալութեան իրաւունքը կը պահէր։ Վերջէն աս երեք աթոռներէն՝ Աղեքսանդրիայ ու Անտիոքայ աթոռները Հռոմայ աթոռոյն ստորակարգուեցան. եւ երկուքին եպիսկոպոսներն ալ իրենց հաւատոյ անբծութեան ու եկեղեցիներուն աղէկ կառավարութեան վրայ անոր համար կու տային։ Իսկ թէպէտ աս առաջին երեք դարուց յիշատակարաններուն մեծ մասը կորսուած է, այսու ամենայնիւ դեռ այնպիսի յիշատակարաններ պահուած են, որ յայտնի եւ պայծառ լուսով կը ցուցընեն Հռոմէական գլխաւորութեան գոյութիւնը։ Իսկ ասիկայ այնպէս ստոյգ է՝ որ ասկից յառաջ կը բերենք թէ մինակ Հռոմայ եպիսկոպոսն ունի իրաւունք վերին կառավարութեան աշխարհքիս բոլոր եկեղեցիներուն վրայ, այնպէս որ երբեմն զիրենք իր հաղորդակցութենէն կտրելու հանելու կը սպառնայ, երբեմն ալ իրօք կը մերժէ իր հաղորդակցութենէն զանոնք՝ որոնք չեն պահեր կամ հաւատոյ անբծութիւնը՝ որուն պահպանութեան ինք հսկող դրուած է, եւ կամ

առաքելականներէն աւանդուած հաղորդակցութեան կանոնները։ Այսպէս Արեւմայ (Հռոմայ Քահանայապետին) այն ծանօթ դէպքը, որ սուրբ Յովհաննէս առաքելոյն կենդանութեան ատենն իսկ, պատուէր կու տար Կորընթոսի եկեղեցւոյն իր հերձուածոց ճար մը գտնելու, դարձեալ սրբոյն Ս. Վիկտորի՝ Ասիական եկեղեցեաց յանդիմանելը, սուրբ Ստեփանոսին՝ Ափրիկէի եկեղեցիներուն սպառնալը, վերջապէս սուրբ Դիոնիսիոսին՝ Դիոնիսիոս Աղեքսանդրիայի եպիսկոպոսէն հաւատոյ պատասխանատուութիւն ընդունելը՝ առջեւնիս եղած ճշմարտութիւնը հաստատելու անհերքելի ձեռնարկութիւններ են։ Իսկ ձեռնարկութեան բովանդակ ոյժն ու զօրութիւնը յայտնի է՝ որ մէկ կողմանէ Հռոմայ եպիսկոպոսը, եւ ոչ թէ ուրիշ մէկը, բուն հարկաւորութեան՝ իբրեւ իրեն սեպհական անձնուն վրայ վերին կառավարութեան իրաւունքը կը գործածէ, եւ միւս կողմանէ՝ անոնց մէկը չ'ըլլար ու իրեն վրայ իրաւունք մը բանեցընել ուզելու չյանդգնիր։

Բայց մէյ մ'որ հալածանաց դարերն անցան գացին, եւ եկեղեցին կրցաւ իբրեւ բարոյական մարմին՝ ազատօրէն գործել եւ Աստուծմէ իրեն տրուած իշխանութիւնը գործածել, անմիջապէս տեսնուեցաւ որ Ս. Պետրոս իր բարձր քահանայապետական աթոռէն կը կառավարէ, կը պահպանէ եւ կը զօրացընէ թէ եկեղեցւոյ արտաքին կազմուածքը եւ թէ ներքին հաւատքը։

Հռոմայի եպիսկոպոսներուն՝ Աղեքսանդրիայի ու Անտիոքայ եպիսկոպոսներուն վրայ ունեցած գերագոյն իշխանութիւնը՝ 325ին պայծառ եւ հաստատուն ճշմարտութիւն մըն էր, որովհետեւ Հռոմայ գահն իբրեւ գերագոյն ատեան մը սեպուեցաւ՝ Անտիոքայ եպիսկոպոսին իր աթոռակարգեալ եպիսկոպոսներուն վրայ ունեցած իրաւունքն որոշելու համար, եւ նոյն ատեն մէջ նաեւ վկայուեցաւ թէ "Հռոմայ եկեղեցին միշտ գլխաւորութիւնն ունեցած է„։

Սպանիացւոց Գորտովայի եպիսկոպոսը, որն որ

առջի ատենուընէն՝ քահանայապետական հրեշտակ. եւ կայսերական գործակալ ճանչցուեցաւ, եւ իրեն հետ մէկտեղ Վիտոս ու Վինկենտիոս Ս. Սեղբեստրոսի հրեշտակները՝ գահերէց կը նստէին ան ժողովոյն մէջ, ուր որ կը սահմանուէր թէ "Այս ամենայն պէտք է Սեղբեստրոսի՝ Հռոմ քաղքին եպիսկոպոսին յանձնուիլ" [1], որ վաւերական ըլլայ անոր հաստատելովը, եւ անով միայն ընդհանուր ժողովքն իր օրինաւորութիւնն ու ճոխութիւնը կ'առնէր: Ասիկայ աւելի պայծառ կը տեսնուի՝ եթէ միտ դնելու ըլլանք որ երեքհարիւր տասն'ութը եպիսկոպոսներուն մէջէն մինակ քսանուերկուքն Եւրոպայէն էին:

Սարդիկէ քաղաքը 347ին մեծ ժողովք մը կը գումարուէր, որն որ ընդհանուր ըլլալու որոշուած էր, եւ որուն գահերէց կը նստէր նոյն իսկ Գորտովայի եպիսկոպոսը: Ասիկայ իր ժողովական թղթին մէջ Յուլիոս Քահանայապետին այսպէս կը գրէր. "Արդարեւ խիստ բաւական եւ ամենապատշաճ գործք մ'եղած պէտք է համարուիլ, որ ամենայն եպիսկոպոսք ամէն գաւառներէն՝ գլխոյն, այս ինքն՝ Պետրոս առաքելոյն աթոռին դիմեն" [2]: Աս երկու մեծ եւ հնագոյն ժողովներուն աննուէն չեն սահմաներ գլխաւորութեան բնութիւնը, մանաւանդ թէ անոր կը դիմեն՝ եկեղեցւոյ առջի վայրկեաններէն գոյող բանի մը պէս: Այսպէս անյողդողդ, անյաղթելի է ան ճշմարտութիւնը՝ զորն որ դաւանեցաւ Հռոմայի եօթանասուն եպիսկոպոսաց ժողովքը, (որուն գահերէց էր Գելասիոս Քահանայապետը, 494ին.) նոյն ժողովքը ան մինչեւ հիմայ կաթողիկէ եկեղեցիէն պահուած Ս. Գրոց կանոնին վրայ խօսելէն ետքը, կ'ըսէ. "Թէ ամէն մարգարէից, աւետարանչաց ու առաքելոց գրքերէն ետքը, որոնց վրայ հիմնուած է կաթողիկէ եկեղեցին Աստուծոյ շնորհօքը, արժանի կը համարինք նաեւ նշանակելու որ թէպէտ տիեզերաց ամէն կաթո-

1 Մանսեան կան. Աւաք. Աթո. 46, Տպագրութիւն Պալերինեայ: ուղ. Ս. Լեւոն. Հատ. Գ. Եր. 2 Մանսի, Հատ. Գ. Եր. 40:

ղեկէ եկեղեցիները Քրիստոսի հարսանեաց մի միայն առագաստը կը կացուցանեն, այսու ամենայնիւ սուրբ, Հռոմէական, կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցին ամենէն գերապանցն եղած է՝ չէ թէ ժողովական վճիռներով, հապա գլխաւորութիւնն ընդունելով Քրիստոսի Տեառն մերոյ ու Փրկչին աւետարանական ձայնովը Թէ Դու ես վէմ, եւ այլն: Որուն նաեւ ընկեր տրուեցաւ երանելի Պօղոս առաքեալ, անօթն ընտրութեան, որ նաեւ մի եւ նոյն օրը Հռոմ քաղաքին մէջ՝ Ներոն ինքնակալին ատենը Պետրոսի հետ փառաւոր մահ կրելով, մարտիրոսութեամբ պսակուեցաւ: Իսկ երկուքն ալ հաւասարապէս՝ վերոյիշեալ Հռոմէական սուրբ եկեղեցին Քրիստոսի Տեառն մերոյ նուիրեցին, եւ զանիկայ՝ իբրեւ այնպիսի բոլոր աշխարհքիս ամէն քաղաքներուն առջեւը դրին, թէ իրենց ներկայութեամբն եւ թէ արժանաւոր յաղթանակաւը: Առաջին է ուրեմն Հռոմէական եկեղեցին, Աթոռ Պետրոսի առաքելոյն, որն որ ամենեւին ո՛չ արատ ունի եւ ո՛չ աղտեղութիւն[1] եւ ոչ ուրիշ ասոնց նման բան մը: Իսկ իրմէ ետքը՝ երկրորդն է Աղեքսանդրիայի աթոռը, զորն որ երանելոյն Պետրոսի անուամբը սրբեց իր աշակերտը Մարկոս աւետարանիչ, որ իրմէ Եգիպտոս խրկուելով՝ ճշմարտութեան բանը քարոզեց, եւ փառաւոր մարտիրոսութեամբ ալ պսակուեցաւ: Երրորդ տեղին ու պատիւն ունի Անտիոքայ աթոռը՝ նոյն երանելի Պետրոս առաքելոյն մեծարանաց համար, որովհետեւ ինք Հռոմ գալէն յառաջ՝ հոն կեցած էր, եւ հոն նախ եւ առաջին, իբրեւ նոր ժողովուրդ մը Քրիստոնէից անունն ելաւ,,[2]:

Բայց հիմակ յառաջ բերենք այն վկայութիւններ՝ որոնք կարգաւ եօթը յետագայ յառաջադրութիւնները կը ցուցընեն:

Ա. Հռոմայ գահին՝ ամենայն եկեղեցեաց վրայ ունեցած ընդհանուր գլխաւորութիւնը ճշդիւ այնպէս էր առջի ատենները, ինչպէս որ մեր օրերը կ՚ուզուի:

1 Ըստ Լտ. կնճիռն, Ruga. 2 Մանսի, Հատ. Ը. Եր. 149:

Բ. Աս գլխաւորութեան հիմը՝ սուրբ աւետարա-նիչներուն խօսքերուն վրայ դրուած է, (Մատթ. ԺԶ. 18. Ղուկ. ԻԲ. 31, 32. Յովհ. ԻԱ. 15—18.) որոնք առանձինն եւ մանաւորապէս կ'ընծայուին Քահա-նայապետին՝ իբրեւ Պետրոսի յաջորդին։

Գ. Եպիսկոպոսական իրաւաբանութեան սկզբնա-կան բղխումը պէտք է փնտռել յանձն Պետրոսի, եւ իր մշտնջենաւոր աղբիւրն է Հռոմայ աթոռը՝ որ զանիկայ կը ներկայացընէ։

Դ. Քահանայապետին՝ Արեւելքի վրայ ունեցած գլխաւորութիւնը, նոյն իսկ Արեւելքի հովիւներն ու ժողովները կը դաւանին հերձուածէն յառաջ։

Ե. Ժողովներուն նկատմամբ՝ Քահանայապետին վարմունքը վաւերական ցոյց է իր բարձրագոյն աստի-ճանին։

Զ. Այսպէս նաեւ Քահանայապետին՝ ժողով-ները հաստատելը։

Է. Նոյնպէս Քահանայապետին հետ հաղորդա-կցութեան հարկաւորութիւնը։

Ասանկ ընդարձակ դաշտի մը մէջ՝ մինակ գլխաւոր փաստերն ու ցոյցերը կ'ընտրեմ, որոնք միանգամայն կրնան համոզել համոզուելու ընդունակութիւն ունե-ցողները։

Ը. Առաջնոյն, այս ինքն՝ ընդհանուր գլխաւորու-թեան նկատմամբ, սկսինք քննել տիեզերական մեծ ժողովներուն վկայութիւնը, երրորդէն՝ որն որ 431ին գումարեցաւ, մինչեւ ութերորդը՝ 869ին. որովհետեւ ասոնք ամէնն ալ արեւելեան եպիսկոպոսներէն բաղկա-ցած էին, եւ շատ անգամ մինակ քահանայապետական հրեշտակները, կամ գրեթէ միայն իրենք արեւմուտքէն ներկայ կը գտնուէին։ Ուստի եւ աս ժողովներն իրենց ներքին ճոխութենէն զատ՝ մեզի ուրիշ փաստ մ'ալ կ'ընծայեն, որով կարող կ'ըլլանք իրաւամբ հաստատել թէ ինչ որ անոնց առջեւը կամ անոնցմէ, առանց մէկ ընդդիմութեան, ի շնորհս արեւմտեան մեծ աթոռին

կը հաստատուէր, անհակառակելի հաստատութիւն ունէր։ Վստահ եմ թէ որ մէկը կարենար հակառակիլ՝ գիւրու կրնար իր հակառակութիւնը յառաջ տանիլ, որովհետեւ այն ժողովները "ամէնքն ալ արեւելք, արեւելեան եպիսկոպոսներէն, եւ նոյն ազգէն կայսրներու տակ գումարուած էին"[1]։

Երրորդ ժողովքը գումարուեցաւ Եփեսոս, 431ին, զՆեստոր Կոստանդնուպոլսոյ արքեպիսկոպոսը դատելու համար։ Այս ժողովքին մէջ Կեղեստինոս Քահանայապետին մասնաւոր յանձնարարութեամբը Ս. Կիւրեղ Աղեքսանդրիոյ եպիսկոպոսը՝ երեք քահանայապետական հրեշտակներով գահերէց կը նստէր։ Ահաւասիկ նոյն ժողովքին մէջ խօսուածներուն մէկ կտորը. Արկադիոս եպիսկոպոսն ու Հռովմէական եկեղեցւոյն հրեշտակը կ'ըսէ. "Շնորհ ըլլայ ձեր երանութեանց հրաման տալու որ կարդացուի այն թուղթը՝ զոր բերած ենք ամենայն յարգութեամբ անուանելու Կեղեստինոս Ս. Քահանայապետէն՝ առաքելական աթոռին եպիսկոպոսէն. որմէ ձեր երանութիւնքը կրնան իմանալ՝ թէ որչափ հոգ ու խնամ ունի ամեն եկեղեցիներուն վրայ"[2]։ Իսկ նոյն թղթին մէջ գրուած էր. "Մենք մեր հոգաբարձութեամբը ձեզի խրկեցինք մեր սուրբ եղբայրքն ու քահանայութեան գործակիցները, մեզի հետ մէկ սիրտ մէկ հոգի եղող առաքինի եւ հռչակաւոր անձինքը՝ զԱրկադիոս եւ զՊրոյեկտոս եպիսկոպոսները եւ զՓիլիպպոս մեր երէցը, որ ձեր գործոցը ներկայ ըլլան եւ ի գործ դնեն մեր յառաջագոյն սահմանած բաները՝ որոնց ձեր սրբութենէն հաւանութիւն տրուելուն ամենեւին չենք տարակուսիր"[3]։ Ասկէ կը ցուցնէ որ Քահանայապետը զՆեստոր յառաջագոյն դատապարտած ու կարգէն ձգած էր՝ եթէ յետս չկոչէր։ Այսպէս պայծառութիւն կ'առնէ. ժողովքին գահին վրայ տուած հետե-

1 Կիզոյ, Քաղաքականութիւն ի Գաղղիա. Դաս ԺԲ։

2 Մանսի, Ջ. 1228։

3 Կոստան. Թուղթք Քահանայպետ. Հատ. 1162։

ւեալ վճիռը. «Մեր կանոններէն եւ մեր ամենասուրբ հօրն ու ծառայակցին՝ Կեղեստինոսի հռոմայ եկեղեցւոյն եպիսկոպոսին թղթէն ստիպուած, արցունքով եւ ի հարկէ եկանք այս ցաւալից վճռին անոր դէմ տալու»[1]:

Բայց անկից՝ Փիլիպպոս երէցն եւ առաքելական դահին հրեշտակն ըսաւ. «Շնորհակալ ըլլանք ամենասուրբ եւ մեծապատիւ ժողովքիս, որ կարդացուելով ձեր առջեւը մեր սուրբ Քահանայապետին թղթերը, սուրբ գլխոյն հետ՝ սուրբ անդամներու պէս միացաք: Վասն զի ձեր երանութեանց անծանօթ չէ, որ երանելի Պետրոս առաքեալ՝ ինչպէս առաքելոցներուն՝ այսպէս ալ ամենայն հաւատոյ գլուխ է»[2]: Եւ նոյն հրեշտակը Նեստորի դէմ եղածներուն ընթերցումը լսելէն ետքը՝ ըսաւ. «Ամենուն ոչ ոք կը տարակուսի, մանաւանդ թէ ամէն դարերու յայտնի է, թէ սուրբն եւ երանելին Պետրոս, առաքելոց իշխանն ու գլուխը, ախոյեան հաւատոյ եւ հաստատութիւն կաթողիկէ եկեղեցւոյ, մեր Տիրոջմէ Յիսուս Քրիստոսէն, մարդկային ազգին Կենարարէն ու Փրկչէն, երկնից արքայութեան բանալիներն ընդունեցաւ, եւ թէ մեղքերը արձակելու եւ կապելու իշխանութիւնն իրեն տրուեցաւ. որն որ մինչեւ հիմայ եւ ի միշտնջենաւորս կենդանի է եւ կը դատէ ի յաջորդս իւր: Եւ այսպէս մեր երանելի Քահանայապետը Կեղեստինոս եպիսկոպոսն ալ՝ ըստ կարգի իր յաջորդն եւ իր տեղակալը՝ զինք ներկայացընելու համար այս սուրբ ժողովքիս խրկեց զմեզ»[3]: Սուրբ Կիւրեղ առաքելական հրեշտակին այս յայտարարութիւնը լսելէն ետքը, աւելցուց թէ ինք՝ ինչպէս նաեւ միւս հրեշտակները «Կեղեստինոս Քահանայապետէն ամէն իրենց հրամայուած բաներն արդէն կատարած ըլլալով, ալ կը պարտաւորէին նաեւ իրենց ստորագրութիւնը տալ Նեստորի մերժուելուն»: Եւ սուրբ ժողովքն ըսաւ թէ «Որովհետեւ Արկադիոս եւ Պրոյեկտոս հրեշտակներն

1 Մանսի, Ձ. 1811: 2 Մանսի, Ձ. 1290: 3 Անդ:

ու Փիլիպպոս երէց եւ առաքելական աթոռին հրեշտակը՝ ինչ որ պատշաճ էր՝ ըսին, կը հետեւի նաեւ որ իրենք ալ իրենց ստորագրութեամբը ժողովքին գործքերը հաստատեն„։ Ս. Կիւրեղ, որչափ որ ամենէն աւելի ջերմ վրէժխնդիր ալ էր Նէ արեւելեան եկեղեցւոյն իրաւանց, Քահանայապետին վրայ խօսուածներուն դէմ ամենեւին բան մը չըսաւ։

Նեստորեսի հերետիկոսութիւնը դատապարտելու համար 451ին Քաղկեդոնի մեծ ժողովը գումարեցաւ։ Ս. Լեւոն առ Փլաբիանոս Կոստանդնուպոլսոյ արքեպիսկոպոս գրած մէկ թղթին մէջ՝ ճշմարիտ հաւատքը հաստատած էր, եւ հետեւեալ թղթին մէջ կը խօսի այն հնազանդութեան վրայ՝ զորն որ կը սպասէր թէ ժողովն իր որոշման պիտի մատուցանէ։ Ահա իր խօսքերը. "Ես առաքելական աթոռէս խրկուած եղբարցս՝ Պասկասինոս ու Լուկենտիոս եպիսկոպոսներուն եւ Բոնիփակիոս ու Բասիլեղ երէցներուն առաջիկայութեամբը՝ ձեր եղբայրութիւնը զիս ժողովքին գահերէց մտածէ. իմ ներկայութիւնս ձեզմէ հեռու չէ, որովհետեւ իմ երեսփոխաններովս ներկայ եմ, եւ արդէն յառաջուցմէ ալ կաթուղիկէ հաւատքը քարոզելովս երբեք ձեզմէ հեռու չեմ կեցած. այնպէս որ դուք չկրնալով չգիտնալ՝ թէ ըստ հին աւանդութեան՝ ինչ բանի կը հաւատանք, չէք կրնար տարակուսիլ թէ ինչ է մեր բաղձանքը։ Ասոր համար, ամենասիրելի եղբարք, պատուածային ազդեցութեամբ յայտնուած հաւատոյ դէմ վիճաբանելու յանդգնութիւնը բոլորովին մերժելով՝ մոլորելոց ընդունայն անհաւատութիւնն [illegible] դադրի, եւ ոչ ալ պաշտպանուի անիկա՝ որուն պէտք չէ հաւտացուիլ. որովհետեւ արդէն աւետարանին ճոխութիւններովը, մարգարէից խօսքերովն ու առաքելական վարդապետութեամբ՝ ամենայն յորդութեամբ եւ լուսաւորութեամբ մեկնուած ցուցուած է՝ երջանիկ յիշատակութեան արժանի Փլաբիանոս եպիսկոպոսին խրկած մեր թղթին մէջ, թէ ո՛րն է Յիսուսի Քրիստոսի Տեառն

մերոյ Մարդեղութեան խորհրդին նկատմամբ բարեպաշտ ու անկեղծ դաւանութիւնը„ [1]:

Դիոսկորոս Աղեքսանդրիայի արքեպիսկոպոսն ու երկու տարի յառաջ գումարուած Եփեսոսի ժողովոյն գահերէցը՝ եպիսկոպոսաց կարգն անցած նստած էր. բայց ժողովքը բացուելու ատեն՝ Պասկասինոս առաքելական աթոռին հրեշտակն ըսաւ. "Ձեռքերնիս ունինք ամէներջանիկ եւ առաքելական առն, Հռոմ քաղաքին Քահանայապետին եւ միանգամայն բոլոր եկեղեցեաց գլխոյն հրամանները, որոնցմով իր առաքելութիւնը պատշաճ համարեցաւ ծանուցանելու որ Դիոսկորոս ժողովոյն մէջ չնստի, այլ միայն համար տալու համար ներս մտնէ„: Եւ Լուկենտիոս մէկալ հրեշտակը՝ ատոր պատճառը տուաւ, թէ "Հարկ է որ ինք իր ըրած դատաստանին համարը տայ. վասն զի դատելու իրաւունք չունենալով՝ ինք իրմէ յանդգնեցաւ առանց առաքելական աթոռին ճոխութեան ժողովք ընելու, որն որ երբեք օրինաւոր եղած չէ, եւ ոչ ալ այսպէս բան անկից առաջ ի գործ դրուած է„ [2]: Ըն ատեն Դիոսկորոս գնաց կեցաւ հոն՝ ուր որ իրեն իբրեւ յանցաւորի մը՝ պատշաճ էր կենալ: Ասոր վրայ Քահանայապետին հրեշտակները Դիոսկորոսի դատապարտութիւնը ծանուցին աս խօսքերով. "Պասկասինոս եւ Լուկենտիոս եւ Բոնիփակիոս կը հրապարակեն. Լեւոն՝ մեծահռչակ ու հին Հռոմայ սրբազան արքեպիսկոպոսը, մեր եւ աս սուրբ ժողովքիս ձեռքովը երանելի Պետրոս առաքելոյն հետ մէկտեղ, որ վէմ ու հիմն է կաթուղիկէ եկեղեցւոյ եւ հիմն ճշմարիտ հաւատոյ, մերկացուց զինք (զԴիոսկորոս) եպիսկոպոսութեան կարգին աստիճանէն, եւ մերժեց միանգամայն ամէն քահանայական պաշտամունքէն„ [3]: Ասոր ամէնքն ալ միաշունչ միաբերան հաւանեցան, եւ բոլոր ժողովքը Լեւոնի թղթին ծայրէ ծայր ստորագրեց:

1 Ս. Լեւոն Թղթ. ԴԳ. առ Սիւնհ. Քաղկեդոնի:

2 Մանսի, Զ. 579, 582:

3 Մանսի, Զ. 1047:

Արդէն ուրիշ տեղ մը յառաջ բերած եմ ժո-ղովքին Հարց առ Ս. Լեւոն գրած թղթին նիւթը, ո-րուն մէջ գլխաւորութեան վրայ անանկ յայտնի խօսքեր կը գտնուին, որ աս իրենք իրենցմէ ազատութեամբ գրած խօսքերնէն աւելի զօրաւորը գտնելը անկարելի է։

Անաստասիոս՝ Կոստանդնուպոլսոյ պատրիարքը խո-նարհութեամբ զինքը կը վստահացընէ, ինչպէս նաեւ ժողովն ալ ըրած էր, թէ (ժողովոյն) "գործոց բոլոր զօրութիւնն ու անոնց հաստատութիւնը՝ ձեր երանու-թեան ճոխութեան վերապահուած է"[1]։ Ի վերայ այսր ամենայնի Ս. Լեւոն իրենց վճիռներէն՝ միայն հաւատոյ վերաբերեալ մասը կը հաստատէ։ Իսկ Կոստանդնու-պոլսոյ աթոռին վերաբերած կանոնը կը մերժէ։ Նոյ-նպէս քահանայապետական ըն եւ կատարեալ գլխա-ւորութիւնը յայտնի ու պայծառ կը տեսնուի աս եր-կու ժողովներուն մէջ՝ որոնք հին եկեղեցւոյ ամենէն ա-ւելի ծաղկեալ շրջանին մէջ գումարուած են. մինակ աս չէ, հապա կը հաստատուի նաեւ թէ աս գլխաւորու-թիւնն արդէն խնդրանէ վեր կար, եւ թէ հիմնուած է Քրիստոսին առ Պետրոս տուած առանձնաշնորհու-թեանց վրայ, որուն անձն իր յաջորդներուն մէջ միշտ կենդանի կը մտածուի։ Նոյն բացայայտ կը հռչակուի որ եկեղեցւոյ շնորհուած անսխալութեան առաւելութիւնը՝ անոր Գլխոյն անձին վրայ դրուած է[2]։

Նեստորի ու Եւտիքեսի իրարու հակառակ հերե-տիկոսութիւնները՝ Քաղկեդոնի ժողովքէն երկու դա-րէն աւելի ետքը Արեւելք վրդովմանց մէջ ձգած էին։ Վերջապէս 680ին Կոստանդնուպոլիս Զ. ընդհանուր ժողովքը կը գումարուէր՝ դատապարտելու համար Միա-կամօղաւանից հերետիկոսութիւնը, Եւտիքեսի խոշոր ձեւերուն մէջ խոթուած յունական հնարագիտութեան վերջին նրբութիւնը։ Թէպէտ արեւմտեան ինքնակա-լութիւնը շատոնցուընէ ինկած, եւ քաղաքական հա-կակլութիւնը քրիստոնէութեան երկու մասերուն մէջ

1 Մանսի, Զ. 1047։ 2 Ս. Լեւոն Թղ. 182։

խիստ աճած էր, բայց ի վերայ այսր ամենայնի քա-
հանայապետական գլխաւորութեան մեծարանքը՝ ա-
ռանց մէկ այլայլութեան յառաջուան պէս անփոփոխ
կեցած էր: Նոյն խրատցընէ. տես Ագաթոն Քահանայա-
պետին ինքնակալին ինչ կը գրէ, "Պետրոս՝ որն որ ե-
րեքպատիկ յանձնարարութեամբ ամենուն Փրկչէն ըն-
դունեցաւ եկեղեցւոյ հովուաց ոչխարներն արածելու
հոգը, որուն պաշտպանութեան վրայ ալ իր առաքելա-
կան եկեղեցին յենած հաստատած ըլլալով՝ ճշմար-
տութեան ճամբէն երբեք խոտորած չէ՝ դէպ ինչ եւ իցէ
մոլորութիւն. որուն ճոխութեան, իբրեւ ամենայն ա-
ռաքելոց իշխանին ճոխութեան, Քրիստոսի բովանդակ
եկեղեցին եւ ընդհանուր ժողովները սերտիւ յարելով՝
ամէն բանի մէջ անոր հետ միացան,, եւ այլն[1]:

Իր Թուղթը ժողովքին մէջ կարդացուեցաւ եւ
ամենուն համաշունչ միաձայն հաւանութեամբն ընդու-
նելի եղաւ, եւ աս խօսքերով պատասխանն ալ տրուե-
ցաւ. "Ամենաերջանիկ Հայր. ինչպէս աղէկ գիտէք, մե-
ծագոյն չարիք՝ մեծագոյն դարմաններու կը կարօտին.
եւ ահաւասիկ ատոր համար Քրիստոս՝ մեր ճշմարիտ
Աստուածը, ճշմարիտ ստեղծիչ եւ ամէն բան կառավա-
րող զօրութիւն, տուաւ մեզի իմաստուն բժիշկ մը՝ Ա-
ստուծմէ այնպիսի պատուով պատուած՝ ձեր սրբութիւ-
նը, որպէս զի ուղղափառութեան դարմանովը հերետի-
կոսութեան տարափոխիկ ժանտախտն անհետ ըլլայ
բոլորովին, եւ առողջութեան առուգութիւնը նորէն
շնորհուի եկեղեցւոյ անդամներուն: Արդ ձեր հայրա-
կան երանութեան՝ առ ամենաբարեպաշտ ինքնակալն
խրկած թղթերը կարդալէն ետքը, զորոնք առաքելոց
գերագոյն գլխէն գրուածի պէս կը յարգենք, ձեզի ի-
բրեւ ընդհանուր եկեղեցւոյ առաջին աթոռին հովուին՝
յօժար կամքով կը յանձնենք ինչ որ պէտք է գործել.
ձեզի՝ որ հաւատոյ հաստատուն վիմին վրայ անդողդողդ
կեցած էք,,[2]:

1 Մանսի, ԺԱ. 239:　　2 Մանսի, ԺԱ. 6821:

Հարիւր տարի ետքը, այս ինքն 789ին, Ադրիանոս Քահանայապետը՝ Տարասիոս Կոստանդնուպոլսոյ Նոր-ընտիր պատրիարքին թուղթ մը կը գրէ, որն որ Է. ընդհանուր ժողովքին մէջ կարդացուեցաւ, եւ զորն որ թէ ժողովքը թէ արքեպիսկոպոսն ընդունեցան եւ մեծապատիւ գովեցին։ Քահանայապետը յիշեցընելէն ետքը ան "Հովուական խնամակալութիւնը՝ որուն համար կը վայլէ որ, կ'ըսէ, Աստուծոյ ժողովուրդն արածենք,, այսպէս կը շարունակէ խօսքը. "Ինչ որ մեզի խրկուած ժողովական թղթէն իմացած չըլլայինք, որ Տարասիոս աղէկ հաստատուն է անկեղծ եւ ուղղափառ հաւատքին մէջ, ամենեւին ոչինչ կերպիւ յիշեալ ժողովական թղթոյն ականջ կը դնէինք՝ Տարասիոսին աշխարհական կարգէն եղած ըլլալուն եւ կայսերական ճոխութեամբ եպիսկոպոսական աւագութեան բարձրանալուն համար,,։ Անկից ետքը՝ յառաջ բերելով ան խօսքերը. Դու ես վէմ, եւ այլն, կ'աւելցընէ թէ "Որուն (Պետրոսին) աթոռը կը շողայ՝ իբրեւ բոլոր աշխարհքիս վրայ գլխաւորութիւնն ունեցող, եւ Աստուծոյ ամէն եկեղեցիներուն վրայ հաստատուած գլուխ։ Ուստի նոյն իսկ երանելի Առաքեալը՝ աստուածային յանձնարարութեամբ զեկեղեցին արածելով, իր կարգին վերաբերածներէն բանի մը անհոգ չէ եղած, այլ միշտ պահած է ու կը պահէ գլխաւորութիւնը։ Որուն՝ թէ որ ձեր սրբութիւնը կը բաղձայ յարիլ, եւ անարատ ու մաքուր մտօք եւ անկեղծութեամբ սրտի կը ջանայ մեր առաքելական աթոռէն սովրեցուած վարդապետութեան սուրբ եւ ուղղափառ ձեւը պահել,, եւ այլն [1]։

Ա՛ս Է. ժողովը՝ երեսուն տարի յառաջ Կոստանդնուպոլիս մէկ քանի հարիւր եպիսկոպոսներէ գումարուած հնագոյն ժողովք մը մերժելով՝ կը հարցընէ թէ "Ինիկայ ի՞նչ եղանակաւ կրնայ մեծ ու ընդհանուր ըլլալ, որովհետեւ ոչ նոյն ատենուան Հռոմայ Քահանայապետին, ոչ անոր ընթերակայ եպիսկոպոսներուն,

1 Մանսի, ԺԲ. 1077. 1084։

ոչ անոր հրեշտակներուն եւ ոչ շրջաբերական Թղթին նեցուկն ունէր, ինչպէս որ ժողովներուն օրէնքները կը պահանջեն,, [1] ։

Բայց աւելի հռչակաւոր են 869ին գումարուած Ը. ժողովոյն դէպքերը։ Ինչու որ աստուածային "Նախախնամութեան տրամադրութեամբն եղած կ'երեւայ՝ որ յունական հերձուածին կատարուելէն յառաջ, նոյնին դէմ սաստիկ զօրաւոր վկայութիւն մ'ունեցուի, եւ նոյն ճոխութիւնը՝ զորն որ Յոյնք իրենք զիրենք պաշտպանելու համար ուրանալ կ'ուզէին, Արեւելք եպիսկոպոսներէն ու պատրիարքներէն պաշտպանուի։ Ժողովոյն սկիզբը՝ քահանայապետական հրեշտակներն ամէն մէկ եպիսկոպոսէն խնդրեցին որ հաւատոյ դաւանանքի մը ստորագրեն եւ իրենց տան, որպէս զի իրենք Քահանայապետին ձեռքը հասցընեն. աս հաւատոյ դաւանութիւնն իր գլխաւոր յօդուածներուն մէջ նման էր այն հաւատոյ դաւանութեան՝ զորն որ երեք դարէ աւելի յառաջ Որմիզդ Քահանայապետը՝ Ակակիոսի հերձուածէն ետքը՝ Կոստանդնուպոլսոյ պատրիարքին խրկած էր. եւ որովհետեւ թէ եպիսկոպոսները եւ թէ արեւելեան պատրիարքը ստորագրեցին առաջարկուած դաւանութեան, անոր համար նորէն ի հաղորդակցութիւն ընդունուեցան։ Հնազանդեցան ուրեմն հրեշտակներուն, եւ աս էր իրենց տուած հաւատոյ դաւանութիւնը. "Ինչու որովհետեւ Քրիստոսի վճիռը չեկրնար պակասիլ, որ կ'ըսէ. "Դուն ես վէմ, եւ աս վիմին վրայ ես պիտի շինեմ իմ եկեղեցիս,,. աս խօսքերն իրօք ալ հաստատուած են. վասն զի առաքելական աթոռին մէջ՝ կաթողիկէ կրօնը միշտ անարատ պահուած եւ սուրբ վարդապետութիւնը քարոզուած է։ Ամենեւին մազ մ'ալ հեռանալ չուզելով ասոր ու Հարց եւ գլխաւորաբար առաքելական աթոռին դահերէցներուն հաւատքէն ու վարդապետութենէն, ասոնց ամէն որոշմանցը հետեւելով՝ կը նզովենք ամէն հերետիկոսութիւնները եւ ա-

1 Մանսի, ԺԶ. 207։

նոնց հետ նաեւ զՊատկերամարտները . . . եւ ամենէն աւելի զՓոտիոս եւ զԳրիգոր Աշրակունացի՝ հայրապետները, որոնք ամենեւին չքաշուեցան լեզունին պատեանէն դուրս հանելու իրենց հոգեւոր հօրը դէմ. եւ բոլորովին հաղորդակցութեան անարժան կը համարինք ևս հերձուածոյ մէջ յամառ կեցողներուն հետեւողները, եւ անոնց հաղորդակցութեան մէջ հաստատուն մնացողները՝ երբոր առջիններուն պէս չեն ուզեր հնազանդիլ . . . : Որովհետեւ, ինչպէս արդէն ըսինք, ամէն բանի մէջ առաքելական աթոռին հետեւելով եւ անոր վճիռները պահելով՝ կը յուսանք որ արժանի կ'ըլլանք այն մի միայն հաղորդակցութեան մէջ մնալու, զորն որ կը քարոզէ առաքելական եկեղեցին՝ որն որ ամբողջ ու ճշմարիտ քրիստոնէական կրօնի ամրութիւնն է . . . : Նաաս իմ դաւանութիւնս ես (Ա. Ա.) եպիսկոպոս իմ յատուկ ձեռքովս ստորագրեցի եւ Պետրի ամենասուրբ, ամէներանեալ, հրեշտականման, գերագոյն եւ տիեզերական հայրապետիդ Ադրիանոսի Քահանայապետիդ քու հրեշտակներուդ ձեռքով . . . կ'ընծայեմ,,[1]:

Սրբոյն Իգնատիոսի Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոսին՝ առ Նիկողայոս Քահանայապետ գրած հետեւեալ թուղթն ալ ժողովոյն մէջ կարդացուեցաւ եւ ընդունելի եղաւ : Նոյն թուղթն այսպէս կը սկսի. "Մարդկային անդամներու վէրքերն ու հարուածները դարմանելու համար արհեստը՝ շատ բժիշկներ կերպաւորեց, որոնցմէ մէկն՝ աս, մէկալն՝ ուրիշ հիւանդութիւն մը դարմանեց, երբեմն դեղով եւ երբեմն կտրելով : Բայց Քրիստոսի մեր Փրկչին ու Աստուծոյ եւ մեր ամենուն Գլխոյն անդամներուն, նոյնպէս եւ իր հարսին կաթողիկէ եւ առաքելական եկեղեցւոյն վէրքերը դարմանելու համար, նոյն ինքն գերագոյն Գլուխը, ամենազօր Բանն, Տեսուչ եւ Բժիշկ, ամենուն Վարդապետն ու Աստուածը՝ մասնաւոր առանձինն գերագոյն եւ ամէնուղղափառ բժիշկ մը ճարեց յարդարեց, այսինքն ձեր հայրական

1 Մանսի, ԺԴ. 207:

սրբութիւնն ու ձեր հայրական բարութիւնը: Նոյն ատոր համար ինք ըստ Պետրոսի՝ մեծ ու գլխաւոր առաքելոյն. «Դու ես վէմ, եւ այլն», եւ վերջէն՝ թէ «Տաց քեզ զփականս», եւ այլն: Քրիստոս աս նուիրական խօսքերը առուգիւ ոչ կը սեղմէր եւ ոչ ալ կ'ամփոփէր միայն Պետրոսի անձին վրայ՝ իբրեւ անձնական որպիսութիւն մը, այլ անոր միջնորդութեամբ կը փոխադրէր անոնց ամենուն՝ որոնք իրմէ ետքը իրեն պէս գերագոյն հովիւ եւ ամենասուրբ ու նուիրական Քահանայապետ պիտի որ ըլլային հին Հռոմայ: Ասոր համար ալ խնդրանէ եւ հնագոյն ատենէ ի վեր, երբ որ հերետիկոսութիւններ ու քննութիւններ կ'ելլէին, նոյն աթոռին վրայ նստող՝ ձեր սրբութեան նախորդներէն շատերը, առաքելոց իշխանին յաջորդն ու անոր ըստ Քրիստոսի եռանդեան նմանող ըլլալով, շատ անգամ արմատէն խլեցին ու ջնջեցին գէշ որոմը, եւ կտրեցին նետեցին փտտած ու քաղցկեղով տոգորուած անդամները, եւ աս մեր ներկայ ատենս ալ նոյնպէս ձեր սրբութիւնը Քրիստոսէ ընդունած իշխանութիւնն արժանապէս ի գործ դրաւ»[1]:

Իսկ Նիկողայոս Քահանայապետը, ինչպէս որ ժողովքին մէջ կը կարդացուի, գլխաւորութիւնը յայտնի քարոզելէն ետքը, Փոտիոսին աս եղանակաւ կը գրէ. «Նոյն որովհետեւ ամէն հաւատացելոց բազմութիւնը կը խնդրէ վարդապետութիւն եւ հաւատոյ ամբողջութիւն, եւ անոնց հետ թողութեան արժանաւորները՝ յանցանաց թողութեան կը սպասեն աս սուրբ հռոմէական եկեղեցիէն՝ որն որ ամէն եկեղեցեաց գլուխ է. մեզի՝ որուն եկեղեցին յանձնուած է, կ'իյնայ որ մեծ հոգացողութեամբ դհօտ Տեառն հոգանք ու անոր վրայ հսկենք», եւ այլն[2]:

Ահաւասիկ նոյն Քահանայապետին՝ Կոստանդնուպոլսոյ աթոռին հպատակ արքեպիսկոպոսներուն, մետրապոլիտներուն ու եպիսկոպոսներուն գրած ուրիշ մէկ թուղթն ալ, որն որ դարձեալ նոյն ժողովոյն մէջ

1 Մանսի, ԺԶ. 47:    2 Մանսի, ԺԶ. 69:

կարդացուեցաւ ։ «Ասոր համար, ինչպէս ձեր իմաստութիւնն ալ ճանչցաւ Աստուծմէ լուսաւորուելով, Քրիստոսի բովանդակ ոչխարաց հօտովը բեռնաւորուած ըլլալովնիս, որովհետեւ երկնային յորդառատ շնորհաց զեղմամբ՝ առած ենք անոր փոխանորդութիւնը, որուն մանաւորապէս Աստուծմէ ըսուեցաւ․ «Արածէ իմ ոչխարներս»․ եւ դարձեալ թէ «Դուն երբեմն դառնաս ու հաստատես քու եղբայրներդ» չէինք կրնար զանց առնել կամ անփոյթ ըլլալ ցրուած ու տարածուած ոչխարներուն այց առնելու, եւ մեր եղբայրքն ու մերձաւորները հաւատոյ ու բարի վարուց մէջ հաստատելու»[1]։

Վերջապէս նոյն ժողովոյն երկրորդ կանոնին մէջ կը հաստատուի ։ «Պօղոս մեծ առաքեալը կը պատուիրէ․ «Լսեցէք ձեր առաջնորդներուն ու հնազանդ եղէք անոնց, ինչու որ անոնք ձեր հոգւոցը վրայ կը հսկեն իբրեւ թէ ձեզի համար պատասխան պիտ՚որ տան»։ Այսպէս մենք ալ երանեալ Նիկողայոս Քահանայապետը եւ նոյնպէս իր յաջորդն ամենասուրբ Ադրիանոս Քահանայապետը, Հռոմայ սրբոյ գործարան համարելով, կը սահմանենք ու կը վճռենք որ այն ամենայն՝ զորն որ իրենք զանազան ատեն, թէ Կոստանդնուպոլսոյ եկեղեցւոյն պաշտպանութեան ու անոր վիճակին վրայ, մանաւանդ անոր գերագոյն քահանային, այս ինքն՝ Իգնատիոս ամենասուրբ պատրիարքին վրայ, եւ թէ նաեւ նորատունկ ու յափշտակիչ Փոտիոսին մերժուելուն ու դատապարտութեան վրայ ժողովքով սահմանեցին ու հրատարակեցին, միշտ պահուին ու պահպանուին»[2]։

Նոյն ԻԱ․ կանոնը կ՚արգելէ նաեւ ընդհանուր ժողովոյն «Հին Հռոմայ գերագոյն Քահանայապետներուն դէմ յանդգնութեամբ վճիռ հանելը»[3]։

Արդ կրնայի ես հոս տեղս կանգ առնել, որովհետեւ կառավարութեան ու հաւատոյ անսխալութեան մէջ գլխաւորութիւնը՝ այնչափ եւ այնպիսի հին ժողով-

1 Մանսի, ԺԶ․ 101 ։ 2 Մանսի, ԺԶ․ 160 ։ 3 Մանսի, ԺԶ․ 174։

ներուն ճոխութենէն այնպէս հաստատութեամբ Հռոմայ աթոռին համար պաշտպանուած է, որ ըսելու բան մը չմնար: Բայց ուրիշ ապացոյցներու ալ կը բաղձա՞ք: Ահաւասիկ ձեզի: Ս. Ամբրոսիոս 390ին իր եպիսկոպոսաց ժողովոյն գահերէց նստելով, Սիրիկիոս Քահանայապետին՝ զՅովինիանոս հերետիկոսը դատապարտելուն եւ նոյն դատապարտութիւնն ամէն եկեղեցիներուն խրկելուն համար, աստանկ շնորհակալութիւն կը մատուցանէ. “Քու սրբութեանդ թղթին մէջ տեսանք, կ'ըսէ, զհսկողութիւն քաջ հովուի՝ ինչպէս դու ես, որ մեծ զգուշութեամբ կը պահպանես քեզի յանձնուած դուռը, եւ խնամոտ հոգացողութեամբ կը պահես Քրիստոսի փարախը, ուստի եւ արժան է որ Քրիստոսի գառնուկներն ալ քու ձայնիդ ականջ դնեն ու քեզի հետեւին . . . : Իսկ նաեւ գիտնաս որ Յովինիանոս, Աւքսենտիոս եւ այլն, զորոնք քու սրբութիւնդ դատապարտեց, մեզմէ ալ՝ քու դատաստանիդ համաձայն՝ դատապարտուած են„ [1]:

Առջի երեք դարերուն քահանայապետաց վճռական թղթերը կորսուած են. բայց 384էն, Սիրիկիոս Քահանայապետէն, կը սկսի նոյն թղթոց կատարեալ ու մինչեւ մեզի հասնող շարքը: Ասոնք եկեղեցւոյ առաջին եպիսկոպոսին հրապարակական գործքերն են, իր սովորական կառավարութեան ատեն բոլոր աշխարհքիս եպիսկոպոսներուն գրուած եւ անոնցմէ ալ իբրեւ օրէնք ընդունուած: Իմաստուն մատենագիր մը՝ որ անոնցմէ ամենէն հիները ժողված է, այսպէս կը գրէ. “Այնչափ վարդապետութեամբ ու սրբութեամբ յարգելի քահանայապետներուն մէջէն, (որոնք չէ թէ միայն հպարտ ու յանդուգն չեն կրնար համարուիլ, հապա նաեւ եւ ոչ այսպիսի մոլութիւններու կասկած մը կրնայ ըլլալ վրանին.) եւ ոչ մէկը կը գտնուի, որ ընդհանուր եկեղեցւոյ գլուխ ըլլալու առանձնաշնորհութիւնն իրեն կամ իր եկեղեցւոյն չսեպհականէ: Մէկալ կողմանէ առա-

1 Մանսի, Գ. 664:

քեալներէն եւ կամ անոնց յաջորդներէն հաստատուած քրիստոնեայ աշխարհքին այնչափ ընդարձակ եկեղեցիներուն մէջէն՝ եւ ոչ մէկ եկեղեցի կը գտնուի՝ որուն առաջնորդն ինք զինքն ընդհանուր եկեղեցւոյ գլուխ անուանել յանդգնելու չափ փառասէր եղած ըլլայ,,[1]: Տեսնենք հիմայ թէ ըսածս ի՞նչպէս կ'երեւայ աս հին քահանայապետներուն ընթացքէն ու խօսելու եղանակէն. ի՞նչպէս աս իշխանութիւնն՝ որ հիմակ իրենց սեպհականուած է ու կը գործածեն, նոյն կերպով նաեւ իրենց սեպհականուած էր ու կը գործածէին չորրորդ դարուն վերջը եւ յաջորդ դարուց մէջ ալ մինչեւ մեր ատենը, չէ թէ իբրեւ նոր բան, հապա իբրեւ ի սկզբանէ աստուածային կարգաւորութեամբ գոյող եւ միօրինակ ու առանց մէկու մը հակառակելուն եղող բան:

Սիրիկիոս 385ին Սպանիայի Դարրակոնեայի եպիսկոպոսին կը գրէ. "Մենք ամէն աշխատողներուն բեռը կը բառնանք, կամ թէ ի մեզ կը բառնայ երանելի Պետրոս առաքեալը՝ որն որ, ինչպէս վստահ ենք, զմեզ՝ իր հոգաբարձութեան ժառանգը՝ կը պաշտպանէ ու կը պահպանէ,,: Նոյն քիչ մը ետքը. "Դուք յանձնուած էք Հռոմայ եկեղեցւոյն՝ որն որ ձեր գլուխն է,,[2]: Իր յաջորդը Անաստասիոս՝ 400ին կը գրէ Յովհաննէս Երրուսաղեմայ եպիսկոպոսին, դատապարտելով Որոգինեսի կարծիքները. "Ստուգիւ չեմ հեղգար ամենեւին իմ ժողովուրդս հոգալու մէջ՝ աւետարանին հաւատքը պահպանելու համար, որչափ որ կրնամ թղթակցութիւնս կ'ընեմ իմ մարմնոյս աս երկրիս զանազան գաւառներուն մէջ ցրուած մասանցը հետ,,[3]:

Իր յաջորդը Իննովկենտիոս, որուն որ քիչ մը յառաջ Ս. Օգոստինոսէն խիստ գովուած երկու թըղթերը յառաջ բերի, 410ին Նոկերայի եպիսկոպոսին կը զրուցէ. "Իբրեւ մեզի յանձնուած, այս ինքն՝ առ գլուխն եւ առ գագաթն եպիսկոպոսութեան,,[4]:

1 Կոստան. Յառաջ. Եր. 3:
2 Կոստան. Եր. 624. 637:
3 Կոստան. 738:
4 Անդ. 310:

Կեղեստինոս Քահանայապետը 430ին Կոստանդնուպոլսոյ կղերին ու ժողովրդեան, որոնք Նեստորի հերետիկոսութեամբ դէշ վիճակի մէջ ինկած էին, այսպէս կը խօսի. «Եկեղեցին բաղկացընողներուն խօսելու խօսքերուս սկիզբն ըլլայ Առաքելոյն խօսքը, որպէս զի սուրբ աշակերտներն ամենէն առաջ լսեն ան սուրբ վարդապետին խօսքերը, որն որ հեթանոսաց քարոզեց. "Թող զայլ նեղութիւնս, զի հանապազ խուժանն ի վերայ իմ կուտէր, եւ հոգ ամենայն եկեղեցեաց" եւ այլն: Այսպէս մենք ալ, թէպէտ հեռու ենք, բայց երբ կը լսենք որ խոտորնակ թիւր վարդապետութիւնները մեր անդամները կը յօշեն կը պատռեն, ձեր վրայ ունեցած հայրական հոգերնիս սաստկանալով՝ ուրիշին հրդեհովը մենք ալ կ'այրինք կը տոչորինք. Թէպէտ Աստուծոյ եկեղեցիներէն, որոնց ամէնն ալ՝ ուր որ գտնուելու ըլլան՝ մի միայն Քրիստոսի առագաստին կը վերաբերին, ոչ մէկը հեռաւոր է, ոչ մէկալը օտարական կը համարուի: Դուք ալ ուրեմն մեր աչքէն ըլլալով» եւ այլն[1]:

Նոր յաջորդը Սիքստոս՝ իր ընտրութիւնը սրբոյն Կիւրղի ծանուցանելով, կ'ըսէ. «Աստուած հաճեցաւ զմեզ քահանայութեան գերագոյն բարձրութեան կոչել»[2]:

Ս. Իննովկենտիոսի յաջորդ, Զօսիմոս Քահանայապետը, վերը յիշուած թղթերը գրուելէն երկու տարի ետքը, այս ինքն՝ 418ին, Աւրեղիոս Ափրիկէի Նախագահին եւ Կարքեդոնի ժողովոյն կը գրէ. «Սրբոց Հարց աւանդութիւնն այնչափ ճոխութիւն տուաւ Առաքելական աթոռին, որ եւ ոչ մէկը կը գտնուէր որն որ իր որոշման վրայ երկբայելու յանդգնէր, եւ միշտ ասիկայ օրէ օր կանոններով ու կարգերով կը հաստատուէր, ու եկեղեցական հրահանգը մինչեւ հիմայ իր օրինացը համաձայն Ս. Պետրոսի անուանը յառաջանալով, որմէ որ ինքն ալ կը բղխի, անոր արժանաւոր

1 Կոստան. Եր. 131:    2 Անդ. 1231:

մեծարանքը կը հաստուցանէ. վասն զի հին կանոնական ժամանակներն քան ամենեցուն զատման՝ այնչափ զօրութիւն ունին՝ որչափ որ աս առաքեալը, Քրիստոսի Տեառն մերոյ՝ կապեալներն արձակելու, արձակեալները կապելու խոստմանը համաձայն, կրնար ունենալ. աս տեսակ իշխանութիւն տրուեցաւ անոնց ալ՝ որոնք անոր հաւանութեամբն արժանի եղան իր աթոռը ժառանգելու։ Ինչու որ, ինչպէս ուրիշ եկեղեցիներուն, այսպէս առաւել եւս աս եկեղեցւոյն՝ որ իր աթոռն է, հոգ կը տանի եւ չիկրնար համբերել որ սուրբ վճռոց փոփոխմամբ տապալուի տակ ձգուի (աս եկեղեցւոյն) առանձնաշնորհութենէն մէկ նշանախեց մ'ալ, որուն ինք իր անուամբ հաստատուն, անշարժ եւ անցնցելի հիմը դրաւ, զորն որ չիկրնար մէկն առանց վտանգի յանդգնութեամբ ժառանգել։ Աւրեմն Պետրոս գլուխ ըլլալով այնչափ իշխանութեան՝ զորն որ մեր ամէն նախնեաց եռանդն այնչափ դարերու ընթացքին մէջ հաստատեցին, այնպէս որ թէ մարդկային եւ թէ աստուածային օրէնքներով եւ կանոններով կը զօրանայ եւ կ'ամրանայ Հռոմէական եկեղեցին, որուն աթոռին մեզմէ կառավարուիլը եւ անոր պատուանուններուն իշխանութիւնը մեր ձեռքն ըլլալը ձեզի անծանօթ չէ, սիրելի եղբարք, հապա գիտէք, եւ իբրեւ եպիսկոպոս՝ գիտնալու կը պարտաւորիք. բայց մենք (թէպէտ եւ մեր վճիռներուն մէկէ մը քննութեան տակ ձգուիլ չիրնալու չափ ճոխութիւն ալ ունինք, այսու ամենայնիւ) ամենուէն բան մը չենք գործած՝ որուն վրայ մեր թղթովը յօժար կամօք ձեզի ծանօթութիւն տուած չըլլանք,, եւ այլն [1]։

Բայց նաեւ նոյն ատենուան քաղաքական իշխանութիւնն ալ աս բերանը կը բանեցընէր Քահանայապետին՝ երբ որ կը խոստովանէր անոր իրաւունքները եւ կ'ուզէր զանոնք պահպանել։ Ահաւասիկ Վաղենտիանոս կայսեր հրովարտակը, որն որ Ս. Լեւոնին՝ Առլէ Հիլարիոն եպիսկոպոսէն, 445ին, հակառակութիւն գտած

1 Կոստան. Ե. 974։

ատենը հրատարակուեցաւ: «Արդ որովհետեւ Ս. Պետրոսի արդիւնքները, որն որ եպիսկոպոսական պսակին մէջ գլխաւոր տեղը կը բռնէ, եւ Հռոմայ արժանապատուութիւնք, եւ ասոր հետ մէկտեղ սուրբ ժողովոց ճոխութիւնը՝ առաքելական աթոռին գահերիցութեանը աղէկ հաստատած են, որպէս զի չըլլայ թէ մէկը ժպրհութեամբ յանդգնի անարժան գործքի ձեռք զարնելու ան աթոռին ճոխութեան հակառակ. եւ որովհետեւ ան ատեն կրնայ վերջապէս ամէն տեղ եկեղեցեաց խաղաղութիւնք տիրել՝ երբ որ ամէնն ալ կը մեծարեն իրենց կառավարիչը. եւ աս բաները մինչեւ սա օրս անեղծ անխախտ պահուած ըլլալով... կը վճռենք որ թէ Գաղղիայի եւ թէ ուրիշ գաւառներու եպիսկոպոսներուն թոյլ չտրուի հին սովորութեան հակառակ՝ ինչ եւ իցէ բանի մը ձեռք զարնելու՝ առանց յաւիտենական քաղքին պատկառելի Քահանայապետին հաւանութեան, եւ ինչ որ սահմանած է կամ պիտի սահմանէ առաքելական աթոռին ճոխութիւնը՝ թէ իրենց եւ թէ ամենուն ալ օրէնքի տեղ անցնի,,[1]:

Սիմմաքոս Քահանայապետը 499ին բարուց նկատմամբ՝ անիրաւութեամբ ամբաստանուեցաւ: Իտալիոյ եպիսկոպոսները, որոնց Թէոդորիկոս յանձնած էր որ ամբաստանութիւնը քննեն, պատասխան տուին թագաւորին թէ ժողովք գումարելը՝ նոյն ինք ամբաստանուողին կ'իյնայ. որովհետեւ հաստատուն բռնած էին թէ Պետրոս առաքելոյն աստիճանն ու իշխանութիւնք ու նաեւ մեծարոյ ժողովներուն ճոխութիւնը, աստուածային հրամանին համաձայն, ամենէն աւելի իր աթոռին յանձնած է այնպիսի իշխանութիւն մը՝ որ ամենեւին եկեղեցւոյ մէջ հաւասարը չունէր եւ ոչ իսկ անցած հին ժամանակներուն երթալով՝ օրինակ մը կրնայ գտնուիլ ցուցընելու համար որ նման աթոռի մը մէջ վերոյիշեալ աթոռին առաջնորդն իր ստորնադասեներուն դատաստանին տակն ինկած ըլլայ[2]: Նաեւ երբ

1 Բարոնիոս, Ամ 445:  2 Մանսի, Ը. 248:

որ ՙՔահանայապետան իշխանութիւն տուաւ ժողովոյն իր վրայ, անոնք զինքը դատելէն հրաժարեցան, յայտնի հրատարակելով որ ինք “Մարդուս նկատմամբ առանց յանցանքի եւ ազատ է, ինչու որ բովանդակ դատն Աստուծոյ դատաստանին թող տրուած է„:

Գաղղիայի եպիսկոպոսները՝ որչափ որ նախանձաւոր էին ալ նէ եպիսկոպոսական իրաւանց, սաստիկ այլայլեցան՝ երբ որ միայն կը մտածէին թէ գերագոյն ՙՔահանայապետը պիտ՚որ դատուէր: Իրենց զգածմունքն ամենուն անուամբը՝ մէջերնէն ամենէն հռչակաւոր Վիէննայի սուրբ Աւիտոս եպիսկոպոսին բերնովը յայտնուեցաւ, որն որ Հռոմայի ծերակուտի անդամներուն՝ Փաւստոսի եւ Սիմմաքոսի՝ գրած թղթին մէջ կ՚ըսէ. “Դիւր որ Հռոմէական աթոռոյն դատին համար անձկութեան ու ահու դողու մէջ էինք, վասն զի յարձակում կրողը գլուխն ըլլալով՝ մեր վիճակն ալ կ՚երերար ու կը տատանէր„ եւ այլն: ՙՔիչ մը եաքն ալ կ՚ըսէ. “Ո՞ր անբաստանութիւն արդեօք ընդհանուր եկեղեցւոյ աւագութեան դէմ օրինաւոր կրնայ ըլլալ„: Եւ դարձեալ. “Ինչպէս որ ես ալ իբրեւ հռոմէական ծերակուտի անդամ եւ իբրեւ քրիստոնեայ եպիսկոպոս՝ կ՚աղաչեմ կը պաղատիմ ձեզի ... որ աչքերնուդ առջեւ եկեղեցւոյ վիճակը՝ հասարակապետութեան՝ վիճակէն վար չըլլայ: Թէ որ աս բանս նկատելու ըլլաք այն խորին խորհրդով՝ որով վարուիլ սովոր էք, պէտք չէ որ միտքերնիդ ունենաք միայն ան դատը՝ որ կը յուզուի Հռոմայի մէջ: Վասն զի ուրիշ եպիսկոպոսներուն մէջ թէ որ բան մը խախտելու ըլլայ, կրնայ նորէն հաստատուիլ. բայց թէ որ Հռոմայի ՙՔահանայապետին վրայ կասկած ըլլայ, անմիջապէս պիտի տեսնուի որ չէ թէ մինակ եպիսկոպոս մը, հապա ամբողջ եպիսկոպոսութիւնը կը տատանի ....: Ան՝ որ զփարախ Տեառն կը պահէ, ինք ստուգիւ համար պիտի տայ իր ձեռքը յանձնուած գառանց հոգացողութեան մէջ բռնած կառավարութեանը. բայց ասկից զատ՝ հօտին չ՚կնար որ իր

սեպհական հոգեւը վախցընէ, հապա՝ դատաւորին ։ Ուստի տուէք մեզի, թէ որ դեռ չէք հաստուցած, դըրխաւոր միաբանութիւնը,, եւ այլն[1] ։

Միջին դարուց սուրբերուն մէջէն, որչափ որ կ՚երեւայ, սուրբ Եփրեմէն աւելի Քահանայապետին ընդհանուր առաջնորդութիւնն ու պաշտօնը աղէկ ճանչցող մը չգտնուեցաւ ։

Ենոդիոս՝ Պաւիայի եպիսկոպոսը, աս ժողովքին վրայ ջատագովութիւն մը գրեց, որն որ այնչափ ընդունելի եղաւ՝ որ առաքելական հրովարտակներուն կարգն անցնելու արժանի եղած է ։ Ասոր մէջ այսպէս կը խօսի. «Գուցէ ուրիշ մարդկանց դատերուն մէջ ուզեց Աստուած որ վերջ կամ սահման դնեն մարդիկ. բայց նոյն աթոռին դահերիցուն դատն անտարակոյս իր դատաստանին պահած է ։ Ուզեց որ Ս. Պետրոսի յաջորդները մինակ երկնից պարտական ըլլան իրենց անմեղութեան համարը տալու եւ խորագնին քննչին (Աստուծոյ) քննութեան առջեւ խղճմտանքնին անբիծ ընծայելու ։ Եւ մի կարծէք որ վախ չունին խուզիչներէ ան հոգիները՝ զորոնք Աստուած ուրիշներէն նախամեծար ընտրելով՝ իր քննութեան վերապահած է ։ Անոր առջեւը յանցաւորը՝ ամբաստանութեան պայծառութեան նկատմամբ՝ փախստեան տեղի չունի, վասն զի իր գործոցը վկայ ունի զանիկայ՝ որն որ իր դատաւորն է ։ Գուցէ ըսես ինծի, թէ այն քննութեան մէջ ամէն հոգիներուն վիճակն ալ նոյնպէս պիտ՚որ ըլլայ ։ Կու տամ պատասխան թէ մէկու մը մինակ ըսուեցաւ. Դու ես վէմ եւ այլն, եւ զոր միանգամ արձակեսցես եւ այլն ։ Եւ դարձեալ թէ սուրբ քահանայապետներուն ձայնովը աս աթոռին արժանապատուութիւնը յարգելի եղած է բոլոր աշխարհքիս երեսը, որովհետեւ ո՛րչափ հաւատացեալք որ կան, ո՛ւր որ ըլլան նէ ըլլան, անոր կը հպատակին, եւ ինք գլուխ դրուած է բովանդակ մարմնոյն,,[2] ։

1 Մանսի, Ը. 284 ։ 2 Մանսի, Ը. 284 ։

Նոյն Ս. Եփրեմ՝ քանի մը տարի ետքը՝ Որմիզդ Քահանայապետին գրելով, կը գրուցէ. «Արդ՝ կը տեսնէք որ կրօնի հանգամանաց եւ կաթողիկէ հաւատոյ ամէն կանոններուն համաձայն է, որ ձեր յորդորանաց միշտ արթուն հոգացողութիւնը՝ ձեզի յանձնուած հօտը տեղեակ ընէ ընդհանուր եկեղեցւոյ ամէն անդամներուն նկատմամբ։ Իսկ բոլոր Գաղղիայի եռանդեան նկատմամբ՝ կարծեմ թէ կրնամ հաստատութեամբ ըսել, որ հաւատոյ ուղղութեան վրայ ամէնքն ալ անձկութեամբ ձեր վճռոյն կը սպասեն»։

Նա Սենարիոսի՝ Թէոդորիկոսի հայրենական ստացուածոց կոմսին՝ կը գրէ. «Գիտէք որ ժողովներու վերաբերեալ օրէնքներուն մէջն ալ աս է, որ եթէ երբեմն եկեղեցւոյ վիճակին վերաբերութիւն ունեցող բանի մը վրայ տարակոյս ելլէ, պէտք է, իբրեւ հնազանդ անդամ, դիմել Հռոմէական աթոռին գերագոյն եպիսկոպոսին՝ իբրեւ մեր գլխոյն»։

Երբոր Սիլուերիոս Քահանայապետը Յուստինիանոսին տարենը, 538ին, դաւաճանութեամբ մը Հռոմէն աքսորուելով, գնաց Պատարա աքսորուեցաւ, նոյն քաղքին եպիսկոպոսը կայսեր երթալով՝ Աստուծոյ դատաստանը վկայ կը կոչէ այնպիսի մեծ աթոռին եպիսկոպոսին աքսորուելուն համար, այսպէս. «Իրաւ է՝ կան աս աշխարհքիս վրայ շատ թագաւորներ, բայց չկայ մէկը՝ ինչպէս որ Քահանայապետն է, վերագոյն բոլոր աշխարհքիս եկեղեցիներուն վրայ»[1]։

Երբեք մէկն եղած չէ, որչափ ես գիտեմ, որ Մեծն Գրիգոր Քահանայապետին վրայ յափշտակութեան կեղտ մը ձգած ըլլայ, բայց եթէ գուցէ միայն մէկ Անգղիացի մը. աս բանիս վրայ սուրբ Քահանայապետն տանիկ կը գրէր նոյն ատենուան (Մաւրիկ) կայսեր. «Ամէն աւետարանը ճանչցողներն աղէկ գիտեն որ աստուածային հրամանաւ սուրբ Պետրոսի առաքելոյն եւ առաքելոց իշխանին յանձնուած է բովանդակ եկեղե-

1 Բարոնիոս, Ամ 538, Թիւ 13։

ցուց հոգը։ Վասն զի անոր ըսուեցաւ. Ահա սատանայ եւ այլն։ Անոր ըսուեցաւ. Դուն ես վէմ եւ այլն։ Ահաւասիկ ինքն ընդունեցաւ երկնաւոր արքայութեան բանալիները, անոր տրուեցաւ կապելու եւ արձակելու իշխանութիւնը, անոր աւանդեցաւ բովանդակ եկեղեցւոյ եւ իշխանութեան հոգը. եւ այսու ամենայնիւ ինք զինքն ընդհանուր առաքեալ չէկոչեր. իսկ ամենասուրբ այրն Յովհաննէս՝ եպիսկոպոսութեան մէջ իմ ընկերս, եւ-տեւէն կ'ելնայ ընդհանուր եպիսկոպոս անուանուելու։ Կը պարտաւորիմ աղաղակել եւ ըսել. Ո՛վ ժամանակներ, ո՛վ սովորութիւններ....։ Արդեօք, բարեպաշտ տէր, ես աս բանիս մէջ իմ դա՞տս կը պաշտպանեմ. արդեօք անձնական զրկմա՞ն մը վրէժ կ'առնեմ. ո՛չ, մանաւանդ թէ Աստուծոյ եւ ընդհանուր եկեղեցւոյ դատին պաշտպան չե՞մ կենար մի,,[1]։

Ինք աղէկ գիտէր որ աս իր պարզ Գրիգոր Եպիսկոպոս Հռոմայ Հռոմայեցին Աթոռոյ պատուանուան մէջ ամէն բան կը յայտնուէր. որովհետեւ ինք եպիսկոպոս կը կոչուէր անուանափոխութեամբ կամ դերանուանութեամբ, եւ չունէր կարօտութիւն պատուանուան մը, ինչպէս է ընդհանուր պատրիարք եւ ընդհանուր առաքեալ պատուանունը, իր գերագոյն հովուի որպիսութիւնը յայտնելու։

Ինք թէ իր նախորդներուն եւ թէ նաեւ իր յաջորդներուն պէս հաստատուն բռնած էր, որ վէմն էր մի միայն խարիսխ եկեղեցւոյ, զորն որ մէկը չէր կրնար երբեք խախտել։ “Դու ո՞վ է որ չէգիտեր, կ'ըսէր, թէ սուրբ եկեղեցին հաստատուած է առաքելոց գլխոյն ամրութեան վրայ, որն որ իր անուան մէջ իր մտաց ամրութիւնը կը յայտնէր, վիմէն (Պետրա) իր Պետրոս անունը հանելով,,[2]։

Այսպէս նաեւ կը վկայէ արեւելեան մը, Ս. Մաքսիմոս Կոստանդնուպոլսի Աբբան՝ որ ետքը վկայ հաւատոյ եղաւ, Պետրոս Կոստանդնուպոլսոյ պատրիարքին ու

1 Ս. Գրիգ. Թղ. Գիրք Ե. 20։ 2 Ս. Գրիգ. Թղ. Գիրք Է. 40։

Մ. Խոստովանողն գլխոյն վերաբերեալ իր մէկ թղթին մէջ. աստանկ կը գրէր 650ին մօտերը[1]։

«Թէ որ անիկա չուզեր հերետիկոս ըլլալ կամ անանկ համարուիլ, թող հաստատուն ընէ ոչ աս կամ ան անձին, որն որ աւելորդ ալ էր եւ անխորհուրդ, վասն զի ինչպէս որ ինքն իրմէ գայթակղած ատեն՝ նոյնպէս գայթակղած են ամէնքը, այսպէս ալ երբ որ ինքը մը հաստատուն կ'ըլլայ, նոյնպէս անտարակոյս ամէնքն ալ կ'ըլլայ. թող ուրեմն շուտով Հռոմէական աթոռին հաստատուն ընելու նայի։ Թէ որ ինք ասիկայ կատարելու ըլլայ, ամէնքն ալ ամէն տեղ միաբան հաւանութեամբ զինքն իբրեւ բարեպաշտ եւ ուղղափառ կ'ընդունին։ Վասն զի փուճ տեղ միայն կը խօսի՝ երբ որ ինծի պէսները համոզելու կամ խաբել կը կարծէ, եւ հաստատուն մը չըներ ու չաղաչեր ամենասուրբ Հռոմէական եկեղեցւոյն երանելի Քահանայապետին, այսինքն՝ առաքելական աթոռին, որն որ նոյն իսկ Աստուծոյ մարմնացեալ Բանէն եւ ամէն սուրբ ժողովներէն, սուրբ կանոնաց ու սահմանադրութեանց համաձայն, աշխարհքիս երեսն եղող ընդհանուր ամէն սուրբ եկեղեցիներուն վրայ յամենայնի եւ ամենայնիւ՝ պետութիւն, ճոխութիւն եւ իշխանութիւն ընդունած է կապելու եւ արձակելու։ Որովհետեւ երբ որ ասիկայ կը կապէ կամ կ'արձակէ, նոյնը երկինքը Բանն ալ կը գործէ, որն որ երկնաւոր առաքինութիւնները կ'ուղղէ»։ Եւ քիչ մը յառաջ ըսած էր. «Զորն որ կը նզովէ Հռոմէական եկեղեցին, այսինքն՝ կաթողիկէ Էկկլեզիէն»[2]։

Յառաջ բերենք ուրիշ Արեւելեան մ'ալ, սուրբ Թէոդորոս Աբբայ Ստուդիտա Կոստանդնուպոլսեցի, որն որ 809ին կը գրէ. «Առ ամենասուրբ եւ դերագոյն Հայր հարանց, Տէր իմ Լեւոն, Առաքելական Քահանայապետ։ — Որովհետեւ Քրիստոս Տէրն մեր՝ մեծին Պետրոսի երկնից արքայութեան բանալիները տուած ատեն, շնորհեց նաեւ հովուական իշխանութեան արժա-

1 Մանսի, Ժ. 692։ 2 Մանսի, Ժ. 692։

նապատուութիւնը, հարկ է անտարակոյս որ Պետրոսի եւ իր յաջորդներուն ծանուցուի ինչ նորութիւն որ եկեղեցւոյ մէջ հնարուի անոնցմէ՝ որոնք ճշմարտութենէ մոլորած են....։ Փրկէ զմեզ, գերագոյն հովիւ եկեղեցւոյ երկնից ներքեւը„[1]։

Արդ աս ամէն վկայութիւններէն յայտնի կը տեսնուի, որ անոնցմէ քաղուած գլխաւորութեան բնութիւնը՝ Յիսուսի Քրիստոսի բովանդակ հօտին վրայ տարածուող գերագոյն իշխանութիւն մըն է, որն որ թէպէտ իւրաքանչիւր առաքելական հովիւներուն մասնական պաշտամանց մէջ չմտնէր, բայց ամէն բան կ'ընդգրկէ, կը կարգաւորէ ու միութեան մէջ կը պահէ, ինչպէս ինքն Ս. Գրիգոր կը նկատէ. "Ո՞ն ըսածին նկատմամբ՝ թէ առաքելական աթոռին հպատակ է, ես չեմ գիտեր եպիսկոպոս մը՝ որ այնպէս (հպատակ) չըլլայ, երբ եպիսկոպոսաց մէջ յանցանք մը գտնուի։ Բայց եթէ պակսութիւն մ'եղած չէ, ամէնքն ալ հաւասար են ըստ հոգւոյ խոնարհութեան„[2]։ Ինք կը յանձնէ նաեւ իր Սիկիլիայի մէջ գտնուող պաշտպանին՝ որ եպիսկոպոսաց իրաւաբանութեան մէջ չխառնուի, եւ անոնց մէկուն անհնազանդութեան մէկ գործքը մեղադրելով՝ կ'ըսէ. "Թէ եւ չորս պատրիարքներէն մէկն ալ ասիկայ ըրած ըլլար, ի հաւատս իմ կը զրուցեմ՝ որ այսպիսի մեծ խեռութիւն մը առանց մեծ գայթակղութեան չէր կրնար անցնիլ„[3]։ Եւ աս պաշտօնը հարկաւորապէս ի մէջ կը բերէ հաւատոյ պահպանութիւնը, որով եւ գերագոյն ատեանը հաւատոյ դատերուն մէջ, եւ ըստ հետեւորդի նաեւ վճիռ տալու մէջ անսխալութեան առանձնաշնորհութիւնը։

Մինչեւ հիմակ ըսածներնէս յայտնապէս կը հետեւի թէ զառանցելոց մտածութիւն է ասկից նուազ գլխաւորութիւն մը երեւակայելն ալ միայն, որն որ կարող ըլլայ միանգամայն միութիւնը պահպանել։

1 Բարոնիոս, Ամ. 809, Թիւ 14։
2 Ս. Գրիգ. Թղ. Գք. Թ. 89։
3 Ս. Գրիգ. Թղ. Գք. Բ. 52։

Բ. Իսկ երկրորդ գլխոյն նկատմամբ՝ գրեթէ մինչեւ հիմայ յառաջ բերուած ամէն վկայութիւնները, գլխաւորութեան հիմը կը դնեն Քրիստոսի Տեառն մերոյ առ Պետրոս ըսած խօսքերէն կամ մէկուն կամ մէկալին եւ կամ երեքին վրայ մէկանց եւ զուրբ Պետրոս հաստատութեամբ կը համարին իբրեւ մշտնջենաւորապէս կենդանի իր յաջորդներուն մէջ։ Նաեւ ասիկայ ահաւասիկ կը փանի կը հասցընէ զիս երրորդ գլխոյն։

Գ. Եկեղեցւոյ կարգաւորեալ կառավարութիւնը միշտ յարաբերութիւն ունի Պետրոսի հետ՝ իբրեւ եպիսկոպոսի մեծ նախագաղափարի հետ։ Նաեւ իրօք ալ ինքն եղաւ առաջին եպիսկոպոս, եւ եղաւ եպիսկոպոս բովանդակ հօտին, եւ այսպէս նաեւ արմատ ու սկիզբ եպիսկոպոսութեան։ Բայց ինչպէս որ իր անձը պիտի շարունակէր իր ամէն յաջորդներուն մէջ, եւ եպիսկոպոսութիւնը միշտ կենդանի իշխանութիւն մը պիտ'որ ըլլար, այսպէս ինքն ալ կը մտածուի իբրեւ կենդանի արմատ ու ծառին մշտնջենաւոր նեցուկը, եւ իբրեւ աղբիւր մը՝ որմէ ի մշտնջենաւորս ջրեր կը բղխեն։ Արդ տեսնենք ուրեմն որ աս գաղափարը, որն որ արդեամբք իսկ նախնի վարդապետներուն միտքը գրաւած էր, անոնցմէ տրուած վկայութիւններով յայտնի եւ եւս քան զեւս բացայայտ եղաւ մինչեւ որ Ս. Թովմայի եւ Ս. Բոնաւենդուրայի կատարեալ տրամաբանելովը ու եռանդուն սիրովը բոլորովին պարզեցաւ։

Ամենէն առաջ՝ Տերտուղիանոս երկրորդ դարուն մէջ այսպէս կը գրէ. “Վասն զի եթէ դուն դեռ երկինքը գոցուած կը կարծես, յիշէ որ Տէրն մեր անոր բանալիները Պետրոսի թողուց, եւ անոր ձեռքովը՝ բովանդակ եկեղեցւոյ„[1]։

Ս. Կիպրիանոսի բոլոր հոգին աս խորհրդով գրաւած կ'երեւայ։ Ինք այսպէս կը խօսի. “Նաեւ ասիկայ անկից կը պատահի, եղբարք, որ մարդ ճշմարտութեան սկիզբը չ'ելլեր. եւ գլուխն ալ խնդրելու ըլլայ՝ երկնաւոր

1 Տերտուղ. Սկորպիակ. 10։

վարդապետին ուսումը չիպահեր: Աս բաներուս եթէ մարդ միայն միտ դնելու եւ քննելու ըլլայ, երկայն ճառերու եւ նուրբ ձեռնարկութիւններու հարկաւորութիւն չունենար. վասն զի աստ ցոյցը դիւրին է հաւատոյ, որով շուտով ճշմարտութեան կը հասնուի: Տէրն մեր իր ճառը Պետրոսին կը դարձրնէ աս խօսքերով. “Ես քեզի կ'ըսեմ, թէ դուն վէմ ես, եւ ես աս վէմին վրայ իմ եկեղեցիս պիտի շինեմ, եւ դժոխոց դռները զանիկայ պիտի չկրնան յաղթահարել: Եւ պիտի տամ քեզի երկնից արքայութեան փականքները, եւ զորոնք որ դուն երկրի վրայ կը կապես՝ երկինքն ալ կապած ըլլան, եւ զորոնք որ երկրի վրայ կ'արձակես՝ երկինքն ալ արձակուին,,: Եւ նոյն իսկ իր յարութենէն ետքը անոր ըսաւ. “Արածէ իմ ոչխարներս,,: Անոր (Պետրոսի) վրայ մինակ կը շինէ իր եկեղեցին, եւ անոր հրաման կու տայ ոչխարներն արածելու: Եւ թէպէտ ամէն առաքեալներուն ալ յարութենէ ետքը հաւասար իշխանութիւն բաշխեց ըսելով. “Ինչպէս որ առաքեց զիս Հայր, ես ալ զձեզ կ'առաքեմ... առէք Հոգի սուրբ. թէ որ մէկու մը մեղքերը թողուք՝ թողութիւն ըլլայ անոր, եւ թէ որ մէկուն մեղքերը բռնէք՝ բռնուած ըլլան,,. բայց որպէս զի միութիւնը յայտնէ, դրաւ մի միայն աթոռ մը, եւ իր ճոխութեամբն այնպէս կարգաւորեց՝ որ նոյն միութեան սկիզբը մէկէ մը միայն բղխէ: Մէկալ առաքեալներն ալ այո՛ հաւասար Պետրոսի առաքեալ էին, անոր հաւասար պատուոյ եւ իշխանութեան բաժանորդ ըլլալով. բայց սկիզբը միութենէ ելած յառաջ կը խաղայ, եւ գլխաւորութիւնը Պետրոսի կը տրուի, որպէս զի յայտնի երեւայ Քրիստոսի եկեղեցւոյն միութիւնը եւ մի աթոռը: Հովիւ՝ ամէնքն ալ էին. բայց յայտնապէս մէկ է հօտը՝ որն որ բոլոր առաքելոց միաբան հաւանութեամբը պիտ'որ արածուի. որպէս զի յայտնապէս մի միայն երեւայ Քրիստոսի եկեղեցին: Այս մի միայն եկեղեցին է՝ զորն որ Հոգին սուրբ Երգ երգոցին մէջ Աստուծոյ

Բ. Իսկ երկրորդ գլխոյն նկատմամբ՝ գրեթէ մինչեւ հիմայ յառաջ բերուած ամէն վկայութիւնները, գլխաւորութեան հիմը կը դնեն Քրիստոսի Տեառն մերոյ առ Պետրոս ըսած խօսքերէն կամ մէկուն կամ մէկալին եւ կամ երեքին վրայ մէկանց եւ զսուրբ Պետրոս հաստատութեամբ կը համարին իբրեւ մշտնջենաւորապէս կենդանի իր յաջորդներուն մէջ։ Եւ ասիկայ ահաւասիկ կը տանի կը հասցընէ զիս երրորդ գլխոյն։

Գ. Եկեղեցւոյ կարգաւորեալ կառավարութիւնը միշտ յարաբերութիւն ունի Պետրոսի հետ՝ իբրեւ եպիսկոպոսի մեծ նախագաղափարի հետ։ Եւ իրօք ալ ինքն եղաւ առաջին եպիսկոպոս, եւ եղաւ եպիսկոպոս բովանդակ հօտին, եւ այսպէս նաեւ արմատ ու ակիզբ եպիսկոպոսութեան։ Բայց ինչպէս որ իր անձը պիտի շարունակէր իր ամէն յաջորդներուն մէջ, եւ եպիսկոպոսութիւնը միշտ կենդանի իշխանութիւն մը պիտ'որ ըլլար, այսպէս ինքն ալ կը մտածուի իբրեւ կենդանի արմատ ու ծառին մշտնջենաւոր նեցուկը, եւ իբրեւ աղբիւր մը՝ որմէ ի մշտնջենաւորս ջրեր կը բղխեն։ Կը տեսնենք ուրեմն որ աս գաղափարը, որն որ արդեամբք իսկ նախնի վարդապետներուն միտքը գրուած էր, անոնցմէ տրուած վկայութիւններով յայտնի եւ եւս քան զեւս բացայայտ եղաւ մինչեւ որ Ս. Թովմայի եւ Ս. Բոնաւենդուրայի կատարեալ տրամաբանելովը ու եռանդուն սիրովը բոլորովին պարզեցաւ։

Ամենէն առաջ՝ Տերտուղիանոս երկրորդ դարուն մէջ այսպէս կը գրէ. “Վասն զի եթէ դուն դեռ երկինքը գոցուած կը կարծես, յիշէ որ Տէրն մեր անոր բանալիները Պետրոսի թողուց, եւ անոր ձեռքովը՝ բովանդակ եկեղեցւոյ,,[1]։

Ս. Կիպրիանոսի բոլոր հոգին աս խորհրդով գրուած կ'երեւայ։ Ինք այսպէս կը խօսի. “Եւ ասիկայ անկից կը պատահի, եղբարք, որ մարդ ճշմարտութեան ակիզբը չ'ելլեր. եւ գլուխն ալ խնդրելու ըլլայ՝ երկնաւոր

1 Տերտուղ. Սկորպիակ. 10։

վարդապետին ուսումը չհպահեր: Աս բաներուս եթէ մարդ միայն միտ դնելու եւ քննելու ըլլայ, երկայն ճառերու եւ նուրբ ձեռնարկութիւններու հարկաւորութիւն չ՚ունենար. վասն զի աստ ցոյցը դիւրին է հաւատոյ, որով շուտով ճշմարտութեան կը հասնուի: Տէրն մեր իր ճառը Պետրոսին կը դարձընէ աս խօսքերով. “Ես քեզի կ՚ըսեմ, թէ դուն վէմ ես, եւ ես աս վէմին վրայ իմ եկեղեցիս պիտի շինեմ, եւ դժոխոց դռները զանիկայ պիտի չկրնան յաղթահարել: Ես պիտի տամ քեզի երկնից արքայութեան փականքները, եւ զորոնք որ դուն երկրի վրայ կը կապես՝ երկինքն ալ կապած ըլլան, եւ զորոնք որ երկրի վրայ կ՚արձակես՝ երկինքն ալ արձակուին,,: Ես նոյն իսկ իր յարութենէն ետքը անոր ըսաւ. “Արածէ իմ ոչխարներս,,: Անոր (Պետրոսի) վրայ մինակ կը շինէ իր եկեղեցին, եւ անոր հրաման կու տայ ոչխարներն արածելու: Ես թէպէտ ամէն առաքեալներուն ալ յարութենէ ետքը հաւասար իշխանութիւն բաշխեց ըսելով. “Ինչպէս որ առաքեց զիս Հայր, ես ալ զձեզ կ՚առաքեմ... առէք Հոգի սուրբ. թէ որ մէկու մը մեղքերը թողուք՝ թողութիւն ըլլայ անոր, եւ թէ որ մէկուն մեղքերը բռնէք՝ բռնուած ըլլան,,. բայց որպէս զի միութիւնը յայտնէ, դրաւ մի միայն աթոռ մը, եւ իր ճոխութեամբն այնպէս կարգաւորեց՝ որ նոյն միութեան սկիզբը մէկէ մը միայն բղխէ: Մէկալ առաքեալներն ալ այս հաւասար Պետրոսի առաքեալ էին, անոր հաւասար պատուոյ եւ իշխանութեան բաժանորդ ըլլալով. բայց սկիզբը միութենէ ելած յառաջ կը խաղայ, եւ գլխաւորութիւնը Պետրոսի կը տրուի, որպէս զի յայտնի երեւայ Քրիստոսի եկեղեցւոյն միութիւնը եւ մի աթոռը: Հովիւ՝ ամէնքն ալ էին. բայց յայտնապէս մէկ է հօտը՝ որն որ բոլոր առաքելոց միաբան հաւանութեամբը պիտ՚որ արածուի. որպէս զի յայտնապէս մի միայն երեւայ Քրիստոսի եկեղեցին: Այս մի միայն եկեղեցին է՝ զորն որ Հոգին սուրբ Երգ երգոցին մէջ Աստուծոյ

կողմանէ կը նշանակէ, այսպէս ըսելով. «Մէկ է իմ աղաւնիս, իմ կատարեալս, մէկ է իր մօրը, ընտրեալն իր ծնողին»։ Ո՛վ որ աս միութիւնը չունի, կը կարծէ՞ որ հաւատքն ունենայ։ Ո՛վ որ եկեղեցւոյ դէմ կը դառնայ կամ կը հակառակի, եւ ո՛վ որ կը թողու Պետրոսի աթոռը՝ որուն վրայ եկեղեցին շինուեցաւ, կը կարծէ՞ թէ եկեղեցւոյ մէջն է, ուր որ երանելի Պօղոս առաքեալն ալ աս վարդապետութիւնն ընելով՝ միութեան խորհուրդը կը ցուցընէ, ըսելով. «Մէկ մարմին եւ մէկ հոգի, մէկ ձեր կոչման յոյսը, մէկ տէր, մէկ հաւատք, մէկ մկրտութիւն, մէկ Աստուած»։ Պէտք է որ աս միութիւնը հաստատուն պահենք, մանաւանդ մենք եպիսկոպոսքս՝ որ եկեղեցւոյ մէջ գահերէց կը նստինք, որպէս զի եպիսկոպոսութիւնն ալ մի միայն եւ անբաժին ցուցընենք։ Ոչ ոք ստութեամբ իր եղբայրքը խաբէութեան մէջ ձգէ, եւ ոչ ոք հաւատոյ ճշմարտութիւնն անիրաւութեամբ եղծանէ։ Մի՛ միայն է եպիսկոպոսութիւնը, որմէ՝ առանց ամբողջութիւնը բաժնելու՝ իւրաքանչիւրքը մաս մ՚ունին։ Մի՛ միայն է եկեղեցին՝ որ բեղուն ծննդականութեամբ կ՚աճի ու կը տարածի բազմութեան (հաւատացելոց) մէջ։ Ինչպէս արեգական ճառագայթները շատ են, բայց լոյսը մէկ է. ծառին ոստերը շատ են, այլ ծառը մէկ է՝ հաստատուն արմատին վրայ տնկուած. եւ երբ որ մէկ ակունքէն շատ վտակներ յառաջ խաղալու ըլլան, թէպէտ ջրերու շատութենէն՝ բազմութիւն մը կը տեսնուի, սակայն միութիւնն ակունքին վրայ կը մնայ։ Առ բաժնէ արեգական ճառագայթն իր գնդէն. աս բաժնուած լոյսը ա՛լ միութեան մէջ չիմնար։ Ծառէն ոստ մը կտրէ բրցուր. կտրուած ոստը ա՛լ ճիւղ չիկրնար արձակել։ Բաժնէ վտակ մը իր ակունքէն. բաժնուած մասը կը ցամքի։ Այսպէս նաեւ Աստուծոյ եկեղեցին լուսով լցուած՝ իր ճառագայթը բոլոր աշխարհքիս երեսը կը ցոլացընէ. սակայն լոյսը մէկ է՝ որ ամէն կողմ ընդհանրապէս կը ծաւալի, եւ մարմնոյն միութիւնը չիքակուիր. իր բեղ-

Միաւոր արդասաւորութեամբը ծիւղերը տիեզերաց ամէն կողմը կը տարածէ, եւ իր վտակներն ալ յորդութեամբ ու առատութեամբ կը քալեցընէ. այսու ամենայնիւ մի միայն է գլուխը, մի միայն սկիզբը եւ մի միայն մայր առատ բազմածին ծննդականութեամբ„ [1]:

Արդ աս հռչակաւոր խօսքերուն մէջ, ո՞վ կրնայ տարակուսիլ թէ Կիպրիանոս կաթուղիկէ եկեղեցւոյ նկարագիրը կ'ընէ, եւ թէ իր գլխաւոր նպատակն է՝ կաթողիկէ եկեղեցւոյն չէ թէ միայն մի եւ անբաժին ըլլալը, այլ նաեւ անբաժանելի ըլլալն ալ հերետիկոսութեան եւ հերձուածոյ դէմ հաստատուն հիման վրայ դնել ու ցուցընել: Եւ իր մտքին մէջ ո՞ր եկեղեցւոյ մասն է՝ որ արեգական լուսոյն, ծառի արմատին, աղբեր, գլխոյ եւ մօր նմանութիւններուն կը պատասխանէ. եթէ ոչ՝ Պետրոսի անձն ու աթոռը, ուսկից որ սկսաւ: Ասիկա ցուցընելը, կ'ըսէ, հաւատոյ դիւրին է, որովհետեւ շուտ մը ճշմարտութիւնը վրայ կու գայ: Ո՞ր ճշմարտութիւնը. — Պետրոսի գլխաւորութիւնն ու տիեզերական հովուական հոգաբարձութիւնը: Ասոր վրայ շատ անգամ նորէն նորէն կը դառնայ: Եւ իրաւցընէ՝ իր խօսքերն են. "Հոն կը խօսի Պետրոս՝ որուն վրայ շինուած է եկեղեցին, ուսուցանող յանուն եկեղեցւոյ [2]: — Պետրոս՝ զորն որ Տէրն մեր ամենէն յառաջ ընտրեց եւ որուն վրայ իր եկեղեցին շինեց„ [3]: — Պետրոս՝ որուն վրայ Աստուծոյ շնորհքովը եկեղեցին շինուեցաւ [4]: — Մի միայն եկեղեցի Քրիստոսէ Տեառնէ մերմէ հիմնուած Պետրոսի վրայ՝ որ է ծագումն եւ սկիզբն միութեան [5]: — Ամենէն առաջ Պետրոսի՝ որուն վրայ շինեց Տէրն մեր իր եկեղեցին եւ հաստատեց որ անկից ծագի միութիւնը եւ այնպէս ալ հրատարակեց, տուաւ աս իշխանութիւնը՝ որ ինչ որ ինք երկրիս վրայ արձակէ՝ երկինքն ալ պիտ'որ արձա-

1 Կիպր. Վասն միութեան եկեղ:
2 Կիպր. Թղ. 69:
3 Կիպր. Թղ. 71:
4 Կիպր. Վասն բարւոյ համբերութեան:
5 Կիպր. Թղ. 70:

կուի[1]։ — Աստուած մէկ է, Քրիստոս մէկ, եկեղեցին մէկ, եւ մէկ է աթոռը՝ որ Աստուծոյ ձայնովը վէմին վրայ հաստատուած է„[2]։ Նոյնպէս կը գրէ իրեն համար Կոռնելիոս Քահանայապետին. "Գիտենք որ զերենք յորդորեցինք կաթողիկէ եկեղեցւոյ արմատն ու արգանդը ճանչնալու եւ հաստատուն պահելու„։ Կը գրէ դարձեալ նոյնին. "Կը համարձակին ծովն անցնելու եւ Պետրոսի աթոռին թղթեր բերելու, ան գլխաւոր եկեղեցւոյն՝ ուստի որ սկիզբն առաւ քահանայական միութիւնը„[3]։ Իսկ ուրիշ տեղ մ'ալ. "Տէրն մեր . . . եպիսկոպոսական պատիւն ու եկեղեցւոյ կառավարութիւնը հաստատած ատեն, ասանկ կը խօսի աւետարանին մէջ եւ կ'ըսէ Պետրոսի. "Իսկ ես քեզ ասեմ„ եւ այլն։ Ուստի ժամանակին եւ յաջորդութեանց երկար փոխանակելովը՝ եպիսկոպոսաց կարգաւորութիւնն ու եկեղեցւոյ կառավարութիւնը յառաջացաւ, այնպէս որ եկեղեցին եպիսկոպոսաց վրայ կարգաւորեցաւ„[4]։

Ս. Կիպրիանոսի աս մտածութիւնը քիչ մը եւս աւելի եւս լուսաւորեց Ս. Օպտատոս, որն որ Դոնատեանց մէկուն դէմ ձեռնարկելով՝ այսպէս կը խօսի. "Չես կրնար ուրանալ որ նախ առաջին եպիսկոպոսական աթոռը դրուեցաւ սուրբ Պետրոսէն Հռոմ քաղաքը՝ ուր որ ինք կը նստի, ամէն առաքեալներուն գլուխն ըլլալով, նաեւ Կեփաս կոչուած է. աս մի եւ միակ աթոռին վրայ հարկ էր որ ամենուն կողմանէ միութիւնը պահուէր, եւ ոչ առաքեալները կալող էին խուրաքանչիւր իրենց մէյմէկ սեպհական աթոռ պահանջել. այնպէս ան ատենէն ի վեր հերձուածող եւ մեղաւոր պիտի համարուէր ով որ աս աթոռին դէմ ուրիշ աթոռ մը կանգնելու ըլլար„[5]։ Իսկ դարձեալ. "Ի շնորհս միութեան՝ երանելին Պետրոս արժանի եղաւ թէ ուրիշ առաքեալներէն վեր սեպուելու եւ թէ առ-

1 Կիպր. Թղ. 73։
2 Կիպր. Թղ. 40։
3 Կիպր. Թղ. 45. 55։
4 Կիպ. Թղ. 27։
5 Ս. Օպտատոս, Ընդդէմ. Պարմ. Գիրք Բ. Գլ. Զ։

անձին երկնից արքայութեան բանալիներն ընդունելու, որպէս զի իրմէ՝ ուրիշներուն հաղորդուի„[1]։

Ս. Պակիանոս Սպանիացին նոյն առեններն ուրիշ Գոնատեանի մը գրելով՝ կը գրուցէ. “Արդ նոյն իսկ Տէրն մեր առանձին Պետրոսի խօսեցաւ, որպէս զի միութիւնը մէկուն վրայ կարող ըլլայ կերպարանել„[2]։

Ս. Ամբրոսիոս նոյն մտածման վրայ եւ նոյն աւսութեան մէջ էր։ Ուստի ինքն ալ խօսելով Ակուիլէայի ժողովքին անուամբը, որն որ արեւմտից գրեթէ բոլոր գաւառներէն ժողված էր, Գրատիանոս կայսեր սապէս կ'ըսէ. “Ձեր գթութեան պէտք էր աղաչել, որ թող չտրուի որ Հռոմայ եկեղեցին՝ բովանդակ Հռոմէական աշխարհքին գլուխն ու առաքելոց սուրբ հաւատքը խռովութեամբ վրդովի։ Վասն զի աս աթոռէն, իբրեւ ակունքէ մը ամենուն վրայ մեծարոյ հաղորդակցութեան իրաւունքները կը բղխեն„[3]։ Նաեւ ասով կարծեմ թէ ըսել կ'ուզէ որ մէկ առանձին եկեղեցի մը ամենեւին իրաւունք չունի ուրիշ եկեղեցիներու հետ հաղորդակցութիւն խնդրելու, երբ որ ինք Հռոմէական եկեղեցւոյն հետ չի հաղորդիր[4]։ Նաեւ խօսելով ան տեղւոյն վրայ՝ թէ “Դու ես վէմ„ սապէս կը գրուցէ. “Ուրեմն երբոր Քրիստոս իր սեպհական ճոխութեամբը անոր (Պետրոսին) տուաւ թագաւորութիւնը, չէ՞ր կրնար արդեօք աս մարդուս հաւատքը հաստատել, երբոր վէմ կոչելովը զինքն եկեղեցւոյ հիմ նշանակեց„[5]։ Նաեւ դարձեալ. “Աս ան Պետրոսն է՝ որուն ինք ըսաւ. Դու ես վէմ եւ այլն։ Ասոր համար ուր որ Պետրոսն է՝ հոն է նաեւ եկեղեցին. ոչ մահ, այլ յաւիտենական կեանք„[6]։ Պետրոս եւ եկեղեցի անանկ կը մտածուին, իբրեւ թէ մի միայն գոյութիւն ունենան. եւ Պետրոսի ներկայութիւնը, այսպէս իր յաջորդներուն մէջ մնալով, թէ զեկեղեցին կը ներկայացընէ եւ թէ անոր ոչ ժամանա-

1 Անդ. Գիրք Է. Գլ. 3։
2 Ս. Պակիան. Թղ. Գ. առ Սեմպրոն. 26։
3 Մանսի, Հատ. Գ. 622։
4 Տես Պալլերինի, Գլ. 13։
5 Ս. Ամբրոս. Վասն հաւատ. Գիրք. Դ. Գլ. 1։
6 Նոյն, ի Սաղմ. Խ։

կաւոր՝ այլ յաւիտենական հիմն է։ Որչափ որ շէնքը տեւելու ըլլայ, այնչափ ալ նոյն հիմը զանիկայ կը պիտ՚որ բռնէ։

Նոյն դարուն մէջ (386ին) Սիրիկիոս Քահանայապետն Ափրիկեցի եպիսկոպոսներուն կը գրէր. «Պետրոսին՝ որով առաքելութիւնն ու եպիսկոպոսութիւնն ի Քրիստոս սկսաւ»[1]։

Նոյնպէս Ս. Յերոնիմոս. «Բայց դուք կ'ըսէք. եկեղեցին Պետրոսի վրայ հիմնուած է։ Թէպէտ ուրիշ տեղ մ'ալ ասիկայ նաեւ ամէն առաքեալներուն համար կ'ըսուի, եւ ամէնքն ալ երկնից արքայութեան բանալիները կ'ընդունին ու եկեղեցւոյ հաստատութիւնը նոյնպէս անոնց վրայ ալ դրուած է. ի վերայ այսր ամենայնի տասուերկուքին մէջէն միայն մէկը կ'ընտրուի, որպէս զի գլուխը հաստատուելով՝ հերձուածոց առիթը բարձուի»[2]։

Թէ որ առաքեալներուն գլուխ մը հարկաւոր էր, որչափ եւս առաւել եպիսկոպոսներուն։ Այսպէս կը մտածէր Ս. Յերոնիմոս՝ երբ որ Անտիոքայ պատրիարքական թեմէն Դամասոս Քահանայապետին կ'աղաղակէր. «Կը խօսիմ ես Ձկնորսին յաջորդին եւ խաչին աշակերտին։ Ես՝ որ ուրիշին ետեւէն չեմ երթար, բայց եթէ Քրիստոսի՝ իբրեւ իմ գլխոյս, միացած եմ ի հաղորդակցութեան ձեր երանութեան հետ, այսինքն՝ Պետրոսի աթոռին հետ. եւ գիտեմ որ աս վէմին վրայ եկեղեցին շինուած է։ Օտար է անիկայ՝ որն որ աս տնէն դուրս զԳառն կ'ուտէ։ Ով որ քեզի հետ չի ժողվեր, կը ցրուէ. այս ինքն՝ ով որ Քրիստոսի հետ չէ, Նեռին հետ է»[3]։

Գանք հիմակ ան մեծ Սուրբին, որն որ Ս. Հայոց մէջ այնպէս է, ինչպէս Պօղոս՝ առաքելոց մէջ, եւ ինչ որ սուրբն Թովմաս Ակուինացի՝ վարդապետաց մէջ։ Կը ճանչնա՞յ արդեօք ինքն ալ զսուրբ Պետրոս իբրեւ

1 Կոստան. Եր. 651։ 279։ Տես նաեւ վերը, եջ 94։
2 Ընդդէմ Յովիան. Հատ. Բ. 3 Առ Դամաս. Թուղթ. 15։

եկեղեցական կառավարութեան պատճառ եւ իբրեւ միշտ կենդանի մնացող իր յաջորդներուն մէջ: Բաւական էր ասոր հարցման պատասխան տալու համար յիշել հոս տեղս իր մեծ հաճութիւնն ու հաւանութիւնը՝ որով կը գովէ ու կը բարձրացընէ Իննովկենտիոս Քահանայապետին քիչ մը առաջ յիշուած թուղթը, որուն մէջ նոյն այս գաղափարը լուսաւորուած ու պայծառացած է: Բայց ասոնցմէ աւելի շատերը կան. եւ մենք այն շատերուն մէջէն մինակ մէկ քանի կտորները յառաջ կը բերենք:

Արդ՝ Սուրբ Օգոստինոս իր անձին վրայ Մանիքեցւոյ մը խօսած ատեն՝ այսպէս կ՚ըսէ. "Կաթուղիկէ եկեղեցւոյ ծոցը կը պահէ զիս ազգաց ու ժողովրդոց հաւանութիւնը . . . հրաշքներով սկսուած, յուսով սնած, սիրով աճած, հնութեամբ հաստատուած ճոխութիւնը: Կը պահէ՝ եպիսկոպոսաց յաջորդութիւնը՝ մինչեւ հիմակուան եպիսկոպոսութիւնը նոյն իսկ Պետրոսի առաքելոյն աթոռէն, որուն Տէրն մեր իր յարութենէն ետքը իր հօտին ոչխարներն արածելու յանձնեց: Ի վախճանի կը պահէ զիս նոյն իսկ կաթողիկէ անունը"[1]: Արդ երրորդ պատճառին զօրութիւնը տիեզերականութեան կամ ընդհանրութեան եւ Պետրոսի հովուական պաշտաման շարունակութեան վրայ է: Ուրիշ Մանիքեցւոյ մ՚ալ կ՚ըսէ. "Ի՞նչ կը դանդաղինք ուրեմն ծածկուելու այն եկեղեցւոյն գոգը, որն որ ըստ բովանդակ իսկ մարդկային ազգի խոստովանութեան՝ առաքելական աթոռէն եպիսկոպոսաց յաջորդութեամբը, ճոխութեան ծայրն ու գագաթը հասաւ, երբ որ հերետիկոսք իր բոլորտիքն անօգուտ աղաղակելով կը պտըտէին, եւ կէս մը կը դատապարտուէին նոյն իսկ ժողովրդեան դատաստանովը, կէս մը ժողովներուն ծանրութեամբը եւ կէս մ՚ալ հրաշքներուն վեհութեամբը"[2]: Իսկ Դոնատեաններուն՝ որոնք առաքելական յաջորդութիւնը, եկեղե-

1 Ս. Օգոս. Ընդդ. Եպ. Մանիք. Հատ. Ը. Գիրք. Ա. Գլ. Դ:

2 Ս. Օգոս. Վասն օգտութեան հաւատ. Գլ. Ժէ:

կաւոր՝ այլ յաւիտենական հիմն է։ Որչափ որ շէնքը տեւելու ըլլայ, այնչափ ալ նոյն հիմը զանիկայ վեր պիտ՛որ բռնէ։

Նոյն դարուն մէջ (386ին) Սիրիկիոս Քահանայապետն Ափրիկեցի եպիսկոպոսներուն կը գրէր․ "Պետրոսին՝ որով առաքելութիւնն ու եպիսկոպոսութիւնն ի Քրիստոս սկսաւ„ [1]։

Նոյնպէս Ս․ Յերոնիմոս․ "Բայց դուք կ՚ըսէք․ եկեղեցին Պետրոսի վրայ հիմնուած է։ Թէպէտ ուրիշ տեղ մ՚ալ ասիկայ նաեւ ամէն առաքեալներուն համար կ՚ըսուի, եւ ամէնքն ալ երկնից արքայութեան բանալիները կ՚ընդունին ու եկեղեցւոյ հաստատութիւնը նոյնպէս անոնց վրայ ալ դրուած է․ ի վերայ այսր ամենայնի տասուերկուքին մէջէն միմիայն մէկը կ՚ընտրուի, որպէս զի գլուխը հաստատուելով՝ հերձուածոյ առիթը բարձուի„ [2]։

Թէ որ առաքեալներուն գլուխ մը հարկաւոր էր, ո՜րչափ եւս առաւել եպիսկոպոսներուն։ Այսպէս կը մտածէր Ս․ Յերոնիմոս՝ երբ որ Անտիոքայ պատրիարքական Թեմէն Դամասոս Քահանայապետին կ՚աղաղակէր․ "Ես խօսիմ ես Զկնորսին յաջորդին եւ խաչին աշակերտին։ Ես՝ որ ուրիշին ետեւէն չեմ երթար, բայց եթէ Քրիստոսի՝ իբրեւ իմ գլխոյս, միացած եմ ի հաղորդակցութեան ձեր երանութեան հետ, այսինքն՝ Պետրոսի աթոռին հետ․ եւ գիտեմ որ աս վիմին վրայ եկեղեցին շինուած է։ Օտար է անիկայ՝ որն որ աս տնէն դուրս զԳառն կ՚ուտէ։ Ով որ քեզի հետ չհաւաքեր, կը ցրուէ․ այս ինքն՝ ով որ Քրիստոսի հետ չէ, Նեռին հետ է„ [3]։

Գանք հիմակ ան մեծ Սուրբին, որն որ Ս․ Հայոց մէջ այնպէս է, ինչպէս Պօղոս՝ առաքելոց մէջ, եւ ինչ որ սուրբն Թովմաս Ակուինացի՝ վարդապետաց մէջ։ Ով ճանչնա՞յ արգեօք ինքն ալ զսուրբ Պետրոս իբրեւ

1 Կանոն, Եր․ 651։ 279։ Տես նաեւ վերը, էջ 94։
2 Ընդդէմ Յովիան․ Հատ․ Բ․ 3 Առ Դամաս․ Թղթ․ 15։

եկեղեցական կառավարութեան պատճառ եւ իբրեւ միշտ կենդանի մնացող իր յաջորդներուն մէջ։ Բաւական էր աս հարցման պատասխան տալու համար յիշել հոս տեղս իր մեծ հաճութիւնն ու հաւանութիւնը՝ որով կը գովէ ու կը բարձրացընէ Ինոկենտիոս Քահանայապետին քիչ մը առաջ յիշուած թուղթը, որուն մէջ նոյն այս գաղափարը լուսաւորուած ու պայծառացած է։ Բայց ատոնցմէ աւելի շատերը կան. եւ մենք այն շատերուն մէջէն մինակ մէկ քանի կտորները յառաջ կը բերենք։

Արդ՝ Սուրբ Օգոստինոս իր անձին վրայ Մանիքեցւոյ մը խօսած ատեն՝ այսպէս կ՚ըսէ. “Կաթուղիկէ եկեղեցւոյ ծոցը կը պահէ զիս ազգաց ու ժողովրդոց հաւանութիւնը . . . հրաշքներով սկսուած, յուսով սնած, սիրով աճած, հնութեամբ հաստատուած ճոխութիւնը։ Կը պահէ՝ եպիսկոպոսաց յաջորդութիւնը՝ մինչեւ հիմակուան եպիսկոպոսութիւնը նոյն իսկ Պետրոսի առաքելոյն աթոռէն, որուն Տէրն մեր իր յարութենէն ետքը իր հօտին ոչխարներն արածելու յանձնեց։ Ի վախճանի կը պահէ զիս նոյն իսկ կաթողիկէ անունը„[1]։ Արդ երրորդ պատճառին զօրութիւնը տիեզերականութեան կամ ընդհանրութեան եւ Պետրոսի հովուական պաշտաման շարունակութեան վրայ է։ Ուրիշ Մանիքեցւոյ մ՚ալ կ՚ըսէ. “Ի՞նչ կը գանգատիք ուրեմն ծածկուելու այն եկեղեցւոյն գոգը, որն որ ըստ բովանդակ իսկ մարդկային ազգի խոստովանութեան՝ առաքելական աթոռէն եպիսկոպոսաց յաջորդութեամբը, ճոխութեան ծայրն ու գագաթը հասաւ, երբ որ հերետիկոսք իր բոլորտիքն անօգուտ աղաղակելով կը պտըտէին, եւ կէս մը կը դատապարտուէին նոյն իսկ ժողովրդեան դատաստանովը, կէս մը ժողովներուն ծանրութեամբը եւ կէս մ՚ալ հրաշքներուն վեհութեամբը„[2]։ Իսկ Դոնատեաններուն՝ որոնք առաքելական յաջորդութիւնը, եկեղե-

1 Ս. Օգոս. Ընդդ. Եպ. Մանիք. Հատ. Ը. Գիրք. Ա. Գլ. Դ։

2 Ս. Օգոս. Վասն օգտութեան հաւատ. Գլ. ԺԷ։

ցոյ խորհրդոց ամբողջ թիւն ու անոր հաւատքին առանց ամենուն տարակուսի կ'ընդունէին, բայց ի մէկ կէտէ՝ որն որ իրենց հերձուածը կը կացուցանէր, ասանկ կը խօսէր. «Գիտէք թէ ինչ է կաթողիկէ եկեղեցին, եւ ինչ՝ որթէն կտրուիլը. թէ որ կան մէջերնիդ խոհեմներ, թող գան եւ օրինակին մէջ կենդանութիւն գտնեն։ Նայեցէք, եղբարք, թէ որ կ'ուզէք որթին վրայ պատուաստուիլ... ցաւ է մեզի երբ որ գձեզ որթէն կտրուած նետուած կը տեսնենք։ Հաշուեցէք եպիսկոպոսները՝ նոյն իսկ Պետրոսի աթոռէն սկսելով, եւ տեսէք թէ հօրց այն շարքին մէջ՝ ինչպէս մէկը մէկալին յաջորդած է։ Ան է վէմը՝ զորն որ գժոխոց դռները պիտի չկրնան երբեք յաղթահարել»[1]։ Առանց տարակուսի մը Ս. Օգոստինոս ան առեն զՍ. Պետրոս կը տեսնէր իբրեւ կենդանի իր յաջորդներուն մէջ։ Բայց ո՛րն էր անոր գլխաւոր պաշտօնը՝ իբրեւ գահերէց։ Տէրն մեր ըսաւ Պետրոսի՝ որուն անհաս անձին վրայ իր եկեղեցւոյն փարախը կը ձեւէր. «Պետրէ, կը սիրե՞ս զիս»[2]։ «Ի Պետրոս միայն ամէն հաւլուաց միութիւնը նկարուած էր»[3]։ «Ինչու որ զնոյն իսկ Պետրոս՝ որուն իբրեւ իր անձին՝ իր ոչխարներուն հօգը յանձնած էր, իրեն հետ մէկ ընել կ'ուզէր, որպէս զի ասանկով իր ոչխարներն անոր ձեռքն աւանդած ատեն՝ անիկայ ըլլայ գլուխ, եւ անոնք մարմնոյ կերպարանքն ունենան, որ է եկեղեցւոյ»[4]։ «Պետրոս եղաւ որ ըսաւ. «Դու ես Քրիստոս՝ Որդի Աստուծոյ կենդանւոյ»։ Մէկը միայն ամենուն տեղը պատասխան տուաւ, վասն զի անոնց ամենուն մէջ միութիւն կայ։ Ան մէկ առաքեալը, այսինքն՝ Պետրոս, առաքելոց կարգին մէջ էր առաջին եւ գլուխ, որուն վրայ եկեղեցին կերպաւորուած էր»[5]։ «Ու եկեղեցին Պետրոս առաքեալ իր առաքելութեան գլխաւորութեան զօրութեամբը կը ներկայացընէր, ինք ըլլալով անոր ընդհան-

1 Ս. Օգոս. Հատ. Թ. Սաղմ. առ. Դոնատ։
2 Նոյն, ճառ ճԼԷ. Հատ. Ե։
3 Ս. Օգոս. ճառ ճԽԸ։
4 Նոյն, ճառ ԽԶ։
5 Նոյն, ճառ ՂԶ։

րութեան գաղափարը [1]։ — Իրեն ըսուեցաւ. Ես կու տամ՝ քեզի երկնից արքայութեան բանալիները, որպէս թէ միայն ինք Պետրոս կապելու եւ արձակելու իշխանութիւնն առած ըլլայ, որովհետեւ իրօք ալ այնպէս պատահեցաւ, որ ինքն առանձին ամենուն անուամբն ըսաւ եւ ամենուն հետ մէկտեղ ընդունեցաւ իշխանութիւնը, կարեւ նոյն իսկ միութեան ներկայացուցիչ։ Ըստոր համար մէկն ամենուն անուամբն ըսաւ, որովհետեւ ինքն է միութիւն յամենեսին [2]։ — Տէրն մեր Յիսուս Քրիստոս ընտրեց իր աշակերտները չարչարանքէն յառաջ... եւ գլխաւորաբար զՊետրոս, որովհետեւ Պետրոս է առաջին առաքելոց մէջ„ [3]։

Հռոմայ քահանայապետին ինչ ըլլալը կամ գաղափարը չէիկրնար աւելի պայծառ խօսքի ձեւով մը յայտնուիլ, քան զոր Ս. Օգոստինոս հետեւեալ խօսքերով կը բացատրէ. "Պետրոս՝ որ եկեղեցւոյ կապատար է. որուն վրայ ամէն հովիւներուն միութիւնը կերպաւորուած է. ան որ ունի իր անձին վրայ մարմնոյ կերպարանքը, այս ինքն՝ եկեղեցւոյ, ընդհանրութեան եւ միութեան դրոշմը, եւ ինք իրբեւ այսպիսի ուրիշներուն հետ մէկտեղ բանալիները կ'ընդունի„։

Բայց Ափրիկէի եկեղեցին թող տալէն յառաջ յառաջանանք մինչեւ 646, երբ որ նոյն եկեղեցին բոլոր մէկտեղ՝ Թէոդորոս Քահանայապետին ասանկ կը գրէր։

"Առ Թէոդորոս Քահանայապետ, ամէներջանիկ Տէր, ամբարձեալ առաքելական գահին գագաթը, առ սուրբ հայրն հարանց, առ քերագոյն Քահանայապետ ամենայն առաջնորդաց, — Կոլումբոս՝ եպիսկոպոս Նումիդիայի ժողովոյն առաջին աթոռոյն, եւ Ստեփանոս՝ եպիսկոպոս Բիզակենայ ժողովոյն առաջին աթոռոյն, եւ Ռեպարատոս՝ եպիսկոպոս Մաւրիտանիայի ժողովոյն առաջին աթոռոյն, եւ ամէն եպիսկոպոսք վերը յիշուած Ափրիկէի գաւառին երեք ժողովներուն։

1 Ս. Օգոս. Հատ. Գ. 838։
2 Նոյն, Հատ. Գ. 800։
3 Ս. Օգոս. Ճառ. ՄՂԵ.։

"Ու ով կրնայ տարակուսիլ առաքելական աթոռին մէջ առատ եւ անհատնելի աղբիւր մ'ըլլալուն վրայ, որն որ ամէն քրիստոնէից համար իր ջրերը կը հեղու, ուսկից որ բազմաթիւ վտակներ կը բաժնուին՝ բոլոր քրիստոնէական աշխարհքն առատապէս ոռոգելու համար։ Հարց վճիռները սահմանադրեցին որ ի պատիւ երանելւոյն Պետրոսի ամենայն մասնաւոր մեծարանքը տրուի աս աթոռոյն, երբ որ կը քննէ աստուածային բաները, որոնց՝ ինչպէս ամէն տեղ՝ այսպէս առաւել եւս գլխաւորաբար առաջնորդներուն նոյն իսկ առաքելական գլխէն ծագիլ քննուիլը կ'ուզուի, որուն հին խնամակալութեամբ՝ ստիպական է չարը դատապարտել եւ բարին հաստատել։ Վասն զի հին կանոններով սահմանուեցաւ, որ ամէն բան ինք պէտք է քննել,, եւ այլն[1]։

Ասկից ետքը ժողովոյն գործոց կարգին մէջ կ'անցնին Ինոկենտիոս Քահանայապետին, 416ին՝ Կարքեդոնի ժողովոյն տուած պատասխանը, զորն որ վերը յառաջ բերինք եւ զորն որ մեծ գովեստով կ'ընդունի Ս. Օգոստինոս, ինչպէս տեսանք, որով առաքելական աթոռին իշխանութիւնը՝ եկեղեցւոյ իբրեւ կենդանի ու մշտնջենաւոր աղբիւր կը նկարագրուի։

Դառնանք հիմայ յոյն Հարց, եւ քննենք թէ իրենք ինչ բան կը ճանչնան յանձն եւ ի պաշտաման սրբոյն Պետրոսի։

Որոգինէս կը ճառէ "Պետրոսի յանձնուած իշխանութեան բարձրութեան վրայ՝ նկատմամբ արածելու զհօտն եւ զեկեղեցին, որն որ իր վրայ՝ իբրեւ վէմի վրայ հաստատուած է,,[2]։

Ս. Գրիգոր Նիւսացին կը գրէ. "Պետրոսի միջնորդութեամբը տուաւ (Քրիստոս) եպիսկոպոսներուն երկնաւոր պատիւներուն բանալիները,,[3]։

Իր եղբայրը Ս. Բարսեղ կ'ըսէ. "Ան՝ որ իր հաւատքով մէկալները գերազանցած էր, եկեղեցւոյ շի-

1 Մանսի, Ժ. 919։
2 Առ Հռոմ. Գիրք. Ե. 568։
3 Ճառ. վասն պատժ. Հատ. Բ. 743—749։

նուածքն իր վրայ ընդունեցաւ„ . եւ ուրիշ տեղ մ'ալ՝ «Երանելւոյն Պետրոսի ... որ ամէն առաքեալներէն ընտրելագոյնն ու նախամեծարն եղաւ եւ ուրիշներէն աւելի մեծագոյն վկայութիւններ ընդունեցաւ, երկնից արքայութեան բանալիները յանձնուեցան„ [1]:

Ս. Գրիգոր Նազիանզացին. «Չէք տեսներ որ թէպէտ Քրիստոսի ամէն աշակերտներն ալ ազնուացած եւ արժանի ընտրութեան եղած են, բայց մէկը մինակ կոչուեցաւ վէմ, եւ իրեն միայն եկեղեցւոյ հիմ ըլլալն աւանդուեցաւ„ [2]:

Ս. Յովհաննէս Ոսկեբերանին այնչափ վկայութեանց մէջէն՝ մինակ ասոնք կ'ընտրեմ. «Մէկու մը յանձնուեցաւ Քրիստոսէն հօտը. անիկայ ամենուն բեռը կը բառնայ: Քրիստոս անոր ձեռքը տուաւ ընդհանուր եկեղեցւոյ գահերիցութիւնը: Ինք երբոր անոր բանալիները յանձնեց, մահկանացու մարդու մը ձեռք իշխանութիւն տուաւ երկնից ամէն բաներուն վրայ„:

Աս Հարց ժամանակէն եկող գումարուած արեւելեան ընդհանուր ժողովքներն ալ զՔահանայապետը՝ իբրեւ Ս. Պետրոսի աթոռը նստող կը յարգեն: Գ. Հատուածին մէջ յառաջ բերի Բոնիփակիոս Քահանայապետին 422ին գրած հռչակաւոր թուղթը՝ որն որ կատարեալ նոյն գաղափարը կու տայ, զորն որ հիմայ կը նկարենք: Նաեւ դարձեալ վերը յառաջ բերուած Ս. Լեւոնի թղթին վրայ՝ հոստեղս հետեւեալն ալ կ'աւելցընեմ:

«Ամենասիրելի եղբարցս, ընդհանուր Վիեննական գաւառին մէջ հաստատուած եպիսկոպոսներուն, — Լեւոն Եպիսկոպոս Հռոմայ:

«Աստուծոյ շնորհքն ուզեց որ ամէն ժողովրդոց ու ամէն ազգաց մէջ պայծառանայ աստուածային կրօնին պաշտօնը. եւ Տէրն մեր Յիսուս Քրիստոս մարդկային ազգի Փրկիչը պատուիրեց որ յառաջագոյն օրինաց

1 Ճառ Գ. Վան մեղաց:   2 Ճառ ԼԲ. Հատ. Ա. 591:

ու միացուցէք պատգամներովը հրատարակուած ճշմարտութիւնը առաքելական փողոյն ձեռքովն ընդհանուր եկեղեցւոյ միութեան համար տարածուած, ինչպէս որ գրուած է. «Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա եւ մինչեւ ի ծագս աշխարհի են խօսք նոցա»: Բայց Տէրն մեր ուզեց որ աս պաշտօնին տնտեսութիւնն այնպիսի եղանակաւ ամէն առաքեալներուն պաշտաման վերաբերի, որ գլխաւորաբար առաքելոց մէջէն գերագունին՝ Պետրոսին վրայ կենայ. որպէս զի անկից՝ իբրեւ գլխէն՝ իր պարգեւները բովանդակ մարմնոյն զեղանին, այնպէս որ՝ ով որ Պետրոսի ամրութենէն հեռանալու ըլլայ, ինք զինքն աստուածային պաշտամանէ դուրս ձգուած մերժուած ճանչնայ: Վասն զի զինքն իր անհատական միութեան հաղորդակից ընելով, ինչ որ ինքն էր՝ այնպէս զանիկայ ալ անուանել ուզեց, ըսելով. Դու ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ. որպէս զի յաւիտենական տաճարին շինուածքը, Աստուծոյ շնորհաց զարմանաքանչ տեսչութեամբը, իր հիմը Պետրոսի ամրութեան վրայ ունենայ. այնպիսի հաստատութեամբ եկեղեցին զօրացուց, որ ոչ մարդկային յանդգնութիւնը կարենայ զանիկայ նուաճել, եւ ոչ ալ դժոխոց դռները կարենան յաղթահարել»[1]:

Գրեթէ նոյն ժամանակները, 450ին, Գաղղա Պղակիդիա կայսրուհին աս խօսքերը կը գրէր Թէոդոսիոս կայսեր:

«Ուրեմն ձեր հեզութիւնն այնչափ շփոթութեանց ճար մը գտնելով, հրաման տայ որ կաթողիկէ կրօնին ճշմարտութիւնն անարատ պահուի, որ առաքելական աթոռին կարգադրութիւններուն ու վճիռներուն համաձայն, զորն որ մենք ալ իբրեւ ամենէն գերագոյն կը մեծարենք, Փլաբիանոս իր եպիսկոպոսութեան վիճակին մէջ բոլորովին անվնաս մնալով՝ դատաստանն առաքելական աթոռոյն ժողովքին յանձնուի, ուր որ եպիսկոպոսական աստիճանի իշխանութիւնը կանգնեց անիկայ՝

1 Ս. Լեւոն, Թղթ. Ժ.

ան որ ամենէն յառաջ երկնային բանալիներն առնելու արժանի եղաւ„ [1]։

Ըսինք [illegible]որ պաշտպաներ Ս. Լեւոնի ճշմարտութիւնը՝ Եփեսոսի մէջ 449ին գումարուած ժողովքին դէմ, որն որ ըստ ռամկաց ընդհանուր ժողով կը կոչուէր։

Փելիքս Գ. Քահանայապետը 490ին Զենոն կայսեր [illegible]րէ գովելով քիչ մը յառաջ նոր ընտրուած Փլաւիտա Պատրիարքը "իր արժանաւորութեան սկիզբը երանելի Պետրոս առաքելոյն աթոռին ընծայելուն համար„. եւ կը խօսի անոր գրած թղթոյն վրայ, որուն մէջ Փլաւիտա կը խնդրէր "զօրանալ այն իշխանութենէն՝ որմէ Քրիստոսի կամօքը, շնորհաց լիութիւնն ամէն եպիսկոպոսաց վրայ կը բղխէ„ [2]։

Գելասիոս Քահանայապետը 492ին Պետրոսի աթոռին վրայ խօսելով՝ կ'ըսէ թէ "Անոր զօրութեամբն ամէն եպիսկոպոսաց արժանապատուութիւնը միշտ զօրացած ու հաստատուած է, եւ թէ երեքհարիւր ութեւտասն Հարց հանգիստաւոր ու սիւնհոդական դատաստանին զօրութեամբն իր ամենէն հին պատիւն ամբողջ անարատ կը մնայ. որովհետեւ աղէկ կը յիշէին Տեառն մերոյ վճիռը„։ Ասկից ետքը Ս. Գրոց երեք տեղուանքը յառաջ բերելով սանկ կ'աւելցընէ. "Ինչու ուրեմն այսպէս Տեառն մերոյ խօսակցութիւնները յանձնէ Պետրոսի ուղղուած են։ Մէկալ երանելի ու սուրբ առաքեալք հաւասար զօրութեամբ զարդարուած չէի՞ն։ Եւ ինչ կրնայ արդեօք մէկը պատասխան տալ, բայց եթէ աս՝ թէ որպէս զի գլուխ մը հաստատուելով՝ հերձուածոյ առիթը վերնայ, որպէս զի մի եւ հոծ եւ սերտ միացեալ երեւայ Քրիստոսի մարմինը. որպէս զի մէկ ըլլայ եկեղեցին, ամենահաստատուն հաւատոյ առարկան, մէկ ըլլայ նաեւ մի միայն Տեառն մերոյ ու Փրկչին տունը՝ որուն մէջ մինակ մէկ մարմնով ու միայն մէկ բա-

1 Թղ. Գաղ. Պղակիդեայ առ Թէոդոս ի Թուղթս Ս. Լեւոնի։
2 Մանսի, Է. 1098։

ժակով մենք ամէնքնիս ալ սնանինք: Աս պատճառաւ, ինչպէս ըսի, մեր նախնիքը, եկեղեցեաց մեծարոյ հովիւները, Քրիստոսի սիրովը լցուած ըլլալով, ան աթոռէն՝ ուր որ Պետրոս հաստատած էր իրենց եպիսկոպոսութեան սկիզբը, իրենց ամրութեան ամենազօր հաստատութիւնը կը խնդրէին: Որպէս զի այսպիսի տեսութեամբ ամենուն յայտնի ըլլայ Քրիստոսի եկեղեցւոյն՝ ամենայն նկատմամբ ճշմարտապէս մէկ եւ անլուծանելի ըլլալը, որն որ միաբանութեան կապանքովը ու սիրոյ սքանչելի գործքերով խիտ առ խիտ հիւսուած ըլլալով՝ Քրիստոսի մի միայն եւ առանց կարանի զգեստն երեւայ, զորն որ նոյն իսկ խաչահանու զինուորները չհամարձակեցան պատռել,,¹:

Վեգիլիոս Քահանայապետին 538ին գրած մէկ թղթին հատակոտորին մէջ կը կարդանք. "Ոչ ոք, թէ աղէկ եւ թէ գէշ տեղեկացած ըլլայ, կրնայ տարակուսիլ Հռոմէական եկեղեցւոյն՝ ուրիշ եկեղեցեաց հիմն ու ձեւն ըլլալուն վրայ, եւ ոչ ալ ողջամիտ հաւատացեալ մը ուրիշ եկեղեցիներուն անկէ յառաջ գալը կը տգիտանայ: Վասն զի թէպէտ ամէն առաքեալներուն ընտրութիւնը հաւասար էր, այսու ամենայնիւ ուրիշներէն աւելի գերազանցութիւն մը շնորհեցաւ Պետրոսի, որուն համար ալ անիկայ Կեփաս անուանեցաւ, ինքն ըլլալով ուրիշ ամէն առաքելոց գլուխն ու սկիզբը. եւ. ան բանը՝ որ ի սկզբան գլխուն վրայ կատարուեցաւ, իր յաջորդներուն վրայ պէտք է լրանալ: Ասոր համար սուրբ Հռոմէական եկեղեցին՝ անոր արգեանց համար Տեառն ձայնովը նուիրուած եւ սրբոց Հարց ճոխութեամբը հաստատուած ըլլալով, ուրիշ ամէն եկեղեցիներուն վրայ գլխաւորութիւն ունի, եւ ինչպէս եպիսկոպոսներուն երեւելի գործողութիւնները, իրենց դատերն ու բողոքները, այսպէս նաեւ եկեղեցիներուն մեծ վէճերն ալ պէտք է որ միշտ, իբրեւ իրենց գլխոյն, անոր առջեւն ելլեն: Վասն զի ան որ ուրիշներէն վեր դրուած

1 Մանսի, Ը. 75:

է, պէտք չէ թողուլ որ իր կամացը դէմ ուրիշ մը իրեն վեր դրուի, որովհետեւ նոյն եկեղեցին՝ որ ամենէն առաջինն է, իր ճոխութիւնն այնու պայմանաւ ուրիշ եկեղեցիներուն բաշխած է, որպէս զի մասնակից ըլլան անոնք ալ իր խնամակալութեան, բայց ոչ երբեք՝ իր իշխանութեան լրութեան: Ասոր համար արդէն յայտնի գիտցուած բան է որ առաքելական աթոռին բողոքող ամէն եպիսկոպոսաց դատերը, նոյնպէս մեծագոյն դատերու յառաջացումն ալ նոյն առաքելական աթոռին վերապահուած են. եւ թէ այսպիսի բաներու մէջ ամէն բանէն աւելի իր որոշումէն կախում պիտի ունեցուի: Թէ որ երբեք եպիսկոպոս մը յանդգնի աս ընթացքին ընդդիմանալու, գիտնայ որ պատասխանատու պիտ՚որ ըլլայ նոյն սուրբ աթոռին նաեւ իր աստիճանին վտանգովը„[1]:

Բնական բան է որ կառավարող իշխանութիւն մը իր վրայ պէտք է ընդարձակ եղանակաւ խօսիլ. բայց ուրիշ եպիսկոպոսներն ալ անոր վրայ խօսելու ատեննին նոյն բանը կը յայտնեն: Եւ իրաւցընէ՝ Ս. Կեսարիոս (502ին) Առլի եպիսկոպոսը՝ Սիմմաքոս քահանայապետին շատ խնդիրներ առաջարկելէն ետքը, Հռոմէական աթոռին վրայ կը խօսի՝ իբրեւ սկզբնական աղբիւրի մը, եւ աս [illegible]՝ իբրեւ եկեղեցական օրինաց մշտնջենաւոր պահապանի վրայ: "Ինչպէս որ, կ'ըսէ, երանելի Պետրոս առաքելոյն անձէն եպիսկոպոսութիւնը սկիզբ ունեցաւ, այնպէս ալ հարկ է որ ձեր սրբութիւնը յայտնապէս յարմար կանոններով այլեւայլ եկեղեցիներու ցուցընէ թէ ինչ պէտք են պահել[2]„: Եւ Յովհաննէս Ռաւեննայի արքեպիսկոպոսը կը գրէ Ս. Գրիգորին. "Այն ամենասուրբ աթոռին վրայ՝ որն որ իր իրաւունքներն ընդհանուր եկեղեցւոյ կ'աւանդէ[3]„: Ստեփանոս Լարիսայի մետրապոլիտը 531ին Բոնիփակիոս քահանայապետէն օգնութիւն կը խնդրէ, յիշեցընելով իրեն թէ

1 Մանսի, Թ. 33:
2 Մանսի, Ը. 211:
3 Ս. Գրիգ. Թղթ. Գիրք Գ. 57:

Ո՜վ Պետրոս՝ ձեր սուրբ եկեղեցւոյն ու բոլոր աշխարհ-քիս հայրն ու վարդապետը՝ Տէրն մեր երրորդ անգամուն ըսաւ. Այդ սիրե՞ս զիս. Արածէ իմ ոչխարներս: Ամենէն յառաջ իր յանձնարարութիւնը ձեզի տուաւ, եւ ետքը ձեր միջնորդութեամբը շնորհեց աշխարհքիս ամէն սուրբ եկեղեցիներուն[1],,:

Աս հաւատքին մէջ մնած մեր Բեդան ալ կ՚ըսէ. “Ատոր համար երանելին Պետրոս առանձին եղանակաւ ընդունեցաւ երկնից արքայութեան բանալիներն ու դատողական իշխանութեան գլխաւորութիւնը, որպէս զի բոլոր աշխարհքիս հաւատացեալքն իմանան թէ որոնք որ ինչ եւ իցէ եղանակաւ իր աթոռէն ու իր ընկերութենէն կը հեռանան, չեն կրնար իրենց մեղաց կապանքէն արձակուիլ, եւ ոչ ալ երկնաւոր արքայութեան դռնէն ներս մտնել[2],,:

Ինկմարոս մեծ արքեպիսկոպոսը, եպիսկոպոսական իրաւանց այն խիստ պաշտպանը, Թ. դարուն մէջ կը գրէր. “Տէրն մեր նոյն աթոռին վրայ՝ իբրեւ իր գահուն վրայ գահերէց նստելով, կը քննէ ուրիշներուն գործքերը, եւ պաշտօնէի կերպով ամէն բան կը տնօրինէ՝ իբրեւ իր սեպհական աթոռէն,,: Աւ քիչ մը ետքը. “Ամէն բան՝ ինչ որ մենք կաթողիկեայ եպիսկոպոսքս՝ ըստ սուրբ կանոնաց եւ ըստ վճռոց առաքելական աթոռոյն Քահանայապետաց՝ կը վճռենք եւ կը դատենք, առաքելական աթոռն ու կաթողիկէ եկեղեցին ի մեզ՝ որ առաքելոց տեղը եպիսկոպոս ընտրուած ենք, ինչպէս որ կարգադրած ատեննիս՝ մէկտեղ կը կարգադրէ, նոյնպէս եւ վճռած ատեննիս՝ նոյն ինքն ալ մեզի հետ ըստ կանոնաց կը վճռէ, եւ դատաստան կտրած ատեննիս՝ ինքն ալ մեզի հետ կը դատէ: Աւ մենք՝ որ սուրբ կանոններն ու առաքելական աթոռին Քահանայապետաց վճիռներն ի գործ կը դնենք, նոյն իսկ առաքելական վիմին դատաստանին ներքեւը (որովհետեւ մենք ուրիշ բան չենք, եթէ ոչ՝ օգնիչ անոնց,

1 Մանսի, Ը. 741:

2 Ճառ ի Ս. Պետրոս:

որոնք արդարապէս կը դատեն, եւ գործադիր արդար դատաստաններու,) կը հնազանդինք Հոգւոյն սրբոյ՝ որն որ անոնցմով խօսեցաւ, եւ կը հնազանդինք առաքելական աթոռին՝ ուսկից որ կրօնի, եկեղեցական կարգադրութեան եւ կանոնական դատաստանի վտակը բղխեց[1]„ ։

"Նոյն ատենը (847ին) կը գրէր "Լոթարիոս կայսր առ ամենասուրբ Հայրն մեր Հոգեւոր Լեւոն, գերագոյն եւ ընդհանուր Քահանայապետ ։ Վերին տեսչութիւնն ուզեց որ առաքելական աթոռն եկեղեցեաց գլխաւորութիւնն ունենայ, որն որ երանելւոյն Պետրոսի միջնորդութեամբը՝ բովանդակ աշխարհքիս վրայ, ուր որ քրիստոնէական կրօնը կը տարածի, գլուխ եւ հիմն է սրբութեան. որպէս զի ինչ եւ իցէ դատի, խնդրոյ եւ գործառնութեան մէջ որ եկեղեցւոյ պիտոյքը պահանջելու ըլլայ, ամէնքն անոր դիմեն՝ իբրեւ կրօնի դրօշ եւ արդարութեան աղբիւր[2]„ ։

Վերջապէս Գրիգոր Դ. Քահանայապետը 830ին ամէն եպիսկոպոսներուն ասանկ կը խօսի. "Մենք ալ մեր հրամաններուն մէջ նոր բան մը չենք հրամայեր, հապա կը հաստատենք ան բաները՝ որոնք ամենէն յառաջ մեզի շնորհուեցան ։ Վասն զի եւ ոչ մէկը կը տարակուսի թէ ոչ միայն ամէն եպիսկոպոսական խնդիրները, այլ նաեւ ամէն կրօնական նիւթերը՝ առաքելական աթոռին՝ իբրեւ ամէն եկեղեցիներուն գլխոյն առջեւը պիտ՚որ ելլեն, եւ իրենց կարգաւորութիւնը պիտ՚որ ընդունին անկից՝ ուստի որ սկիզբն առած են, որպէս զի օրինադրութեան գլուխը զանց առնուած չերեւայ ։ Եւ անոր ճոխութեան հաստատութիւնը պարտաւոր են յարգելու ամէն եպիսկոպոսունք՝ որոնք չեն ուզեր բաժնուիլ առաքելական վէմին ամրութենէն, որուն վրայ Քրիստոս ընդհանուր եկեղեցին կանգնեց[3]„ ։

1 Թովմասինի, Հրահանգք եկեղեցւոյ, Հատ. Ա. Գիրք Ա. Գլ. 5 ։

2 Մանսի, ԺԴ. 884 ։

3 Մանսի, ԺԴ. 517 ։

Այս հոսանքը՝ հին բարեկարգութեան եղծանելէն, Արեւելից բաժանումն ըլլալէն եւ սուտ վճռականներուն հրատարակուելէն յառաջ՝ աս վկայութիւններուն շարքը կը գոցեմ ուրիշ երկու վկայութիւններով՝ որոնք առջիններէն չորս դար ետքն են, եւ երկու մեծահռչակ Դպրոցական վարդապետներէն առնուած են, որոնք աս նիւթին, ինչպէս նաեւ ուրիշ շատ նիւթերու մէջ, եկեղեցւոյ առջի դարերէն ի վեր լի եւ բովանդակ զօրութիւն ունեցող մէկ քանի սկզբունքները՝ իրենց պայծառ լուսաւորութեան մէջ դրին։ “Նոյն աս դաւանութիւնը, որն որ Սուրբ Օգոստինոսին քով ընդ աղօտ է, բացայայտ եւ պայծառ է Ս. Թովմասին քով, որուն հաւատքը՝ զմիտքն իբրեւ աղախին կը գործածէ, որպէս զի մեկնէ ինչ որ նոյն հաւատքն անմիջական տեսութեամբ երկուքին մէջն ալ տեսաւ։ Արդ նոյն Ս. Թովմաս այսպէս կը գրէ։

“Ասկից յայտնի է որ հաւատացեալ ժողովուրդը կառավարող գերագոյն իշխանութիւնը՝ եպիսկոպոսական արժանապատուութեան կը վերաբերի։

1. “Որովհետեւ յայտնի է որ թէպէտ ժողովուրդները կը զանազանուին զանազան թեմերով ու քաղաքներով, այսու ամենայնիւ՝ ինչպէս եկեղեցին մէկ է, այսպէս ալ մէկ քրիստոնեայ ժողովուրդ պէտք է ըլլալ։ Ուրեմն ինչպէս մէկ թեմի մը հոգեւոր ժողովրդեան՝ մէկ եպիսկոպոս կը խնդրուի, որ բոլոր ան ժողովրդեան գլուխն ըլլայ, այսպէս ալ բովանդակ քրիստոնեայ ժողովրդեան մէջ պէտք է որ բովանդակ եկեղեցւոյ մէկ գլուխ մ'ըլլայ։

2. “Նոյնպէս եկեղեցւոյ միութեան հարկաւոր է որ ամէն հաւատացեալք հաւատոյ մէջ միաբան ըլլան։ Բայց շատ անգամ կը պատահի որ հաւատոյ վերաբերեալ բաներու մէջ խնդիրներ կ'ելլեն, եւ եկեղեցին կը բաժնուէր կարծեաց զանազանութեամբ՝ եթէ մէկու մը վճռովը միութեան մէջ պահուելու չըլլար։ Ուրեմն եկեղեցւոյ միութիւնը պահուելու համար՝ հարկ է մէկը

գտնուին՝ որ բովանդակ եկեղեցւոյն գահերէցն ըլլայ։ Իսկ դարձեալ գիտենք որ Քրիստոս հարկաւոր բաներէն չզլացաւ իր եկեղեցին, զորն որ սիրեց եւ որուն համար արիւնը թափեց, ուր որ (Հրէից) Ժողովրդեացին համար ըսաւ Աստուած. «Զի՞նչ ինչ առնել էր այգւոյ իմում, եւ ես ոչ արարի նմա»։ (Ես. Ե. 4։) Ուրեմն տարակուսելու բան չէ՝ որ Քրիստոսի կարգաւորութեամբ մինակ մէկը եկեղեցւոյ վրայ գլխաւոր եղած է։

3. «Դարձեալ ոչ ոք կրնայ տարակուսիլ եկեղեցւոյ կառավարութեան աղէկ կանոնաւորուած ըլլալուն վրայ. վասն զի եղած է Անոր կարգադրութեամբը՝ որով թագաւորք կը թագաւորեն եւ հզօրք արդարութեան օրէնք կը դնեն. (Առակ. Ը. 15.) արդ՝ կառավարութեանց մէջէն ամենէն աղէկն ան է՝ որուն մէջ բազմութիւնը մէկէ մը մինակ կը կառավարուի, եւ ասիկա յայտնապէս կ՚երեւայ կառավարութեան վախճանէն՝ որ է խաղաղութիւն. եւ թէ նոյն իսկ հպատակաց խաղաղութիւնն ու միութիւնը՝ կառավարչի մը նպատակն է։ Բայց միութեան՝ մինակ մէկը շատ աւելի յարմար պատճառ է՝ քան թէ բազմութիւնը։ Յայտնի է ուրեմն որ եկեղեցւոյ կառավարութիւնն այնպէս տրամադրուած է, որ միայն մէկը բովանդակ եկեղեցւոյ գահերէցն ըլլայ։

4. «Աւելի եւս. զինուորեալ եկեղեցին՝ յաղթանակող եկեղեցիէն նմանութեամբ յառաջ կու գայ, ուստի եւ Ս. Յովհաննէս Յայտնութեան մէջ տեսաւ զԵրուսաղէմ, որ երկինքէն վար կ՚իջնար. եւ Մովսէսի ալ ըսուեցաւ որ ամէն բան լերան վրայ իրեն ցուցուած օրինակին համաձայն շինէ։ Արդ՝ յաղթանակող եկեղեցւոյն վրայ միայն մէկը գահերէց է, որն որ նաեւ բոլոր տիեզերաց գահերէցն է, այս ինքն՝ Աստուած. ինչու որ Յայտնութեան մէջ ալ կ՚ըսէ. «Անոնք անոր ժողովուրդն ըլլան, եւ ինքն ալ անոնց Աստուած»։ (Յայտ. ԻԱ. 3։) Ապա ուրեմն նաեւ զինուորեալ եկեղեցւոյ մէջ մէկը միայն կայ, որ ամենուն գահերէցն է։

Ասոր համար է որ Ովսէէի (Ա. 11.) մէջ կը գրուցէ. "Ժողվին Յուդայի որդիքը եւ Իսրայէլի որդիքը մէկտեղ, եւ դնեն իրենց իշխանութիւն մը (բառ առ. գլուխ մը)". եւ Տէրն ալ կ՚ըսէ. (Յովհ. Ժ. 16.) "Ըլլայ մէկ հօտ եւ մէկ հովիւ":

"Թէ որ մէկն ըսելու ըլլայ թէ մէկ գլուխն ու մէկ հովիւը՝ Քրիստոսն է, որն որ մի միայն փեսայն է միոյ եկեղեցւոյ, ասով բաւական պատասխան տուած չ՚ըլլար: Թէպէտ յայտնի բան է որ ինք Քրիստոս է, որ եկեղեցւոյ ամէն խորհուրդները կը կատարէ, վասն զի ինքն է՝ որ կը մկրտէ, ինքն է՝ որ մեղքերը կը թողու, ինքն է ճշմարիտ քահանան՝ որ ինք զինքը խաչին սեղանոյն վրայ զոհեց, եւ իրեն զօրութեամբն օր ըստ օրէ խորաններու վրայ իր մարմինը կը քահանայագործուի. ի վերայ այսր ամենայնի ինք որովհետեւ մարմնով ամէն հաւատացելոց ներկայ պիտի չմնար, ընտրեց պաշտօնեաներ՝ որ անոնց ձեռքով վերոյգրեալ խորհուրդները հաւատացելոց մատակարարէ, ինչպէս վերը գրուցեցինք: Նոյն պատճառաւ ուրեմն (որ իր մարմնաւոր տեսանելի ներկայութիւնը եկեղեցիէն պիտի բառնար) հարկ էր յանձնել մէկու մը՝ որ իր տեղն ընդհանուր եկեղեցւոյ հոգաբարձութիւնը վրան առնէր: Ասոր համար էր՝ որ համբարձմանէն առաջ ըսաւ Պետրոսի. "Արածէ իմ ոչխարներս". (Յովհ. ԻԱ. 17.) եւ չարչարանքէն ալ յառաջ՝ թէ "Դու դուն երբեմն դառնաս ու հաստատես քու եղբարքդ". (Ղուկ. ԻԲ. 32.) եւ մինակ իրեն խոստացաւ. "Դու քեզի պիտի տամ երկնից արքայութեան փականքը". որ ցուցուի թէ բանալիներուն իշխանութիւնը իրեն ձեռքովն ուրիշներուն ալ պիտի տարածի, որպէս զի եկեղեցւոյ միութիւնը պահուի:

"Դու ոչ ալ կրնայ ըսուիլ որ թէպէտ աս աւագութիւնը տուաւ Պետրոսի, այսու ամենայնիւ անկից ուրիշի չհաղորդուիր: Վասն զի յայտնապէս կ՚երեւայ թէ Քրիստոս իր եկեղեցին անանկ հիմնադրեց, որ մինչեւ ի վախճան ժամանակի պիտի տեւէ՝ ինչպէս կը գրու-

ցէ Եսայի. “Դաւթի աթոռը նստի, եւ անոր թագաւորութիւնը յաջողցընէ, եւ զօրացընէ զանիկա իրաւամբ ու արդարութեամբ, ասկից ետքը եւ յաւիտեանս ժամանակաց: (Եսա. Թ. 7:) Արդ՝ յայտնի է որ կենդանի եղողներն իրենց պաշտօնին մէջ անանկ դրաւ, որ իրենց իշխանութիւնը ետքէն եկողներուն ալ անցնի, յօգուտ եկեղեցւոյ մինչեւ աշխարհքիս վերջը, մանաւանդ որ ինքն ալ Մատթէոսի աւետարանին մէջ (ԻԸ. 20.) կ'ըսէ. “Ահաւասիկ ես ձեզի հետ եմ ամէն օր՝ մինչեւ աշխարհքիս կատարածը”:

“Ասով ահաւասիկ կը մերժուի ոմանց յանդուգն մոլորութիւնը, որոնք Պետրոսի հնազանդութենէն ու հպատակութենէն իրենք զիրենք դուրս հանելու կը ջանան, անոր յաջորդն եղող Հռոմայ Քահանայապետոն ընդհանուր եկեղեցւոյ հովիւ չընդունելով”[1]:

Ա. Բոնավենդուրա ասոնց վրայ կ'աւելցընէ ինչ որ հարկաւոր է. “Տէրն մեր Յիսուս Քրիստոս ամէն բանի արարիչն [illegible] կառավարը, երկինք համբառնալու ըլլալով՝ յանձնեց իր եկեղեցին առաքեալներուն, որ կառավարեն ու տարածեն, եւ ամենէն աւելի մասնաւորապէս յանձնեց Պետրոս առաքելոյն՝ բովանդակ հաւատացելոց հօտը առանձինն նշանակելով. “Արածէ իմ ոչխարներս”: Բայց որպէս զի ընդհանուր եկեղեցւոյ կառավարութիւնն աւելի կարգաւ յառաջանայ, սուրբ առաքեալք՝ զանիկայ պատրիարքութեան, նախագահութեան, արքեպիսկոպոսութեան, եպիսկոպոսութեան, ժողովրդապետութեան եւ ուրիշ կանոնական բաժանմունքներու բաժնեցին. այնպէս որ անհնարին ըլլալով մէկու մը կամ մէկ քանիներու ձեռքովն ըստ պատշաճի ամէն հաւատացելոց կարօտութիւնները լեցընել, իրենց հոգեւոր փրկութեան ամէն հարկաւոր եղած բաներուն մէջ աս հոգացողութեան մասնակից ըլլալու ուրիշներն ալ կանչեցին, իրենց տրուած սահմանին մէջ՝ յօգուտ հոգւոց եւ հովուական խնամակալութեան

1 Ա. Թովմ. Բովանդակութիւն, Ընդդ. Հեթանոսաց, Դ. 76:

լրութեան համաձայն։ Նաեւ չափ մը սահմանուեցաւ առնցմէ ամէն մէկուն իշխանութեան, մնալով իշխանութեան լրութիւնը Հռոմէական եկեղեցւոյ առաքելական աթոռին վրայ, որուն մասնաւորապէս գահերէց է Պետրոս առաքեալ՝ առաքելոց իշխանը, ուր որ ինք իր յաջորդներուն ալ հաւասար իշխանութիւնը թողուց։

“Աս իշխանութեան լրութիւնը եռապատիկ է, այս ինքն թէ՝ Գերագոյն Քահանայապետն ինք միայն առանձինն ունի իշխանութեան այն լրութիւնը՝ զորն որ Քրիստոս եկեղեցւոյ շնորհեց․ թէ բոլոր եկեղեցիներուն վրայ՝ ուր որ գտնուելու ըլլան, իր սեպհական Հռոմէական աթոռին պէս հաւասար ամենուն վրայ ալ իշխանութիւն ունի․ եւ թէ իրմէ կը հոսէ բովանդակ եկեղեցւոյն մէջ ամէն ստորակարգեալներուն վրայ ինչ եւ իցէ իշխանութիւն, որչափ ամէն մէկուն պատշաճ է աս իշխանութեան մաս ունենալ, նոյն եղանակաւ՝ ինչպէս որ յերկինս ամէն բարեաց մի միակ աղբիւրէն՝ Յիսուս Քրիստոսէն՝ ամէն սրբոց վրայ փառքը կը հեղու, որչափ որ ամէն մէկն այլեւայլ եղանակաւ իրեն հաղորդակից կ'ըլլան իրենց ընդունակութեան համաձայն„[1]։

Աս ամէն մինչեւ հիմակ բացածներնուս էութիւնը նոյն բանն է, որն որ դարէ դար աւելի եւս յայտնապէս կ'երեւայ, այս ինքն թէ եկեղեցւոյ միութիւնն ու երեւելիութիւնը կը կախուի սրբազան Քահանայապետէն, եւ զինքը մերժողները ոչ Մարմնոյ եւ ոչ Հոգւոյ միութիւնը կը պահեն։ Եւ մեծ զօրութիւն կ'աւելցընէ մեր նախընթաց ձեռնարկութեան վրայ յիշեցընելը՝ որ հակառակ կողմանէ եւ ոչ մէկ բանաւոր պատճառ մը կրնայ մտաց առջեւը դրուիլ, որ կարող ըլլայ եկեղեցւոյ մէջ թէ առաքելութեան եւ թէ իրաւաբանութեան սկզբան ու շարունակութեան վրայ յագեցուցիչ պատասխան մը տալ։ Փուճ տեղ կը փնտռէք ասոր հակառակ կառավարութեան կերպ մը, որն որ միանգամայն

1 Ս․ Բոնաւենդ․ Թէ վասն էր եղբ․ Կրս․ քարոզէ․ Է․ 366։

հաստատուն ըլլալով՝ կալող ըլլայ փորձի տակ ամուր կենալ եւ անիշխանութեան ու վրդովման մէջ չիյնալ։ Այս ի՞նչ է ասիկայ՝ բայց եթէ ըսել թէ մարմին մը գլուխ կը խնդրէ, եւ մէկ տեսանելի մարմին մը տեսանելի գլուխ մը կ'ուզէ։

Դ. Գանք հիմայ չորրորդ գլխոյն, այս ինքն թէ քահանայապետին՝ Արեւելից վրայ ունեցած գլխաւորութիւնը՝ նոյն իսկ Արեւելից գլխաւոր կառավարներն ու ժողովները յայտնապէս կը խոստովանէին հերձուածէն առաջ։ Այս թէպէտ ասիկա կատարելապէս բովանդակած է առաջին եւ երկրորդ գլխոյն մէջ, այսու ամենայնիւ հոս ալ քիչ՝ բայց բռնադատիչ փաստեր կ'աւելցընեմ։ Այս իրաւցընէ 519ին երեսունուեօթը տարուան հերձուածը վերջացաւ, որուն նեցուկ եղած էր Կոստանդնուպոլսոյ Ակակիոս պատրիարքին ակարութիւնը, որն որ Յունաց կայսեր ամենայն քաղաքական իշխանութիւնն իրեն օգնական առնելով՝ հերետիկոսաց հետ հաղորդակցութիւն ըրած, Աղեքսանդրիայի ու Անտիոքայ պատրիարքներուն յաջորդութեան մէջ միջամուխ եղած, եւ արեւելեան եկեղեցւոյն անթիւ անհամար վնասներ պատճառած էր։ Զենոն կայսրն Ակակիոսի թելադրութեամբը՝ Հենոտիկոն կամ Միաւորիչ անուամբ հրովարտակ մը հրատարակած էր, որն որ ամենուն կամքին կը թողուր իրեն աղէկ երեւցածին պէս ընդունիլ կամ մերժել Քաղկեդոնի ժողովոյն հաւատքը, եւ բոլոր կայսրութեան եպիսկոպոսները նոյնին ստորագրելու կը ստիպէր։ Փելիքս քահանայապետը զԱկակիոս իր չար գործոցը համար հանդիսապէս եպիսկոպոսական աստիճանէն մերժեց ու բանադրեց. բայց կայսրը զինքը պաշտպանեց ու պահեց Կոստանդնուպոլսոյ աթոռին վրայ եւ ուրիշ պատրիարքներ ալ իրեն յաջորդեցին։ Այսպէս բոլոր Արեւելք բաժնուեցաւ Արեւմուտքէն, դուրս առնելով շատերը՝ որոնք ամէն տեղ ամէն կողմ բոլորովին կապուած էին Հռոմէական հաղորդակցութեան հետ՝ բանի տեղ չդնելով ու ար-

հանդուրժելով հալածանքը։ Վերջապէս 519ին խաղաղութիւնը նորէն հաստատուեցաւ եւ եղանակաւ, որ Յովհաննէս Կոստանդնուպոլսոյ պատրիարքն ու բոլոր իրեն հպատակ եպիսկոպոսները պարտաւորեցան ստորագրել Որմիզդ քահանայապետէն տրուած դաւանութեան մը, որով ամէն բանի մէջ հնազանդութիւն կը դաւանէին Հռովմէական աթոռոյն, եւ այն աթոռոյն վրայ՝ աստուածային սահմանադրութեամբ հաստատուած գլխաւորութիւն մը կը ճանչնային, որուն հետ անբաժանելի է հաւատոյ մշտնջենաւոր մաքրութիւն ու իրեն հետ հաղորդակցութեան հարկաւորութիւնը, եւ յանուանէ ալ կը նզովէին իրենց Ակակիոս պատրիարքն ու բոլոր անոր ետեւէն գացողները։ Ես արդէն նոյն դաւանութեան ձեւը յառաջ բերած եմ Ութերորդ ժողովոյն գործոց պատրաստութեան մէջ, որ ժողովքին մէջն որ նորէն գործածուեցաւ։ Յովհաննէս պատրիարքը եպիսկոպոսութեան մի միայն աթոռին քարոզը կ՚ըլլար՝ երբոր կ՚ըսէր. “Կը յայտնեմ որ Պետրոս առաքելոյն եւ կայսերական քաղաքին (Կոստանդնուպոլսոյ) հաւատքը նոյն հաւատքն է, ապագային համար կը խոստանամ որ կաթուղիկէ եկեղեցւոյն հաղորդութենէ բաժնուողներուն, այսինքն՝ ամէն բանի մէջ առաքելական աթոռին հետ չմիաբանողներուն անունները պիտի չյիշուին սուրբ խորհրդոց մէջ„[1]։ Արդ կը հարցընեմ, կրնա՞յ արդեօք ասկից աւելի կատարեալ հպատակութիւն մ՚ըլլալ։

Յուստինիանոս կայսրը 536ին նոյն դաւանութեան ձեւին ստորագրեց եւ ընծայեց Ագաթոն Քահանայապետին, որպէս զի վերցուի իր վրայէն կեղտ անունը թէ ինք նպաստաւոր էր Կոստանդնուպոլսոյ Անթիմոս պատրիարքին հերետիկոսութեան, զորն որ նոյն Քահանայապետն իրաւամբ վար առած էր։ Նա կ՚ըսէ. “Ասոր համար ամէն բանի մէջ առաքելական աթոռոյն հետեւելով՝ կը դաւանինք ինչ որ նոյն աթոռը հրամայած է։

1 Մանսի, Ը. 451։

Եւ կը խոստովանինք որ այս ամենայն առանց նուա-զութեան պիտի պահուի, եւ կը հրամայենք որ ամէն եպիսկոպոսք սա դաւանութեան համաձայն գործեն. պատրիարքները հնազանդին ձեր սրբութեան, մետրա-պոլիտք՝ պատրիարքներուն, միացածներն ալ իրենց մե-տրապոլիտին, որպէս զի ամէն բանի մէջ մեր սուրբ կա-թողիկէ եկեղեցին իր ամրութեան մէջ պահուի,,[1]: Յուստինիանոս կայսրը կրնա՞ր արդեօք աւելի եւս յայ-տի եղանակաւ մը իր դաւանութիւնը տալ, այս ինքն թէ առաքելական աթոռը հիմն է կաթողիկէ հաւատոյ, որն որ յայտնապէս կը զգուշի նոյն դաւանութեան ձեւին սկիզբը:

Ս. Մարտինոս Քահանայապետը 650ին ամենե-ըր իր տիեզերական իրաւաբանական իշխանութիւնն ի գործ կը դնէր, երբոր իրեն փոխանորդ կ'որոշէր Արե-ւելքի մէջ Յովհաննէս Փիլադելփիայի եպիսկոպոսը. Որպէս զի կարող ըլլաս, կ'ըսէր, կարգի դնել այն բա-ները՝ որոնք կարօտ են ուղղութեան, եւ եպիսկոպոս, քահանայ ու սարկաւագ սահմանես անոնց վրայ՝ որոնք Երուսաղեմի ու Անտիոքայ աթոռներուն հպատակ են, պարտաւորելով զքեզ զօրութեամբ առաքելական իշ-խութեան՝ որ տրուած է մեզի Աստուծմէ յանձն սըր-բոյն Պետրոսի առաքելոց իշխանին, որ ամենայն եղա-նակաւ ասիկայ յառաջ տանիս, վասն զի ժամանակիս հարկն ու ազգաց ճնշումը կը ստիպէ,,[2]: Գր. Գըլփոյն մէջ գրածներս ալ կ'արժեն սա իշխանութեան գործածու-թիւնն արդարացընելու համար:

Բաց ասկից՝ Գեղասիոս Քահանայապետը կը հարցընէ թէ ինչո՞ւ Ակակիոս Կոստանդնուպոլսոյ պա-տրիարքը չփութար հարկաւոր տեղեկութիւնները տալու առաքելական աթոռին, որմէ որ ան կողմերուն (Արեւելքին ընդհանրապէս) հոգն իրեն յանձնուած ըլլալը գիտէր[3]:

1 Մանսի, Ը. 857:
2 Մանսի, Ժ. 806:
3 Մանսի, Ը. 61:

լութեան համաձայն։ Նաեւ չափ մը սահմանուեցաւ առնցմէ ամէն մէկուն իշխանութեան, մնալով իշխանութեան լութիւնը Հռոմէական եկեղեցւոյ առաքելական աթոռին վրայ, որուն մասնաւորապէս գահերէց է Պետրոս առաքեալ՝ առաքելոց իշխանը, ուր որ ինք իր յաջորդներուն ալ հաւասար իշխանութիւնը թողուց։

«Սա իշխանութեան լութիւնը եռապատիկ է, այս ինքն թէ՝ Գերագոյն Քահանայապետն ինք միայն առանձինն ունի իշխանութեան այն լութիւնը՝ զորն որ Քրիստոս եկեղեցւոյ շնորհեց. թէ բոլոր եկեղեցիներուն վրայ՝ ուր որ գտնուելու ըլլան, իր սեպհական Հռոմէական աթոռին պէս հաւասար ամենուն վրայ ալ իշխանութիւն ունի. եւ թէ իրմէ կը հոսէ բովանդակ եկեղեցւոյն մէջ ամէն ստորակարգեալներուն վրայ ինչ եւ իցէ իշխանութիւն, որչափ ամէն մէկուն պատշաճ է աս իշխանութեան մաս ունենալ, նոյն եղանակաւ՝ ինչպէս որ յերկինս ամէն բարեաց մի միակ աղբիւրէն՝ Յիսուս Քրիստոսէն՝ ամէն սրբոց վրայ փառքը կը հեղու, որչափ որ ամէն մէկն այլեւայլ եղանակաւ իրեն հաղորդակից կ՚ըլլան իրենց ընդունակութեան համաձայն»[1]։

Սա ամէն մինչեւ հիմակ ըսածներնուս էութիւնը նոյն բանն է, որն որ դարէ դար աւելի եւս յայտնապէս կ՚երեւայ, այս ինքն թէ եկեղեցւոյ միութիւնն ու երեւելիութիւնը կը կախուի սրբազան Քահանայապետէն, եւ զինքը մերժողները ոչ Մարմնոյ եւ ոչ Հոգւոյ միութիւնը կը պահեն։ Ու մեծ զօրութիւն կ՚աւելցընէ մեր նախընթաց ձեռնարկութեան վրայ յիշեցընելն՝ որ հակառակ կողմանէ եւ ոչ մէկ բանաւոր պատճառ մը կրնայ մտաց առջեւը դրուիլ, որ կարող ըլլայ եկեղեցւոյ մէջ թէ առաքելութեան եւ թէ իրաւաբանութեան սկզբան ու շարունակութեան վրայ յագեցուցիչ պատասխան մը տալ։ Փուճ տեղ կը փնտռէք ասոր հակառակ կառավարութեան կերպ մը, որն որ միանգամայն

1 Ս. Բոնաւենդ. Թէ վասն էր եղբ. Կրտ. քարոզէ. Է. 366։

հաստատուն ըլլալով՝ կարող ըլլայ փորձի տակ ամուր կենալ եւ անիշխանութեան ու վրդովման մէջ չիյնայ։ Ու ի՞նչ է ասիկայ՝ բայց եթէ ըսել թէ մարմին մը գլուխ կը խնդրէ, եւ մէկ տեսանելի մարմին մը տեսանելի գլուխ մը կ'ուզէ։

Դ. Գանք հիմայ չորրորդ գլխոյն, այս ինքն թէ քահանայապետին՝ Արեւելից վրայ ունեցած գլխաւորութիւնը՝ նոյն իսկ Արեւելից գլխաւոր կառավարներն ու ժողովները յայտնապէս կը խոստովանէին հերձուածէն առաջ։ Ու թէպէտ ասիկա կատարելապէս բովանդակած է առաջին եւ երկրորդ գլխոյն մէջ, այսու ամենայնիւ հոս ալ քիչ՝ բայց բռնադատիչ փաստեր կ'աւելցընեմ։ Ու իրաւցընէ 519ին երեսունհնգեօթը տարուան հերձուածը վերջացաւ, որուն նեցուկ եղած էր Կոստանդնուպոլսոյ Ակակիոս պատրիարքին տկարութիւնը, որն որ Յունաց կայսեր ամենայն քաղաքական իշխանութիւնն իրեն օգնական առնելով՝ հերետիկոսաց հետ հաղորդակցութիւն ըրած, Աղեքսանդրիայի ու Անտիոքայ պատրիարքներուն յաջորդութեան մէջ միջամուխ եղած, եւ արեւելեան եկեղեցւոյն անթիւ անհամար վնասներ պատճառած էր։ Զենոն կայսրն Ակակիոսի թելադրութեամբը՝ Հենոտիկոն կամ Միաւորիչ անուամբ հրովարտակ մը հրատարակած էր, որն որ ամենուն կամքին կը թողուր իրեն աղէկ երեւցածին պէս ընդունիլ կամ մերժել Քաղկեդոնի ժողովոյն հաւատքը, եւ բոլոր կայսրութեան եպիսկոպոսները նոյնին ստորագրելու կը ստիպէր։ Փելիքս քահանայապետը զԱկակիոս իր չար գործոյը համար հանդիսապէս եպիսկոպոսական աստիճանէն մերժեց ու բանադրեց. բայց կայսրը զինքը պաշտպանեց ու պահեց Կոստանդնուպոլսոյ աթոռին վրայ եւ ուրիշ պատրիարքներ ալ իրեն յաջորդեցին։ Այսպէս բոլոր Արեւելք բաժնուեցաւ Արեւմուտքէն, դուրս առնելով շատերը՝ որոնք ամէն տեղ ամէն կողմ բոլորովին կապուած էին Հռոմէական հաղորդակցութեան հետ՝ բանի տեղ չդնելով ու այ-

հանդարտելով հալածանքը։ Վերջապէս 519ին խաղաղութիւնը նորէն հաստատուեցաւ սա եղանակաւ, որ Յովհաննէս Կոստանդնուպոլսոյ պատրիարքն ու բոլոր իրեն հպատակ եպիսկոպոսները պարտաւորեցան ստորագրել Որմիզդ քահանայապետէն տրուած դաւանութեան մը, որով ամէն բանի մէջ հնազանդութիւն կը դաւանէին Հռոմէական աթոռոյն, եւ այն աթոռոյն վրայ՝ աստուածային սահմանադրութեամբ հաստատուած գլխաւորութիւն մը կը ճանչնային, որուն հետ անբաժանելի է հաւատոյ մշտնջենաւոր մաքրութիւն ու իրեն հետ հաղորդակցութեան հարկաւորութիւնը; եւ յանուանէ ալ կը նզովէին իրենց Ակակիոս պատրիարքն ու բոլոր անոր ետեւէն գացողները։ Նա արդէն նոյն դաւանութեան ձեւը յառաջ բերած էր Ութերորդ ժողովոյն գործոց պատրաստութեան մէջ, որ ժողովքին մէջն որ նորէն գործածուեցաւ։ Յովհաննէս պատրիարքը եպիսկոպոսութեան մի միայն աթոռին քաղաքը կ'ըլլար՝ երբոր կ'ըսէր. "Կը յայտնեմ որ Պետրոս առաքելոյն եւ կայսերական քաղաքին (Կոստանդնուպոլսոյ) հաւատքը նոյն հաւատքն է, ապագային համար կը խոստանամ որ կաթուղիկէ եկեղեցւոյն հաղորդութենէ բաժնուողներուն, այսինքն՝ ամէն բանի մէջ առաքելական աթոռին հետ չմիաբանողներուն անունները պիտի չյիշուին սուրբ խորհրդոց մէջ"[1]։ Արդ կը հարցընեմ, կրնա՞յ արդեօք ասկից աւելի կատարեալ հպատակութիւն մ'ըլլալ։

Յուստինիանոս կայսրը 536ին նոյն դաւանութեան ձեւին ստորագրեց եւ ընծայեց Ագաթոն Քահանայապետին, որպէս զի վերցուի իր վրայէն կեղտ անունը թէ ինք նպաստաւոր էր Կոստանդնուպոլսոյ Անթիմոս պատրիարքին հերետիկոսութեան, զորն որ նոյն Քահանայապետն իրաւամբ վար առած էր։ Նա կ'ըսէ. "Ասոր համար ամէն բանի մէջ առաքելական աթոռոյն հետեւելով՝ կը դաւանինք ինչ որ նոյն աթոռը հրամայած է։

1 Մանսի, Ը. 451։

Նաեւ կը խոստովանինք որ այս ամենայն առանց նուազութեան պիտի պատահէր, եւ կը հրամայենք որ ամէն եպիսկոպոսք աս դաւանութեան համաձայն գործեն. պատրիարքները հնազանդին ձեր սրբութեան. մետրապոլիտք՝ պատրիարքներուն, մնացածներն ալ իրենց մետրապոլտին, որպէս զի ամէն բանի մէջ մեր սուրբ կաթուղիկէ եկեղեցին իր ամբողջութեան մէջ պահուի,,¹։ Յուստինիանոս կայսրը կրնա՞ր արդեօք աւելի եւս յայտնի եղանակաւ մը իր դաւանութիւնը տալ. այս ինքն թէ առաքելական աթոռը հիմն է կաթողիկէ հաւատոյ, որն որ յայտնապէս կը զգացուի նոյն դաւանութեան ձեւին սկիզբը։

Ս. Մարտինոս Քահանայապետը 650ին առանձնաբը իր տիեզերական իրաւաբանական իշխանութիւնը գործ կը դնէր, երբոր իրեն փոխանորդ կ'որոշէր Արեւելքի մէջ Յովհաննէս Փիլադելփիայի եպիսկոպոսը. "Որպէս զի կարող ըլլաս, կ'ըսէր, կարգի դնել ան բաները՝ որոնք կարօտ են ուղղութեան, եւ եպիսկոպոս, քահանայ ու սարկաւագ սահմանես անոնց վրայ՝ որոնք Երուսաղեմի ու Անտիոքայ աթոռներուն հպատակ են, պարտաւորելով զքեզ զօրութեամբ առաքելական ծուխութեան՝ որ տրուած է մեզի Աստուծմէ յանձն սրբոբոյն Պետրոսի առաքելոց իշխանին, որ ամենայն եղանակաւ ասիկայ յառաջ տանիս, վասն զի ժամանակիս հարկն ու ազգաց ճնշումը կը ստիպէ,,²։ Գ. Գլխոյն մէջ դրածներս ալ կ'արժեն աս իշխանութեան գործածութիւնն արդարացընելու համար։

Բաց ասկից՝ Գելասիոս Քահանայապետը կը հարցընէ թէ ինչո՞ւ Ակակիոս Կոստանդնուպոլսոյ պատրիարքը չիփութար հարկաւոր տեղեկութիւնները տալու առաքելական աթոռին, որմէ որ ան կողմերուն (Արեւելքին ընդհանրապէս) հոգն իրեն յանձնուած ըլլալը գիտէր³։

1 Մանսի, Ը. 857։
2 Մանսի, Ժ. 806։
3 Մանսի, Ը. 61։

Ահաւասիկ մէկ քանի դէպքեր ալ՝ որոնք կը ցուցնեն թէ արեւելեան պատրիարքները Հռոմէական աթոռէն կը հաստատուէին։

Սեղեստինոս Քահանայապետը կը հաստատէ զՄաքսիմիանոս Կոստանդնուպոլսոյ աթոռին վրայ, ուսկից որ մերժուած էր Նեստոր 432ին եւ ասանկ կը գրէ. "Ձեռքերնիդ առէք ան նաւին ղեկը՝ որ ձեզի աղէկ ծանօթ է. կառավարեցէք զանիկայ, ինչպէս որ ձեր նախորդներէն սորված ըլլանիդ գիտենք"[1]։ Նոյն Քահանայապետն Աղեքսանդրիայի, Անտիոքայ եւ Թեսաղոնիկէի եպիսկոպոսներուն գրած ըլլալով՝ եպիսկոպոսներուն փոխադրութիւնը հաստատելով, բաւական որ ընդհանուր բարւոյն համար ըլլայ, Պրոկղ՝ Կիւզիկոնէն փոխադրուեցաւ Կոստանդնուպոլսոյ պատրիարքական աթոռը[2]։

Սիմպղիկիոս Քահանայապետը 482ին Կոստանդնուպոլսոյ Ակակիոս պատրիարքին գրած մէկ թղթին մէջ կ'ըսէ թէ ուրիշ բան չխնդրուէր Աղեքսանդրիայի նոր պատրիարքէ մը՝ բայց եթէ որ "ընդունի այն կարգաւորութիւնը՝ զորն որ ինք իր աթոռին մէջ կը բաղձայ մեր առաքելական ճոխութեան հաւանութեամբը"[3]։ Եւ Անտիոքայ պատրիարքին համար կ'ըսէ. "Կաղենդիոնի մեր եղբօրն ու ընկերակցին եպիսկոպոսութիւնն առաքելական աթոռին գոգն ընդունելով՝ այնպիսի քաղաքի մը առաջնորդը մասնակից կ'ընենք մեր ընկերակցութեան, մեր հաղորդութեան ժողովներնուս մէջ՝ Քրիստոսի մեր Աստուծոյ շնորհքովը"։

Մաքսիմոս Անտիոքայ պատրիարքը հակառակ կանոնաց ընտրուած էր Դիոսկորոսէն 449ին Եփեսոսի աւազակական ժողովոյն մէջ. բայց նոյն Մաքսիմոս իր աթոռին վրայ նորէն հաստատուեցաւ Ս. Լեւոնէն Քաղկեդոնի ժողովքին մէջ. Անատոլիոս Կոստանդնու-

1 Կոստանդ. 1206։
2 Սոկրատ, Պատմ. Է. 39. 40. Թոմասինի, Հրահ. Եկեղեց. Մասն Բ. Գիրք Բ. Գլ. 61։
3 Մանսի, Է. 991. 992։

պոլսոյ արքեպիսկոպոսին ըսաւ. «Կը վճռենք որ ան չժողովքին մէջ եղածները բոլորն ալ ամենեւին արժէք մը չունենան, բայց միայն ինչ որ Անտիոքայ մեծ քաղաքին սուրբ Մաքսիմոս եպիսկոպոսին կը վերաբերի: Վասն զի Ս. Լեւոն Հռոմայ արքեպիսկոպոսը զինքն ի հաղորդութիւն ընդունելով՝ վճիռ տուաւ թէ պէտք է որ անիկայ Անտիոքայ եկեղեցին կառավարէ. աս համաձայն ես ալ համաձայնելով՝ նոյնը ես ալ կը հաստատեմ եւ ինծի հետ աս սուրբ ժողովս» [1]:

Հետեւեալը բողոքներու կը վերաբերի:

Բոնիփակիոս Ա. Քահանայապետը, 422ին, Թեսաղիայի եպիսկոպոսներուն գրելու ատեն՝ առջի դարերուն մէջ իր աթոռին ցուցուած հպատակութիւններուն դէպքերն ասանկ առջեւնին կը դնէ. «Իր վրայ շինուած ընդհանուր եկեղեցւոյն հոգատարութիւնը՝ աստուածային վճռով Պետրոս առաքելոյն հետ անբաժնելի է. աս եկեղեցին՝ ըստ վկայութեան աւետարանին՝ ինքն ալ իր վրայ հիմնուած կը ճանչնայ: Եւ աս իր աւագութիւնն ամենեւին առանց անձկութեան չէ. որովհետեւ ստոյգ է որ իրաց բովանդակութիւնն իր որոշմանէն կը կախուի: Աս բաներս իմ միտքս կը յափշտակեն կը տանին Արեւելքէն այն գաւառները՝ զորոնք մեր խնամակալութեան զօրութիւնը եղանակաւ մը աչքերնուս առջեւը կը բերէ կը ցուցընէ....: Եւ հարկը կը պարտաւորէ զմեզ օրինակներով ալ ցուցընել որ առաջին արեւելեան եկեղեցիները կարեւոր գործքերու եւ ծանր վէճերու մէջ միշտ Հռոմէական աթոռոյն խորհուրդ կը հարցընէին, եւ որչափ որ հարկը կը պահանջէր՝ անոր օգնութիւնը կը խնդրէին: Բարեյիշատակ Աթանաս եւ Պետրոս Աղեքսանդրիայի եպիսկոպոսները օգնութեան կանչեցին աս աթոռը: Եւ երբոր արդէն շատ ժամանակուընէ վեր անդադար վրդոված Անտիոքայ եկեղեցին տակն ու վրայ կ'ըլլար, նախ Մելետիոսի եւ ետքը Փլաբիանոսի ատենը, յայտնի է որ խորհուրդ կը խնդրուէր

1 Մանսի, Է. 258:

առ աւանդելական աթոռէն։ Այսու ձեռնութեամբը, շատ խօսակցութիւններէ ետքը, ամէն մարդ գիտէ որ Փլաբիանոս ընդունեցաւ հաղորդակցութեան շնորհքը, ուսկից որ միշտ զրկուած կը մնար՝ եթէ ասկից նոյն շնորհաց համար գրաւականներ խրկուած չըլլային։ Բարեպաշտական Թէոդոս կայսրը՝ Նեկտարիոսի ձեռնադրութիւնը հաստատութեան կարգ տեսնելով, որովհետեւ մեր կանոնին համաձայն չէր եղած, (դպրոց աշխարհականութենէ առնուած ըլլալով,) ծերակուտի անդամներէ ու եպիսկոպոսներէ բաղկացած պատգամաւորութիւն մը խրկեց, որ փութով խրկուի հաղորդակցութեան թուղթը, որն որ ըստ կանոնի Հռոմէական աթոռէն կը խրկուի՝ մէկու մը եպիսկոպոսութիւնը հաստատելու համար։ Ասկից քիչ մը ետքը, այսինքն իմ նախորդիս բարեյիշատակ Իննովկենտիոսի ժամանակը, արեւելեան եկեղեցիներուն հայրապետները ողբալով երանելոյն Պետրոսի հաղորդութենէն բաժնուելնուն վրայ, իրենց պատգամաւորներովը նորէն հաշտութիւն կը խնդրէին, ինչպէս որ ձեր սիրելութիւնն ալ արդէն աղէկ կը յիշէ„[1]։

Ասոր համաձայն է Սոզոմենոս յոյն պատմչին ըսածներուն հետ; թէ “Հռոմայեցւոց եպիսկոպոսը քննելով ամէն մէկուն (Ս. Աթանասի, Պօղոս Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոսին, Մարկեղոս՝ Անկիւրիոյ եւ Ասկղեպիոս՝ Գազայի եպիսկոպոսաց) դէմ եղած ամբաստանութիւնները, երբոր տեսաւ թէ ամէնքն ալ համաձայն էին Նիկիոյ ժողովքին վարդապետութեան, առաւ զերենք ի հաղորդութիւն, իբրեւ իրեն հետ միաբան։ Ու իրեն վրայ ամենուն հոգն ըլլալով, իր աթոռին աստիճանին համեմատ, ամէն մէկուն իր եկեղեցին նորէն ձեռքերնին յանձնեց„[2]։

Գրիգոր Քահանայապետը կը լսէր Կոստանդնուպոլսեցի Յովհաննէս արքային դատը, որն որ Յովհաննէս պատրիարքին վճռէն՝ Քահանայապետին բողո-

1 Կոստան. 1039։ 2 Պատմ. Գ. Գլ. 8։

քած էր․ ինք նոյն վճիռը ջնջեց, եւ զպատրիարքն ստի-պեց որ զԱբբան նորէն ընդունի[1]։

Գրեթէ 500ին Արեւելք եպիսկոպոսները Ակակիոսի հերձուածէն նեղուած տաղտկացած՝ Սիւմմաքոս Քահանայապետին օգնութիւնը կը խնդրէին, աղաչելով որ զիրենք ի հաղորդութիւն ընդունի։ Անոնք բարի հովուին առակը յիշելէն ետքը, յայտնի կ'ըսէին թէ կ'աղաչեն իրեն չէ թէ մէկ աշխարհի մը կողմանէն, այլ գրեթէ աշխարհքիս երեք մասին համար․ «Դուք, կ'ըսէին, իբրեւ ձեր որդւոցը գթած հայրը, Ակակիոս մեր հօրը պատուիրանազանցութեամբ կորսուելնիս տեսնելով, մի դանդաղիք, վասն զի դուք էք որ երանելի Պետրոսէն՝ սուրբ վարդապետէն՝ որ ըստ օրէ կը սորվիք ձեզի յանձնուած Քրիստոսի հօտն արածել, բոլոր աշխարհքիս երեսը՝ ուր որ բնակութիւն կայ, որն որ ոչ թէ բռնութեամբ՝ այլ կամօք յօժարութեամբ ի միաբանութիւն միացած է»[2]։

Քանի մը տարի ետքը նման գիրուածի մը մէջ դիմեցին Որմիզդ Քահանայապետին գրեթէ երեքհարիւր Ասորի վանահայրք, քահանայք ու սարկաւագունք, աս ձեւով․ «Առ ամենասուրբ եւ ամենաերանեալ պատրիարք ամենայն աշխարհի՝ Որմիզդ, որ Պետրոսի առաքելոց իշխանին աթոռն ունի, — Երկրորդ Ասորւոց գաւառին խոնարհ վանահայրց եւ ուրիշ միանձանց աղաչանքն ու խնդրուածքը։

«Որովհետեւ Քրիստոս Տէրն մեր զձեզ ընտրեց հայր, հովիւ, վարդապետ եւ հոգւոց բժիշկ, կ'աղաչենք ձեզի, ամենաերանեալ Հայր, որ յառնէք եւ ինչպէս որ իրաւունք ունիք, այնպէս ալ աս հերձուած ու պատռուած մարմնոյն վրայ բողոք բառնաք, վասն զի դուք էք ամենուն գլուխը․ եւ հաւատոյ ու կանոնաց ոտքի տակ առնուելուն եւ եկեղեցւոյ Հարց հայհոյութեամբ նախատուելուն վրէժն առնէք։ Հօտն իր կամօքն ու յօժարութեամբն առջեւնիդ կ'իյնայ, զձեզ կը

1 Գիրք Զ․ Թղթ․ 24։
2 Մանսի, Ը․ 221։

ճանչնայ իր ճշմարիտ հովիւն ու վարդապետը՝ որուն յանձնուած է հօտին հոգը՝ իր փրկութեան համար„[1] ։

Հետեւեալ վկայութիւնն առնուած է Կիպրոսի մետրապոլտի մը թղթէն, որն որ Միակամադաւանից ձեռքէն ճնշուած կը տառապէր 643ին ։

„Առ ամենօրհնեալ հայր հայրանց, արքեպիսկոպոս եւ ընդհանուր պատրիարք Թէոդորոս, — խոնարհ Սերգիոս եպիսկոպոս, ողջոյն ի Տէր„ ։

„Քրիստոս Տէրն մեր հաստատեց ձեր առաքելական աթոռը, ով սրբազան իշխան, իբրեւ աստուածային եզանակաւ մը դրուած հաստատուն հիմն, որուն վրայ հաւատքը յայտնի նշաններով դրոշմուած է ։ Վասն զի դուն ես վէմ, ինչպէս ճշմարտութեամբ կը քարոզէր Բանն աստուածային, եւ քու հիմանդ վրայ եկեղեցւոյ սիւները խարսխուին դրած են ։ Քու ձեռքդ դրաւ երկնից բանալիները եւ հրամայեց որ դուն կարող ըլլաս ճոխութեամբ արձակել ու կապել երկրի ու երկնից վրայ„[2] ։

Ահաւասիկ Ստեփանոս Դորայի եպիսկոպոսին եւ Երուսաղեմայ պատրիարքին ժողովոյն առաջին անդամոյն աղաչանաց մէկ կտորը, որն որ Մարտինոս Քահանայապետին Լատերանեան ժողովոյն մէջ կարդացուեցաւ, 649ին ։

„Ով բաղձայինք երբեմն աղաւնոյ թեւերն ունենալ, ինչպէս Դաւիթ կը գրուցէ, որ թռչէինք եւ այս ամենուն ծանօթ բաները ձեզի ծանուցանէինք ։ Բայց որպէս զի բոլոր վէրքերին վրայ դրուելու դեղին խորհուրդն ընդունինք, ահաւասիկ ամէն բան կը յայտնեմ ձեր գերագոյն աթոռին, իբրեւ այնպիսւոյ մը՝ որ ճոխութեամբ եւ հնուցմէ սովորած է դարման տանել այնպիսի բաներու իր առաքելական կամ կանոնական իշխանութեան զօրութեամբը․ երբ յայտնի բառերով՝ չէ թէ միայն երկնից արքայութեան բանալիներն անոր յանձնուած են, այլ նաեւ միայն ինք ճշմարտապէս մեծ եւ առա-

1 Մանսի, Ը․ 428 ։ 2 Մանսի, Ժ․ 913 ։

քեզոյ իշխանը Պետրոս զանոնք ընդունեցաւ, երկինքը բանալու՝ ողջամիտ հաւատացեալներուն, եւ նոյնպէս փակելու՝ շնորհաց աւետարանն ուրացողներուն: Բայց ասկէց՝ նոյնպէս մինակ իրեն հրամայուեցաւ արածել կաթողիկէ եկեղեցւոյ գառնուկները՝ երբոր Տէրն իրեն ըսաւ. Պետրոս կը սիրե՞ս զիս . . . : Արածէ իմ ոչխարներս : Եւ նորէն Պետրոս ուրիշներէն աւելի եւ առանձինն ե-ղանակաւ հաստատուն ու անյողդողդ պահելով հա-ւատքն առ Տէրն մեր եւ Աստուած, արժանի եղաւ եր-բեմն դառնալու՝ փորձանքի մէջ ինկած ընկերներն ու հա-ղբւոր եղբարքը հաստատելու, ինչպէս որ աստուա-ծային տրամադրութեամբ քահանայական իշխանու-թիւնն ու ծոխութիւնը ամենուն վրայ առած էր նոյն իսկ Աստուծմէ, որ մեզի համար մարմնացաւ:

“Ասոր տեղեակ ըլլալով բարեյիշատակ Սոփրո-նիոս՝ Քրիստոսի Աստուծոյ մերոյ սուրբ քաղաքին պա-տրիարքը . . . հաստատեց զիս Գողգոթայի սուրբ տե-ղւոյն վրայ, եւ հոն կապեց զիս անլոյծ կապանքով ու ըսաւ. “Դուն պատասխան պիտի տաս Անոր՝ որն որ “Աստուած ըլլալով, մեզի համար իր կամօքն աս սուրբ “տեղւոյս վրայ ըստ մարմնոյ խաչեցաւ, երբոր փառօք “փառաւորուած՝ սոսկալի գալստեան ատենը դատելու “ըլլայ զկենդանիս եւ զմեռեալս, թէ որ զանցառու-“թիւն մ՚ընելու ըլլաս եւ փոյթ չտանիս իր հաւատոյ “վտանգներուն, զորն որ անձամբ կատարելու արգելուած “եմ, ինչպէս քեզի յայտնի է՝ Սարակինոսաց ասպա-“տակութիւններէն, որ մեր մեղաց համար վրանիս ե-“կած հասած են : Արեւն որչափ հեռու է շարժիլ՝ անցնէր “Երկրէս մէկ ծայրէն միւսալ ծայրը, մինչեւ որ հասնիս արա-“ւելեան ափերը, ուր որ անհարթ կը ծնան ողջակէզ-“հաւատոյ քարոզութեան հիմունքը. չէ թէ մէկ, չէ “թէ երկու, հապա շատ եւ շատ անգամ յայտնէ ըստ “ճշմարտութեան ամէն բան՝ որ աս կողմերը կ՚արծարծին “այն սուրբ անձինքներուն՝ որ հոն կը գտնուին, եւ եր-“բեք մի հանգչիր, մի դադրիր անընդհատ խնդրելէն ու

«պաշտպանելէն, մինչեւ որ առաքելական խոհեմութեան «համաձայն, որ յԱստուած կը հիմնի, դատաստանը «յաղթութեամբ կորուի,,[1]:

Եւ. Հռոմայի եպիսկոպոսին ժողովներու նկատմամբ բռնած ընթացքը՝ յայտնի կը ցուցընէ իր տարիճանը: Եւ. իրօք ալ Կեղեստինոս Քահանայապետը, իր՝ Եր-րորդ ընդհանուր ժողովքին խրկելու հրեշտակներուն աս հրահանգները կու տայ:

«Երբոր Աստուծոյ օգնութեամբը, ինչպէս որ վստահ ենք ու կը յուսանք, ձեր սէրը սահմանած տեղը հասնի, խորհրդակցեցէք ամէն բանի մէջ մեր Կիւրեղ եղբօր ու ընկերին հետ, (որն որ արդէն աս նիւթին մէջ իբրեւ քահանայապետական հրեշտակ ճամբայ ելած էր,) եւ կատարեցէք ինչ որ ձեզի խորհուրդ տալու ըլլայ, եւ մենք կը պատուիրենք զձեզ այնպէս գործել, որ առաքելական աթոռոյն ճոխութիւնը պահուի: Թէ որ ձեզի տրուած հրահանգներն ասոր համաձայն են, ժողովքին մէջ մտէք. իսկ թէ որ անիկայ խնդրոյ տակ ըլլայ, դուք պէտք է որ իրենց վճիռները դատէք, եւ ոչ թէ վէճի մէջ մտնէք,,[2]:

Նոյն ժողովքին կը գրէ Քահանայապետը, ինչպէս արդէն տեսանք, թէ ինք եւ ոչ կը տարակուսի որ յանձն չառնուն հաւանելու այն ամէն բանին՝ որն որ ինք հրամայած է կատարելու: Իսկ ժողովքը պատասխան կու տայ. «Ձեր սրբութեան աստուածպաշտութեան եռանդը եւ հաւատոյ անեղծութեան վրայ ունեցած փոյթն ու հոգաբարձութիւնը, որն որ սիրելի ու հաճոյ է Աստուծոյ՝ մեր ամենուն փրկչին, մեզի մեծ զարմացման արժանի եղաւ: Վասն զի դուք՝ որ այնչափ մեծ էք, սովորած էք ամէն բանի մէջ հռչակաւոր ըլլալու եւ ձեր փոյթն եկեղեցւոյ նեցուկն ընելու,,[3]: Եւ կ'աւելցընեն թէ իր դատապարտանքին պահած են Յովհաննու՝ Անտիոքայ պատրիարքին ի հաղորդութենէ մերժուիլը:

1 Մանսի, Ժ. 894: 2 Կոստան. 1152: 3 Կոստան. 1166. 1174:

Աս կերպով կը գրէ Ս. Լեւոն Քահանայապետը Քաղկեդոնի ժողովքին՝ իբրեւ ստոյգ համարելով որ ժողովքին Հայրքը պէտ՚որ ուզեն սիրով ընդունիլ իր Թուղթը, որուն մէջ ճշմարիտ հաւատքը սահմանած էր:

Սոկրատէս ու Սոզոմենոս կ՚ընծայեն մեզի բանալի մը աս տեսակ խօսակցութեանց իմաստը բանալու: Առաջինը կը խօսի. “Եկեղեցական կանոնին վրայ՝ որ եկեղեցիներուն կը պատուիրէ թէ Հռոմայի եպիսկոպոսին վճռոյն հակառակ կանոններ չշինուի,,. եւ մէկալը կ՚ըսէ թէ Յուլիոս Քահանայապետը գրեց Եւսեբեան եպիսկոպոսներուն թէ “Նուիրապետական օրէնքն է՝ ոչինչ եւ անվաւեր համարել ինչ որ Հռոմայի եպիսկոպոսին վճռոյն դէմ եղած է,,[1]:

Այսպէս զԴիոսկորոս դատապարտուած կը տեսնենք՝ առանց յառաջագոյն Լեւոն Քահանայապետին ծանուցանելու ժողովք գումարելուն համար: Եւ եօթներորդ ժողովքին մէջ, 787ին, անկէց յառաջ գումարուած Հարիւրաւոր եպիսկոպոսաց ժողովին ընդհանուր չհրատարակուեցաւ՝ միայն աս պատճառաւ, որ Քահանայապետին հրեշտակները ներկայ չէին “Ինչպէս որ ժողովքներու օրէնքը կը պահանջէ,,:

Ս. Թէոդորոս Ստուդիտա Լեւոն Գ. Քահանայապետին, 800ին մօտերը, Կոստանդնուպոլսէն կը գրէ. “Եթէ անոնք՝ որոնք ուղղափառ ժողովք մ՚ալ չէին կրնար գումարել առանց ձեր հաւանութեան (ինչպէս հին եւ տիրող սովորութիւն է), այս իշխանութիւնն իրենց յափշտակելով՝ յանդգնեցան հերետիկոսական ժողովք մը գումարելու. որչափ եւս աւելի արժան է՝ մանաւանդ թէ հարկաւոր, որ ձեր աստուածային գլխաւորութիւնն օրինաւոր ժողովք մը գումարէ,,[2]:

Քիչ մը ետքը՝ նոյն իսկ Յունաց հերձուածէն քիչ մը յառաջ, Նիկողայոս Ա. Քահանայապետը կը գրէր Միքայէլ կայսեր. “Աղէկ միտ դրէք որ ոչ Նիկիայ եւ

1 Սոկրատ. Բ. 17: Սոզոմ. Գ. 10: 2 Բարոն. Ամ 809, Թիւ 16:

ւչ ուրիշ ժողով մը առանձնաշնորհութիւն մը շնորհեց Հռոմայ եկեղեցւոյն, գիտնալով որ յանձն Պետրոսի նոյն եկեղեցին կատարելապէս ստացած է ամէն իշխանութիւններու իրաւունքը եւ Քրիստոսի բովանդակ հօտին կառավարութիւնը„: Եւ ասով Բոնիփակիոս Քահանայապետին մէկ թուղթը կ'ակնարկէր, որն որ չորս դար յառաջ նոյն բանը գրած էր[1]:

Զ. Նախընթաց Գլխոյն մէջ ըսածնիս՝ խիստ կապակցութիւն ունի ժողովները հաստատելու իշխանութեան հետ: Եւ գուցէ ուրիշ բան մը այնպէս ճըշդիւ չիցուցընէր Ս. Պետրոսի աթոռին ընդհանուր գլխաւորութիւնը՝ ինչպէս աս իրաւունքը:

Ս. Յերոնիմոս մեզի կը ծանուցանէ թէ չորրորդ դարուն վերջերը Արեւմուտքի եւ Արեւելքի ժողովներն անընդհատ Հռոմէական աթոռին կը դիմէին՝ դժուարին խնդիրներու մէջ որոշում մ'ունենալու համար: "Ես Դամասոս՝ Հռոմայ քաղքին եպիսկոպոսին քարտուղարն էի, եւ պատասխան կու տայի արեւելեան եւ արեւմտեան սինհոդոսներուն հարցմանց„[2]:

Ս. Իննովկենտիոս մէկ քանի տարի ետքը կը գրէ թէ եւ ոչ մէկ բան մը առանց նոյն աթոռին հաւանութեան կը կատարուէր:

Բայց աս իշխանութեան ամենէն նշանաւոր գործածութիւնն՝ ընդհանուր ժողովներու հաստատութիւն տալն է, առանց որոյ նոյն ժողովները կաթողիկէ եկեղեցւոյ ձայնը չեն հնչեցըներ: Եւ աս իշխանութիւնն ըստ բաւականին ցուցուած կ'ըլլայ՝ թէ որ մինակ մէկ քանի ժողովներու օրինակները յառաջ բերենք, որոնք ուրիշ կողմանէ ընդհանուր ժողովք կ'ըլլային՝ թէ մինակ քահանայապետական հաստատութիւնը պակսելու չըլլար, եւ ասոր ներհակ մէկ քանին ալ՝ որոնք ըստ ինքեան ընդհանուր չէին, մինակ նոյն հաստատութեան զօրութեամբն ընդհանուր եղան: Առջիններուն կարգէն է Արիմինիի ժողովքը 359ին գումարուած 400 եպիսկո-

1 Մանսի, ժե. 215: 2 Թղթ. 123:

պոռնելով, որուն դաւանութեան ձեւին արեւելեան եպիսկոպոսներն ալ ստորագրած էին։ Ի վերայ այսր ամենայնի Դամասոս Քահանայապետին տասը տարի ետքը գումարած Հռոմայի ժողովոյն մէջ հրատարակուեցաւ, որ հոնտեղը (Ռիմինի) ժողվուած եպիսկոպոսաց թիւը պարտաւորութիւն մը չէր կրնար դնել, որովհետեւ Հռոմայ եպիսկոպոսին հաւանութիւնը կը պակսի։ Եւ ասիկայ միշտ պահուեցաւ[1]։ Բայց աւելի նշանաւոր է Եփեսոսի երկրորդ ժողովոյն դէպքը, որն որ ըստ օրինի գումարուած էր, ժողվուած էին ամէն Արեւելեանք եւ Ս. Լեւոնի հրեշտակները, բայց Քահանայապետին ետքէն չհաւանելովը անվաւեր ըլլալով՝ Եփեսոսի աւազակական ժողովոյ անունն ընդունեցաւ։

Երկրորդներուն կարգէն է Կոստանդնուպոլիս միայն արեւելեան եպիսկոպոսներէ գումարուած ժողովը՝ ուր որ Հոգւոյն սրբոյ Աստուածութիւնը խոստովանեցան, եւ որն որ անոր համար միայն ընդհանուր ժողովներուն կարգն անցաւ եւ երկրորդ ընդհանուր ժողով համարեցաւ՝ որովհետեւ Դամասոս Քահանայապետը հաւատոյ վերաբերեալ վճիռները հաստատեց։ Այսպէս նաեւ ուրիշ ժողով մ'ալ, որն որ Յուստինիանոսի թախանձանօքը, Վիգիլիոս Քահանայապետին բողոքանացը դէմ եւ բոլոր Արեւմուտք սաստիկ հակառակելով գումարուած էր, ետքէն հինգերորդ ընդհանուր ժողով անուանեցաւ, որովհետեւ նոյն Վիգիլիոս վերջը հաստատեց։ Նոյնպէս ամենուն ծանօթ բան է, որ մի միայն Քահանայապետներուն գերագոյն իշխանութիւնն էր՝ որ ստիպեց Արեւմուտքը եօթներորդ ընդհանուր ժողովին ընդունելու, որուն մէջ Արեւմուտքէն մինակ քահանայապետական հրեշտակները կային։ Մի՛ մոռնաք նաեւ սրբոյն Լեւոնի՝ որ Եփեսոսի երկրորդ ժողովը կ'ոչընչացընէ՝ ի բաց առնելով միայն Մաքսիմոսի ձեռնադրութիւնը Անտիոքայ համար, եւ կը հաստատէ Քաղկեդոնի ժողովքը՝ ի բաց առնելով Կոստանդնու-

1 Թուղթ Սինհոդոսական, Մանսի, Է. 355.

պոլսոյ աթոռին բարձրանալը։ Եւ երրորդ ընդհանուր ժողովքը Կեղեստինոս Քահանայապետին որոշման թողտուած ըլլալով Անտիոքայ Յովհաննէս պատրիարքին բանադրանքը, Սեքստոս իր յաջորդն սաստիկ կը գրէ առ սուրբ Կիւրեղ. “Նկատմամբ Անտիոքայ եպիսկոպոսին եւ ուրիշներուն՝ որոնք անոր հետ Նեստորի կողմը բռնեցին, եւ նկատմամբ անոնց՝ որոնք եկեղեցիները կը կառավարեն եկեղեցական հրահանգաց դէմ, մենք այսպէս որոշեցինք որ եթէ անոնք ամէնքն ալ զղջանան եւ իրենց գլխաւորներովը մէկտեղ մերժեն ինչ որ սուրբ ժողովքը մեր հաւանութեամբը մերժեց, պէտք է որ նորէն իրենց եպիսկոպոսական աթոռը դառնան„[1]։

Հռոմ 485ին գումարուած ժողովքը, խնդիրն ըլլալով միայն Փելիքս Քահանայապետին անուան համար՝ որն որ Ակակիոսի մերժուելուն հրովարտակին վրայ դրուած էր, Կոստանդնուպոլսոյ կղերին գրած ատեն աս խորհրդածութիւնը կ՚ընէ. “Ամէն անգամ՝ որ Աստուծոյ քահանայքն Իտալիայի մէջ կը ժողվուին եկեղեցական եւ մանաւանդ հաւատոյ խնդրոց համար, կը պահուի այն սովորութիւնը՝ որ առաքելական աթոռին եպիսկոպոսաց յաջորդը բովանդակ Իտալիայի ամէն եպիսկոպոսներուն անձամբը, իր ամէն եկեղեցիներուն վրայ ունեցած հոգաբարձութեան համաձայն, ամէն բան կը կարգաւորէ, վասն զի ինք ամենուն գլուխն է, որովհետեւ Քրիստոս երանելույն Պետրոսի ըսաւ. Դու ես վէմ եւ այլն։ Աս ձայնին հետեւելով Նիկիա ժողվուած երեքհարիւր ութեւտասն Հարք, ժողովքին գործոց հաստատութիւնն ու հաւանութիւնը Հռոմէական սուրբ եկեղեցւոյ թողուցին, եւ աս երկու բանս Քրիստոսի շնորհաց օգնութեամբը մինչեւ մեր օրերը ամենայն յաջորդութեանց մէջ կը պահուի„[2]։

Արդ՝ եթէ այսպիսի վարդապետութեան մը, որ այնպիսի ճոխութենէ հրապարակաւ կը հրատարակուէր եւ ոչ ոք դէմ կ՚ելլէր, պէտք չէր հաւատք ընծայել,

1 Կոստան. 1238։ 2 Մանսի, Է. 1140։

տուղին խիստ քիչ պատմական գործքեր կը գտնուէին, որոնք մեծագոյն հաւատոյ արժանաւորէին։

Գելասիոս Քահանայապետը 495ին Դարդանիայի եպիսկոպոսներուն կը գրէր. «Վստահ ենք որ ճշմարիտ քրիստոնէի մը անծանօթ չէ՝ որ ամէն մէկ ժողովքի վճիռները՝ որոնք ընդհանուր եկեղեցւոյ հաւանութեանքն ընդունելի եղած են, ուրիշ եկեղեցի մը չի կրնար գործադրելի ընել՝ բայց եթէ առաջին եկեղեցին, որն որ թէ կը հաստատէ իր ճոխութեամբն ամէն ժողովք, եւ թէ կը պահպանէ իր մշտնջենաւոր կառավարութեամբը, այսինքն իր գլխաւորութեան զօրութեամբը, զորն որ երանելին Պետրոս ընդունեցաւ Քրիստոսի կենդանի ձայնովը. ինչպէս որ իրօք ալ եկեղեցին, հետեւելով նոյն ձայնին, նոյնը միշտ պահած է եւ կը պահէ»[1]։

Փերրանդոս Կարքեդոնացւոց հռչակաւոր սարկաւագը 533ին Հռոմայ եկեղեցւոյն երկու սարկաւագներուն այսպէս կը գրէր. «Աստուածային պատուիրանները միայն կանոնական գրքերուն մէջ են, եւ Հարց վճիռներն ընդհանուր ժողովոց մէջ ոչ պիտի ուրացուին եւ ոչ ալ մերժուին, այլ պէտք են ընդունելի ըլլալ եւ պահուիլ, ինչպէս որ սուրբ Գիրքը մեզ կը պատուիրէ ըսելով. «Պահէ, որդեակ, քու հարցդ խրատներուն (օրէնքներուն) եւ քու մօրդ օրէնքները (խորհուրդները) մի մերժեր»։ Ինչպէս ինծի կ'երեւայ, յայտնի բան է որ Հարց օրէնքները կը պարունակուին կանոնական գրքերուն մէջ, եւ մօր խորհուրդներն՝ ընդհանուր ժողովոց մէջ։ Բաց աստի՝ եպիսկոպոսունք որ հոն կը ժողվուին, իրենց սեպհական սահմանադրութեանց կը ստորագրեն, որպէս զի տարակոյս մ'ալ չմնայ վճռող անձանց վրայ։ Բայց իրենց ստորագրութենէն զատ՝ ուրիշ ստորագրութիւն մը չի պահանջուիր։ Ինչու որ ասիկա միայն բաւական կը համարուի կատարեալ հաստատութիւն տալու՝ երբոր բովանդակ եկեղեցւոյ

1 Մանսի, Ը. 51։

ծանուցանելով՝ ոչ վնասու եւ ոչ ալ գայթակղութեան եղբարց առիթ տուած են, եւ միաբան ու համաձայն գտնուած են առաքելական աթոռին հետ, որովհետեւ անոր հաւանութեամբը հաստատուած են„[1] ։ -

Ի. Արդ ինծի կ'երեւայ որ մինչեւ հիմակ յառաջ բերուած վկայութիւնները կը ցուցնեն նաեւ վերջին մնացած գլուխը, այսինքն՝ Քահանայապետին հետ հաղորդակցութեան մէջ ըլլալու հարկաւորութիւնը։ Թէ որ իր գլխաւորութիւնք բոլոր եկեղեցւոյ վրայ կը տարածի, ինչպէս նաեւ կը տարածի իր միաւորիչ, կառավարիչ, կարգաւորիչ եւ պահպանիչ իշխանութիւնը՝ որն որ իր բարեկարգութիւնները կը պահպանէ եւ է քարոզիչ հաստատ եկեղեցւոյ. Թէ որ աս իշխանութիւնն ուղղակի պիտո՛որ բղխի Տեառն մերոյ շնորհքէն, որն որ մինակ Պետրոսի ամբողջ շնորհեց նոյն եպիսկոպոսութիւնը՝ որուն միայն մէկ մասն ուրիշները անոր հետ հաղորդակցութեամբ ու անկէ կախուելով պիտի ընդունէին. Թէ որ որչափ աս եպիսկոպոսութիւնը կը տեւէ՝ նոյնչափ ալ եկեղեցւոյ գոյութեան սկզբնական որպիսութիւնը պիտի տեւէ. Թէ որ ինք (Պետրոս) իր անձին վրայ ունենալով ամբողջ եպիսկոպոսութիւնը՝ որուն մինակ մէկ մասն ունին ուրիշները, ինք կենդանի աղբիւր եւ սկիզբ է առաքելութեան եւ իրաւաքանութեան. Թէ որ արեւելեան եկեղեցին աս գլխաւորութիւնը ճանչցաւ ա՛ն ատեն՝ երբ որ կայսերական իշխանութիւնն այնչափ ճոխացած էր իր վրայ եւ երբ որ հռոմէական հաւատքը ա՛լ կայսերական իշխանութեան տակ քաղաքականօրէն չէր ինկած. Թէ որ "եկեղեցիք չեն կրնար Հռոմայ եպիսկոպոսին վճռոյն դէմ կանոններ շինել„. Թէ որ անոր աթոռը "կը հաստատէ զամէն ժողովներն իր ճոխութեամբը, եւ կը պահպանէ զանոնք իր շարունակ կառավարութեամբը„. Ի՞նչպէս ուրեմն պիտի չկրնայ ըսուիլ՝ Կենդրոն միութեան, այնպէս որ "ով որ կը յանդգնի բաժնուիլ Պետրոսի հիմէն,

1 Գալլանո. Հատ. ԺԱ. 363։

չիկրնար ոչ ճանչնալ եւ ոչ ալ ամենեւին մասն ունենալ աստուածային պաշտաման մէջ,,[1]: Զարմանալի բա՞ն մըն է արդեօք, որ չիգտնուիր սուրբ մը՝ որն որ աս գաղափարով տոգորուած չըլլայ. այնպէս որ Ս. Ամբրոսիոս կ՚աղաղակէ. "Ուր Պետրոսն է՝ հոն է եկեղեցին,,. եւ սուրբ Յերոնիմոս. "Ով որ քեզի հետ չիժողովեր՝ կը ցրուէ,,. եւ սուրբ Ոպտատոս. "Հերձուածող է, մեղաւոր է՝ ով որ ան միակ աթոռին դէմ ուրիշ աթոռ մը կը կանգնէ,,. սուրբ Օգոստինոս. "Եկէք, եղբայրք, ապրեցէք նոյն արմատին վրայ, պատուաստուեցէք նոյն որթին վրայ. աս է ան վէմը՝ որուն դէմ դժոխոց հպարտ դռները զօրութիւն չունին,,. եւ բովանդակ արեւելեան եկեղեցին միաբան. "Անոնց անունները՝ որոնք կաթողիկէ եկեղեցւոյ հաղորդակցութենէն բաժնուեցան, այսինքն՝ առաքելական աթոռին հետ ամէն բանի մէջ միաբան չեն, չյիշատակուին սուրբ խորհուրդներու մէջ,,. եւ դարձեալ թէ "Մենք կը հետեւինք եւ կը հնազանդինք առաքելական աթոռին, եւ կը հաղորդակցինք անոր հետ հաղորդակից եղողներուն, նոյնպէս նաեւ կը դատապարտենք անկից դատապարտուածները,,[2]: Եւ կամ պիտ'որ զարմանա՞նք արդեօք որ հին կաթողիկէ եկեղեցին՝ իր ամենէն բազմաթիւ ընդհանուր ժողովներուն մէջ գումարուած՝ յայտնի խոստովանած է թէ Հռոմէական եպիսկոպոսը գործարան է Հոգւոյն սրբոյ՝ որ ի նմա կը բնակի. "Լեւոն ամենասուրբ եւ ամէնօրհնեալ արքեպիսկոպոս մեծ եւ հին Հռոմ քաղաքին՝ մեզմով եւ աս ժողովքովս, ամէներանեալ Պետրոս առաքելոյն հետ մէկտեղ, որն որ վէմն ու հիմն է կաթողիկէ եկեղեցւոյ եւ նեցուկ ուղիղ հաւատոյ,,: Նոյն իսկ հերետիկոսութիւնը՝ մէկու մը բերնով՝ որ աս կղզւոյս (Անգղիայի) մէջէն ելած էր, ինքնակամ աս բանս կը վարդապետէր Ս. Օգոստինոսին

1 Սոկրատէս, Գելասիոս Քահանայապետ, Ս. Լեւոն, ամէնքն ալ Ե. դարուն մէջ:

2 Մեննաս, Պատրիարք Կոստանդնուպոլսի, ի ժողովին իւրում, յամի 536:

տանը։ Պեղագիոս Բրիտանացին իր Հաւատոյ դաւանութիւնը տուաւ Իննովկենտիոս Ա. Քահանայապետին առջեւն աս խօսքերով. "Աս է Հաւատքնիս, ամենասուրբ Քահանայապետ, զորն որ ուղղափառ եկեղեցւոյ մէջ կը սորվինք, զորն որ միշտ ունեցանք եւ միշտ պիտ'որ պահենք։ Այսուն մէջ, եթէ ըստ պատահման բան մը անպատշաճ եւ անիմաստ զրցուած է, կը բաղձանք որ ուղղէք դուք՝ որ Ս. Պետրոսի հաւատքն ու աթոռն ունիք։ Բայց եթէ մեր աս դաւանութիւնը ձեր առաքելական դատաստանին ընդունելի եղած է, ով որ ինծի կ'ընդդիմանայ՝ կը մեղանչէ, եւ ասով ինք զինքը կը ցուցընէ տգէտ կամ չարամիտ եւ կամ նաեւ ոչ իսկ կաթողիկեայ. բայց երբեք զիս հերետիկոս պիտ'որ չկարենայ ցուցընել,,[1]։

Ս. Իրենէոս, առջի հին սուրբ հայրը, եպիսկոպոս եւ վկայ Գաղղիայի մէջ, որուն ծագումն յոյն էր եւ որն որ երկու աստիճանաւ միայն յետնագոյն էր Յովհաննէս առաքեալէն, ասոնց ամենուն պատճառը կու տայ՝ թէ "Հարկաւոր է որ ուրիշ ամէն եկեղեցիք, այսինքն՝ հաւատացեալք, ուսկից որ ըլլան, միաբանին աս եկեղեցւոյ հետ՝ անոր գլխաւորութեան վերագունութեան համար, որով առաքելական աւանդութիւնն աանոնց ամենուն քովն ամէն տեղ պահուած է,,[2]։

Վերջապէս ինծի կ'երեւայ որ եկեղեցւոյ ամբողջ դաւանութիւնը, նկատմամբ աս կենդանի իշխանութեան՝ զորն որ Աստուած եկեղեցւոյ կենդրոնին մէջ դրած է, կրնանք համառօտել նշանաւոր վարդապետի մը խօսքերով, որն որ սրբոց Հարց վերջինը կ'ըսուի եւ որն որ նաեւ իր օրերը սիրելի եւ յարգելի էր անոնց՝ որոնք նոյնպէս սիրոյ ու յարգութեան արժանի էին, կ'ուզեմ ըսել՝ Ս. Բեռնարդոսին խօսքերովը, որն որ սաստիկ կը խօսէր Եւգինէոս Քահանայապետին՝ որ երբեմն իր կրօնաւորն ու հոգեւոր որդին էր, բայց ետքը՝ իբրեւ սրբոյն Պետրոսի աթոռին աթոռակալը՝ իր Հայրն եղաւ։ Աս սրբոյն

1 Ս. Օգոս. Հատ. Ժ. Յաւել. Հաւատ. Պեղագ. 2 Գիրք Գ. 3։

բերնովը կը խօսի անթիւ բազմութիւն անհամար վարդապետաց, սրբոց եւ մարտիրոսաց, որոնք երբեք ուրիշ հայրենիք, ուրիշ յոյս կամ քաջալերութիւն չունեցան, բայց եթէ Աստուծոյ եկեղեցւոյն մէջ, եւ շարունակեցին կենդանի պահելու նոյն մշտնջենաւոր ու կենդանի աւանդութիւնը՝ զորն որ ժառանգած էին։ Արդ ինք Ս. Բեռնարդոս մեկնելով Ս. Օգոստինոսին աս խօսքերը "Այս է վէմը՝ որուն դէմ դժոխոց հպարտացեալ դռներն ամենեւին զօրութիւն մը պիտի չունենան,, ասանկ կը ձեռնարկէ։

"Հայր, քննենք մեծ փութով ու ժրութեամբ, թէ դուն ով ես, այսինքն՝ դուն հիմայ որպիսի անձ կը ներկայացընես Աստուծոյ եկեղեցւոյն մէջ։ Դուն ո՞վ ես։ Մեծ քահանայ, ծայրագոյն քահանայապետ։ Դուն՝ իշխան եպիսկոպոսներու, ժառանգ առաքեալներուն. դուն՝ Աբել՝ քու երախայրիներովդ, դուն՝ Նոյ քու կառավարութեամբդ, Աբրահամ՝ նահապետութեամբդ, Մելքիսեդեկ՝ կարգովդ, Ահարոն՝ արժանապատուութեամբդ, Մովսէս՝ ճոխութեամբդ, Սամուէլ՝ դատաւորութեամբդ, Պետրոս՝ իշխանութեամբդ, Քրիստոս՝ օծութեամբդ։ Դուն ես, որուն տրուեցան բանալիները, որուն յանձնուեցան ոչխարները։ Աստոյգ է՝ կան ուրիշ երկնից դռնապաններ եւ հօտերու հովիւներ. բայց դուն այնչափ աւելի փառաւոր ես, որչափ որ ուրիշներէն տարբեր եղանակաւ երկու անունն ալ ժառանգեցիր։ Անոնք իւրաքանչիւրքն իրենց որոշուած մասնաւոր հօտերն ունին, քեզի՝ ամէնը մէկտեղ, մէկուդ՝ մէկ մը մինակ յանձնուած է. դուն՝ չէ թէ միայն ոչխարներու, այլ նաեւ ամէն հովիւներուն մի միայն հովիւն ես։ Կ'ուզե՞ս իմանալ ուսկից ասիկայ կը ցուցընեմ։ Աստուծոյ խօսքէն։ Ինչու որ որո՞ւն արդեօք, չեմ ըսեր եպիսկոպոսաց մէջէն, այլ նաեւ առաքեալներուն մէջէն, ասանկ բացարձակապէս, ասանկ առանց զանազանութեան ամէն ոչխարք յանձնուեցան։ Պետրոս, թէ որ զիս կը սիրես՝ արածէ իմ ոչխարներս. ո՞ր ոչխարները. գուցէ աս

կամ ա՞ն քաղաքին կամ գաւառին եւ կամ որոշեալ Թագաւորութեան ժողովուրդնե՞րը: Իմ ոչխարներս, կ'ըսէ: Ո՞վ յայտնի չիտեսներ որ ոչ մէկը կամ մէկալը որոշեց, այլ զամէնքն ալ յանձնեց: Ամենուն բացառութիւն մը չ'ըլլար՝ ուր որ զանազանութիւն մը չեգտնուիր: Ըստ պատահման ուրիշ առաքելակիցներն ալ ներկայ էին, երբոր մէկու մը մինակ հաւատալով զամէնքը՝ ամենուն մէկանց միութիւն կը յանձնէր իբրեւ մէկ հօտի եւ մէկ հովուի մէջ, ըստ այնմ. Մի՛ է աղաւնեակ իմ, գեղեցիկ իմ, կատարեալ իմ: Ուր միութիւն է՝ հոն եւ կատարելութիւն: Մէկալ թիւերը՝ որովհետեւ միութենէ կը հեռանան, չունին կատարելութիւն՝ այլ բաժանում: Ասոր համար էր որ մէկալներն ալ խորհրդոյ տեղեակ ըլլալով՝ ամէն մէկը մէյմէկ ժողովրդեան վեճակեցան: Եւ նոյն իսկ Յակոբոս՝ որն որ սիւն եկեղեցւոյ կը կարծուէր[1], Պետրոսի թող տալով ընդհանուր տիեզերքը՝ մինակ Երուսաղէմ քաղաքովը գոհ եղաւ: Վայելչապէս ինք հոն դրուեցաւ, որպէս զի իր հանգուցեալ եղբօրը զաւակ յարուցանէ հոն՝ ուր որ անիկայ սպաննուեցաւ, որովհետեւ եղբայր Տեառն կոչուած էր: Երդ նոյն Տեառն մերոյ եղբօրը եւ քաշուելէն տեղի տալէն ետքը, ո՞վ է՝ որ յանդգնի Պետրոսի առանձնաշնորհութեան ձեռք զարնելու:

“Ապա ուրեմն քու կանոններուդ համաձայն, ուրիշները հոգատարութեան մինակ մէկ մասին մասնակից եղած են, դուն՝ իշխանութեան լրութեան կոչուած ես: Ուրիշներուն իշխանութիւնն որոշ սահմանով մը չափաւորուած է, քու իշխանութիւնդ կը տարածի անոնց վրայ ալ՝ որոնք ուրիշներուն վրայ իշխանութիւն առած են: Մի՞թէ չե՞ս կրնար դուն, երբոր բաւական պատճառ մ'ըլլայ, եպիսկոպոսի մ'ալ երկինքը փակել, եպիսկոպոսութենէ զինքը մերժել ու նաեւ սատանայի իշխանութեան մատնել: Աննահանջելի, անխախուտ ուրեմն կը մնան քու վրադ քու առանձնաշնորհութիւններդ՝

1 Գաղատ. Բ. 9:

Թէ տրուած բանալիներուն եւ թէ յանձնուած ոչխար-
ներուն վրայ։ Ահա քեզի ուրիշ բան մ՚ալ՝ որն որ առ-
ջիններուն պէս քու առանձնաշնորհութիւններդ քու
վրադ կը հաստատէ։ Աշակերտները կը նաւէին եւ Տէրը
կ՚երեւար ծովեզերքին վրայ, եւ՝ որն որ աւելի հեշտա-
կան էր, զգեցեալ նորակենդան մարմնով։ Տեսնելով
Պետրոս որ Տէրն էր, ինք զինքը ծով նետեց եւ այնպէս
եկաւ հասաւ անոր քով, ուր որ միւսները նաւով ե-
տեւէն կու գային։ Աս ի՞նչ բան է։ Իրաւցընէ՝ Պետրոսի
առանձին քահանայապետութեան նշանն է, որով չէ
թէ միայն մէկ նաւ մը, ինչպէս միւսներն իւրաքանչիւր
իրենը, այլ բոլոր տիեզերքն ինքն առաւ կառավարելու։
Վասն զի ծովը բոլոր աշխարհքս է, իսկ նաւերը՝ եկեղե-
ցիներն են։ Ասոր եւ աս պատճառաւ ուրիշ անգամ
ալ ծովու ալեաց վրայ Տիրոջը պէս քալելով՝ ինք զինքը
մի միայն Քրիստոսի փոխանորդը ցուցուց, որ չէ թէ
մինակ մէկ ժողովրդեան, այլ նաեւ ամենուն վրայ պի-
տի ըլլար. որովհետեւ „Ջուրք ժողովուրդք են"[1]։ Այս-
պէս ահաւասիկ ուրիշներէն ամէն մէկն իրենց նաւերն
ունենալով, քեզի յանձնուած է ամենամեծ նաւ մը՝ ա-
նոնց ամենուն նաւերէն բաղկացած՝ նոյն ինքն տիեզերա-
կան, բոլոր աշխարհքիս վրայ տարածուած եկեղեցին"[2]։

1 Յայտ. ԺԷ. 15։ 2 Վասն խորհրդած. Գիրք Բ. Գլ. 8։

## ՀԱՏՈՒԱԾ Զ.

Ս. Պետրոսի գլխաւորութիւնն ու Եպիսկոպոսական գերագոյնութիւնք:

Հոս հասնելէն ետեւ՝ ալ ինչ կը մնայ ինծի, բայց եթէ հարցընել ձեզի. մենք՝ իբրեւ անգղիացի քրիստոնեայք՝ Ս. Պետրոսի աթոռին ի՞նչ պարտական ենք: Ես ըսեմ ձեզի. Ամէն բան անոր պարտական ենք: Վասն զի եթէ անիկայ է ընդհանրապէս կաթուղիկէ եկեղեցւոյ արմատն ու արգանդը, որչափ եւս առաւել առանձինն մերն է: Երբ որ Օգոստինոս կրօնաւորն Անգղիա եկաւ մէկ քանի առաքեալներով կամ քարոզիչներով, ինք իր ինքնայօժար կամօքն եկաւ, թէ՝ ուրիշէն խրկուեցաւ. ո՞վ տուաւ իրեն այն առաքելութիւնը, ո՞վ այն հոգեւոր իրաւասութիւնը, ո՞վ զինքը Նախագահ գրաւ Անգղիայի, եւ տուաւ իշխանութիւն նոր եպիսկոպոսներ սահմանելու: Ստուգիւ այսպիսի գործքի մը՝ իշխանութիւն կը պահանջուէր, եւ ուստի՞ առաւ զանիկայ. ստոյգ է՝ որ անիկայ իրեն Գենդի Թագաւորը չշնորհեց, ինչու որ դեռ եւ ոչ Քրիստոսի փարախն ընդունուած ըլլալով՝ ի՞նչպէս կրնար այս առաքելութիւնը տալ իրեն. եւ դնենք թէ արդէն ընդունուած ըլլար, ի՞նչպէս արդեօք կրնար Հովուի մը առաքելութիւն շնորհել: Բայց սակայն ինք դեռ եւ ոչ Անգղիայի միահեծան Թագաւորն էր. ի՞նչպէս ուրեմն կարող էր անոր մէջ հոգեւոր գաւառ մը սահմանել: Չերկընցընենք. Օգոստինոս իր առաքելութիւնն առաւ Պետրոսի աթոռէն, եւ անկէց նաեւ ընդունեցաւ իշխանութիւն՝ ուրիշ եպիսկոպոսաց թեմերը սահմանելու, անկէց բղխեց իր անոնց վրայ ունեցած ճոխութիւնը, եւ այն աթոռին յանձնարարութեամբն իր յաջորդներն ալ նոյն իշխանութիւնն իրմէ ետքը պահեցին: Այսպէս կանգնեցաւ եկեղեցին Ալպիոնի մէջ, այն կղզին զանազան բաժին բաժնուեցաւ, եւ ամէն մէկ բաժինն ինք Օգոստինոս ուղղեց աւետարանին կենդանարար ջրովը՝ որուն աղ-

բիւրը Պետրոսի աթոռն է։ Իբրեւ կենդանի անդամ՝ մասն եղաւ կենդանի մարմնոյ, որն որ արդէն գլխէն կարգաւորուած ու պահպանուած ըլլալով՝ ինքն ալ նոյն գլուխն ունեցաւ։

Այս գլուխն էր Ս. Պետրոս, որ դեռ իր յաջորդներուն մէջ կենդանի է։ Այս այսպէս ըլլալով, ի՞նչ ընթացք կարծէք որ բռնած ըլլայ քաղաքական իշխանութիւնն այս ամենայն բաներուն մէջ։ Հաւանեցաւ որ հոգեւոր իշխանութիւնը գործէ, աւելցուց անոր գործողութեանց վրայ քաղաքական ճոխութիւն ու առանձնաշնորհութիւն. աշխարհական օրինաց հաստատութեամբ հաստատեց այն հոգեւոր հպատակաց բաժանմունքը, որն որ հոգեւոր իշխանութենէ սահմանուած էր. բայց սակայն չըրաւ ոչ իր խելքին աղէկ երեւցածին պէս կամ իր ճոխութեամբը եւ ոչ ալ համարեցաւ մշակներ խրկել Աստուծոյ այգւոյն մէջ։ Հոգ տարաւ եւ պահպանեց քաղաքական իրաւաբանութիւնը խառն դատերու մէջ, որոնց մէջ հոգեւոր իրաւաբանութեան հետ միշտ միաբան կը գործէր։ Բայց ոչ երբեք իրեն սեպհականեց հոգեւոր իրաւաբանութեան սկիզբը ըլլալ մը՝ հաւատոյ նիւթերու մէջ, ոչ իբրեւ գերագոյն դատաւոր եւ ոչ ուրիշ ինչ եւ իցէ անուամբ[1]։

Օգոստինոս եպիսկոպոսին ունեցած իշխանութիւնն ուրիշ էր, Եդելբերդոս թագաւորինն՝ ուրիշ. սակայն Օգոստինոսին հոգեւոր որդին էր եւ անոր ժամանակաւոր տէրը. ինը դարէն աւելի անեղծ պահուեցաւ աս յարաբերութիւնը. եւ որովհետեւ սակա քրիստոնէական հաւատոյ առաջին սկզբանց վրայ հիմնուած էր, մեզի սակայն միայն այլանդակ բան մը կ՚երեւայ՝ որ հարկ կը տեսնէք նոյնը դարձեալ ցուցընելու, իբրեւ թէ երբեք կարելի եղած չըլլայ ոմանց սակայն տարակուսի տակ ձգելու։ Իսկ աս է՝ որ բովանդակ Անգղիա-

1 Ասիկա իմաստութեամբ ցուցուած է Մէննիկ Աւագարկաւագին վերջին մատենագրութեան մէջ, որ կը կոչուի "The appellate Jurisdiction of the Crown,,.

ցուոց հին եկեղեցին աս յարաբերութեան վրայ հիմնուած էր: Օգոստինոս իր խաղաղական եւ աղօթանուէր կենացը հրաժարական ողջոյնը տալէն ետքը, կը հեռանար Հռոմայի բլուրներուն վրայ կանգնուած սուրբ մենաստանէն, որուն սեամներուն, ո՜հ... որչափ Ալպիոնի պանդուխտք եւ քանի՜ քանի՜ դարեր այցելութեան կ'երթային ու կը համբուրէին:

Դեռ պարզ քահանայ մըն էր՝ երբ որ առաքելութեամբ խրկուեցաւ Օգոստինոս առաքելոց իշխանէն, որպէս զի ինչպէս երբեմն իր շուքը հիւանդները կը բժշկէր, այսպէս անոր անձամբ հոն (Անգղիա) երթալովը, գերիները՝ որդւոյ, Անգղիացիք՝ հրեշտակի դարձընէ: Ահաւասիկ Գրիգոր քահանայապետին խօսքերը. “Ամէն բանի մէջ խոնարհութեամբ հնազանդ եղէք Օգոստինոսի ձեր առաջնորդին, զորն որ նաեւ ձեզի Աբբայ. կը սահմանենք. գիտնալով որ ձեզի ամէն կողմանէ օգտակար է՝ ինչ որ անոր հրամանին համաձայն կատարելու ըլլաք: Ամենակարողն Աստուած պաշտպանէ զձեզ իր շնորհքովը. ինծի ալ ընէ այս շնորհքը՝ որ ձեր աշխատանաց պտուղը յաւիտենական հայրենեաց մէջ տեսնեմ: Որպէս զի եթէ ձեզի հետ չեմ կրնար աշխատիլ, գոնէ ամենայնիւ մասնակից ըլլամ վարձուց հատուցման ուրախութեան, որովհետեւ ես ալ կը բաղձամ աշխատելու: Աստուած զձեզ, ամենասիրելի որդեակք, անարատ պահէ,,[1]:

Ս. Օգոստինոս վերջէն Ս. Գրիգորի հրամանաւ եպիսկոպոս ձեռնադրուեցաւ Վիրգիլիոս Արլի նախագահէն: Եւ աս մինակ բաւական էր ցուցընելու թէ ինչպէս իրարմէ տարբեր է իրաւաբանութեան եւ կարգին խնդիրը: Վասն զի Վիրգիլիոս չունէր իշխանութիւն զՕգոստինոս Անգղիա խրկելու. բայց իր հոգեւոր վերնագունէն հրաման ընդունելէն ետքը, կարող եղաւ տալ անոր այն իշխանութիւնները՝ որոնք ձեռնադրութենէ կը բղխեն եւ որոնց գործածութեան համար Օ-

1 Ս. Գրիգ. Թղթ. Գր. Ձ. 51:

գոստինոս Ս. Գրիգորէն առաքելութիւնն ընդունած էր։ Վերգիլիոսին արդէն Ս. Գրիգոր՝ Պալլիոն շնորհած էր, այսինքն՝ զինքը ներկայացընելու իշխանութիւնը Գաղիայի ամէն եպիսկոպոսներուն վրայ։ «Որովհետեւ ամենուն յայտնի է, կը գրէր իրեն Ս. Գրիգոր, թէ ուսկից մտած է Գաղիայի գաւառներուն մէջ սուրբ հաւատքը. ուստի երբ որ քու եղբայրութիւնդ առաքելական աթոռին հին սովորութեան կը բողոքէ, ուրիշ բան չըներ, բայց եթէ բարի որդւոյ մը պէս՝ իր մօրը գիրկը կը վազէ։ . . . Բայց եւ այնպէս հին սովորութեան համաձայն Աստուծոյ ազդմամբը քու եղբայրութեանդ կը յանձնենք որ մեր ազնուականագոյն որդւոյն Քիլդեբերդի թագաւորութեան երկիրներուն մէջ ամէն եկեղեցեաց վրայ մեր տեղը հոգ ու խնամ ունենաս»[1]։ Եւ այսպէս նոյն իշխանութիւնը՝ որ տուաւ Արլի եպիսկոպոսին ճոխութիւն մը Գաղղիայի բոլոր եպիսկոպոսներուն վրայ, նաեւ զԱնգղիա եւ անոր ապագայ եպիսկոպոսներն ալ Օգոստինոսին ձեռքն յանձնեց։ Ուրիշ թղթով մ'ալ Ս. Գրիգոր Օգոստինոսին իշխանութիւն կու տայ երկու իրարմէ զատ գաւառներ սահմանելու, իր սեպհականն ու Եորքի գաւառը, երկուքն ալ իրենց եպիսկոպոսներովը, եւ կ'ուզէ որ ինք Օգոստինոս «Աստուծոյ Տեառն մերոյ հրամանաւ բովանդակ Բրիտանիայի եպիսկոպոսներն իրեն հպատակ ունենայ»[2]։

Դարձեալ Ս. Օգոստինոսի հարցման պատասխան տալով՝ ուրիշ տեղ մ'ալ կը գրուցէ. «Մենք քեզի ճոխութիւն մը չենք տար Գաղղիայի եպիսկոպոսներուն վրայ . . . ։ Բայց քու եղբայրութեանդ հոգաբարձութեան կը յանձնենք ամէն Բրիտանեան եպիսկոպոսները»[3]։

Այսպէս անգղիական նուիրապետութիւնը Ս. Գրիգորի ջանքովը կանգնեցաւ. եւ մետրապոլտական

1 Ս. Գրիգ. Թղ. Գք. Ե. 53։
2 Ս. Գրիգ. Թղ. Գք. ԺԱ. 65։
3 Անդ. 64։

եկեղեցիներն իրմէ դրուեցան եւ իրմէ հաստատուեցան. եւ Ս. Օգոստինոսի ամէն յաջորդները նոյէն Ս. Գրիգորի յաջորդներէն առաջին առաքելութեան ու իրաւարանութեան շարունակութիւնը կ'ընդունէին։

Բոնիփակիոս Ե. 622ին Յուստոս Դ. արքեպիսկոպոսին կը գրէր. "Բաց ասկից՝ Թուղթս բերողէն ձեռքովը խրկեցինք ձեր եղբայրութեան Պալլիոն.. շնորհելով ձեզի միանգամայն եպիսկոպոսներու հանդիսական ձեռնադրութեան իշխանութիւնը, ուր որ պատշաճ յարմարութիւնը կը պահանջէ"[1]։

Ոնորիոս Քահանայապետը Եդուին թագաւորին խնդրելովը Գենդըրպըրիի ու Եորքի երկու արքեպիսկոպոսներուն Պալլիոն խրկեց՝ իշխանութիւն տալով իրենց որ եթէ իրենց մէջէն մէկը մեռնելու ըլլայ, կենդանի մնացողը կարող ըլլայ մեռնողին տեղ ուրիշ մը ձեռնադրել։ "Նա պէտք է որ աս մեր յանձնարարական իշխանութեամբ՝ որ կու տանք, անոր տեղն ուրիշ եպիսկոպոս մը դնէ։ Աս շնորհքն ընելու շարժեցանք թէ ի սիրոյ՝ որ զմեզ ձեզի հետ կը կապէ, եւ թէ այնչափ գաւառներու ընդարձակութեան համար, որոնք, ինչպէս ամենուն յայտնի է, զմեզ ձեզմէ այնչափ միջոցով կ'անջրպետեն"[2]։ Նոյն Քահանայապետը 626ին կը գրէր Ոնորիոս արքեպիսկոպոսին. "Կը խնդրէք որ ձեր աթոռին ճոխութիւնը հաստատուի մեր ճոխութեամբն ու տուչութեամբը։ Ասոր համար ըստ հին սովորութեան՝ զորն որ ձեր եկեղեցին բարեյիշատակ Ս. Օգոստինոսի ձեր նախորդին ժամանակէն ի վեր ունեցած է, մենք ալ երանելւոյն Պետրոսի առաքելոց իշխանին ճոխութեամբը՝ կը շնորհենք ձեզի Ոնորիոս եպիսկոպոսիդ, եւ ձեր ամէն յաջորդներուն մշտնջենաւոր նախագահութիւն Բրիտանիայի ամէն եկեղեցիներուն վրայ։ Ուստի հրաման տուինք որ Անգղիայի ամէն եկեղեցիներն ու գաւառները ձեր իրաւաբանութեան հպատակ ըլլան, եւ մետրապոլտական աթոռը, արքեպիսկոպոսութեան

1 Մանսի, Ժ. 550։ 2 Մանսի, Ժ. 580, 583։

պատիւն ու Անգղիացւոց ժողովրդեան բոլոր եկեղեցիներուն գլուխը ասկից ետքը ի մշտնջենաւորս Գնենդըրպըրի քաղքին մէջ հաստատուն մնայ,,[1]: Նա եւ կ'աղաչէ զԱստուած որ մշտնջենաւոր անխախտութեամբ աս բանս հաստատէ. "Հնազանդելով, կ'ըսէ, ձեր վարդապետին ու գլխոյն Ս. Գրիգորի կանոններուն,,:

Վիտալիանոս 637ին Թէոդորոս արքեպիսկոպոսին կը գրէր. "Գիտենք որ կը բաղձաք ձեր հպատակեալ թեմին հաստատութիւնը, որովհետեւ ամէն բանի մէջ մեր առաքելական ճոխութենէն տրուած առանձնաշնորհութիւններով կը բաղձաք պայծառանալ: Ասոր համար պատշաճ համարեցանք ձեր զգօն եւ արթուն սրբութեան յանձնել Բրիտանեան կղզւոյն բովանդակ եկեղեցիները: Ուստի եւ երանելւոյն Պետրոսի՝ առաքելոց իշխանին ճոխութեամբը, որուն Տէրն մեր կապելու եւ արձակելու իշխանութիւն շնորհեց, մենք՝ որ մեր արժանաւորութենէն դուրս՝ նոյն իսկ երկնից արքայութեան բանալիներն ունեցող երանելւոյն Պետրոսի տեղը կը բռնենք, կը շնորհենք ձեզի՝ Թէոդորոս եպիսկոպոսիդ եւ ձեր յաջորդներուն, այն ամէն բան՝ որն որ հնուցմէ տրուած է, ասկից ետեւ առանց նուազութեան մը միշտ պահելու այդ ձեր Գնենդըրպըրիի մետրապոլտական աթոռին վրայ,,[2]:

Այս ամենայնիւ աս իշխանութիւնները կրնայ ետ առնել կամ փոփոխել անիկայ՝ որն որ տուած է: Վասն զի կը գտնենք որ 795ին Կենուլփոս Մերկիայի թագաւորը Լեւոն Գ. Քահանայապետին գրած ու խնդրած ըլլալով, որ նորէն ետ դարձուի Գնենդըրպըրիի գաւառին ան մասը, զորն որ Ադրիանոս Քահանայապետն Օփփա թագաւորին աղաչանքովը՝ արքեպիսկոպոսական գաւառ մը կանգնած էր Լիչֆիլտի համար, այս իր խնդիրքը կատարուեցաւ: Մի եւ նոյն ատեն Անգղիայի բոլոր եպիսկոպոսներն աղաչանք կը խրկէին գերագոյն Քահանայապետին՝ նորէն ընդունելու

1 Մանսի, Ժ. 580:    2 Մանսի, Ի. 24:

այն առանձնաշնորհութիւնը, որն որ ժամանակին խռովութեանց պատճառաւ խափանուած էր, այս ինքն թէ մէկ արքեպիսկոպոս մը կարող ըլլայ ուրիշին յաջորդը ձեռնադրել, եւ թէ նաեւ կարելի ըլլայ Պալլիոնն ալ առանց Հռոմ երթալու ընդունիլ[1]: Յամին 1072 մեծ խնդիր մ'ելաւ, երբոր Թոմաս Եորքի արքեպիսկոպոսն ուրացաւ Գընդըրպըրիի նախագահութիւնն իր աթոռին վրայ: Եւ այսպէս Ալեքսանդր քահանայապետին հրամանաւը Ուինտզոր ժողովք մը գումարուեցաւ, որպէս զի վախճան տրուի աս գործքին, եւ Լանֆրանք արքեպիսկոպոսը կը ծանուցանէր քահանայապետին թէ իր բովանդակ Անգղիայի վրայ ունեցած նախագահութեան փաստերը յայտնի եւ ամենապայծառ են. "Ինչու որ, կ'ըսէ բառ առ բառ, իբրեւ ամենազօր ամրութիւն մը եւ վաւերական նշուակ մը՝ բովանդակ կղզւոյն մէջ յառաջ բերուեցան այն առանձնաշնորհութիւններն ու գրուածները, զորոնք ձեր նախորդները՝ Գրիգոր, Բոնիփակիոս, Հոնորիոս, Վիտալիանոս, Սերգիոս, Գրիգոր եւ վերջապէս Լեւոն, Գընդըրպըրիի եկեղեցւոյն առաջնորդներուն, Անգղիայի թագաւորներուն եւ ուրիշներուն այլեւայլ ատեն՝ այլեւայլ պատճառներու համար տուեր կամ փոխադրեցին,,[2]:

Եւ որովհետեւ նոյն արքեպիսկոպոսին նախագահութիւնը բովանդակ Անգղիայի վրայ կը տարածէր, եւ եպիսկոպոսաց ձեռնադրութիւնն ու ժողովոց գումարումն ալ կը պարունակէր, երբոր կը ցուցուի թէ աս առանձնաշնորհութիւնն իրեն տրուած ու ապահովցուած էր Քահանայապետին ճոխութեամբը, անով միանգամայն յայտնի կը ցուցուի թէ բոլոր անգղիական եկեղեցւոյն առաքելութիւնն ու իրաւաբանութիւնը միշտ եւ հանապազ Պետրոսի աթոռէն կը յառաջանայ: Ուստի եւ ով որ ըլլայ եպիսկոպոսներն անուանողն ու ընտրողը, այն իշխանութիւնը՝ որ մասնաւոր անձ մը կը ունէր մասնաւոր թեմ մը կառավարելու, անմիջամիջա-

1 Մանսի, ԺԲ. 960, 980: 2 Մանսի, Ի. 23:

պէս կամ ընդմիջապէս Պետրոսի աթոռէն առաջ կու-
գար, այս ինքն՝ ան աթոռէն, որն որ մշտնջենաւոր
աղբիւր է առաքելութեան ու հոգեւոր իրաւաբանու-
թեան: Նախագահութիւնները՝ զորոնք ինքն հաստա-
տած էր, ինքն ալ հաստատուն կը պահէր, եւ որն որ
սկզբնաբար Ս. Պետրոսի ծխութեան հաղորդակցու-
թիւն մըն էր, (ինչու որ միայն իրմէ կը բղխէ մէկ եպիս-
կոպոսին՝ մէկալին վրայ ունեցած գերազանութիւնը,)
անիկայ ամէն տեղ հաստատուն կը մնար՝ եթէ Ս. Պե-
տրոսի հետ միացած ըլլար:

Ով որ հոգեւոր իրաւաբանութեան աղբիւրն է,
հարկաւորապէս նաեւ վարդապետութեան գերագոյն
դատաւորն է: Անտարակոյս որ Պետրոսի աթոռին որպի-
սութիւնը բովանդակ եկեղեցւոյ մէջ, Քանդըրպըրիի ա-
թոռին հիմնարկութենէն շատ դարեր յառաջ, յայտնի
իսկ կը ցուցընէ որ ան Քանդըրպըրիի աթոռն իր գոյու-
թիւնն առնելէն ետեւ՝ ի հարկէ պէտք է միշտ եկեղե-
ցւոյ մէկ դատաւոր ըլլալ եւ միանգամայն հպատակ Պե-
տրոսի աթոռին: Եթէ եկեղեցւոյ մը եւ իցէ դատաւոր
կարող ըլլար իր առաջնական ծխութեամբն ու ինքնա-
գլուխ՝ հաւատոյ մէկ մասին վրայ ալ վճիռ տալ, ասոր
ամենափոքր չափ հետեւանքը կ'ըլլար նոյն դատաւորին՝ ե-
կեղեցւոյ մնացած մարմնէն բաժնուիլը: Վասն զի ի՞նչ
բան կրնայ արդեօք հաւատոյ միութիւնը պահպանել՝
եթէ համարակաց գլխոյ մը չհպատակուի: Նոյն ինքն
Աստուած՝ եւ ոչ տատանելու անհատ անձինքներու
ընկերութեան մէջ այնպիսի եղանակաւ ուզեց գործել:
Ու ի՞նչպէս կրնայ ըլլալ “մէկ եպիսկոպոսութիւն մը,
որուն մէկ մասը իւրաքանչիւրը բռնած ըլլան՝ առանց
բոլորին բաժանման,, երբ որ նոյն եպիսկոպոսութեան
համար չկայ օրէնք մը՝ որ յենած ըլլայ այնպիսի ծո-
խութեան վրայ, որն որ իրեն բնածին է, ինչպէս կը
ծանուցանէ նոյն սուրբ Հայրը, որ աս գաղափարը կու-
տայ եպիսկոպոսութեան վրայ. “Միութիւնն ամբողջ
պահուած էր իր առաքելականց մէջ,,:

Բայց անկից՝ գործոց վրայ անցնինք ։ Ինը դարէն աւելի Պետրոսի աթոռն աս ազգին մէջ գերագոյն եկեղեցական ատեանն եղաւ, եւ հաւատոյ խնդիրները կրնային անոր առջեւը դրուիլ իբրեւ վերին եւ գերագոյն ատեան բողոքման ։ Ինըհարիւր վաթսուն տարուան միջոցին մէջ, վաթսուննուինն արքեպիսկոպոսունք Ս. Օգոստինոսի աթոռին վրայ Գէնդըրպըրիի մէջ նստեցան, նոյն իսկ անոր հրամանաւն ու ճոխութեամբը, որն որ յառաջագոյն զՕգոստինոս խրկած էր ։

Բայց որ ճոխութեամբ եօթանասներորդ եպիսկոպոսը նոյն աթոռն անցաւ ։ Ո՞վ տուաւ Բարգեր վարդապետին ոչ թէ սուրբ կարգերը, ոչ թէ եպիսկոպոսական նկարագիրը, այլ ~~առաքելոյն~~ գործածելու անանկ իշխանութիւններ՝ որոնք Գէնդըրպըրիի արքեպիսկոպոսական աթոռին նկարագրին հետ միացած են. եւ ո՞վ տուաւ ճոխութիւն մը Նախագահութեան իշխանութիւնները գործածելու Գէնդըրպըրիի գաւառին մէջ ։ Ուրիշ բան չէկրնար պատասխանուիլ, բայց եթէ՝ Եղիսաբեթ թագուհին էր, որ թէ նոյն առաքելութիւնն ու թէ նոյն ճոխութիւնն անոր տուաւ կամ գոնէ համարեցաւ թէ կու տայ ։

Յիշենք պարզապէս պատմական դէպքերը ։ Եղիսաբեթ թագուհին աթոռը նստած ատեն տեսաւ որ ինըհարիւր եօթանասուն տարուընէ վեր հռոմէական աթոռին եւ Անգղիայի եկեղեցւոյն մէջ հաստատուած հին յարաբերութիւնը նորոգուած էր իր քրոջը ձեռքով՝ հօրն ու եղբօրը կողմանէ պատճառած խռովութիւններէն ետքը ։ Աս յարաբերութիւնը երկու գլխաւոր գլուխներու վրայ էր, այս ինքն թէ միշտ Քահանայապետն է՝ որ եպիսկոպոսները կը դնէ, եւ թէ ինքն է գերագոյն եկեղեցական դատաւոր ։ Եղիսաբեթ խորհրդանոցին ձեռքով վճիռ մը հանեց, որով Քահանայապետն աս երկու իշխանութենէն ալ կը զրկուէր ։ Եւ աս վճիռն ընդունուեցաւ, թէպէտ եւ եպիսկոպոսք, իրենց ժողովքն ու երկու համալսարանք ընդ-

դէմ բողոքեցին։ Բայց Եղիսաբեթ ասով մինակ գոհ չեղաւ։ Աս երկու իշխանութիւններն ո՞վ պիտի առնէր։ Հարկ էր որ մէկու մը վրայ գտնուէին. Եղիսաբեթ կը տենչար իր Թագն ատոնցմով շքեղացընել. ուստի եւ յափշտակեց Քահանայապետէն, որպէս զի իր գլխոյն վրայ Քահանայապետական երեքպսակեան Թագ մը շինէ։ Ասով ինք զինքը եկեղեցական գերագոյն դատաւոր դրաւ, եւ հրատարակեց որ ամենայն բողոքները՝ որոնք մինչեւ նոյն ատեն արքեպիսկոպոսական պալատէն՝ Քահանայապետին առջեւը կ'ելլէին, անկից ետքը աշխարհական Թագին առջեւն ելլեն։

Հարկ չկայ աս նիւթին վրայ ասկից աւելի մտքերնիս յայտնել, վասն զի վրան շատ ժամանակ չանցաւ՝ Թագաւորութեան ամէն ատեանները հաստատեցին որ աս իշխանութիւնը Թագին վրայ է։ Եւ նոյն վարդապետութեան համաձայն՝ Բրիտանիայի մեծափառ Թագուհին՝ եկեղեցական դատաւորութեան գերագոյն ծոխութիւնը գործածելով, ոչընչացուց անգղիական արքեպիսկոպոսին ատեանին վճիռը, եւ ինք վճռեց թէ աս եկեղեցւոյն կղերը իւրաքանչիւր ոք ինչպէս կ'ուզէ, ինչպէս իրեն աղէկ կ'երեւայ՝ կրնայ քարոզել ու սորվեցընել աս երկուքին մէկը, որն որ կ'ուզէ, այսինքն կամ սորվեցընել թէ տղաք սուրբ մկրտութեամբ Աստուծմէ կը վերանորոգին եւ կամ վարդապետել թէ նոյն վարդապետութիւնը՝ "Հոգեսպան հերետիկոսութիւն է,,։ Եւ որպէս զի ազատութիւնն աւելի եւս կատարելագործուի, այս մեր օրերը մի եւ նոյն եկեղեցականը՝ կրնայ մկրտութեան սուրբ աւազանին քով ու մկրտութեան արարողութեան բառերն արտաբերած ատեն, յայտնել իր հաւատքը իբրեւ անսացող առաջին կարծեաց, իսկ բեմին (ամպիոնին) վրայ պարտաւորել ունկնդիրները՝ որ երկրորդ կարծեաց հաւատան։

Յափշտակուեցաւ միանգամայն եպիսկոպոս ընելու իշխանութիւնը, կ'ուզենք ըսել՝ նոր սկիզբ մը դրուեցաւ առաքելութեան եւ իրաւաբանութեան. վասն զի ան

ժամանակուընէ վեր անգղիական եկեղեցւոյն ամէն մէկ եպիսկոպոսը միշտ եւ միայն թագաւորական ճոխութեան հրամանաւ կամ յանձնարարութեամբ հաստատուած դրուած է։ Ասոր վրայ մէկը խորհրդով կը գրէ. "Հոգեւոր ճոխութեան ցանկացող եւ հետամուտ իշխաններըն՝ երբեք չյանդգնեցան իրենց ձեռօք մինչեւ խորաններուն վրայ ալ իշխել, այլ ճանչնալով որ ասով այլանդակութիւնն աւելի չարագոյն կ'ըլլար՝ քան թէ սրբապղծութիւնը։ Այսու ամենայնիւ անընդունակ ըլլալով ուղղակի կրօնի սկիզբ եւ կանոն համարուելու եւ ընդունելի ըլլալու, կը ջանան եւ հետամուտ եղած են տիրապետելու քահանայական գնդի կամ մարմնոյ մը միջնորդութեամբ, որն որ իրենց կամացը գերի եղած է։ Եւ ահաւասիկ կը տեսնուին քահանայապետներ՝ առաջնոյ առաքելութեան, վաճառականներ նոյն ճշմարտութեան՝ որմէ իրենց ժողովրդեան այնչափ կը ծախեն, որչափ որ բաւական կը համարին քաղաքական ապստամբութիւնները դադրեցընելու։ Իրենք են՝ որ Քրիստոսի արիւնը գործիք մ'ըրած են բարոյական ծառայութեան եւ քաղաքական անտեսութիւններու, մինչեւ որ գայ այն օրը, որուն մէջ սոսկալի արկածներով սորվին թէ ամենէն չարագոյն յանցանքն՝ որ իշխանութիւն մը կրնայ գործել իր ու մարդկային ընկերութեան մեծ վնասովը, նոյն իսկ այն խառնուրդն է՝ որով բովանդակ կրօնը կ'եղծանի,,[1]։

Բարգեր եպիսկոպոս դրուեցաւ չորս անվրէժակ եպիսկոպոսներէ, որոնք ամենեւին իշխանութիւն չունէին Գընդըրպըրիի աթոռին առաքելութիւնն անոր տալու։ Բայց իրենք յայտնապէս վճռեցին թէ Եղիսաբեթ թագուհւոյն մասնաւոր յանձնարարութեամբն աս բանս կ'ընեն։

Բայց ցուցընելու համար թէ ինչպէս այս առաքելութեան եւ հոգեւոր իրաւարանութեան աղբիւրը թագաւորական իշխանութենէ բղխել տալ կ'ուզէին, բա-

1 Լագորտէր։

ւական է միայն միտ դնել այն օրինաց՝ որն որ կը վճռէր որ եթէ արքեպիսկոպոս մը սահմանուած ատենուան մէջ չ'ուզեր համաձայնիլ թագաւորական հրամանին՝ որ կը պատուիրէ եպիսկոպոս մը սահմանել, (որն որ ե-րեք դարերուն մէջ երբեք չէր դադարած, թէպէտ Հռովմ եւ Հէմբարդն եպիսկոպոսութեան տուչութիւնն առնող անձինքներէն էին.) թագաւորական իշխանութիւնը կրնայ դատարանին մէջ ու եւ իցէ եպիսկոպոսին յանձնել որ իր հրամանը կատարէ, եւ այսպէս ինք զինքը վերին կառավար կը կարգէր արքեպիսկոպոսի առանձին եւ յատուկ ճոխութեան վրայ:

Բաց ասկէց՝ գաղթականութեանց եպիսկոպոսնե-րուն տրուած հրամանագիրները յայտնի խօսքերով կը հրատարակեն թէ եպիսկոպոսական իրաւարանութիւնը նոյն հրամանագիրներուն զօրութեամբ կանգնուած թե-մերը կառավարելու համար իրենց տրուած են թագա-ւորական իշխանութենէն. որն որ չէ թէ միայն կը շնոր-հէ ասանկ իրաւարանութիւն մը, այլ նաեւ տրուածն ալ ետ կ'առնէ: Այս իշխանութեան մէկ նորագոյն յի-շատակարանը ձեռքերնիս է: "Թագուհին հաճեցաւ միացեալ տէրութեանց մեծ կնքով կնքուած հրամա-նագրով՝ Գուէպէքի եպիսկոպոսութիւնը նորոգել, եւ ասանկ տրամադրել որ աս թեմը միայն Գուէպէքի, Թրի Ռիվըրսի եւ Գասփէի վիճակները պարունակէ, եւ կոչուի Գուէպէքի եպիսկոպոսութիւն: Դարձեալ մե-ծափառ Թագուհին հաճեցաւ անուանել եւ ընտրել զմեծարգոյ Հովիւն ի Տէր զԳէորգ Յովսափատ Մաունթէն աստուածաբանութեան ուսուցիչը՝ որն որ յառաջագոյն Մոնրէալի եպիսկոպոս էր, Գուէպէքի եպիսկո-պոս: Մեծափառ Թագուհին ասկից զատ հաճեցաւ Գուէպէքի հին թեմին այն մասին վրայ՝ որ Մոնրէալի շրջանակը կը պարունակէ, հաստատել եպիսկոպոսական աթոռ մը, որն որ պիտի կոչուի Մոնրէալի եպիսկոպո-սութիւն, եւ անուանեց ու ընտրեց զՖրանկիսկոս Ֆուլ-ֆորտ՝ աստուածաբանութեան ուսուցիչը, որ եպիսկո-

պոտութեան կարգ ու ձեռնադրութիւն առնէ Մոն-
րէալի աթոռին համար»[1]:

Այս գործքին մէջ արքեպիսկոպոսին այս միայն կը մնայ որ կը պարտաւորի որոշուած անձը ձեռնադրել՝ ընդ պատժովք ինչքերն յարքունիս գրաւուելու եւ բանտ մտնելու. եւ ինք արքեպիսկոպոսը ոչ ինէ՞ է— ոչ առաւել—ինչ— կա— փայ ձեռնադրուողին:

Մեծափառ Թագուհին իր քահանայապետական ճոխութիւնը գործածելով՝ մետրապոլիտներու բազմութիւն մ'ալ ընտրեց, ինչպէս Կալկաթայի մետրապոլիտը՝ որուն հպատակ կարգեց բոլոր Հնդկաստան, եւ Սիտնիի մետրապոլիտը՝ որուն իշխանութեան տակ ձգեց Աւստրալիա, Վան Տիէմէնի երկիրը եւ Նոր Զելանդիան: Բայց հոստեղս հարկ է միտ դնել եւ երկու բան ալ աղէկ զանազանելու է:

Ա. Թէ մէկը եպիսկոպոսութեան առաջարկելու եւ ընտրելու իշխանութիւնը բոլորովին տարբեր է եպիսկոպոս դնելու կամ հաստատելու իշխանութենէն. վասն զի երկրորդը հոգեւոր կառավարութեան տուչութիւնը մէկտեղ կը պարունակէ: Անուանելու կամ առաջարկելու առանձնաշնորհութիւններն իրաւցընէ կրնան տրուիլ եւ իրօք ալ երբեմն տրուած են աշխարհական իշխանութեան՝ սուրբ աթոռին շնորհելովը. իսկ մէկալ իշխանութիւնը չէկրնար ուրիշ կողմանէ բղխել՝ բայց եթէ հոգեւոր աղբիւրէ:

Բ. Քաղաքական իշխանութիւնը կրնայ, երբոր իւրեն հաճոյ կ'երեւայ, իր օրէնքներովն ալ հաստատութիւն տալ հոգեւոր իշխանութենէ որոշուած թեմերուն, որպէս զի քաղաքական զօրութիւն մ'ալ աւելնայ եպիսկոպոսներուն հոգեւոր գործոց վրայ, որոնք հոգեւոր իշխանութենէն միայն իրենց տուչութիւնը կը ճանչնան: Բայց Անգղիայի մէջ բաներն ուրիշ կերպ են. վասն զի հոն եպիսկոպոսական թեմ մը կը կերպաւորուի, կը կանգնուի, նորէն կը բաժնուի եւ կը փոփո-

1 Լրագիր Լոնտոնի:

խուլ՝ ինչպէս որ միայն քաղաքական իշխանութիւնը կ'ուզէ ։ Նոյն իսկ Հոգեւոր իրաւաբանութիւնը՝ զորն որ եպիսկոպոս մ'իր հօտին վրայ ունի, կը փոխադրուի իր հօտին մէկ մասին նկատմամբ՝ ուրիշ եպիսկոպոսի մը, եւ աս ամէն փոփոխութեան մէջ եպիսկոպոսը պարզապէս չէզոք կը մնայ ։

Ուստի եւ պատահեցաւ որ առանձին եպիսկոպոսներ, որոնք Գէնդըրպըրիի զաւառին կը վերաբերէին՝ իբրեւ անոր հպատակները, յանկարծ առանց ամենեւին նոյն աթոռին գիտութեան՝ միջին մետրապոլտի մը հպատակ դրուեցան ։ Երբ բովանդակ անգղիական Սորոգութիւնն ըստ գոյացութեան աս երկու ծինիներու վրայ կը պտըտի, թէ քաղաքական իշխանութիւնը հոգեւոր առաքելութեան եւ իրաւաբանութեան սկիզբն եղած է, եւ ասով՝ նաեւ եկեղեցական նիւթերու մէջ գերագոյն դատաւոր է ։ Ասոր համար որոնք որ աս երկու նիւթերուն փոխուիլը կ'ուզեն, ուրիշ բառերով կը խնդրեն որ նոյն իսկ Սորոգութիւնը քակէ քայքայէ եղած չարիքը, եւ այսպէս կաթողիկէ միութեան դառնայ ։

Աստուած տայ՝ որ ասոնց ձայնը լսելի ըլլայ. բայց նշանները շատ քիչ են ։ Ի վերայ այսր ամենայնի եթէ այս ամենայն՝ որ մինչեւ հիմակ առջի հինգ հատուածներուն մէջ յայտնապէս մեկնուեցաւ, յայտնի կը ցուցընեն թէ գլխաւորապէս աս երկու նիւթերուն վրայ կը կայանայ Բահանայապետական ճոխութիւնը, այսպէս նաեւ յայտնի եւ գործքով հաստատուած է որ Եղիսաբեթ ուրիշ եղանակաւ իրեն չկրցաւ առնուլ այս գլխաւորութիւնը՝ բայց եթէ յափշտակութեամբ ։ Ասկէց կը հետեւի ուրեմն որ աշխարհական իշխանը Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ խորհուրդներն ալ կամ անտեղւոյ շրջանակին մէջ մատակարարել տալու իշխանութիւնն ալ իրեն կը սեպհականէ, եւ երկնից արքայութեան բանալիներն ու կապելու եւ արձակելու իշխանութիւնն ալ իրմէ պէտք է որ աւանդուին ։ Միթէ 18 դարերուն մէջ կրնա՞յ արդեօք գտնուիլ Քրիստոնէութեան

դէմ ասկից աւելի անարգագոյն ու վնասակար հերետիկոսութիւն մը. աս է որ Աստուծոյ եկեղեցին ի սիրտն վիրաւորելու կը ջանայ։

Անգղիական եկեղեցին ուրիշ անգամ ալ մեղադրուած է ծնունդ ու գերի տէրութեան ըլլալուն համար։ Ճշմարիտ է աս համարումը. բայց յորում է յանցանքը։ Յայտնի է որ անգղիական եկեղեցին չ'ըսուիր ծնունդ ու գերի տէրութեան՝ այնչափ համար որ տէրութեան պաշտպանելովը հաստատուած է, որ իր եպիսկոպոսներն արքունիքէն անուանուած են ու խորհրդարանին մէջ կը նստին եւ անոնց գործքերը քաղաքական արժէք ունին, որ իր կղերին անդամները քաղաքական պաշտօն ունին. վասն զի ասոնք ամէնն ալ կրնան անվնաս, ուղիղ ու նաեւ օգտակար բաներ ըլլալ։ Հապա ինք գերի կ'ըլլայ տէրութեան՝ երբ որ կը վարդապետէ թէ իր առաքելութեան ու հոգեւոր իրաւաբանութեան սկիզբն ու հաւատոյ վարդապետութեան նիւթերու մէջ իր գերագոյն դատաստանը՝ քաղաքական իշխանութեան ձեռքը փոխադրուած է։ Այս ամենայն աղէկ իմանալու համար նորէն Եղիսաբէթէն սկսինք։ Ինք ձեռքն ունենալով աս քաղաքական օրինաց զէնքը, որն որ Անգղիայի նկատմամբ՝ Հռոմէական աթոռին առաքելութիւն տալու եւ եպիսկոպոսութեան տուչութիւնն աւանդելու գերագոյն իշխանութիւնը կը շիջուցանէր, այս երկու իշխանութիւններն ալ թագաւորական գահին յափշտակելով, որպէս զի զասոնք միշտ իրեն պահէ՝ երդում ընելու հրաման տուաւ եւ ուզեց որ երդման ձեւն ալ ան ատենուան եպիսկոպոսներուն առջեւը դրուի։ Ան ատենները նախագահական աթոռն որբ մնացած էր, եւ միայն 16 եպիսկոպոսունք դեռ կենդանի էին։ Ասոնցմէ 15ը յանձն չառին խորտակելու այն օղը՝ որով իրենց աթոռները 960 տարիէ՝ Բրիտանեան եկեղեցւոյն սկզբէն վեր՝ Հռոմայ եկեղեցւոյն հետ միացած էին, եւ աս երկու իշխանութիւններուն՝ արքունական թագին վրայ փոխադրութիւնն ալ չուզեցին. եւ

ասոր համար օրինաց զօրութեամբ ատեաններէն մեր-ժուեցան։ Միայն Լանտաֆի Պրիչէն եպիսկոպոսը հա-ճեցաւ աս պայմաններն ընդունել եւ այսպէս աթոռը պահել, իր սեղանին մեծ մասը պալատականաց առջեւը դնելով։ Այսու ամենայնիւ ոչ նոր Նախագահին հա-ւատարմութեան եւ ոչ ալ անոր ձեռնադրութեան մէջ մաս ունեցաւ։

Ահաւասիկ աս եղանակաւ հին եպիսկոպոսութիւ-նը՝ որն որ իր յաջորդութիւնը՝ Ս. Օգոստինոսէն, եւ առաքելութիւնը՝ Ս. Պետրոսէն ունէր, ցրուեցաւ քայ-քայեցաւ աքսորներով, բանտարկութիւններով եւ տա-ռապանքներով։ Այն եպիսկոպոսութիւնը՝ որն որ գրե-թէ հազար տարի զԱնգղիա կրթած էր քաղաքակրթու-թեան մէջ, մշակած եւ բիւր եղանակաւ երջանիկ ըրած էր, եւ որով նաեւ Անգղիա քրիստոնէական մեծ մար-մնոյն անդամ եղած էր, ոչնչացաւ։ Իսկ անոր տեղն ե-լաւ նոր եպիսկոպոսութիւն մը՝ որուն առաքելութիւնը թագուհիէն յառաջ կու գար, եւ ամէն բան՝ միշտ կը կախուէր Անգղիայի արքունական թագէն, որուն վրայ միանգամայն իր վարդապետութեան գերագոյն ատեանը կը դրուի։ Այս է իր ծագումն եւ այս՝ իր սկիզբը, ո-րուն վրայ հիմնուած է հոգեւոր իշխանութեան՝ քաղա-քականին հպատակ ըլլալը՝ հոգեւոր, հաւատոյ եւ բա-րուց նիւթերու մէջ։ Եկեղեցին մարդկային բանի մը դար-ձընելու ջանացին. յանդգնեցան աս բանս փորձելու, եւ յաջողեցուցին։

Իսկ ես՝ որովհետեւ այնչափ բազմամեայ նեղու-թիւններէն, մտածութիւններէն, քննութիւններէն եւ աղօթքներէն ետքը Աստուծոյ գթութեամբն աստուա-ծային լոյսը սրտիս զարկաւ, ուրիշ բան չեմ ըսեր՝ բայց եթէ աս որ — լռելս՝ ծածկել պիտ'որ համարուէր իմ ամենասաստիկ համոզումս, որն որ ոչ այնպէս շուտով ստացուած է եւ ոչ ալ առանց ծանր նեղութիւն-ներու աւելցած։

Ո՛վ որ կը կարծէ թէ այսպիսի եկեղեցւոյ, այս-

ալխոի եպիսկոպոսութեան վրայ վստահ կրնայ ըլլալ եւ սա տեսակ կրօնի մէջ իր հոգին կրնայ փրկել, երթայ փաթթուի անոր, անոր գութ ունենայ, ի նպաստ անոր գրէ, անոր կողմը պատերազմի, անոր ձեռքը յանձնէ իր հոգին։ Բայց ասոր ներհակ իմ պարտականութիւնս՝ որ ունիմ ամենակարող Աստուծոյ եւ իմ հոգւոյս յաւիտենական փրկութեան, կը պարտաւորեն եւ կը ստիպեն զիս՝ խօսքով, գրուածով եւ գործքով յայտնել իմ հաւատքս՝ որ կը դաւանիմ, թէ անգղիական եկեղեցին հանդիսաւոր խաբէութիւն մըն է, եւ այնչափ առաւել վտանգաւոր է հոգւոյ, եւ առանձինն այնպիսի հոգիներու՝ որոնք յօժարամտութեան եւ հնազանդութեան զգածմունք ունին, այնպիսի հոգիներու՝ որոնք կը կարծեն թէ "Դ՞ն մէկ մարմին եւ մէկ հոգի„ ցորչափ որ կը պնդէ նոյն եկեղեցին թէ կաթողիկէ մարմնոյ մէկ մասը կը կացուցանէ, թէպէտ եւ ինք՝ զինքն անոր հեռ կացող էական կապերը քակեց, եւ թէ ունի նոյն հոգեւոր իշխանութիւնները՝ զորոնք յափշտակելէն ու իր քմացը համաձայն նորոգելէն կամ կարկատելէն ուրիշ բան ըրած չէ։

## ՀԱՏՈՒԱԾ Է.

Սրբոյն Պետրոսի գլխաւորութեան եւ յաջորդական փոխանցութեան արդիւնքները։

Սրբոյն Պետրոսի եւ իր յաջորդներուն գլխաւորութիւնը, որ Աստուծմէ հաստատուեցաւ իր եկեղեցւոյն մէջ ի մշտնջենաւորս տեւելու համար, Հաւատոյ եւ Հաղորդակցութեան միութիւնը պահպանելու համար դրուած է։ Բայց աս գլխաւորութիւնն Անգղիական տէրութեան եկեղեցւոյն մէջ բոլորովին ջնջուեցաւ. Եղիսաբեթ թագուհւոյն հրամանաւը, երբոր արքունական թագին հայրենի ժառանգութիւն մը հրատարակեց անոր երկու գլխաւոր իրարու հետ կապուած եւ իրարմէ անբաժանելի իշխանութիւնները, այսինքն՝ ուրիշներուն վրայ հոգեւոր իրաւաբանութիւն ծնանելու կամ բղխելու իշխանութիւնը եւ գերագոյն դատաւորութիւնը հաւատոյ վերաբերեալ նիւթերու մէջ։ Ուստի եւ ես կը հարցընեմ. Աստուածուստ հաստատուած գլխաւորութեան այս երկու արդիւնքները, այսինքն՝ Հաւատոյ եւ Հաղորդակցութեան միութիւնը, արդեօք պահուած են այն կրօնին մէջ՝ որ թագաւորական գլխաւորութենէն կերպաւորած է եւ է մարդկային շինուածք մը։ Անգղիական եկեղեցին ունի՞ հաւատոյ միութիւն. ունի՞ բոլոր աշխարհքիս երեսը տարածուած կաթողիկէ եկեղեցւոյն հետ հաղորդակցութիւն։ Հաւատոյ նկատմամբ՝ աստուածային յայտնութիւնը վերջի ատեններս երեք մեծամեծ ճիւղեր բաժնուած է, որոնք առաքելական հանգանակին մէջ ըստ բաւականին նշանակուած են, եւ են՝ Երրորդութեան, Մարդեղութեան եւ Եկեղեցւոյ վարդապետութիւնները։ Աս վերջինն էր՝ որուն վրայ յարձակումն եղաւ անգղիական Նորոգութեան ատեն. ուստի եւ առ այն պէտք է դիմենք նոր եկեղեցւոյն միութիւնը ճանչնալու համար։ Անգղիական հաղորդակցութիւնն անփոփոխ հաւատոյ

մուԹիւն ունի՞ կաԹողիկէ եկեղեցւոյ եւ խորհրդոց կարգաւորուԹեան վրայ, որն որ ուրիշ բան չէ՝ բայց եԹէ Քրիստոսի ՄարդեղուԹեան մերձեցուցումը իր խորհրդական մարմնոյն եւ անոր վերաբերած հոգիներուն: Ո՞վ կրնայ համարձակիլ եւ ըսել Թէ նոյն Ընգղիական հաղորդակցուԹիւնն ունի հաւատոյ վարդապետուԹեան կարգաւորեալ բովանդակուԹիւն մը, որուն մէջ ամէնքն ալ միաբան ըլլան:

Չեմ խօսիր այս կամ այն աւետարանական անտարբեր կողմնակցուԹիւններուն, բարձր եկեղեցւոյն կամ անոր մէջ Ոքսֆըրտեան շարժման վրայ. բայց եւ այնպէս նոյն անգղիական եկեղեցին բոլորը մէկանց իրարու մէկ զանգուած մ'անելով՝ կ'ուսուցանէ՞, կ'աւանդէ՞ արդեօք հաստատուն վարդապետուԹիւն մը, Թէ մեր հինոյ կաԹողիկէ եկեղեցին, Թէ Հռոմէական եկեղեցին անոր մասն է, Թէ նաեւ յունական եկեղեցին ալ նոյնպէս է, Թէ Սկովտիայի քահանայականուԹիւնն անոր մէկ ճիւղն է, Թէ անգղիական եկեղեցին անսխալ է, Թէ ընդհանուր ժողովքները կրնան սխալիլ, Թէ բովանդակ եկեղեցին կը սխալի՞, Թէ կրնա՞յ ստուԹիւնն Աստուածային ճշմարտուԹեան տեղ տարվեցընել: Ընգղիական եկեղեցւոյն մէջ ամէն մէկը կրնայ աս հարցմունքներուն այնպէս պատասխան տալ՝ ինչպէս որ իր խելքին կը փչէ եւ կամ ամենեւին պատասխան չտար: Բայց ամէնքն ալ ատէպ կը կրկնեն. «Կը հաւատամ ես սուրբ կաԹողիկէ եկեղեցւոյ»: Սակայն ի՞նչպէս կրնան հաւատալ անոր՝ զորն որ ամենեւին չեն գիտեր:

Սուրբ մկրտուԹեան զօրուԹեան նկատմամբ, միԹէ անգղիական պրոտեստան եկեղեցւոյն երկու մեծ մասերն անդադար ձեռքերնին զէնք՝ իրարու հետ չե՞ն կռուիր աս վարդապետուԹեան վրայ, երկու կողմն ալ ծուռ եւ Թիւր գաղափարներով տոգորուած ըլլալով բառերուն պարզ նշանակուԹեան վրայ ալ:

Բայց երեւակայեցէք մէկ մը, որ վերջին հակաճառուԹիւնները մկրտուԹեան վրայ ըլլալու տեղ՝ ամէ-

նասուրբ հաղորդութեան օրպիսութեան վրայ եղած ըլլային։ Եր զարհուրի մարդուս հոգին՝ մինակ միտքը բերելով այն հայհոյութիւնները՝ որ պիտի ըսուէին, եւ այն անհաւատութիւնն աս սուրբ խորհրդոյն վրայ, որ անոնց մտաց մէջ արմատացած պիտ՚որ երեւար։ Դրոշմէն, քահանայական կարգէն, խորհրդական արձակումէն յառաջ եկած արդիւնքները թողունք․ բայց չկայ Անգղիայի մէջ գիւղականաց ժողովրդապետութիւն մը՝ որուն անդամները մէկտեղ ժողված ատեն՝ վերը յիշուած խնդրոց կամ անոնց մէկ մասին առաջարկութիւնը՝ կռուոյ եւ երկպառակութեան նիւթ չըլլայ։

Բայց կայ մանաւանդ ուրիշ բան մ՚ալ՝ որ ուղղակի կը ցուցընէ անոնց ամենուն սիրտը, որոնք հոգաբարձութիւն մը յանձն առած են ուրիշներուն հոգւոյը, եւ ասիկայ պէտք է որ իրենց սրտին մէջ օր օրուան վրայ կսկծագին վէրքերն աւելցընէ՝ տեսնելով որ նոյն անգղիական եկեղեցին Նորոգութեան առաջին ժամանակներէն վեր՝ մերժած ու ջնջած է ապաշխարութեան հրահանգը, զորն որ բոլոր աշխարհք ընդունած է եւ կը պահէ։ Եւ աս ապաշխարութեան տեղ ի՞նչ արդեօք դրած է։ Ա՜հ, միթէ իր որդիքն ամփոփելով եւ տարիներով պարտաւորելի՞ն պիտ՚որ մեղք մեղաց վրայ դիզելու, եւ իրենք իրենցմէ՞ պիտի դառնան կատարելութեան եւ ի հաղորդակցութիւն եկեղեցւոյ։ Եւ կամ թէ մեղաց մէջ պիտ՚որ շարունակե՞ն մինչեւ մահուան անկողինը, պարզապէս Աստուծոյ ներողութեան ապաւինելով։ Բայց արդէն նոյն իսկ առողջութեան ատեն ի՞նչ կապ միութեան կայ հովուին եւ իր հօտին մէջ։ Հովիւն իր ձեռքն ի՞նչ հնարք ունի իր ժողովրդականաց խղճմտանքին վստահութիւնն իրեն ձգելու, որպէս զի անով իրենց գաղտնի վէրքերը բժշկէ։ Ո՞ր կանոնին պիտի հետեւի մկրտութենէ ետքը գործուած մեղքերուն համար։ Եւ այսպիսի երեւելի խնդիր մը՝ որուն ամէն օր ամէն ժամանակ հարկաւորութիւն ունի եկեղեցւոյ պաշտօնեայ մը, դեռ որոշուած է անգղիականութեան

մէջ։ Պաշտօնէից ամէն մէկը կը պարտաւորի ժողովրդոց ցուցընել իրենց հոգւոյն փրկութեան ճամբան, տալով սորվեցընել, չափահասներուն յիշեցընել այն առաւելութիւններն ու պարտքերը՝ զորոնք ունի մկրտուած անձ մը, եւ թէ ինչպէս կը պարտաւորին ամէնքն ալ ապաշխարութեան դիմել մեղաց մէջ իյնալէն ետքը։ Կը պարտաւորին դարձեալ հոգեւարներուն եւ անօրէնութեանց բեռան տակ ճնշուած մեղաւորներուն անկողնոյն քով կենալ. բայց այսպիսի ատեն ո՞ր կողմը պիտի բռնեն, պիտի լսե՞ն անոնց խոստովանութիւնը, թէ պիտի հրամայեն որ միայն Աստուծոյ խոստովանին. պիտի տա՞ն անոնց արձակում, թէ պիտի համոզընեն որ Աստուած միայն ինք իրմէ եւ ոչ թէ իր պաշտօնէից միջնորդութեամբ մեղքերնին կը թողու։ Ամէն մէկն իր անձնական հաւատքին համաձայն պիտի պատասխանէ այս հարցումներուն. բայց մեղաւորը կը մեռնի։

Անգղիական եպիսկոպոսները կու տա՞ն իշխանութիւն խորհրդական խոստովանութեան, թէ երբոր աս բանիս վրայ կը հարցուին, երկդիմի խօսքերով փախուստ կը փնտռեն[1]։

Եւ եթէ անցնինք առաքելական յաջորդութեան վաւերականութեան վրայ մտածելու, միթէ ասիկայ անգղիական եկեղեցին կ'ընդունի եւ կը խոստովանի՞, թէ իբրեւ պարզ վիճաբանական խնդիր մ'ըմբռնած է։ Դեռ շատ ատեն չէ՝ որ եպիսկոպոս մը հանդիսական պարագայի մը մէջ, ուր՝ որչափ կը յիշեմ՝ ներկայ էին անգղիական - եկեղեցական նուիրապետութեան առաջին պատուաւոր անձինք, Ս. Պօղոսի մայր եկեղեցւոյն մէջ ժողովրդեան քարոզելու ատեն, զօրաւոր խօսքերով բոլորովին զանիկայ կ'ուրանար. իսկ ասոր հետեւութիւնն ուրիշ բան չեղաւ, բայց եթէ՝ որ այն խօսակցութիւնը տպագրել տալու չխնդրեցին։ Սակայն կարելի է որ ոմանք այն վաւերականութեան՝ եկեղեցւոյ օգտին համար կարեւորութիւն մը տան։

1 Այսպիսի դէպքեր մատենագրին ծանօթութեան հասած են։

Մ՛իթէ ամէնքն ալ աս կարծեաց վրայ չե՞ն, որ աղօթից հասարակաց գիրքը մէկ վախճան մը կը դիտէ, եւ (անգղիական սահմանադրութեան) Լթ. յօդուածները՝ անոր ներհական վախճան մը: Կաթողիկէական հոգւոյ մնացորդները, որ ասդին անդին այն չարեաց մէջ դեռ կը պլլան, խառնուած են թունաւոր հոգւով ՚Նորոգութեան՝ որ անոնց մէջ կը փայլատակէ, եւ է ծանր վիճաբանութիւններու նիւթ մը, թէ՝ ան երկուքին մէջէն որը զմէկալը պիտի մեկնէ. բայց թագաւորին գաղտնի խորհուրդը կ'երեւայ որ կշռոյն թաթին վրայ ի շնորհս Լթ. յօդուածներուն գահավէժ թաւալում մը տուած ըլլայ: Աւստի եւ յայտնի կը տեսնուի, որ ՚Նորոգութեան ատեն շինուած ու տաշուած այն ամէն վարդապետութեանց դիզումը, մինչեւ հիմակ Անգղիական եկեղեցւոյն մէջ մէկ անհնարին խառնակութեան վիճակի մը մէջ կը գտնուի: Որչափ որ դեռ աղէկ բան մ'ունի, այն ամենայն Հռոմէական եկեղեցիէն անփոփոխ առածն է. ուր որ փոփոխելու փորձն ըրին, հոն չեկըրնար անուն մը տրուիլ թէ ի՞նչ էր եղածը՝ բայց եթէ ստուգիւ մէկ անորոշ, երկդիմի, բազմակերպարան (եւ իրաւցնէ անօրինաւոր) բան մը, զորն որ Աւետարանականն ու Անգղիական-Կաթողիկէականը՝ իւրաքանչիւր իր խելաց համաձայն իր կողմը կը քաշէ: Բովանդակ խորհըրդոց կարգաւորութիւնը բոլորովին փոխուած է, եւ շատ ժամանակ չէ՝ թագաւորական հրամանագիր մը հրատարակուեցաւ, որն որ կղերին իշխանութիւն կու տայ սրբեցքներու իրարու հակառակ վարդապետութիւններ խորհրդոց նկատմամբ:

Ու՛ ասիկայ կրնա՞յ արդեօք ըլլալ Աստուծոյ ճըշմարտութիւնը: Ուրեմն Տէրն մեր անո՞ր համար հաստատեց եկեղեցի մը, որպէս զի մարդիկ ասդին անդին զարնուի՞ն՝ իրարու հակառակ վարդապետութեանց հողմերէն: Բայց ես հոս կը կենամ ալ յառաջ երթալէն ասանկ նիւթի մը մէջ, որուն վրայ կրնայ մարդ հատորներ գրել, գոհ ըլլալով իմ դրած վախճանովս՝ այն֊

պիսի մահաբեր սկզբունքներու. միայն մէկ քանի հե-տեւութիւնները շօշափելու ։

Եկեղեցւոյ մնացած մասին հետ հաղորդակցու-թեան նկատմամբ, Թագաւորական գերագոյնութիւնն ի՛նչ ըրած ունի անոր համար. չէ թէ միայն իրօք պա-տռեց այն հաղորդակցութիւնը, այլ նաեւ բոլորովին անկարելի ալ ըրաւ ։ Եւ թէպէտ ստոյգ է որ ուրիշ հաղորդակցութիւններն ալ դժբախտութեամբ հեր-ձուածողական են, իրօք գլխոյն միութենէ բաժնուած ըլլալովին, բայց անոնք գոնէ հերձուածողական սկզբան մը վրայ շինուած չեն, եւ ոչ այնպիսի սկիզբ մը սրբա-ցուցած են ։ Յոյնք եւ Հայք կրնան մէկ քանի ժամու մէջ նորէն ընդունիլ Պետրոսի գլխաւորութիւնը ։

Նոյն իսկ Միաբնակք կը պահեն նուիրապետու-թեան սկզբունքը իր լրութեան մէջ, եւ նաեւ այն նուաստութեան ու անպատուութեան փոսին մէջ՝ որ ինկած են, դեռ յաթոռն Ս. Մարկոսի միութեան կեդրոնը կը ճանչնան, եւ կրնան երբոր ըլլայ՝ յիշել որ Ս. Մարկոս Ս. Պետրոսէն խրկուեցաւ ։ Բայց անգղիա-կանութիւնն իբրեւ իր սեպհական հիման վրայ՝ այնպի-սի սկզբան մը վրայ յենած է, որ ուղղակի Ս. Պետրո-սի գլխաւորութիւնը կ'ուրանայ, սկիզբն բաժանման եւ հերձուածոյ, որ եկեղեցւոյ միութիւնը կը սահմանէ կը սեղմէ ամէն մէկ եպիսկոպոսի վրայ, կամ թէ ճշդագոյն ըսելու համար՝ զամէնքը թէ եպիսկոպոսները եւ թէ հօտերը մէյմէկ գերի կը շինէ քաղաքական իշխանու-թեան ։ Այնպէս որ՝ եթէ ամէն տեղ աս սկզբան համա-ձայն գործուելու ըլլար, այնչափ քրիստոնէութիւններ պիտի ըլլային, որչափ քրիստոնեայ ազգեր կը գտնուին ։ Բայց աւչափս բաւական է բաժանմանց վրայ, որ այն-չափ յուսահատական նեղութիւն ու անձկութիւն մը կը ձգէ սրտին վրայ, մինչեւ որ վերջապէս որոշում ը-նել կու տայ թէ ուրեմն երկրիս վրայ եւ ոչ եկեղեցի մը կը գտնուի. անհրաժարելի հետեւութիւն ամէն Անգղիականի՝ որն որ իր սկզբան համաձայն կը մտածէ ։

Միթէ չե՞ն լսուիր ամէն օր իրենց մէջ աս խօսքերս թէ Հռոմէական, Յունական, Անգղիական եկեղեցին, թէպէտ չեն խոստովանիր մի եւ նոյն դաւանութիւնը եւ ոչ ալ մի եւ նոյն կառավարութեամբ միացած են, ի վերայ այսր ամենայնի մի միայն եկեղեցի կը կացուցանեն, որն որ ըսել է թէ հոգեւոր ընկերութիւններ իրարու դէմ նզովքի կայծակներ արձակելով, կը կերպարանեն այն միութիւնը մարմնոյ եւ այն միութիւնը հոգւոյ, որ մէկ Աստուած եւ մէկ հաւատք միայն ունի: Իսկ երբոր առանձնական մէկու մը խղճմտանքը հարցընելու ըլլայ թէ ի՞նչ պէտք եմ ես հաւատալ՝ իբրեւ հաւատոյ վարդապետութիւն՝ այն նիւթերուն մէջ, որոնց վրայ աս ճոխութիւններն իրարու հետ անմիաբան են. ի՞նչ պատասխան պէտք եմ տալ: Աս բանիս միտ դրուելու ըլլայ, ամէն մտածող մարդու աչքին առջեւ կու գայ որ աս է անգղիականութեան վերջին հետեւանքը՝ թէ հիմակուան ատեն երկրիս վրայ չկայ վարդապետ մը՝ որուն հաւատալու եւ հնազանդելու պարտաւոր ըլլանք: Իսկ ասիկայ ուրիշ բան չէ՝ բայց եթէ զուտ անհատապաշտութիւն: Կը խնդրեմ որ աս բանս մտածեն անոնք՝ որոնք կ'երեւայ թէ որոշած են "հաւատարմութիւն" ըսածնին՝ Անգղիական եկեղեցւոյ փոխանակել, կաթողիկէ հաւատոյ պահպանութեան համար, որուն անուամբ ուրիշ ատեն մեծամեծ բաներ կը խօսէին:

Բայց հիմայ ժամանակն է ուրիշ կողմ դառնալու: Արդեօք աստուածային գլխաւորութիւնը հասա՞ւ իր վախճանին, որուն համար հաստատուեցաւ: Պահե՞ց հաւատոյ եւ հաղորդակցութեան միութիւնը: Հաւատոյ նկատմամբ, դարձէք ո՛ր կողմ որ կ'ուզէք՝ ո՛ւր եւ ո՛րչափ որ կը տարածի այն հաղորդակցութիւնը՝ որն որ հիմնուած է Ս. Պետրոսի աթոռին վրայ, ո՛ւր որ ըլլայ՝ երբեք չէք կրնար գտնել դաւանութեան տարբերութիւն մը վարդապետութեան վերը յիշուած երեք գլուխներուն նկատմամբ: Ոչ կղերին եւ ոչ աշխարհականաց մէջ տարաձայնութիւն մը կայ Երրորդութեան,

պիսի մահաբեր սկզբունքներու. միայն մէկ քանի հետեւութիւնները շօշափելու։

Եկեղեցւոյ մնացած մասին հետ հաղորդակցութեան նկատմամբ, Թագաւորական գերագունութիւնն ի՞նչ ըրած ունի անոր համար. չէ թէ միայն իրօք պատռեց այն հաղորդակցութիւնը, այլ նաեւ բոլորովին անկարելի ալ ըրաւ։ Եւ թէպէտ ստոյգ է որ ուրիշ հաղորդակցութիւններն ալ դժբախտութեամբ հերձուածողական են, իրօք գլխոյն միութենէ բաժնուած ըլլալովնին, բայց անոնք գոնէ հերձուածողական սկզբան մը վրայ շինուած չեն, եւ ոչ այնպիսի սկիզբ մը սրբացուցած են։ Յոյնք եւ Հայք կրնան մէկ քանի ժամու մէջ նորէն ընդունիլ Պետրոսի գլխաւորութիւնը։

Նոյն իսկ Միաբնակք կը պահեն նուիրապետութեան սկզբունքը իր լրութեան մէջ, եւ նաեւ այն նուաստութեան ու անպատուութեան փոսին մէջ՝ որ ինկած են, դեռ յաթոռն Ս. Մարկոսի միութեան կեդրոնը կը ճանչնան, եւ կրնան երբոր ըլլայ՝ յիշել որ Ս. Մարկոս Ս. Պետրոսէն խրկուեցաւ։ Բայց անգղիականութիւնն իբրեւ իր սեպհական հիման վրայ՝ այնպիսի սկզբան մը վրայ յենած է, որ ուղղակի Ս. Պետրոսի գլխաւորութիւնը կ'ուրանայ, սկիզբն բաժանման եւ հերձուածոյ, որ եկեղեցւոյ միութիւնը կը սահմանէ կը սեղմէ ամէն մէկ եպիսկոպոսի վրայ, կամ թէ ճշդագոյն ըսելու համար՝ զամէնքը թէ եպիսկոպոսները եւ թէ հօտերը մէկմէկ գերի կը շինէ քաղաքական իշխանութեան։ Այնպէս որ՝ եթէ ամէն տեղ աս սկզբան համաձայն գործուելու ըլլար, այնչափ քրիստոնէութիւններ պիտի ըլլային, որչափ քրիստոնեայ ազգեր կը գտնուին։ Բայց ասչափս բաւական է բաժանմանց վրայ, որ այնչափ յուսահատական նեղութիւն ու անձկութիւն մը կը ձգէ սրտին վրայ, մինչեւ որ վերջապէս որոշում ընել կու տայ թէ ուրեմն երկրիս վրայ եւ ոչ եկեղեցի մը կը գտնուի. անհրաժարելի հետեւութիւն ամէն Անգղիականի՝ որն որ իր սկզբան համաձայն կը մտածէ։

Մի՞թէ չե՞ն լսեր ամէն օր իրենց մէջ աս խօսքերս թէ Հռոմէական, Յունական, Անգղիական եկեղեցին, թէպէտ չեն խոստովանիր մի եւ նոյն դաւանութիւնը եւ ոչ ալ մի եւ նոյն կառավարութեամբ միացած են, ի վերայ այսր ամենայնի մի միայն եկեղեցի կը կացուցանեն, որն որ ըսել է թէ հոգեւոր ընկերութիւններ իրարու դէմ նզովքի կայծակներ արձակելով, կը կերպարանեն այն միութիւնը մարմնոյ եւ այն միութիւնը հոգւոյ, որ մէկ Աստուած եւ մէկ հաւատք միայն ունի: Ու երբոր առանձնական մէկու մը խղճմտանքը հարցընելու ըլլայ թէ ի՞նչ պէտք եմ ես հաւատալ՝ իբրեւ հաւատոյ վարդապետութիւն՝ այն նիւթերուն մէջ, որոնց վրայ աս ճոխութիւններն իրարու հետ անմիաբան են. ի՞նչ պատասխան պէտք եմ տալ: Աս բանիս միտ դրուելու ըլլայ, ամէն մտածող մարդու աչքին առջեւ կու գայ որ աս է անգղիականութեան վերջին հետեւանքը՝ թէ հիմակուան ատեն երկրիս վրայ չկայ վարդապետ մը՝ որուն հաւատալու եւ հնազանդելու պարտաւոր ըլլանք: Ու ասիկայ ուրիշ բան չէ՝ բայց եթէ զուտ անհաւատութիւն: Կը խնդրեմ որ աս բանս մտածեն անոնք՝ որոնք կ՚երեւայ թէ որոշած են "հաւատալմութիւն" ըսածնին՝ Անգղիական եկեղեցւոյ փոխանակել, կաթողիկէ հաւատոյ պահպանութեան համար, որուն անուամբ ուրիշ ամէն մեծամեծ բաներ կը խօսէին:

Բայց հիմայ ժամանակն է ուրիշ կողմ դառնալու: Արդեօք աստուածային գլխաւորութիւնը հասա՞ւ իր վախճանին, որուն համար հաստատուեցաւ: Պահե՞ց հաւատոյ եւ հաղորդակցութեան միութիւնը: Հաւատոյ նկատմամբ, դարձէք ո՛ր կողմ որ կ՚ուզէք՝ ո՛ւր եւ ո՛րչափ որ կը տարածի այն հաղորդակցութիւնը՝ որն որ հիմնուած է Ս. Պետրոսի աթոռին վրայ, ո՛ւր որ ըլլայ՝ երբեք չէք կրնար գտնել դաւանութեան տարբերութիւն մը վարդապետութեան վերը յիշուած երեք գլուխներուն նկատմամբ: Ոչ կղերին եւ ոչ աշխարհականաց մէջ տարաձայնութիւն մը կայ Երրորդութեան,

Մարդեղութեան եւ Եկեղեցւոյ վարդապետութեան վրայ, եւ ոչ այլ անոնցմէ յառաջ եկած հետեւութիւններուն վրայ։ Հասարակ ժողովուրդն իր առանձին գործքերուն զբաղած՝ ամենեւին տարակոյս մը չունի ոչ վարդապետութեան նկատմամբ եւ ոչ այլ կասկած մը տղոց կրթութեան, մոլորելոց հովուութեան, հոգեվարներու մխիթարութեան վրայ։ Ամէն կողմ եպիսկոպոսական ժողովներ կը գումարին, եւ խորհուրդներուն որոշումներն ու առաջարկութիւնները կը խրկուին հասարակաց ամենուն Հօրը, առանց յամառ հակառակութեան, առանց դաւանութեան փոփոխութեան՝ երկրիս մէկ ծայրէն միւսը ծայրը։ Փրկչական կենդանարար մարմինը չքեղ հանդիսութեամբ հրապարակական ճամբաներու մէջէն կը տարուի, եւ ամէն սիրտ կ'ամբառնայ կը վերանայ առ Տէրն փրկութեան, ամէն ծունր կը կրկնի երկրպագութեան կ'իջնայ, Քրիստոսի իրական ներկայութեան հանդիսական չքեղ զգածմունքը կը լեցնէ մեծ եկեղեցին, եւ իրեն կը գրաւէ կը յափշտակէ ժողովելոց սիրտը։ Իսկ առաւել քան զայս՝ ի Մարմնին Քրիստոսի կ'այրին եւ կ'աճին սուրբերը, արանց ու կանանց ընկերութիւններ անով կը զօրանան մահացուցման ու սիրոյ աշխատութեանց մէջ։ Անգղիական հաղորդակցութեան մէջ մերկ սեղանն ու դատարկ տապանակը կ'ըմբռնէք իբրեւ նշանակ մը, եւ անով կ'ունենաք միայն արտաքին վայելչութիւն մը, յարգութիւն մը եւ կարգ մը, որ աս աշխարհքիս մէջ տիրողներն են։ Առաջինին (Հռոմէական հաղորդակցութեան) մէջ կը տեսնէք ժողովուրդ մը երկրպագութեան մէջ ընկղմած, խնկոց ամպ մը, Աստուած ներկայ, եւ անով նաեւ աղքատութեան, ժուժկալութեան, կրօնական ընկերութիւններ՝ որոնք հանդերձեալ աշխարհքին զօրութիւններն են. Անգղիական հաղորդակցութեան նոյն իսկ կղերին մէջ վէճմունք, բաժանմունք, անտարբերութիւն եւ հաւատոյ ամէն վարդապետութեան թերահաւատութիւն։ Առաջինին մէջ աղէկ մտածուած

եւ հաստատուն կարգաւորութիւն մը ամէն հաւատացեալներէն ընդունուած, որն որ զամէնքն ալ կ'ընդգրկէ եւ կ'ամրացընէ խանձարուրէն մինչեւ գերեզման։

Աշխարհքիս ամէն կողման հաղորդակցութեան նկատմամբ, Կաթողիկէականք մեր օրերին աւելի պատշաճութեամբ կրնան ըսել, քան թէ ան ատեններ՝ երբ որ կը գրէր Ս. Օգոստինոս թէ "Կաթողիկէ եկեղեցւոյ ծոցը կը պահէ զիս ազգաց ու ժողովրդոց հաւանութիւնը, կը պահէ՝ հրաշքներով սկսած, յուսով սնած, սիրով աճած, հնութեամբ հաստատուած ճոխութիւնը։ Կը պահէ եպիսկոպոսաց յաջորդութիւնը՝ մինչեւ հիմակուան եպիսկոպոսութիւնը, նոյն իսկ Պետրոսի աթոռը՝ որուն Տէրն մեր իր յարութենէ ետքը իր հօտին ոչխարներն արածելու յանձնեց։ Ի վախճանի կը պահէ զիս նոյն իսկ կաթուղիկէ անունը, զորն որ այնչափ հերետիկոսութեանց մէջ միայն եկեղեցին առացած է, այնպէս որ թէպէտ հերետիկոսք ալ ուզեն կաթողիկեայ անուանուիլ, այսու ամենայնիւ թէ որ օտարական մը հարցնելու ըլլայ թէ ո՞ւր է Կաթուղիկէականաց ժողովատեղը, ոչ ոք կը համարձակի իր եկեղեցին ցուցընել,,: Արդեօք ասիկայ տասնուչորս դար յառաջ գրուած մարգարէութիւն մը չէ՞. այսու ամենայնիւ նոյնպէս ստոյգ են հետեւեալներն ալ. "Ես քրիստոնեայ անուան այսպիսի եւ այսչափ քաղցր կապերը՝ իրաւամբ սերտ կը կապեն հաւատացեալ մը կաթուղիկէ եկեղեցւոյն հետ, թէ եւ մեր բնական հասողութեան յամրութեամբ կամ մեր վարուց անարժանութեամբը ճշմարտութիւնը դեռ չերեւայ մեզի իր լրութեամբ։ Բայց ի ձեզ (ի Մանիքեցիս) ուր այսպիսի բաներէն եւ ոչ մէկը կը գտնուի՝ որ զիս հրաւիրէ եւ բռնէ, միայն կը հնչէ եւ կը լսուի ճշմարտութեան խոստումը՝ որն որ, ո՛ւր որ անանկ յայտնի կ'երեւայ՝ որ ամենեւին տարակուսի տակ չ'իյնար, ստուգիւ նախադասելի է՝ քան աս ամէն բաները, որոնց համար կապուած եմ կաթողիկէ կրօնին մէջ. բայց երբոր միայն կը խոս-

տայցուի ու չեցուցուիր, ոչ ով կրնայ զիս շարժել ան հաւատքէն՝ որն որ այնչափ եւ այնպիսի հանգոյցներով կը կապէ հոգիս քրիստոնէական կրօնքին հետ,,:

Վերջ խօսքով բոլոր մէկանց ամփոփելու համար, ես իմ կողմանէս յառաջ բերի Ս. Գրոց ցոյցերը Ս. Պետրոսի գլխաւորութեան վրայ՝ որ շարունակուած է իր յաջորդներուն մէջ. բայց ո՞ւր են Վիկտորիա Թագուհւոյն քահանայապետութեան համար Ս. Գրքէն ցոյցեր:

Իմ կողմանէս յառաջ բերի նաեւ Ս. Հարց եւ Ժողովներուն ապացոյցները Ս. Պետրոսի գլխաւորութեան վրայ. ո՞ր Հարք, ո՞ր ժողովները կ'ընդունին տէրութեան ժամանակաւոր գերագունութիւնը հաւատոյ եւ եկեղեցւոյ բարեկարգութիւններուն վրայ:

Յառաջ բերէ ո՛վ որ գիտէ, եւ ան ատեն մէկը մէկալին հետ կը բաղդատենք:

Միթէ Ս. Գրոց մէջ քի՞չ խօսուած է ի նպաստ գլխաւորութեան Ս. Պետրոսի: Ո՞րչափ բան ըսուած է նոյն իսկ առաքելութեան եւ եպիսկոպոսութեան վրայ. Աստուծոյ խօսքերը քիչ են, բայց կը ստեղծեն ու կը պահպանեն: Գրէք բոլոր աշխարհքիս ծանրութիւնն ան խօսքերուն վրայ՝ զորոնք ինք ուղղեց Պետրոսի, եւ ահաւասիկ այն ամէն ծանրութիւնը կը վերցընեն: Բայց թագաւորական գերագունութեան նկատմամբ ամենեւին չէր կրնար բան մը յառաջ բերել Ս. Գրքէն, եւ ոչ իսկ բառ մը, բայց եթէ գուցէ կ'ուզէք աս խօսքերը. "Տուք զկայսերն՝ կայսեր, եւ զԱստուծոյն՝ Աստուծոյ,,:

Իսկ Աւանդութեան նկատմամբ, Հենրիկոս եւ Եղիսաբեթ տասնուհինգ դարերու ընթացքին հակառակեցան: Խլեցին զանիկայ՝ որն որ գրեթէ հազար տարի իրենց եկեղեցւոյն արմատն եղած էր. բաժնուեցան Պետրոսի աթոռէն եւ բովանդակ թագաւորութեան մէջ անվախճան երկպառակութիւններ, հերձուածներ, բաժանումն ու անտարբերութիւն սերմանեցին: Քանդեցին այն կրօնական միութիւնը՝ որն որ ժողովրդեան մը

ամէն բանէն աւելի պատուականագոյն ժառանգութիւնն է։ Ասիկայ կարող եղան ընել, ասիկայ իրենց թողլ տրուեցաւ ընելու. եւ հիմակ ալ շատ եպիսկոպոսներ, բազմագոյն եւս ժողովուրդներ՝ որ ժամանակաւ հնազանդ էին Ս. Պետրոսի, բայց ժամանակաւոր հպատակք Հենրիկոսի ու Եղիսաբեթի յաջորդներուն, կը բաղկացընեն այն հաղորդակցութիւնը՝ որուն որ անոնց վրայ ալ նոյն հոգեւոր գերագահութիւնը կը տարածէ. ուրոնք նոյնպէս կտոր կտոր բաժնուած՝ մկրտութեան վարդապետութիւնը կ՚ուրանան, որովհետեւ այսպէս հրամցուած է իրենց այն հոգեւոր գերագոյն ծոխութենէն։ Սոսկալի տեսիլ մըն էր հերձուածոց եւ հերետիկոսութեան՝ զորն որ տեսաւ բանաստեղծն երբոր կ՚երգէր.

Չըհերձնու իսկ այնպէս կարաս
Մինչ ըզվերին մասն յատակին
Կամ թէ զերիթ այնըր բառնաս,
Որպէս զայր ես տեսի ընաւին
Հերձ ի ծնօտից մինչ ի յետոյս։
Ընդերք աղեաց նորա կային
Կախեալ զմիջացն ի խոնարհ կոյս,
Երեւէին խորոշք սրտին
Եւ տխուր պարկն յայտ յանդիման[1]։

Կրնայի՞ արդեօք կարծել որ աս ժամս ցնորքն ինծի ամենաստեղծ Արարչէն ուսուցիչ խրկուած ըլլայ։ Ասիկա՞յ ըլլայ մատակարար իր խորհրդոց, ասիկա՞յ սիւն եւ հաստատութիւն ճշմարտութեան։

Որո՞ւն ուրեմն դառնամ, թէ ոչ՝ քեզի, փառաւոր Հռոմէական եկեղեցի, որուն Աստուած առատութեամբ շնորհեց կրկին իշխանութիւն կառավարելու եւ սորվեցընելու։ Քուկդ են Պետրոսի բանալիները, քուկդ նաեւ Պօղոսի երկսայրի սուրը։ Անոնք իրենց արեամբ զքեզ ծիրանեգոյն ներկեցին, եւ զքեզ իրենց վարդապետութեամբ բեղմնաւորեցին։ Շատ ուշ գտայ զքեզ, զքեզ՝ որ իմ մանկութեանս վրայ պէտք էիր հսկել այն-

1 Տանդէ, Դժոխք. 28։

պիտի սիրով, եւ դրոշմել քու քաղցր ու ատակալի կնիքդ իմ երկրպագութեանս վրայ։ Դուն պէտք էիր ինծի ուղեկից ըլլալ ճշմարտութեան ամենապայծառ գաւառներուն մէջ եւ զիս հեռու բռնել տարակոյսներէ ու երկիւղալից տարբիններու երկայն հոգեվարութենէ։ Այսու ամենայնիւ դեռ զքեզ չճանչցած՝ քու վրադ կը զմայլէի։ Դեռ չէի մեծարեր քու իրաւունքներդ, սակայն եւ այնպէս կը զգայի քու աներկիւղ ոգւոյդ բարձրութիւնը՝ որն որ ամէն բան յանձն կ'առնէր թողուլ լքանել՝ քան թէ Քրիստոսի ժառանգութիւնը կորսնցընել։ Կը զգայի ան գերբնական խնամութիւնը՝ որուն միջնորդութեամբ "Դորբ որ սա երկրիս թագաւորութիւնները՝ երբեմն սա աշխարհակալը, երբեմն ան օրէնսդիրը, երբեմն Կարոլոս Մեծ մը, երբեմն Փիլիպպոս Օգոստոս մը կ'ունենային, միայն Հռոմայի մէջ դարերով կը տեւէր հոգեւոր կառավար մը, որն որ Անգլիայի վերարկուաւ շարունակ խորտակելով եռացած ալիքները, անոնց մէջէն ապահովութեամբ ճամբայ կը բանար դէպ ի ցամաք եզերքը"[1]։ Եւ հիմայ կը տեսնեմ որ Անգլիայի Աստուածը քեզի հետ է։ Ո՛վ ցանկալիդ. այնչափ երկայն ատենէ վեր, ո՜հ, ինչպէս ուշ կրցայ հասնիլ, միայն թէ շնորհէր ինծի Աստուած՝ որ ասկից ետքը քու պաշտպանութեանդ տակ հանդարտութեամբ անցընեմ սա դժնդակ կենաց մնացորդը, եւ ոչ ալ սա փարախէն դուրս թափառիմ. այլ մնալով միշտ մերձ միամ առաջին հովուին աթոռին քով, որն որ ըլլայ ինծի "Ընդարձակ քարանձաւի ստուեր նեղութեան եւ տառապանաց երկրիս վրայ»։

1 Անգղիական Եկեղեցի օրէնքը, եւ այլն. 394։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ ԹԱՐԳՄԱՆՉԻՆ



## ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

## Ի ՎԵՐԱՅ ԳԼԽԱՒՈՐՈՒԹԵԱՆ

## ՍՐԲՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ

## ԵՒ

## ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԱՑ ՀՌՈՄԱՅ

# ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ

## Ի ՎԵՐԱՅ ԳԼԽԱՒՈՐՈՒԹԵԱՆ

## ՍՐԲՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ



## ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԱՑ ՀՌՈՄԱՅ

ՔՐԻՍՏՈՍ Յիսուս Փրկիչ աշխարհի երբ որ իր աստուածային առաքումը տիեզերաց առջեւ յայտնել կ'ուզէր, կը հնազանդեցընէր իր հրամանաց աշխարհքիս տարերքը, ու անթիւ անհամար հրաշքներ կը գործէր մարդկան սիրտը շարժելու եւ իր շնորհաց գործակից ըլլողներն արքայութեան ժառանգութեան կը պատրաստէր։ Բայց երբ որ կ'ուզէր իր ըստ մարմնոյ ազդակցաց իր երկնաւոր առաքումն ու աստուածային վարդապետութիւնն ընդունելի ընել եւ համոզցընել, նոյն իսկ աստուածային իմաստութիւնը կը զիջանէր մարդկային սրտի բերման եւ իրենց նախահարց ու մարգարէից խօսքերուն ու գուշակութիւններուն անոնց միտքը կը բանար։ Ալ պատմէ աւետարանիչը [1] թէ երբ որ եկաւ Նազարեթ, իր սնընդեան քաղաքը, ըստ սովորութեան մտաւ ժողովրդանոցին մէջ քարոզելու եւ սորվեցընելու. եւ երբ որ անոնց նուիրական մատեանը ձեռքն առաւ կարդալու եւ մեկնելու, (աստուածային տրամադրութեամբ) բացուեցաւ մարգարէին այն խօսքը՝ որ կ'ըսէ. “Հոգի Տեառն իմ վրաս է, եւ ասոր համար ալ զիս օծեց ու խրկեց՝ աւետարանն աղքատներուն քարոզելու, զղջացեալ սրտերը բժշկելու, գերիներուն թողութիւն,

1 Ղուկ. Դ. 16 — 22։

տացուի ու չէցուցուիր, ոչ ալ կրնայ զիս շարժել ան հաւատքէն՝ որն որ այնչափ եւ այնպիսի հանգոյցներով կը կապէ հոգիս քրիստոնէական կրօնին հետ„:

Քիչ խօսքով բոլոր մէկանց ամփոփելու համար, ես իմ կողմանէս յառաջ բերի Ս. Գրոց ցոյցերը Ս. Պետրոսի գլխաւորութեան վրայ՝ որ շարունակուած է իր յաջորդներուն մէջ. բայց ո՞ւր են Վիկտորիա Թագուհւոյն քահանայապետութեան համար Ս. Գրքէն ցոյցեր:

Իմ կողմանէս յառաջ բերի նաեւ Ս. Հարց եւ ժողովներուն ապացոյցները Ս. Պետրոսի գլխաւորութեան վրայ. ո՞ր Հարք, ո՞ր ժողովները կ՚ընդունին տէրութեան ժամանակաւոր գերագունութիւնը հաւատոյ եւ եկեղեցւոյ բարեկարգութիւններուն վրայ:

Յառաջ բերէ ով որ գիտէ, եւ ան ատեն մէկը մէկալին հետ կը բաղդատենք:

Մի՞թէ Ս. Գրոց մէջ քի՞չ խօսուած է ի նպաստ գլխաւորութեան Ս. Պետրոսի: Ո՞րչափ բան ըսուած է նոյն իսկ առաքելութեան եւ եպիսկոպոսութեան վրայ. Աստուծոյ խօսքերը քիչ են, բայց կը ստեղծեն ու կը պահպանեն: Գրէք բոլոր աշխարհքիս ծանրութիւնն ան խօսքերուն վրայ՝ զորոնք ինք ուղղեց Պետրոսի, եւ ահաւասիկ այն ամէն ծանրութիւնը կը վերցընեն: Բայց թագաւորական գերագունութեան նկատմամբ ամենեւին չէի կրնար բան մը յառաջ բերել Ս. Գրքէն, եւ ոչ իսկ բառ մը, բայց եթէ գուցէ կ՚ուզէք աս խօսքերը. "Տուք զկայսերն՝ կայսեր, եւ զԱստուծոյն՝ Աստուծոյ„:

Իսկ Անգղութեան նկատմամբ, Հենրիկոս եւ Եղիսաբեթ տասնուհինգ դարերու ընթացքին հակառակեցան: Խլեցին զանիկայ՝ որն որ գրեթէ հազար տարի իրենց եկեղեցւոյն արմատն եղած էր. բաժնուեցան Պետրոսի աթոռէն եւ բովանդակ թագաւորութեան մէջ անվախճան երկպառակութիւններ, հերձուածներ, բաժանումն ու անտարբերութիւն սերմանեցին: Քանդեցին այն կրօնական միութիւնը՝ որն որ ժողովրդեան մը

ամէն բանէն աւելի պատուականագոյն ժառանգութիւնն է։ Ասիկայ կարող եղան ընել, ասիկայ իրենց թոյլ տրուեցաւ ընելու. եւ հիմակ ալ շատ եպիսկոպոսներ, բազմագոյն եւս ժողովուրդներ՝ որ ժամանակաւ հնազանդ էին Ս. Պետրոսի, բայց ժամանակաւոր հպատակք Հենրիկոսի ու Եղիսաբեթի յաջորդներուն, կը բաղկացընեն այն հաղորդակցութիւնը՝ որն որ անոնց վրայ ալ նոյն հոգեւոր գերադասնութիւնը կը տարածէ. որոնք նոյնպէս կտոր կտոր բաժնուած՝ մկրտութեան վարդապետութիւնը կ'ուրանան, որովհետեւ այսպէս հրամայուած է իրենց այն հոգեւոր գերագոյն ճոխութենէն։ Ասկայի տեսիլ մըն էր հերձուածոց եւ հերետիկոսութեան՝ զորն որ տեսաւ բանաստեղծն երբոր կ'երգէր.

Չըհերձնու իսկ այնպէս կարաս
Մինչ ըզվերին մասն յատակին
Կամ թէ զերիթ այնըր բառնաս,
Որպէս զայր ես տեսի ընաւին
Հերձ ի ծնօտից մինչ ի յետոյս։
Ընդերք աղեաց նորա կայլին
Կախեալ զմիջացն ի խոնարհ կոյս,
Երեւէին խորոչք սրտին
Եւ տխուր պարկն յայտ յանդիման 1։

Կրնայի՞ արդեօք կարծել որ աս ժանտ ցնորքն ինծի ամենաստեղծ Արարչէն ուսուցիչ խրկուած ըլլայ։ Ասիկա՛յ ըլլայ մատակարար իր խորհրդոց, ասիկա՛յ սիւն եւ հաստատութիւն ճշմարտութեան։

Ուրո՞ւն ուրեմն դառնամ, թէ ոչ՝ քեզի, փառաւո՛ր Հռոմէական եկեղեցի, որուն Աստուած առատութեամբ շնորհեց կրկին իշխանութիւն կառավարելու եւ սորվեցընելու։ Քուկդ են Պետրոսի բանալիները, քուկդ նաեւ Պօղոսի երկսայրի սուրը։ Անոնք իրենց արեամբ զքեզ ծիրանեգոյն ներկեցին, եւ զքեզ իրենց վարդապետութեամբ բեղմնաւորեցին։ Շատ ուշ գտայ զքեզ, զքեզ՝ որ իմ մանկութեանս վրայ պէտք էիր հսկել այն-

1 Դանդէ, Դժոխք. 28։

Եւ դարձեալ.

Շնորհեալ վիմին եկեղեցւոյ,
Զոր պահեցեր ի հոսելոյ,
Եւ կանգնեցեր ի գլորելոյ
Վասն սրտին արտասուելոյ[1]:

Ընծանօթ չեն մեկալ շարականները, զորոնք Հայաստանեայց եկեղեցին եօթը դարէ վեր ամէն տարի կ'երգէ հրապարակաւ, որոնք անտարակոյս մեր Նախնի սրբոց Հայոց անարատ հաւատոց եւ ողջմտութեան անեղծ դրոշմը լսողներուն սիրտը կը տպաւորեն: "Վէմն հաւատոյ, կ'աղաղակէ Հայաստանեայց եկեղեցին, զմայլեալ անմահական բաժակաւն, այսօր բաշխէր ծարաւեաց"[2]: Արդ յայտնի է՝ որ թէպէտ նոյն օրը ամէն առաքեալք անմահական բաժակաւ զմայլեցան, բայց Պետրոս էր՝ որ յանուն ամենեցուն միայն կը խօսէր, ուստի եւ Պետրոս միայն էր "վէմն հաւատոյ" որ "բաշխէր ծարաւեաց" հաւատոյ շնորհքը, եւ իբրեւ եկեղեցւոյ գլուխ՝ տիեզերաց կը քարոզէր նոյն օրը քրիստոնէութեան հրատարակութիւնը: Այսու մտօք է, որ ուրիշ հանդիսաւոր օր մ'ալ "Վէմ հաւատոյ"[3] կը կոչուի Յովհաննու որդին, եւ աս կոչումը Ս. Ներսէս կուտայ իրեն չէ թէ մէկ երկու տեղ, այլ իր ամէն գրուածներուն մէջ՝ ուր տեղ որ առիթ մը կը պատահի[4]: Բայց երբ որ իր գեղեցիկ ողբերգութեանց վերջը հասնելով՝ իր յիշատակարանը կը գրէ, կարծես թէ իր հաւատով վառուած սրտին եռանդն ու շարժումը չկրնալով զսպել, լեցուն բերնով իր խոնարհ սիրտը կը հանդարտեցընէ գրածներուն ուղղութեան վրայ, իբր թէ ըսածն ու գրածը չէ թէ նորաձեւ եւ աննշան էին, այլ Պետրոսի հիման, Պետրոսի անշարժական հաւատքին վրայ շինուած: Ահաւասիկ իր խօսքերը.

1 Երգ յաղագս մեծի ուրբաթ. գիշերին:

2 Տէր երկնից ի Դ. աւուր Պենտակ:

3 Օրհն. յԴ. աւուր Վարդավ:

4 Տես Ս. Ներս. Շնորհ. Բանք չափաւ, էջ 403—469 եւ ուրիշ գրուածներուն մէջ:

Ի գրել բանիւ աստուածական,
Ոտիւք չափել ներտաղական,
Վասն էութեանն անհասական,
Եւ Բանին Հօր մարդեղութեան,
Ոչ նորաձեւ եւ աններշան
Ցինէն չինած առանց հիման.
Այլ է վերայ անշարժական
Վիմին եդեալ սա Կեփայեան 1:

Անցնինք իր յաջորդին: Գրիգոր Դ. Տղայ Ս. Ներսիսի եղբօրորդին, նոյն եռանդեամբ եւ հոգւով պաշտպան ու ջատագով էր ողջամիտ վարդապետութեան, եւ ժամանակին նախանձայոյզ յաչաղկոտներուն դէմ՝ որոնք մոլորեալ մտօք եւ խստացեալ սրտիւ հերձուածն ու պառակտումը յառաջացընել կ՚ուզէին, եռանդուն թուղթ մը գրեց[2], որուն մէջ սկիզբէն մինչեւ վերջը ողջմտութեամբ կը սանձահարէ հակառակորդները, եւ յայտնի ու պարզերես կը դաւանի եւ կը պաշտպանէ Ս. Պետրոսի եւ Հռոմայ աթոռին գլխաւորութիւնը[3]: Կը գրէ ահաւասիկ համարձակ. "Լեւոն Հռոմայեցի էր ազգաւ եւ գահերէցութեամբ[4] եւ այլն": Ու դարձեալ հեգնելով իր հակառակորդները կ՚ըսէ.

1 Ս. Ներսէս Շնորհալի. Բան հաւատոյ. Յիշատակարան երգողին. էջ 222:

2 Պատասխ. Թղթոյ Գրիգորի Տուտէոր.:

3 Անդ. էջ 23. 25. 74. 75. 76. 77. 82:

4 Ահաւասիկ իր ամբողջ խօսքերը. "Լեւոն հռոմայեցի էր ազգաւ եւ գահերիցութեամբ եւ ի Հռոմ երկուք լուսաւորք են աշխարհի՝ Պետրոս եւ Պաւղոս, ի նոսա զի՞որդ բնակէր Լեւոն կամ սո՞վ օրինակաւ: Իսկ եթէ նոքա ի նա բնակեցան աստուածային զօրութեամբն եւ հոգւովն՝ կարելի է. այլ ոչ տեղափոխելի: Եւ եթէ յայն սակս է անիծեալ, կարծեմ թէ եւ նոցայն դամբարան՝ է այր աւազակաց, եւ որ ի նմին են հանդուցեալ գողք եւ աւազակք. եւ այս ըստ առ ի ձէնջ բանի: — Իսկ տաւմարքն անուն ի մերասէր ազգին լեզու, թուի թէ զհամառօտականն դնէ թիւ, եւ զժամանակագրականն, եւ զնորա առ այս չունիմք իրք. թուի թէ եւ ոչ եւ որ նոցայն են: Իսկ առ այս Անանիա եւ Անդրէաս բազմավէպ գրութեամբ ճառեցին. յաւելո՞ւք եւ զնոսա յանէծս: Թուի թէ այս ի վաղնջուց հետէ, որպէս նոյն ինքն Անանիա յաղագս անբարեաէր ազգին տրտնջմամբ, առ որս ոչ պատուի գիտութիւն, այլ անձնահաճ կամք: — Այլ զի ընդ բազում բանս ձեր կարկատունս եւ տառայօղս անցի, եւ նայեցայ ուշիմ մտօք, եւ ոչ առնի ի նոսա ծակելի եւ անուշահամ պտուղ, ո՛չ արդիւնաւորեցաւ առ մեզ. քանզի

«Սուտ էին խոստմունք նորա (Քրիստոսի) առ Պետրոս թէ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն։ Արդ յաղթահարեցաւ եւ կործաւ»[1] եւ այլն։ Զանց կ'առնենք մանրամասն յիշատակել թէ ինչպէս ուրիշ տեղեր ալ զՍ. Պետրոս կը կոչէ «վէմ հաւատոյ, գլխաւոր առաքելոց»[2]։

Նոյն առեններն կը պայծառանայ նաեւ Ս. Ներսէս Լամբրոնացի Տարսոնի արքեպիսկոպոսը։ Պատմութիւնն ու իր մատենագրութիւնները յայտնապէս կը քարոզեն իր սրտին անշիջանելի եռանդը Լատին եկեղեցւոյ հետ միութիւնն ու համաձայնութիւնը պահելու եւ յառաջացնելու։ Բաւական է կարդալ միայն իր առ Լեւոն թագաւոր գրած թուղթը[3]։ Մտադրութեան արժանի է նաեւ իր սքանչելի ատենաբանութիւնը՝ զորն որ Հռոմկլայի մեծ ժողովոյն մէջ խօսեցաւ՝ այնպիսի ազնուական համարձակութեամբ, որ մինչեւ ցայսօր ընթերցողներուն սիրտը կը յափշտակէ։ — Մ՛հ. առաքելաշնորհ Հայրապետն ինչ ուրախութեամբ կը նկարագրէ ժողովականաց առջեւ Հայաստանեայց եկեղեցւոյն երջանկութիւնը՝ որ երբեմն ունեցած էր, թէ ինչպէս Աստուծոյ սեղաններն երկնից աստղներուն պէս բազմացած էին, ինչպէս արթուն հովիւք կը հսկէին եւ Քրիստոսի հօտն ի լոյս պայծառութեան կ'արածուէր։ Բայց այս ամենայն երբ կը պատահէր։ — Երբ որ մեր եկեղեցին «Դեռ ի Հռոմէական Եկեղեցւոյ վէմն պնդեալ էր»[4]։ Այլ այժմ. երբ որ իր աչքը Հայոց եկեղեցւոյն

յեռանդեալ եւ ի փայլակնացեալ արամբ յառաջ բերել զհնարանութիւն եւ կարի, որպէս եւ վկայէ Նշանագիրս բանին աւետարանի եթէ Յաւիտենական սպառնաց բերանն»։

1 Պատասխանի թղթոյ Գրիգորի Տղայոյ. 20։

2 Անդ 25, 82։

3 Տես. Լամբր. Թղթ. առ Լեւոն արքայ։ Տպ. Վենետ. 1838։

4 Տես. Լամբր. Ատենաբ. Նոր Տպագր. Վենետ. էջ 120. «Մանաւանդ սորա եւ Հայաստանեայցս աշխարհ, մինչ դեռ ի Հռոմէական եկեղեցւոյ վէմն պնդեալ էր, որոյ Աստուծոյ տաճար եւ բազում, եւ յերկիր մեր իբրեւ զաստեղս երկնից բազմացեալ սեղանքն Աստուծոյ բառնալեան Ս. Գրիգորի» եւ այլն։

եւ երկրին իր ատեննուան թշուառութեան վրայ կը դարձընէ, պատճառն ի՛նչ կը համարի. «Դու այս էր վասն. . . . զի խախտեցաք զոր մարմինն Քրիստոսի է քաղաքամ մարմինս, զի քակտեցաք զոր եկեղեցի նորա է քաղաքամ ժողովս»[1]: Աս ողբոց հառաչանքը հնչեցընելէն ետքը՝ դարձեալ յուսով ու անհնարութեամբ զօրացած՝ ձայնը կը բարձրացընէ ու կը յորդորէ ժողովքը չհնել եկեղեցին: — Որպիսի՞ հիման վրայ: — Լսենք իր խօսքերը. «Դուսրուք եւ դուք, նահապետք ազգաց մերոց ի ծագաց երկրէ, որ հաւաքեալ ընդ նմա ի Սիոն քաղաքք փրկութեան մերոյ: Ահա հասեալ են ոտք մեր առ դրունս երկնաւորին Երուսաղէմի. եւ հանդերձեալ եմք չհնել զհիմնական տաճարին Աստուծոյ՝ որ հիմնեցաւ ի վերայ Պետրոսի»[2]: Եւ այս Պետրոսի աթոռն ուրիշ դրուածքի մէջ ամենէն գերագոյն եւ ամենէն վեր կը քարոզէ. «Որ Հռոմայն է (պատրիարքութիւն) ըստ կարգի (ժամանակին) երրորդ էր պատուով, թէպէտ եւ զօրութեամբ առաջին»[3]:

Լամբրոնացւոյն վերջին տարիները (1195ին) Գրիգոր Զ. Ապիրատ նստաւ Ս. Լուսաւորչի աթոռը. աս հայրապետը վերջինն էր Ներսիսեանց ու Գրիգորիսեանց մէջէն. բայց եղաւ միանգամայն առաջին եւ սկիզբն ողջամիտ կաթողիկոսաց երկայն ու անընդհատ յաջորդութեան մը, որ երկուհարիւր տարիէ աւելի սրբոյն Պետրոսի աթոռին հետ միացած ու Ս. Քահանայապետաց հպատակութեան մէջ՝ Հայոց եկեղեցւոյն առաջնորդեցին եւ նոյն եկեղեցին կաթողիկէ հաւատոյ ու հաղորդակցութեան մէջ պահեցին, ըստ մեծի մասին իրենց օգնական ունենալով Ռուբինեան թագաւորները, որոնք արդէն իրենց արքունական թագը Հռոմայ Քահանայապետաց պարտական էին, ինչպէս մերազնեայ Կիրակոս պատմիչ Լեւոն առաջին թագաւորին համար «Պարծանս իւր վարկաւ, կ՚ըսէ, զսուրբ առաքելոյն Պետրոս եւ զՊաւղոս, որ կան ի Հռոմայեցւոց քաղաքի,

1 Ատենաբան. էջ 127:
2 Անդ, էջ 139:
3 Ս. Ներս. Լամբր. Խորհրդածութիւն ի կարգս եկեղեցւոյ:

որպէս թէ ի նոցունց առեալ զօրհնութեան պսակն»[1]։
Նա խրատեցինէ· Ինոկենտիոս Գ. Քահանայապետն էր՝
որ իր կարդինալին ձեռքովը գլխաւորաբար իր ու նաեւ
կայսեր անուամբ Հայոց իշխանը թագաւոր կը պսակէր,
վասն զի կաթողիկէ միութեան մէջ կը ճանչնար զինքը։
Ասոնք պատմական ստուգութիւններ են, որոնց հարկ է
գլուխ ծռել ու հաւանիլ։ Բայց մենք դառնանք եւ
տեսնենք թէ նաեւ Գրիգոր Զ. Ապիրատ ինչ յարա-
բերութեան մէջ էր Հռոմայ Քահանայապետաց հետ։
Իր թղթերը պաղոնի մնացած չեն։ Գրիգոր Զ. ասանկ
կը գրէ Ինոկենտիոս Գ. Քահանայապետին։

«Ձեզ՝ որ էք գլուխ յետ Քրիստոսի, սրբեալք
ի նմանէ եւ գլուխ կաթողիկէ եկեղեցւոյդ Հռոմայեցւոց,
ամենայն եկեղեցեաց մօր, որ եւ էք զգօն եւ սուրբ,
եւ որպէս պարտ եւ պատշաճ է լինել փոխանակ առա-
քելոցն՝ բարձրագոյն Քահանայապետ, եւ ձեզ սրբոց
արքեպիսկոպոսաց, եպիսկոպոսաց, կարդինալաց, երի-
ցանց, կղերիկոսաց եւ ամենեցուն՝ որ են յեկեղեցւոյդ
անտի սրբոյ, ողջոյն եւ սէր եղբայրութեան։ Խաղաղու-
թիւն Աստուծոյ լիցի ի միջի ձերում։ — Գրիգորիոս
ծառայ Յիսուսի Քրիստոսի, շնորհօքն Աստուծոյ կա-
թողիկոս համօրէն եկեղեցւոյս Հայաստանեայց, որդի
սրբոյ եկեղեցւոյդ՝ որ է հիմն օրինաց համօրէն քրիստո-
նէութեան։

«Գիտասջիք զի մեք եպիսկոպոսապետք, եպիսկո-
պոսք, երիցունք եւ կղերականք՝ կամք յաղօթս առ
Քրիստոս Յիսուս, որ է մեր ամենեցուն գլուխ, զի պա-
հեսցէ զձեզ եւ զօրս ընդ ձեզ են յամենայն չարեաց,
զի յորժամ դուք՝ որ գլուխդ էք, անարատք իցէք, եւ
մեք՝ որ անդամքս եմք, բարւոք եւս կացցուք ձերով
օրհնութեամբդ։ Ծանիջիք, Տէր, զի եկն եհաս առ
մեզ Մոգունտացւոց եպիսկոպոսապետն՝ այր լաւ եւ
իմաստուն եւ մեծ, եւ յԱստուծոյ եւ ի բարձր Հռո-
մայեցւոց եկեղեցւոյդ եւ քաջի Հռոմայեցւոց կայսերդ

1. Պատմութիւն Հայոց · ձեռագ. Թիւ 82, 84։

կուսէ երբեր առ մեզ զԹագն (վայելչութեան) եւ պսա-
կեաց զԹագաւորն մեր Լեւոն, եւ դարձոյց մեզ զպսակն
զոր ի վաղ . . . :

"Գիտասջիք եԹէ եւ յայտնեաց նա մեզ զձեր
հրամանօք՝ զոր կամակար մտօք լուաք, եւ կամակարու-
Թեամբ իսկ հաճեալ եմք ընդ օրէնս եւ ընդ եղբայրու-
Թիւն մեծի Հռովմայեցւոց եկեղեցւոյդ, որ է համօրէն
եկեղեցեաց մայր, զոր ընկալեալ էր մեր, եւ այժմ իսկ
զնա ընդունիմք եւ մատուցեալ ձերոց հրամանացդ կամիմք
հնազանդել: Գատկաց կամ ձերոց հրամանացդ եւ հա-
մօրէն եպիսկոպոսապետաքս եւ եպիսկոպոսք եւ ամենայն
կղերականք եկեղեցւոյս որք ենն յերկրի մերում եւ բա-
զումք իսկ Տեառն շնորհօք: Եւ մեք աղաչեմք զձեզ . . ."[1]:

Իսկ Ինոկենտիոս Գ. առ պատասխանի կուտայ:

"Այնու ծանեաք զքեզ հաստատեալ ի կաթողի-
կէ հաւատս, եւ քննել Կաթողիկոս ոչ անուամբ միայն՝
այլ եւ արդեամբք, զի զգլխաւորութիւն առաքելական
աթոռոյս ընկալեալ՝ ամենայն եկեղեցեաց մայր զնա դա-
ւանիս, եւ զմեզ՝ գլուխ համօրէն հաւատացելոց: Քան-
զի ծանեար զառաւելութիւն Պետրոսի, եթէ յանձն
առար նմա Տէր արածել զհամօրէն զամենայն ոչխարս
իւր՝ երիցս կրկնեալ զբանն եթէ "Արածեա զոչխարս իմ".
եւ ի վերայ ամենեցուն առհասարակ ետ նմա զիշխա-
նութիւն կապելոյ եւ արձակելոյ, ասելով ցնա. "Զոր
միանգամ կապեսցես յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս,
եւ զոր միանգամ արձակեսցես յերկրի՝ եղիցի արձակեալ
յերկինս": Եւ գիտացեր իսկ զառանձինն շնորհս առա-
քելական աթոռոյս, որ վասն արդեանց երանելւոյն Պե-
տրոսի՝ որ ոչ եթէ ժամանակաւ, այլ իշխանութեամբ
երիցագոյնն էր յառաքելոցն, եւ ոչ ժողովոց ինչ կա-
նոնեալ սահմանօք, այլ աստուածեղէն հրամանաւն, ի
մէջ համօրէն եկեղեցեաց զգլխաւորութիւնն եւ զաւա-
գութիւն ընկալաւ կանգնեալ ի վերայ անշարժ հիմանն,
զորմէ ասէ առաքեալն Պաւղոս եթէ "Հիմն այլ՝ որ

1 Առ Ռայնալդ. Տարեգ. Եկեղ. Ամ 1199. Թիւ 65:

ոչ կարէ դնել քան զեդեալն, որ է Յիսուս Քրիստոս,,. զորմէ եւ Ճշմարտութիւնն ասէ յաւետարանին առ Պետրոս. "Ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն,,: Քանզի Պետրոս (Հաւատի) յետ Քրիստոսի հիմն մի, եւ մի հօտ՝ տիեզերական եկեղեցի, զորոց Տէրն յաւետարանի վկայէ ասելով. "Այլ եւս ոչխարք են իմ, որ ոչ են յայսմ գաւթէ, եւ զայնս եւս պարտ է ինձ ածել այսր, եւ ձայնի իմում լուիցեն եւ եղիցին մի հօտ եւ մի հովիւ,, : . . . Այժմ եւ քո եղբայրութեանդ խելամուտ հրազգած լեալ՝ եթէ ըստ Առաքելոյն ամենեքին մի մարմին եմք ի Քրիստոս, եւ եթէ իւրաքանչիւր՝ անդամք միմեանց, զմեզ՝ զոր Տէր, անտես զմեր անարժանութիւնս արարեալ, փոխանակ իւր եւ յաջորդ իշխանին առաքելոց կամեցաւ լինել, գլուխ եկեղեցւոյ դաւանիս, եւ զքեզ եւ զեղբարս քո եւ զեպիսկոպոսակիցսդ իբրեւ զմերոյ մարմնոյս մասունս ճանաչես, գիտասցես՝ եթէ որպէս ուռ ոչ կարէ ինքնին պտուղ առնել, եթէ ոչ կայցէ յորթն, այսպէս եւ անդամք չզգայցեն ինչ եւ չգործիցեն բնաւ, եթէ ոչ կայցեն ի միութեան մարմնոյ: Արդ խնդամք յոյժ՝ զի անյողդողդ կացեալ ի կաթողիկէ հաւատս, զեռանդն եւ զգութ առ մեզ ցուցանես, եւ առաքելական աթոռոյս որդի զքեզ դաւանիս, այնու իսկ՝ զի ամենեցուն զսա մայր ճանաչես, եւ ի մէնջ զեկեղեցւոյ կարգաց խրատուցն իշխանութիւն խոստովանիս . . .,,[1]:

"Նոյն ինքն Գրիգոր Զ. կաթուղիկոս դարձեալ ուրիշ թուղթ մը գրեց Քահանայապետին, որուն մէկ մասն ալ յառաջ բերելնիս պատշաճ կ'երեւայ իր որդիական սիրոյն ու մեծարանաց եւ հպատակութեան մէկ ցոյցը տալու, զորն որ Ս. Պետրոսի աթոռին կը դաւանէր. աս են իր խօսքերը:

"Գահերիցուն ամենայն եկեղեցեաց, որ ունիք զառաքելական աթոռ յետ Աստուծոյ՝ որ է գլուխ ա-

1 Ար. Ռայնալդ. Ամ 1199. Թիւ 65:

մենայն բարութեանց, եւ մեծի խոստովանողին երկրաւոր աթոռոյն Քրիստոսի, գլխաւոր տանն ասպնջականութեան ամենայն համօրէն ժողովրդոց եւ կրօնից եւ պայազատին երանելւոյն Պետրոսի երիցու, իշխանի եւ հօր ամենայն աշխարհի յետ Քրիստոսի, աստուածամերձ եւ քրիստոսակիր մեծի Քահանայապետի Ինովկենտեայ եւ տիեզերական հայրապետի բարձրագոյն աթոռոյն Հռոմայեցւոց քաղաքի, որ արքունական յաղթութեամբն իւրով զամենայն աշխարհ ընդ իւրով իշխանութեամբ նուաճեաց, եւ հոգեւոր հօր մերում ի Քրիստոս, բարձրացելոյ փառօք այնպիսի քաղաքի. — Գրիգոր կրտսեր եպիսկոպոս, կաթողիկոս ամենայն Հայոց, մեղաւոր եւ ծառայ հաւատացելոցն Քրիստոսի, եւ ամենայն արքեպիսկոպոսունք, եպիսկոպոսունք, առաջնորդք վանաց եւ քահանայք եւ ժողովուրդք, որ ընդ մերով վարչութեամբ կայցեն, աղօթք հանապազորդ ի Տէր։

"Որովհետեւ յաթոռ սրբոյն աշակերտին Քրիստոսի նստիք եւ տիրէք համօրէն աշխարհին Եւրոպացւոց, նմին իրի եւ մեզ պարտ եւ պատշաճ է աւելագոյն մեծարել զձեզ. եւ քանզի հայր համօրէն քրիստոնական հաւատոյ էք, զձեր հրամանս բազում սիրով ընկալաք, եւ եղաք յաշս եւ յերեսս մեր, եւ գովութիւնս մատուցանեմք Արարչին համօրէն տիեզերաց . . . մանաւանդ թէ ի գոգ մայրենի գթոյ ձերոյ իբրեւ ի նոյն եւ ի նմին գաւթի գգուեալ եմք եւ ի հայրենի ծոց ձեր սնեալք, ցանկամք եւս եւ փափաքիմք զի ի խոտալից ի պարարտ եւ ի ջրարբի վայրի եւ առ աղբերս գիտութեան ձերոց հաւատոցն եւ պատուիրանաց օրինացն եւ եկեղեցւոյ հանգուցեալ սնանիցիմք, եւ ի ձերոց ստեանց դիիցեմք հանապազօր եւ արբենայցեմք կաթամբ՝ որ ի ձերոց լանջացն հոսէ, եւ այսու աճեալ զարգանայցեմք։ Ուսաք եւս յայսմանէ հեղուլ զարիւն վասն օրինացն Քրիստոսի . . . ։ Արդ կարի ուրախ եղաք ի Քրիստոս, զի մայրն եկեղեցեաց՝ որ զամենայն տիեզերս լուսաւորէ

իւրոյին մեծապայծառ լուսաւորութեամբ, կամեցաւ եւ յուղղափառ եկեղեցի Հայոց բարւոքն սրտիւ նայել եւ միաբանութիւն նմին մատուցանել . . .„ [1]։

Չէ թէ միայն կաթողիկոսը, այլ նաեւ Լեւոն թագաւորը թուղթ հպատակութեան կը գրէր Իննովկենտիոս Գ.-ի Քահանայապետին. եւ թուղթը կը սկսի այսպէս. «Մեծապատիւ Հօր ի Քրիստոս եւ Տեառն, Իննովկենտեայ՝ շնորհօքն Աստուծոյ մեծի Քահանայապետի եւ տիեզերական Պապի, որ այնչափ եւ այնպիսի պատուոյ արժանաւոր է. — Լեւոն նորին շնորհօք եւ գթութեամբ Հռոմայեցւոց պետութեան՝ արքայ ամենայն Հայոց, ողջոյն եւ զանձն իսկ գլխովին եւ զամենայն՝ որում ձեռնհաս իցէ։ — Փառք, գոհութիւն եւ պատիւ ամենազօրին Աստուծոյ, որ զձեզ զայնչափ եւ զայնպիսի հովիւ ըստ ձերոց արժանեաց առաջնորդ եկեղեցւոյ իւրոյ ընտրել կամեցաւ . . . ։ Ձերոյ լուսոյ արդեամբ եւ կենդանարար յորդորմամբ խրատու մեծարգոյ Հօր մերոյ Մոգունտացւոց արքեպիսկոպոսի ուսեալք եւ խրատեալք՝ զհամօրէն լայնածաւալ եւ զմեծատարած թագաւորութիւնս աւանդեալ մեզ ի Տեառնէ, եւ զամենայն Հայաստանեայս զցրուեալսն ի հեռաւոր վայրս ի մի միաբանութիւն սրբոյ Հռոմայեցւոց եկեղեցւոյդ Տեառն օգնականութեամբ կոչել միւսանգամ ցանկամք եւ ըղձամք . . .„ [2]։

Աս թղթոյն ալ Իննովկենտիոս Գ. քահանայապետ երկայն պատասխան մը կը գրէ, որուն մէկ փոքր հատուածը հոս կը դնենք. «Այլ խնդամք՝ եթէ դու իբրեւ զիշխան ուղղափառ զառաւելութիւն իշխանութեան առաքելական աթոռոյս քաջ գիտացեալ՝ զմեծարգոյ եղբայր մեր զՄոգունտացւոց արքեպիսկոպոսն, զՍաբինայ եպիսկոպոսն, զմին յեօթանց անտի եպիսկոպոսաց՝ որ առընթերակայ են մեզ ի Հռոմայեցւոց եկեղեցիս, մարդասէր կամօք եւ լրջմտութեամբ ընկալար, եւ ոչ միայն զիրիկունէ օրէնս ուսար, այլ եւ

1 Առ. Ռայնալդ. Ամ 1202. Թիւ 41։ 2 Առ. Բալուզ. Թղթ. ՄԺԹ։

որպէս ի թուղթոդ գրես, նոյին իսկ օրինօք զլայնա-ծաւալ քո արքայութիւնդ կամիս կարգեալ յարդարել, եւ զհամօրէն զՀայս կոչել ի ծոց Հռոմայեցւոց եկե-ղեցւոյս...»[1]։

Գրիգոր Զ. կաթողիկոսին յաջորդը Յովհաննէս Է. նոյն հոգւով կը գրէր Քահանայապետին հետե-ւեալ խօսքերը։ «Մեծարեալ հօր ի Քրիստոս եւ Տեառն Իննովկենտեայ, շնորհօքն Աստուծոյ մեծի Քա-հանայապետի եւ տիեզերական Հայրապետի. — Յով-հաննէս նորին շնորհօք խոնարհ ծառայ կաթողիկոս Հայոց, հնազանդ եւ հաստատ ձերոյ սրբութեան, ար-ժանաւոր հնազանդութեամբ եւ մեծարանօք ողջոյն եւ խնդութիւն բազմապատիկ։ Ընծաւ եւ անպատում տու-չութեամբն Աստուծոյ Տեառն մերոյ, յորմէ համօրէն բարիքն բխեն, ծանուցեալ եկեղեցւոյն Հայոց զաս-տուածատուրն զահերիցութիւն եւ զաւագութիւն սրբոյ եկեղեցւոյն Հռոմայեցւոց, նորա զաւակ մտերիմ լեալ է, եւ մեք պաշտօնեայք նորա, թէպէտ եւ անարժանք...»[2]։

Այս թղթերն աւելի քան զլոյս արեգական յայտնի կը ցուցընեն թէ ինչպէս սուրբ Լուսաւորչին յաջորդ-ներն իրենց բազմաթիւ եպիսկոպոսներովն ու ժողովըր-դովը, նոյնպէս եւ Հայոց թագաւորն իր մեծամեծնե-րովը սրբոյն Պետրոսի յաջորդին գլխաւորութիւնը կ'ըն-դունէին, կը հպատակէին, կը մեծարէին։

Գրիգոր Թ. Քահանայապետ Հեթում Ա. թա-գաւորին եւ Զապէլ թագուհւոյն իբրեւ ջերմեռանդ որդւոյ ու դստեր մեծ առանձնաշնորհութիւններ կու-տար[3] (1239), զորոնք երկայն կ'ըլլայ հոստեղս յիշա-տակել։ Բայց նոյն տարին Կոստանդին Ա. կաթողիկոսը կը նորոգէր իր որդիական հլու հնազանդութիւնը Հռո-մայ Քահանայապետներուն, եւ կը խնդրէր նոր եմի-փորոն (Պալլիոն), որն որ իրաւաբանութեան ու իշխա-

1 Առ Բալուզ. Թղթ. Ի։ . լատ. Գիրք Ը. 75։
2 Առ Ռայնալդ. 1205։ — Բա- 3 Առ Ռայնալդ. 1239 թիւ 82։

նութեան տաւչութեան նշան մըն է։ Գրիգոր ԺԶ. Քահանայապետը չէ թէ միայն կաթողիկոսին խնդրածը, այլ նաեւ եպիսկոպոսական թագ, ուրար եւ մատանի մէկանեղ կը խրկէր՝ հայրագութ սիրով գրած թղթով մը, որուն մէջ աս հատուածը կը կարդացուի։

“Որպէս զի ըհռոմէականին սուրբ եկեղեցեաւ իբրեւ գլխով ամենայն իսկ եւ բնաւ հաւատացելոցն Քրիստոսի եւ զվարդապետաւ փարեալ, որպէս որդի ոք զմայրն մեծարանօք գիրկս արկանիցէ, երանելւոյն Պետրոսի եւ մեզ, որ աստուածեղէն կարգօք՝ զայնր եկեղեցւոյ, թէպէտ եւ առանց շատ ինչ եւ բաւական արժանեաց, զգահերէց գլխաւորութիւնն ունիմք, եւ մերոց յաջորդացն օրինօք փոխանորդելոց՝ միշտ եւ հանապազ հնազանդ եւ հպատակ զանձն քո կացուցեալ, հաւատարիմ եւ ջերմեռանդն տեւեալ. Յաւացես՝ առաքեմք քեզ զԵմիփորոնն (զՊալլիոն), զոր խնդրեցեր, այլովք եւս խնդրուածովք՝ որ ի ձեռն հրեշտակաց քոց ի քոյ կողմանէ առ մեզ հասին, եւ լսելի եղեն մեզ. զի քոյ Եմիփորոնդ՝ որ նախորդաց քոց վաղ իսկ յառաքելական աթոռոյս շնորհեցաւ, վասն կարի իմն հնութեանն մաշեալ սպառեալ է, որպէս նոքին իսկ հրեշտակքն փոյթ յանձին կալան յայտնել մեզ։ Առաքեմք եւ եւս առ եղբայրութիւնդ զխոյրդ եւ զուրարն եւ զմատանիդ ի ձեռն հրեշտակաց յառաջագոյն ասացելոց ի նշան առաքելական մերոյ գթոյ շնորհաց եւ պարգեւաց եւ ի յայտարարութիւն եռանդման քո. եւ քեզ միւսանգամ իբրեւ մեծարեալ անդամոյ Հռոմէական եկեղեցւոյս, յորս կարասցուքն Տերամբ՝ օգնական եւ նպաստաւոր լինել խոստանամք,, [1]։

Աս թուղթս՝ ուրիշ խորհրդածութեան մ՚ալ տեղ կը բանայ առջեւնիս. այսինքն թէ ուրեմն Հայոց կաթողիկոսներն ալ՝ իբրեւ հպատակ Հռոմէական եկեղեցւոյ՝ սովորած էին Հռոմէական Քահանայապետաց խրկած Եմիփորոնը գործածել, ինչպէս հիմայ կաթո-

1 Ազ. Արշալոյս. Ամ 1839. Թիւ 83։

ղիկէ եկեղեցւոյ մէջ արքեպիսկոպոսներն ու պատրիարք-ները հանդիսական պատարագի մէջ կը գործածեն։

Տասնումէկ տարի ետքը (1251) Քահանայապետն իբրեւ ընդհանուր հովիւ եկեղեցւոյ՝ կը խնդրէր կաթողիկոսէն՝ Հայոց եկեղեցւոյ դաւանութիւնը Հոգւոյն սրբոյ ի Հօրէ եւ յՈրդւոյ բղխման վրայ։ Կաթողիկոսը կը լսէր հովուին ձայնը, ժողով կը կոչէր Սիս քաղքին մէջ եւ Քահանայապետին հրամանը կը յայտնէր. ժողովքին Հայրը "Ուղղակի խոստովանէին զՀռոմայեցւոց խոստովանութիւնն, եւ թէ են, կ'ըսէին, աստուածաշունչ Գիրք այսպիսի ձայնիւք։ Որպէս գրեաց վէմ հաւատոյ երանելին առաքեալն Պետրոս, որ վասն ճշմարիտ հաւատոյն երանեցաւ ի Տեառնէ"[1]. եւ այսպէս ալ Հռոմ կը գրէին։

Չենք ուզեր յիշել Հեթում Ա. Լեւոն Գ. եւ Հեթում Բ. թագաւորներուն՝ Ս. Քահանայապետաց հետ ունեցած հպատակութեան ու հաղորդակցութեան յարաբերութիւնները, միայն յառաջ կը բերենք հատուած մը Նիկողայոս Դ. Քահանայապետին առ Հեթում Բ. գրած թղթին մէկ մասը, որ ասանկ կը սկսի. "Սիրելւոյ որդւոյ ի Քրիստոս, Հեթմոյ փառաւոր թագաւորի Հայաստանեայց. — Նիկողայոս Քահանայապետ Դ.։ — ԶՔրիստոսի փոխանորդութիւնն կրելով յերկրի արքայէ մերոյ արժանեաց եւ արդեանց, մեծաւ եւ արժանաւորն իսկ խնդութեամբ զեղաւ սիրտ մեր, յորժամ ի լսելիս մեր եհաս եթէ սիրոյք թագաւորաց եւ իշխանաց պատկառ կայցեն հաճոյից կամաց մեծի թագաւորին, յորմէ ի բարձրութիւն թագաւորութեանն հասեալ են։ Զի արդ իսկ լուաք եւ ցնծացաք յոյժ ի Տէր, որպէս յանուն ձեր պատմեաց մեզ սիրելի որդի մեր Եղբայր Յովհաննէս Մոնդէկորուացի ի կարգէ Մինորաց, որ զթուղթս մեր զայս ընծայէ քեզ, եթէ որպիսի սէր եւ ջերմ եռանդն առ Հռոմէական եկեղեցիս, առ մայրն եւ ուսուցիչ ամենայն

1 Կիրակ. Գանձ. Պատմ. Հայ.

հաւատացելոց, անխտիր, եւ եթէ իբրեւ իշխան որ յուղղափառ իշխանաց ընդ նմին եկեղեցւոյ զմիաբանութիւնն պահելոյ ստանձնեցաւ ի քեզ պատրաստութիւն կամաց եւ կատարեալ յօժարութիւն: Յաւել առաւել վերադիրն յիշատակեալ Նորայրն, զի եւ լուսաւոր յիշատակի հայր քո եւ նա իբրեւ որդի հնազանդ եւ ուղղափառ քրիստոնէից յերկրաւոր կենաց աստի զատեցաւ...,,[1]:

„Օրանց կ'առնենք դարձեալ յիշել Բոնիֆակիոս Ը. Քահանայապետին ու Սմբատ Թագաւորին եւ ուրիշ իշխանաց մէջ եղած թղթակցութիւնները, որոնք սա վերջիններուն՝ Հռոմայ դահին ունեցած հպատակութիւնն ու հաղորդակցութիւնը յայտնի եւ պայծառ կը ցուցնեն, բաւական համարելով յառաջ բերել միայն Գրիգոր Է. կաթողիկոսին առ Բոնիֆակիոս Ը. Քահանայապետ (1297) գրած թղթին սկիզբը, որ այսպէս կը սկսի. «Ամենասրբոյ Հօր մերում, Փոխանորդին ի վերայ երկրի Քրիստոսի Տեառն մերոյ եւ Աթոռակալին Սր. եւ Գլխոյ. Առաք. Պետրոսի, հովուապետին Տեր-ներաց՝ Հօտին Քրիստոսի. եւ գլխոյ ամենից եկեղեցեաց եւ Գլխաւորակից ամենից Քրիստոնէից, զծունր եւ զպարանոց խոնարհեցուցեալ, զմեծազան զարշապարդ համբուրեմ սիրով: — Ես նուաստ Գրիգոր Կաթուղիկոս Հայոց, հանդերձ Եպիսկոպոսօք եւ ամենեքումբք Կղերամբք. եւ խնդրեմ զօրհնութիւն ինձ եւ իմոցս,, եւ այլն: Եւ քիչ մը վերջը կ'ըսէ. «Վասն զի ճանաչեմք մեք զսուրբ Եկեղեցին Հռոմայ՝ Մայր եւ Ուսուցիչ ամենից այլոց եկեղեցեաց, եւ Աղբիւր Իմաստութեան, Տիպ Սրբութեան եւ կանոն Ուղղափառ Հաւատոյ,,[2] եւ այլն:

Իսկ Բոնիֆակիոս Ը. Քահանայապետ ասանկ կը սկսի նոյն թղթոյն պատասխանը. «Ի բանից անտի թղթոյ քոյ եւ ի պատմելոյ հրեշտակի քո՝ որ ծանոյց մեզ զթուղթն, յայտ եղեւ մերում առաքելու-

1 Առ. Ռայնալդ. Ամ 1289. Թիւ 57:
2 Ձեռագիր Վիեն. Մխիթ. Մատենադարանի. Թիւ 157:

թեամն մեծարանք քո եւ սէր, զոր առ մեզ եւ առ սուրբ եկեղեցին Հռոմայեցւոց՝ առ մայր ամենայն եկեղեցեաց եւ վարդապետ՝ ունիս: Յայտ եղեւ եւ ճշմարիտ եւ անապակ խոստովանութիւնն, որով զմեզ գլուխ համօրէն կաթողիկէ եկեղեցւոյ, պայազատ Պետրոսի եւ տեղապահ Յիսուսի Քրիստոսի եւ հօրն ամենայն ուրունական հօտին ճանաչես խոնարհութեամբ...„[1]:

Անցնինք մէյ մ'ալ չորեքտասաներորդ դար: Ի՞նչ տեսարան կը բացուի առջեւնիս: Կը տեսնենք երկու ազգային՝ Սսոյ Զ. (1307) եւ Ադանայի (1316) հռչակաւոր ժողովները. ասոնց գահերէց կը նստի Ս. Լուսաւորչին աթոռակալն ու ազգին առաջին հայրը Կոստանդին Բ. կաթողիկոսը. ժողովականքն են երեւելի աթոռներուն արքեպիսկոպոսներն ու եպիսկոպոսները, ներկայ է նաեւ թագաւորն իր իշխաններովը եւ բազմութիւն վանականաց: Ի՞նչ վճռուեցաւ այսպիսի մեծաշուք ժողովներու մէջ: — Սսոյ ժողովոյն Հայրքը մեծ հաստատութեամբ իրենց հարց եւ նախնեաց հաւատքը՝ Հռոմէական աթոռին գլխաւորութիւնը միաբան ու միաշունչ նորէն հաստատեցին եւ ստորագրեցին աս վճռոյս. "Հնազանդել պարտ է սուրբ եւ առաքելական եկեղեցւոյն Հռոմայ, վասն զի հաստատեալ է ուղղափառ հաւատով յառաքելոյն Պետրոսէ. քանզի որպէս մարմին հնազանդի գլխոյն, նոյնպէս ընդհանուր եկեղեցի՝ որ է մարմին Քրիստոսի, հնազանդել պարտի նմա՝ որ գլուխ է Քրիստոսի հաստատեցաւ եկեղեցւոյ„[2]: — Նոյն ժողովին իրեն սահմանեց ու հաստատեց Գրիգոր Է. կաթողիկոսին թուղթը[3], որուն մէջ աս խօսքերը կը կարդանք. "Ընդունիմք զամենայն քրիստոնեայք Հռոմայ եկեղեցւոյն, զի այնտ մերձ են առ Աստուած, որպէս եւ առաքելոյն աթոռոյն, եւ անմիջապէս առնուն յԱստուծոյ զամենայն իմաստութիւն եւ զխնամքն, որպէս եւ մեր Ս. Հայրքն ամենայն„:

1 Գիրք Դ. Թղ. 271:
2 Սահմանք ժողով. Սսոյ:
3 Թղթ. Գրիգորի Է. կաթող. առ Հեթումն:

Բայց մեր նախնիքն այսչափով գոհ չեղան. ուզե-
ցին ամենահարել երկայն ատենէ վեր յառաջ եկած իրենց հակառակորդաց կողմը՝ Հաղբատացիներուն, Ձորոյգետացիներուն եւ Սանահնեցիներուն յամառ աշակերտներն ու հետեւողները. ուստի եւ գումարեցին Սսանայի ժողովքը[1], որն որ նոյնպէս լցեալ հոգւով սրբով՝ Սսոյ ժողովքին սահմանադրութիւնները նորէն հաստատեց աս խօսքերով. "Իսկ մեք ի ձեռն աստուածաշունչ Գրոց եւ սուրբ Հարցն վարդապետութեանց, եւ կանոնեալ սահմանաց ուղղափառ ժողովոց՝ բազում ժամս տրամաբանեալ ընդ նոսա (վերոյգրեալ Հաղբատացւոց ու Ձորոյ գետացւոց կողմնակիցներուն հետ), ունայն եւ սնոտի եւ առասպելաբանութիւն ցուցաք զուսումն նոցա, եւ գտաք արդար եւ ճշմարիտ եւ ուղիղ զաւանդութիւն ժողովոց սրբոց Հարցն եւ կաթողիկոսին Գրիգորի: Եւ տեսաք զի ըստ հետոյ շաւղաց սրբոյն Գրիգորի Մերոյ Լուսաւորչին եւ առաքելական կանոնացն էր„ եւ այլն:

Այս էր մեր Հարց ու նախնեաց հաւատքը չորեքտասաներորդ դարուն մէջ, ինչպէս որ հինգետասներորդ դարուս մէջ ողջամիտ եւ ուղղափառ Հռոմէական Հայք կը խոստովանին: "Նոյն երանաշնորհ հայրապետք՝ երբ որ ժողովքին մէջ սուրբ խորհրդոց կատարման ու տօներուն կարգաւորութեանց վրայ վճիռ կու տային, այսպէս կ'աղաղակէին. "Զայս հրամայեաց սուրբ Աղեքսանդրոս (Պապն Հռոմայ, որ եօթներորդ էր ի Պետրոսէ) մեծ եւ փառաւորեալ վկայն Քրիստոսի,

1 Ժողովքն այսպիսիները կը կոչէ "արս տգէտս եւ ընդդիմասացս ճշմարտութեանն, որոց փոյթն է եղծանել զճշմարտութիւն կանոնիս, եւ զմիաբանութիւն մեր՝ որ ընդ ուղղափառ եկեղեցին լուծանել եւ քակել . . . որք եւ այսր անդր ընթացեալ՝ աղարտելով զճշմարտութիւն կանոնիս, որ հաստատեալ եդաւ մերոյ եկեղեցւոյն ի մայրաքաղաքն Սիս ի սուրբն Սոփիա, եթէ ընդդէմ աւանդութեանց սրբոյն Գրիգորի լուսաւորչին մերոյ է եւ առաքելական կանոնացն. Եւ այսուհետեւ մնասցէ եւ ըստէր քահանայն իւրեանց զհաւատամս ի պաշտամանցն խոստովանել դարձուցանէին ի ճշմարտութենէ կանոնիս. եւ ժողովս եւ կոյտս առնէին, կոչելով ընդդէմ աւանդութեանց կաթողիկէ եւ առաքելական եկեղեցւոյ„ : Սահման. Ժողով. Սսոյ:

որ զամենայն կանոնս եւ զաւանդութիւնս ընդդէմ ունէր ի սրբոյն Պետրոսէ„ ։ Դարձեալ Հռոմայ եկեղեցիէն բաժնուիլն ու պառակտիլը՝ Քրիստոսի ճշմարիտ եկեղեցիէն բաժնուիլ ու պառակտիլ համարելով, "Պառակտումն, կ'ըսեն, ի մեծ եկեղեցւոյն Հռոմայ եւ յայլոց եկեղեցեաց . . . . բաժանումն է ի կաթողիկէ եկեղեցւոյ„ ։ Նաեւ այսպէս երբ որ իրենց վճռոյն՝ ճշմարտութեան չանսացող անսաստ հակառակորդներուն վրայ երկնից շանթերը տեղալ եւ արքայութեան դռները գոցել կը սպառնային, չէին ըսեր թէ կը նզովենք կը մերժենք ի սրբոյ եկեղեցւոյ, այլ թէ "Ի ձեռն Հոգւոյն սրբոյ հրամանին՝ որոշեմք եւ ի բաց հերքեմք զնոսա ի կաթողիկէ եւ առաքելական սուրբ եկեղեցւոյն Հռոմայ„ ։ Արդ՝ յայտնի է ուրեմն որ ըստ վճռոյ մեր երանելի Հարց՝ Հռոմէական եկեղեցիէն մերժուողները յեկեղեցւոյն Քրիստոսի մերժուած են ։ Բառերը յայտնի են ։

Այն ատենները կը հովուէր ընդհանուր եկեղեցին Յովհաննէս ԻԲ. եւ ասդիէն անդիէն Հայոցմէ ոմանց ոմանց վրայ հաւատոյ նիւթերու մէջ ամբաստանութիւններ Հռոմ կը լսուէին. երբ որ քահանայապետական աթոռը նստաւ Բենեդիկտոս ԺԲ. որ աս ամէն բաներուն իր կարդինալութեան ատենէն տեղեակ էր, ատեան մը դրաւ նոյն ամբաստանութիւնները քննելու[1] ։ Որչափ որ ալ ատոնք ազգին մարմնոյն վրայ չէին իյնար, (որովհետեւ ինչպէս տեսանք՝ իր կաթողիկոսն ու մեծ աթոռներուն եպիսկոպոսները, թագաւորը, իշխանքն՝ իրենց ժողովրդովը եկեղեցւոյ գլխոյն հետ միացած էին,) այլ ոմանց ոմանց վրայ[2] դէպ ի ներսի կողմերը, այսու ամենայնիւ Ս. Քահանայապետն այն քննութեան ատեա-

1 Այսպէս կը գրէ ինք Բենեդիկտոս ԺԲ. Հայոց կաթողիկոսին ։ Առ Ռայնալդոսի, Ամ 1341. Թիւ 46 ։

2 Աս պարագան յայտնի գրուած է ամբաստանութեան թղթին մէջ "Consequenter ex depositionibus et confessionibus eorum (Armenorum et Latinorum) inventum est dictos Armenos *vel aliquos ex eis* tenere credere et docere articulos infrascriptos. Rainald. Ann. Ecc. ann. 1341. § 48.

նէն խմբագրուած ամբաստանութիւնները Հայոց կաթողիկոսին ներկելով՝ խրատ եւ հրաման կու տայ ազգային ժողով գումարելու, եւ անով՝ խոստովանեալներն ուղիղ ճանբուն մէջ դնելու: — Մխիթար կաթողիկոս Լեւոն թագաւորին հետ միաբան խորհրդով, իբրեւ որդի հնազանդ, առանց յապաղելու Սսոյ Զ. ժողովքը գումարեց 1342ին. եւ Քահանայապետին՝ հաւատաւորութեան, սիրոյ ու մեծարանաց թուղթ մը գրելով[1], քահանայապետական հրամանին կատարումը ծանուցանելէն ետքը՝ եղած ամբաստանութեանց դէմ գրուած ջատագովութեան գիրքն առանձին պատգամաւորութեամբ Հռոմ խրկեց, պատրաստ ընծայելով զինքն ու իր ազգը Քահանայապետին որոշման գլուխ ծռելու ամենայն հպատակութեամբ, եւ սոսկ համար կը խնդրէր որ խրկէ իրեն Քահանայապետաց այլեւայլ օրէնքները, որ ընդհանուր եկեղեցւոյ բարեկարգութեան համար տրուած են: Բենեդիկտոս ԺԲ.ին յաջորդած էր Կղեմէս Զ. որն որ կաթողիկոսին եւ իր ժողովոյն մէջ ներկայացած եկեղեցւոյն ողջմտութիւնն իմանալով՝ սիրով եւ յօժարութեամբ հայրական թուղթ մը գրեց, որուն մէկ մասը յառաջ կը բերենք հոստեղս, ինչու որ սա բաներուն վրայ աւելի պայծառ լոյս մը կու տայ:

"Առ մեծարգոյ եղբայրս, Մխիթար՝ կոչեցեալ կաթողիկոս Հայոց եւ արքեպիսկոպոսունս եւ եպիսկոպոսունս, եւ առ որդիս սիրելիս աբբայս եւ առ այլ ամենայն կղերս կարգեալս ի Հայոց աշխարհի:

"Քանզի, ըստ վկայելոյ աստուածեղէն իմաստութեանն ի ձեռն նուիրական պատգամաց, իմաստութիւն որդւոյ ուրախ առնէ զհայր, եւ զմայր տրտմեցուցանէ անմտութիւն որդւոյ, մեք՝ որ թէպէտ եւ անարժան իսկ էաք, զպաշտօն յանձն առաք յԱստուծոյ՝ հովուելոյ զհամօրէն եկեղեցի եւ զեկեղեցի սուրբ Հռոմայ, զտիկին եւ զվարդապետ ամենայն հաւատացելոց եւ զհայրն

1 Ռայնալդ. Ամ 1346. Թիւ. 118:

մեր, ուրախ լինիմք վասն ձեր եւ այնչափ իմն մանաւանդ ցնծամք եւ բերկրիմք ի Տէր, որչափ զի լսեմք եթէ ճշմարիտ խնամատարութեամբն, այն իսկ է կաթուղիկէ հաւատոյն լուսով փայլեալ շողայցեք: Բայց յոյժ իմն տառապեցաք ի սիրտս մեր՝ յորժամ լուր եհաս եթէ լուսաւորութիւն կողմանցն այնոցիկ մթագնեալ իմն իցէ ի խաւարէ անտի մոլորութեանց նոցին հաւատոց. բաղձանամք իսկ կարի զի խոյս տուեալ ձեր ի խաւարէ կողմանցն այնոցիկ, պայծառութիւն նոցին հաւատոց փայլեսցէ ի ձեզ եւ մինչեւ ի լոյս անդր յաւիտենից երկնաւորն հայրենեաց ուղղեսցէ զձեզ եւ ժամանողս արասցէ: Արդարեւ իսկ թուղթքն ձեր՝ զոր կանխաւ ի ձեռն մեծարոյ եղբարց մերոց Յովհաննու Մարգարեան եւ Անտոնիոսի եպիսկոպոսի եւ սիրելւոյ որդւոյ մերոյ Գաբրիելի ընթերցողի եւ ուղղակալի կարգի Արեւրագայն եղբարց՝ որ ի Հայաստան իցեն, եւ ազնուական առնն Գրիգորիոսի Զէնկիզ, պատգամաւորաց ձերոց յղեցէք յառաքելական աթոռս մեր, բովանդակեալ ունէին զամենայն՝ զոր կանխաւ ուրեմն առաջինն մեր երանելի յիշատակաց արժանի Բենեդիկտոս ԺԴ. Քահանայապետ իւրովք թղթովքն հայրենի իմն գթով, խնդրեաց ի ձէնջ եւ ազդ արար զի ընդդէմ կռուիցէք մոլորութեանց ինչ կաթուղիկէ հաւատոյն, որք բազում իմն վտանգաւ, որպէս լսէր ի հաւատարիմ վկայութեանց, տատանէին ի կողմանսն յայնոսիկ, եւ զի դուն եդեալ ջանայցէք հաւատարիմ եւ զգուշաւոր հոգաբարձութեամբ ջնջել եղծանել զնոյնս ի սրտից Հայոց, առնելով եւս դատապարտ զնոսին ի ժողովս ձեր . . . „:

Հոս տեղս Քահանայապետն իր անուամբ Հայոց համար հրեշտակներ անուանելէն ու խրկել խոստանալէն ետքը սապէս կը գրէ:

“Նմին իրի խրատ տամք եւ յորդորեմք զընդհանուր ժողովս ձեր, եւ պատուէր եւս առանձինն տուեալ յանձն առնեմք ձեզ զհրեշտակսն զայնոսիկ՝ յորոց ձեռն զհրովարտակս եւ զվճիռս քահանայապետականս՝ զորս

խնդրեցէք, յղեմք առ ձեզ, մանաւանդ թէ եւ զմեզ իսկ ի Հռոմ, զի առ մերս եւ առ նորին աթոռոյ մեծարանաց, մարդասիրութեամբ ժողովեցէք զնոսա, եւ գտիցէք նոցա զարժանաւոր մեծարանս, եւ նոցա իբրեւ հրեշտակաց աթոռոյն՝ զորմէ ասացաք, մեծաւ փութով եւ ցածութեամբ ունկն մատուցանիցէք եւ անկեղծաւոր մտօք հաւանեալ անսայցէք կենարար խրատուց եւ հրամանաց նոցա եւ թելադրութեանց եւ վարդապետութեանց եւ հնազանդ լինիջիք նոցա արդեամբք եւ գործովք . . . :

“Հաստատութեամբ իսկ գիտիցէք, զի եթէ զամենայն՝ զոր ասացաքս, առնիցէք, զոր օրինակ ունիմք իսկ ակն, ի ծոց սրբոյ մօր եկեղեցւոյ գգուեսցուք զձեզ, եւ որչափ ինչ կարող եւ ձեռնհաս լիցիմք Տերամբ՝ ձեռնտու եւ օգնական լինիցիմք ձեզ յառաջամիտ պատգեւօք, ի դէպս դէպս ձեր կարեւորս, եւ ոչ ամբաստանելեացն ինչ զձէնջ՝ եթէ գուցեն, դիւրագոյն ունկն հաւանութեան մատուցանիցեմք . . . [1]” ։

Քահանայապետական հրեշտակներն իրենց յանձնուած պաշտօնը եռանդեամբ կը կատարէին, եւ Մխիթար կաթողիկոս նորէն Քրիստոսի փոխանորդին առջեւն իր եւ իր եկեղեցւոյն դաւանութիւնը կը դնէր։ Իսկ քահանայապետը Հայոց եկեղեցւոյն հաւատոյ սկզբնական անեղծութիւնը պահելու բաղձանքով՝ առանձին երկայն թուղթ մ'ալ կը գրէր կաթողիկոսին եւ իր մէկ քանի տարակոյսներուն լուծումը կը խնդրէր։ Մեր նպատակէն դուրս կ'երեւայ նոյն թուղթն ամբողջ հոստեղս յառաջ բերել. այսու ամենայնիւ հարկ կը համարինք հատուած մը միայն առնուլ, ուսկից յայտնի կը տեսնուի թէ ինչ բանի մէջ Հայոց եկեղեցւոյն հաւատքը հաստատուն մնացած էր։ Կը գրէ Քահանայապետը։

“Որդ յառաջին գլուխ պատասխանւոյ քոյ, յորում հիմն կաթողիկէ հաւատոցն զայն համարիս, զի

1 Ռայնալդ. Ամ 1346. Թիւ 68։

դու եւ եկեղեցի Հայաստանեայց, որ քեզն հնազանդի-ցէ, հաւատայք եւ ընդունիք, խոստանայք ունել եւ ասես դու եւ եկեղեցի Հայաստանեայց՝ որ հնազանդ-եալն է քեզ, թէ Հռոմէական եկեղեցի միայն՝ որոյ վերադոյն Քահանայապետն է Պապն Հռոմայ, կաթո-ղիկեայ է եւ ի նմին եւեթ է ճշմարիտ փրկութիւն, մի ճշմարիտ հաւատք եւ մի ճշմարիտ միութիւն եւ ճշմարիտ թողութիւն մեղաց, խնդրեմք նախ թէ հա-ւատա՞ս դու եւ եկեղեցի Հայաստանեայց՝ որ հնազան-դեալ է քեզ, եթէ ամենեքին՝ որ ի միութեան զնոյն կաթողիկէ հաւատս ընկալան, եւ ապա ուրեմն ի հա-ղորդութենէ հաւատոց Հռոմէական եկեղեցւոյն՝ որ մի միայն կաթողիկեայն կամ ընդհանրականն է, անջատե-ցան կամ յետոյ անջատեսցեն, հերձուածողք իցեն եւ հերետիկոսք՝ եթէ յամառութեամբ իմն որոշեալք ի հաւատոց նորին Հռոմէական եկեղեցւոյ կայցեն մնա-ցեն այնպէս: Երկրորդ անգամ խնդրեմք եթէ հաւա-տա՞ս դու եւ Հայք քեզ հպատակեալք, զի՞.ոչ ոք կարող է ի ճանապարհորդ մարդկանէ արտաքոյ հաւա-տոց եկեղեցւոյն այնորիկ եւ հնազանդութեան Քահա-նայապետին Հռոմայ՝ ժամանել ի փրկութիւն:

"Իսկ յերկրորդ գլուխ անդ ասես, եթէ հաւատաս դու եւ ընդունիս թէ միայն Քահանայապետն Հռոմայ զլխութիւն իշխանութեանն ունիցի, զոր երանելի առա-քեալն Պետրոս ունէր, եւ թէ նոյն Քահանայապետն Հռոմայ՝ տիեզերական փոխանորդ է Քրիստոսի, եւ դարձեալ եթէ դու կաթողիկոսդ Հայոց՝ հնազանդ ես Քահանայապետին Հռոմայ եւ լինելոց իսկ ես այսու-հետեւ. սակայն վասն այսր հնազանդութեան չկամիմ ընդ. չառնուլ յանձն զի փոքրկասցիս դու եւ եկեղեցի քո կամ կորուսանիցէք ինչ եւ կամ նուազեալ գտանի-ցիք ի շնորհաց, յազատութեանց, յառաջնորդութենէ, ի վիճակէ, յիրաւանց եւ յիշխանութենէ հրամայելոյ համօրէն ամենայն Հայոց՝ զորս նախնիք քո եւ եկե-ղեցի Հայոց ի նմին Հռոմէական եկեղեցւոյ ընկալան եւ

պահեցին. նա մանաւանդ աղաչես զի մեզ՝ որ վերադոյն Քահանայապետաս եմք, առ ի մշտնջենաւոր յիշատակ մեր, անփոփոխ մնացեալ յառաջագոյն ճառելոցն, արժանի համարիցիմք յաճախել առաւելուլ զազատութիւնս եւ զիրաւունս քո եւ զեկեղեցւոյ քո, որչափ հնար իցէ ըստ Աստուծոյ լինել: Ասես միւսանգամ Եղէ հաստատուն եւ ընդունելի լինի զոր եւ պարզած է ամենայն եկեղեցականաց կանոնադրէ եւ ստորագրական եկեղեցւոյ հնազանդ լինել Քահանայապետին Հռոմայ, քանզի Յիսուս Քրիստոս զշնորհ իշխանութեան ետ երանելւոյն Պետրոսի կամ նորա եւ կամն այնոցիկ՝ որ զհետ նորա ունիցին: Դարձեալ ասես, եթէ հաւատաս դու եթէ ո եւ իցէ Քահանայապետ Հռոմայ, որ վերադոյնն է՝ յանցեալ, յայժմու եւ ի հանդերձեալ ժամանակս, էր, է եւ լինելոց է եւեղակալ երանելւոյն Պետրոսի, զի անմիջնորդական իմն պայմանաւ էր, է եւ լինելոց է տիեզերական փոխանորդ Քրիստոսի: Դարձեալ խոստանաս եթէ որչափ ի կարի քում իցէ, հօգ մեծ յանձին ունիցիս զի ամենայն եկեղեցականք եւ աշխարհականք քեզ հպատակեալք զամենայն ճառեալդ եւ զմի մի ի նոցանէ առանձինն սրտի մտօք հաւատասցեն եւ կալցին,,[1]:

Անարգասաւոր չեղաւ այս վերոյիշեալ քահանայապետական թուղթն ալ, եւ Մխիթար կաթողիկոս այնչափ յօժարամիտ էր սուրբ աթոռին ամենայն ակնարկութեանց հնազանդելու, որ զՅակոբ կաթողիկոս՝ որն որ իր նախորդն եղած էր, անյապաղ ճամբայ կը դնէր Քահանայապետին առջեւն իր եւ իրեն հնազանդ Հայոց եկեղեցւոյն հաւատոյ անձարատութիւնը պարզելու: Այնչափ ծանր էր ուղղահաւատ կաթողիկոսին սրտին Քրիստոսի փոխանորդին աչքին առջեւ աբատաւոր երեւալը:

Սոյդ է՝ որ այլեւայլ օտար վարդապետութեանց հողմունքը՝ որոնց ուստի գալն եւ ուր երթալը չէր գիտցուեր, ցորենի մէջ որոմ ցանած էին, եւ այս որոմներն

1 Բազմավէպ. Ամ 1851. Թիւ 3:

ասդին անդին կը ծլէին. բայց անթուն հովիւք իրենց ոչխարներն այնպիսի վնասակար արօտներէն կը զգուշացընէին, ինչպէս մինչեւ հիմակ յառաջ բերուած վկայութիւնները յայտնի եւ պայծառ կը ցուցընեն։ Եւ եթէ այնպիսի աստուածուսոյց հովիւներուն յաջորդութիւնը քաղաքական խռովութեանց պատճառաւ ընդհատելու չըլլար, ինչպիսի՜ գեղեցիկ ապագայի մը ակնկալութիւն կրնար ըլլալ։ Բայց աստուածային տեսչութիւնը՝ որուն դատաստաններն անքննելի են, անանկ որոշած էր՝ որպէս զի ընտիրներն երեւան։

Շատ չանցաւ՝ եկան հասան ան դժբախտ եւ աղետալից տարիները, որոնց մէջ՝ արդէն հոգեվարութեան մէջ ինկած Թագաւորութիւնն իր վերջին շունչը կուտար; որով չէ թէ միայն Հայ ազգին վերջին երեքհարիւր տարուան քաղաքական կենդանութիւնը կամ գոյութիւնը երկրիս վրայէն բոլորովին կը ջնջուէր (1393), այլ նոյն իսկ բարեկարգութիւնն եւ ուղղութիւնը օր ըստ օրէ երթալով կ'եղծանէր, երբ որ աշխարհակործան բռնաւորութիւն մը, գարշ զեղխութիւնն ու անգութ բարբարոսութիւնը կ'ողողէր այն դժբախտ երկիրները։ Այսու ամենայնիւ դեռ զեղծումն ընդհանուր չէր ազգին մէջ, դեռ առաջին գեղեցկութեան դրոշմը կը տեսնուէր կէս դար ետքը, երբ որ Հայոց հրեշտակներն իրենց կաթուղիկոսէն եւ Հայաստանեայց եկեղեցւոյն անուամբ Փլորենտիա կը հասնէին ընդհանուր ժողովքին մասնակից եւ խորհրդակից ըլլալու՝ եկեղեցւոյ գլխոյն գահերիցութեամբ։

Բայց բազմավտանգ ու տաժանելի երկայն ճամբորդութիւն մը զրկեց զիրենք այս շնորհքէն, եւ հասած ատեննին ժողովքն արդէն լմնցած գտան, թէպէտ Քահանայապետը, արեւելեան ու արեւմտեան կայսրներն ու ժողովական հայրապետաց եւ կարդինալաց մեծ մասը դեռ ներկայ կը գտնուէին, ուստի եւ կրնայ ըսուիլ որ ժողովքը դեռ լուծուած չէր։ Սակայն մենք մտադրութեամբ քննենք ու տեսնենք Հայոց եկե-

ղեցւոյն պատգամաւորաց հոգւոյն ու ընթացքը, որ չէ թէ միայն իրենց եկեղեցւոյն հաւատոյ դաւանութիւնը ողջմտութեամբ կու տային, այլ նաեւ եթէ անոնց մէջ օտար վարդապետութիւն մը կը գտնուէր, յօժար կամօք ուղղելու պատրաստական կը ցուցնէին զիրենք՝ կաթողիկէ եկեղեցւոյն ու անոր գլխոյն առջեւը։

Բայց ի՞նչ էր արդեօք իրենց խոստովանութիւնը եւ ինչպիսի՞ վկայութիւն կու տային Հայոց եկեղեցւոյն կողմանէ։ — Լսենք իրենց բուն խօսքերը՝ զորոնք կը խօսէին Քահանայապետին առջեւն ելած եւ իրենց հրեշտակութեան ու Հայոց եկեղեցւոյն դաւանութեան վաւերական թղթերն[1] ընծայելէն ետքը. «Զ.Քրիս-

[1] Հնութիւնը պահուած է մեզի Կոստանդին կաթողիկոսին իր պատգամաւորներուն ձեռքը տուած մէկ թուղթը՝ զորն որ հոս կը դնենք։

Խոստովանութիւն վարդապետացն Հայոց, որ ի պատրիարքութեան տեառն Եւգենեայ պապու [illegible] ի Փլորենտիա, առնել միաբանութեան։

«Կոստանդին ծառայ ծառայից Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, շնորհօքն Աստուծոյ կարգեալ պատրիարք Վաղարշապատու, գրեմ զայս թուղթ ի փառաւոր քաղաքն Կաֆայու։ Առաքեմ զօրհնութիւն իմ ամենայն ժողովրդեանն, որ բնակեալ իցեն ի Կաֆա։ Որդեակք իմ հաւատարիմք, պարծելով իմն գրեմ առ ձեզ, այս ինքն՝ որդւոյ իմում Սարգսի վարդապետի, որ անցեալ նստի յաթոռ ի Կաֆայու քաղաքի փոխանակ ընդ իմ, եւ արքեպիսկոպոսի որդւոյ իմում անդրանկի եւ ամենայն քահանայից սրբոց, Ստեփաննոսի, Մովսէսի եւ այլոց ամենեցուն, եւ ազնուական քաղաքացեաց Կաֆայու, այս ինքն է՝ Ամիրբեթայ . . . եւ այլոց ամենայն քաղաքացեաց զօրութեամբ Հոգւոյն սրբոյ գրեմ զայս թուղթ եւ տամ ձեզ զօրհնութիւն եւ ողջոյն։ Օրհնութիւն սրբոյ խաչի եւ սրբոյն Գրիգորի լիցի ի վերայ ձեր յաթոռոյ սրբութենէ մերմէ։ Փրկեսցէ զձեզ Աստուած ի բարւոք ողորմութեամբն յամենայն փորձանաց սատանայի եւ ի հոգեւորականաց եւ ի մարմնաւորականս։ Յաճախեսցէ Աստուած զորդիս եւ զդստերս եւ զինչս ձեր։

«Գիտասջիք, որդեակք իմ սիրելիք, այս ինքն՝ որդի իմ Սարգիս վարդապետ, եւ դուք քահանայք եւ քաղաքացիք, յայտնի լիցի ձեզ զի եկն առ մեզ Եմմանուէլ եպիսկոպոս եւ ած զձեր թուղթն ի Կաֆայէ, ընդ նմին եւ զթուղթս փոխանորդի մեծի Քահանայապետին, եւ զթուղթ եւս [illegible] բդեշխի։ Ընթերցաք եւ ուրախ եղեաք զի գրեցէք վասն միութեան ընդ Հռոմայեցւոց եկեղեցւոյ. իբրեւ զայն լուայ, շնորհս եւ գոհութիւնս մատուցի Աստուծոյ, շնորհք Հոգւոյն սրբոյ են՝ զի սկիզբն եղեւ այդր գործոյ. ի դէպ եւ արժան է քրիստոնէից ի միութեան եւ ի միաբանութեան կալ, եւ հանդերձ կատարեալ ճոխութեամբ եւս իշխանութիւն Սարգսի վարդապետի՝ որ կայ փոխանակ անձին իմոյ, եւ Մարկոսի վարդապետի, եւ Թովմ-

տոսի աթոռն ունիս, փոխանորդ Քրիստոսի ես ի վերայ աթոռոյ առաքելոցն։ Եկեալ եմք առ գլուխդ մեր, եկեալ եմք առ հովիւդ։ Դու ես հիմն եկեղեցւոյ, անդամ՝ որ զանձն ի բաց հեռացոյց, ի քէն ի բաց հեռացոյց, եւ զհօտ՝ որ ի քէն զանձն ի բաց անջատեաց, զազան չար պատառեաց։ Եկեղեցի՝ որ զքո զհետ ոչ եկն կամ՝ քեւ ոչ պատսպարեցաւ, ի հիմանց խարխարեալ կործանեցաւ։ Գլուխդ, լեր մշտաց անդամոցն մշտակից. հովիւդ, ժողովեա զհօտդ։ Դու՝ որ ունիս զիշխանութիւն երկնաւորական փականացն, բաց մեզ զդուռն կենացն յաւիտենից։ Քանզի իշխանութեամբ հայրապետին (պատրիարքին) մերոյ եւ համօրէն եպիսկոպոսաց ազգին մերոյ եկաք առ քո սրբութիւնդ եւ տեսաք։ Ահա հանգամանք մեր եւ հաւատ, եթէ է ինչ պակասութիւն՝ ուսո։ Ճանապարհն եւեթ եղեւ մեզ խափան՝ զի յամեցաք։ Ծառայք քո եմք,,[1]։

Այսչափ միայն բաւական չէր։ Եւգինէոս Դ. իբրեւ առաջին հովիւ եւ վերակացու հօտին Քրիստոսի, կը քննէր հերձուածներուն դաւանութիւնը, ուղղելու բաները կ'ուղղէր, եւ առջեւնին կը դնէր կաթողիկէ հաւատոյ դաւանութիւնը եւ ընդհանուր ժողովոյն վճիռները[2], զորոնք նոյն հերձուածները յանուն Հայաս-

մոյն վարդապետի, եւ Յովակիմայ եպիսկոպոսի Բերիոյ, զի երթիցեն ի ժողովն, եւ լուսաւոր լիցի նոցա Հոգւոյն սրբոյ եւ զօրութեամբ Հաւատոյն սրբոյ, զոր օրինակ եղեն միաբան սուրբն Սեղբեստրոս եւ սուրբն Գրիգորիոս, այսպէս միաբանեսցէ եւ զմեզ Աստուած ի խաղաղութեան, ի սէր եւ ի միութեան, եւ զոր օրինակ ինքնակալն Կոստանդիանոս եւ ինքնակալն մեր Տրդատ կային ընդ միմեանս զմիաբանութիւն եւ կռեցին դաշինս, ըստ նմին օրինակի եւ դուք հաստատեսջիք զոր արարին նոքա վասն միաբանութեան, եւ մեք յօժար իսկ եմք ի գործս ինքնակալացն այնոցիկ։ Նա եւ որ ինչ թելադրեր լինիցի Հոգւոյն սուրբ սրբոյ ժողովոյն, կամք կամ եւ պատրաստ այնմ հնազանդ լինել,,։

Գրեալ է ԻԵ ամսեանն Յուլիսի, յամի Տեառն 1438։

1 Լաբբ. Համաք. սրբոց ժողովոց. Յաւել. Հատ. Ե. 203։

2 Ասանկ կը վկայէ նոյն իսկ Քահանայապետն իր կոնդակին մէջ. "Իսկ զՀայս խրատեցին մնալ մեծաց եւ աշխարհագոյժ գովութեանց արժանաւոր համարիմք։ Քանզի վաղվաղակի իսկ իբրեւ ի ժողով կոչեցան ի մէնջ, իբրեւ ցանկացողք իմն եկեղեցական միութեան՝ զվարդապետս իւրեանց մեծարոյս, զաստուածապաշտս եւ զուսեալս հան-

տանեայց եկեղեցւոյ՝ հլու հպատակութեամբ կ'ընդու-
նէին ու կը ստորագրէին։ Եւ ահաւասիկ իրենց ստորա-
գրած վճիռներուն ու դաւանութեան մէջ սա՛նք ալ
բառ առ բառ կը գտնուին. «Սահմանեմք դարձեալ
եթէ աթոռն առաքելական եւ Քահանայապետն Հռո-
մայ ունի զգլխաւորութիւն ընդ բնաւ տիեզերս, եւ նոյն
Քահանայապետն Հռոմայ յաջորդ է երանելւոյն Պե-
տրոսի՝ իշխանին առաքելոց, եւ ճշմարիտ փոխանորդ
Քրիստոսի, գլուխ բովանդակ եկեղեցւոյ եւ Հայր եւ
վարդապետ համօրէն ամենայն քրիստոնէից, եւ նմին
իսկ յանձն լեալ է երանելւով Պետրոսիւ ի Տեառնէ
մերմէ Յիսուսէ Քրիստոսէ լի եւ կատարեալ իշխանու-
թիւն արածելոյ, հովուելոյ, վարելոյ զընդհանուր եկե-

գերձ բաւական իշխանութեամբ,
այս ինքն՝ ընդունելոյ զայն որ զինչ
Հոգին սուրբ յայտ առնէ սրբոյ
ժողովոյս, ամսաւուս ի հեռաւոր
աշխարհաց բազում ճգանմբք եւ
վտանգիւք եւ ծովուն վտանգա-
ւա մեզ եւ առ սուրբ ժողովս ու-
ղարկեալ յղեցին։ Իսկ մեք, որպէս
ինչ վայելէ եւ արժան էր պաշտօ-
նիս հովուութեան՝ ցանկացեալք
լրջմտութեամբ ընդ կատարումն
այսպիսւոյ գործոյ սրբոյ՝ յաճախեա-
գոյնս ճառ արկեալ խօսեցաք ընդ
նոյն վարդապետսն զայսմ սրբոյ
միութենէ։ Եւ զի մի եւ դոյզն ինչ
յապաղումն սրբոց իրացս լինիցի,
որոշեցաք յամենայն իսկ ի կարգէ
սրբոյ ժողովոյս առս ուսեալս եւ
ճարտարս յաստուածեղէն եւ ի
մարդկեղէն իրաւունս, որ ամենայն
հոգաբարձութեամբ եւ փութով
եւ մեծաւ ջանիւք խօսեցան ընդ
նոյն վարդապետսն վասն նոցին ի-
րաց եւ հարցեալ քննեցին ճշգիւ
դասակաւ զհաւատս նոցա եւ զմի-
ութենէ էութեան Աստուածու-
թեանն, եւ զաստուածեղէն ան-
ձանցն Երրորդութեան, եւ զմարդ-
կութենէ Տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի, եւ զեւթանց խորհրդոց
եւ զայլոց եւս իրաց՝ որ ուղղափառ
հաւատոյն եւ պաշտամանց համայ-
նական եկեղեցւոյ անդ կային։
Նմին իսկ յետ բազում վիճմանց
եւ խօսից եւ բանակցութեանց, եւ
յետ ոչ սակաւ խոյզ եւ խնդիր
առնելոյ վկայութեանցն՝ որ ի Հարց
եւ ի Վարդապետաց անտի սրբոյ
եկեղեցւոյ ի մէջ ածան, եւ յետ
քննելոյ զիրան՝ զորոց բանքն իսկ
էին, ապա այնուհետեւ, զի մի
միւսանգամ երկեւան ինչ երկմտու-
թեան ի ներքս մտանիցէ առ նո-
սին Հայս զհաւատոյն ճշմարտու-
թենէ, եւ զի յամենայնի միոյն
խորհեսցին ընդ առաքելական գա-
հուն, եւ զի նոյն եւս միութիւն
հաստատուն եւ մշտնջենաւորական
առանց ամենայն երկմտութեան եւ
կասկածանաց հանապազորդեսցէ,
բարւոք եւ ի դէպ վարկաք ի սմին
հրովարտակի՝ որում հաճ եւ հա-
ւան գտաւ սուրբ ժողովս Փղորեն-
տական, աւանդել նոցին վարդա-
պետացն, հանդերձ նոցին իսկ հա-
ճութեամբ, կարճ ի կարճոյ զճշ-
մարտութիւն ուղղափառ հաւա-
տոյն՝ զոր զվերադոյն ասացելոց ի-
րացն դաւանէ եկեղեցին Հռովմէա-
կան»։

ղեցի. զոր օրինակ եւ ի գործս անդ տիեզերական ժողովոց եւ ի սուրբ կանոնսն կայ"։

Դարձեալ հրեշտակներն իրենց հայրենիքը ժողովոյն պատգամներովը, ինչպէս տասնումէկ դար յառաջ կը դառնար երբեմն Ս. Լուսաւորչին աջակիցն ու յաջորդը Նիկիական կանոններով։ — Ս. Արիստակէս կը դառնար մեծ վստահութեամբ իր ազգայնոց՝ Հոգւոյն սրբոյ պատգամներուն հպատակելուն վրայ։ Կը դառնային նաեւ Կոստանդինի կաթողիկոսին հրեշտակները՝ առ Գրիգոր Թ. կաթողիկոս, բայց թէ ինչպէս՝ պատմութիւնը կը լռէ։

Սակայն աս ստոյգ է՝ որ այս ամենայն այնպիսի ատեն կը պատահէր, ուր արքունական գաւազանը ջախջախած, իշխանութիւնն ու թագը գերութեան տակ կը հեծէին, եւ հայրապետական աթոռը գահավիժութեան ու երկպառակութեան նիւթ եղած էր, եւ կրնանք ըսել արտասուօք թէ "Յաւուրսն յայնոսիկ ոչ գոյր թագաւոր Իսրայէլի, եւ այր իւրաքանչիւր զհաճոյս աչաց իւրոց առնէր"[1]։ Ահ. ո՛ր հայրենասէր սիրտն է՝ որ լսէ այս ամենայն եւ չլայ ու չողբայ Երեմիայի հետ. "Սուգ առին ճանապարհք Սիոնի. զի ոչ գոյր երթեւեկ տօնից տարեկանաց նորա. ամենայն դրունք նորա եղեն յապականութիւն. եւ քահանայք նորա հաչէին, հառաչէին եւ յոգոց հանէին. կուսանք նորա ի գերութիւն վարեցան. եւ ինքն դառնացեալ յանձն իւր։... Զի՞նչ վկայութիւն վկայեցից քեզ կամ զի՞նչ նմանութիւն նմանեցուցից զքեզ, դուստր Երուսաղէմի. ո՞վ մխիթարեսցէ զքեզ, օրիորդ դուստր Սիոնի, զի ծանրացաւ բաժակ բեկման քո. իսկ ո՞վ իցէ որ բժշկեսցէ զքեզ"[2]։ Աստուծոյ բարեխնամ տեսչութիւնը միայն այս ամենայն չարեաց եւ թշուառութեանց կրնար դարման մատուցանել, որուն առջեւը պատուական էին մեր Ս. Լուսաւորչին բազմամեայ չարչարանքներն ու անեղծ հաւատոյ անշէջ բոցերը, որուն համար ալ աստուածային

1 Դատ. ԺԷ. 6. եւ ԻԱ. 24։ 2 Ողբ. Ա. 4. — Բ. 13։

գթութիւնն իր առաքելական արգեանց ծննդականութիւնն ու արդասաւորութիւնը չէր դադրեցըներ, եւ իր հոգեւոր սերնդոց մէջէն կը պահէր իրեն "Եօթն հազարները,,[1] Տրդատայ տան մէջ։ Ուստի եւ կաթողիկոսներուն յաջորդութեան մէջ կը տեսնենք նաեւ արթուն եւ զգաստ հովիւներ՝ որ ճշմարտութիւնը կը ճանչնային եւ "Ոչինչ զգացուցեալ մարմնոյ եւ արեան,,[2] առաջին հովուին ետեւէն կ'երթային եւ անոր ձայնին միամիտ սրտիւ կը լսէին։

Այսպիսի աստուածաւանդ հայրապետաց թիւը մեծ է. բայց համառօտիւ անցնելու համար, առանց մի առ մի Հայաստանի մէջ կամ Հայաստանէն դուրս այլեւայլ եպիսկոպոսաց ողջմտութիւնը յիշելու՝ դիտաւորաբար կաթողիկոսաց վրայ կ'ամփոփենք մեր մտադրութիւնը։

Վեշտասաներորդ դարուն կէսին Ստեփանոս Ե. կաթողիկոսը, որուն իմաստութեան համբաւը միայն Հայաստանի մէջ ամփոփած չէր [3], 1549ին Հռոմ կ'երթար, եւ հոն իր հպատակութիւնն ու յարգութիւնը Ս. Պետրոսի յաջորդին մատուցանելէն ետքը՝ կը խնդրէր միանգամայն որ Հայոց ազգին վրայ առած կաթողիկոսութեան կամ պատրիարքութեան իշխանութիւնն ընդունի ու հաստատէ[4]։

Երկրորդ տարին Յոբելեան ներողութեան յիշատամեակն էր, Ստեփանոս կաթողիկոս կեցաւ Հռոմ այն առանձինն շնորհաց մասնակից հաղորդակից ըլլալու, եւ

1 Հռոմ. ԺԱ. 14։
2 Գաղատ. Ա. 16։
3 Հ. Միք. Վ. Չամչ. Պատմ. Հայ. Գ. 518։
4 Ռայնալդոս՝ իր եկեղեցական տարեգիրներուն մէջ (յամին 1549, Թիւ 35.) նոյն իսկ Հռոմայի կարդինալներուն ժողովքին արձանագրութիւնը յառաջ կը բերէ այսպէս. "Հռոմ 31 Օգոստ. 1549. ժողովք (Consistorium) եղաւ, ուր մեծարգոյ Մարկեղոս յանուն Ս. Խաչի Երուսաղէմի կարդինալը (Tit. S. Crucis in Jerusalem) խօսք բացաւ Հայոց պատրիարքի մը վրայ, որ այն օրերը Հռոմ եկած էր իր հնազանդութիւնը Ս. Քահանայապետին ու Հռոմայ եկեղեցւոյն ընծայելու, խնդրելով որ իր Հայոց ժողովրդեան կողմանէ պատրիարքութեան ընտրութիւնն ընդունուի Ս. Քահանայապետէն. եւ այս դատը յանձնուեցաւ նոյն Մարկեղոս կարդինալին,, եւ այլն։

այնպէս կը դառնայ իր հայրենիքը Լեհաստանի վրայէն, ուր որ իր կենաց վախճանը հասնելով՝ բաւական կենաց կը փոխադրուէր[1] ։

Իր տեղակալն ու յաջորդը Միքայէլ կաթողիկոս նոյն հոգւով ու հաւատով ղեսպան խրկեց Պիոս Դ. Քահանայապետին (1563) եւ ուր խորին մեծարութեան արժանի թուղթը գրեց ։ «Ի դրանէ Էջմիածնի եւ յամենայն սրբոց անդ բնակելոց, եւ յամենայն արքեպիսկոպոսաց եւ պաշտօնէից տեղւոյն այնորիկ, եւ ի Միքայելէ պատրիարքէ, եւ յամենայն եղբարց սիրելեաց, որք ամենեքին ջերմ եռանդեամբ համբուրեն զնշխարս սրբոց առաքելոց եւ սրբեամբք իւրեանց համբուրեմք զոտս հօր մերոյ Ս. Պիոսի Չորրորդի, որ ճշմարտապէս Պետրոսն է. զխոնարհութիւն եւս տամք ամենայն մեծարգոյ կարդինալաց, ամենայն թագաւորաց եւ իշխանաց քրիստոնէից. Ամէն ։

«Պատուութիւն լիցի Սրբութեան Հռոմ, զի յամի Տեառն 1562 ի 20դ աւուր Մայիս ամսեանն ի Սեբաստացւոց քաղաքէն ես Միքայէլ կաթողիկոս առաքեցի առ երանութիւն ձեր զԱբգարն օրհնեալ երկուքումբք թղթովք, յորոց մին վասն զհնազանդութիւն սրբութեան քում մատուցանելոյ յանուն մեր ամենեցուն եւ համբուրելոյ ջերմ սիրով զոտս երանութեան քո, իսկ երկրորդն՝ թուղթ օրհնութեան մերոյ վասն նորա եւ գործակալութեան յինէն, զոր եւ հաստատեմք առաջի ամենեցուն վերագոյնդ յիշատակելոյ, զի լիցի գործակալ մեր օրհնաւոր եւ հաւատարիմ առ երա-

[1] Ստեփ. Լեհացին իր ժամանակագրութեան մէջ սապէս կը գրէ. «Երթայ (Ստեփան կաթողիկոս) ի Հռոմ, եւ կատարեալ զհնազանդութիւն եւ զուխտն իւր՝ գայ ի Լէոպոլիս, եւ մեռանի յայսմ ամի (1551), որպէս ցուցանէ գերեզմանաքարին նորա գիրն. Hoc sepulorum est Rev. patris Stephani Patriarchae majoris Armeniae, qui Romae fuit, et Leopolim adveniens animam suam Deo tradidit. 1551. այսինքն՝ Գերեզմանս այս է մեծարգոյ Հօր Ստեփաննոսի պատրիարքի Հայոց մեծաց, որ չոգաւ ի Հռոմ, եւ հասեալ ի Լէոպոլիս՝ զոգի իւր աւանդեաց Աստուծոյ»: — Այսպէս կը պատմէ նաեւ Առաքել Պատմ. էջ 358 ։ Ասկից իր մեռնելուն տարւոյն ու տեղւոյն վրայ ամէն տարակոյսը կը բառնայ ։

նութեան քում հանդերձ ողջունիւ իւրով՝ որոյ անուննն Սուլթանն կոչի եւ մանկամբն Եղիազանդրիւ, հաստատուն յուսով ակն ունելով եւ խնդրելով, զի հաստատեսջիք եւ նորոգեսջիք զկոնդակն մեր, զոր ի վաղ ժամանակս երանելի եւ բարեյիշատակ Սեղբեստրոս Պապահանայապետ, եւ Ս. Կոստանդիանոս կայսր շնորհեցին Տրդատայ թագաւորի մերում, եւ Ս. Գրիգորի նախնոյ պատրիարքի (կաթողիկոսի) մերում, եւ առաքեսջիք առ մեզ միւսանգամ, նորոգեալ զհին զայն բարեկամութիւն ի միջի մերում, զի եղիցի մի հօտ եւ մի հովիւ, եւ հասեալ իսկ է ժամանակն զի եւ այդ կատարեսցի եւ ազատեսցուք ի գերութենէ աստի ձեռամբ ձերով: Եւ տուաք Երգարու առաքելոյ մերում զնշանս զայսոսիկ, զի ընծայեսցէ սրբութեան քում, մեռոն, խաչ ոսկի, մատանի օրհնեալ եւ գնչխարս Ս. Թէոդոսի մարտիրոսի, զցանկ ամենայն տեղեաց, մենաստանաց եւ ամենայն ժողովրդոց Հայոց ազգին մերոյ: Գրաբեալ եւ զօրինակ վերոգրեալ կոնդակին մերոյ, որ գրեցաւ պատուական եւ աներծ արեամբն Քրիստոսի յաւիտեան . . . : Եւ մեք ամենեքին եմք հնազանդք սրբութեան քում: Զոր ինչ եւ հրամայեսցես նմա (Երգարու) ընկալցուք մեք միամիտ սրտիւ մինչեւ յօրն Քրիստոսի իբրեւ զվերոյիշեալ կոնդակն: Զի ձեռք մեր եւ լեզու կարկամեալ է ի մէջ անհաւատից, որոց վասն ոչ թուղթս եւ ոչ ընծայս արժանաւորս սրբութեան քում կարեմք առաքել: Ոչ միայն ի Տաճկաց երկնչիմք, այլ առաւել եւս ի չարաց Քրիստոնէից, որք ի մէջ անհաւատիցն խառնեալք են, զի եւ ամենայն ուրեք գտանին լաւքն եւ վատք: Այլ բարեկամութիւն մեր եւ քաղաքավարութիւն ընդ լաւսն է: Եւ եթէ պատգամաւորդ մեր ողջամբ առ ձեզ հասանիցէ, եղիցի նա բանալի հոգւոյ մերոյ, եւ մեք ուրախ եղիցուք եւ կամակար մտօք առաքեսցուք ձեզ թուղթս չփակեալ՝ գրեալ վերոգրեալ նշանագրովք, զորս ոչ ոք գիտէ բաց ի նմանէ: . . . Գրեցաւ թուղթս Էջմիածին յամի

Ծննդեան Յիսուսի Քրիստոսի 1563; յառաջնում աւուր ամսեանն Ապրիլի»:

Իսկ Աբգար՝ ազգին կաթողիկոսին անուամբ՝ Քահանայապետին ձեռքը՝ գրով տուած հաւատոյ դաւանութեան մէջ քահանայապետական գլխաւորութիւնն այսպէս յայտյանդիմանն կը խոստովանի. «Դու ես գերագոյն Քահանայապետ չորից ծագաց երկրի. զոր միանգամ արձակեսցես՝ եղիցի արձակեալ, եւ զոր կապեսցես՝ եղիցի կապեալ: Ոչ խնդրեմք զի հայեսցիս ի յանցանս եւ ի մեղս գերելոց, այլ արձակեա զմեզ. եւ համարեա զմեզ ի հօտս քո հաւատացեալս՝ նորոգեալ զհին ուխտն եւ զհնազանդութիւն առ սուրբ Հռոմէական եկեղեցի, զի եմք մեք ծառայք սրբութեան քո անպիտանք, որպէս ասէ Մարգարէն. Ոչ արդարասցի առաջի քո ամենայն կենդանի»:

Ու դարձեալ նոյն իսկ քահանայապետական իրաւաբանութեան քննութիւնը Հայոց վրայ Ս. Լուսաւորչին օրերէն ընդունուած ըլլալը խոստովանելով՝ այս վկայութիւնը կու տայ իր ազգին կողմանէ: «Զայս ինչ ունիմք վասն յանցաւորաց, կապելոց կամ նզովելոց, զի եթէ քահանայ, եպիսկոպոս, արքեպիսկոպոս կամ կաթողիկոս զմի ոք ի յանցաւորաց կապեսցէ կամ ընդ բանիւ արասցէ, եւ մեռանիցի մինչ չեւ արձակեալ իցէ զյանցաւորն՝ զոր ի կենդանութեանն կապեալ էր, զնա՝ որ կապեալն է կամ նզովեալ, ոչ ոք ի յաջորդաց նորա՝ որ զյանցաւորն կապեաց կամ ընդ բանիւ արար՝ կարիցէ արձակել, բայց միայն գերագոյն Քահանայապետն Հռոմայ, առ որ առաքեմք զաղաչաւորն զայն՝ որ զղջացեալ իցէ յիւրոց յանցանաց, թղթով՝ որով նզովեցաւ, վասն արձակելոյ ի նզովիցն եւ պատառելոյ թղթոյն այնորիկ, քանզի քեզ միայն արժան է արձակել զնա, եւ պատառելով զթուղթն՝ որով կապեցաւ, տալ զնա միւսանգամ եկեղեցւոյ մերում ըստ վարդապետութեան Ս. Գրիգորի հայրապետի մերոյ . . . : Այսպէս եւ խոստովանիմք եթէ ասաց Քրիստոս Ս. Պետրոսի առաքելոյ

թէ Երումեա դուլխուրս էմ, եւ վասն նորա խնդրեաց զի մի պակասեսցին հաւատք նորա, եւ որ ոք ի մէնջ ոչ խոստովանեսցի զգերագոյն զաթոռն Պետրոսի եւ զՏէր Քահանայապետն Հռոմայ՝ գլուխ եւ հայր ամենայն աշխարհի, որ առացեալ ունի զփականս, նա՝ եւ զաւետարան եւ զԵրուսաղէմ եւ զաթոռն Գրիգորի յԷջմիածին ուրանայ։

“Խնդրեմ յեա, երանելի Հայր, որ այսպէս համառօտս զհաւատս Հայոց հարի ի գիր, եւ սակաւ բանիւք զմերազգայնոց գրեալ զեօթանասուն եւ երկու գիրս յիշատակեցի, զի չէ երբեք արժան ընել զկանթեղ յանդիման արեգական, զի դու ես իմաստուն եւ գիտես զամենայն։

“Գրեցաւ հաւատք Հայոց սակաւ բանիւք վասն ընթերցողաց ձեռամբ Աբգարու եւ Աղեքսանդրի երիցու Հայոց, թարգմանութեամբ Յովհաննու Մկրտչի ի Հնդկաց ի մեծ քաղաքն Հռոմ, ի ժամանակս Քահանայապետութեան Ս. Տ. Մ. Պիոսի Դ. Քահանայապետի, յամի Ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 1564, ի տասներորդում աւուր Նոյեմբեր ամսեան„ [1]։

Քիչ մը ետքը (1572) Զաքարիա կամ Եզաքիա Սեդ կաթողիկոսը՝ իր ու իր չորս թեմական եպիսկոպոսներուն ստորագրութեամբ ուղղափառ հաւատոյ դաւանութեան թուղթ գրեց ու խրկեց Հռոմ Գրիգոր ԺԳ. Քահանայապետին։ Ասով չշատանալով՝ նոյն թուղթը կրկին անգամ նոյն ստորագրութիւններով անոր յաջորդին Սիքստոս Ե. Քահանայապետին ալ կը խրկէր 1585ին [2]։ Հազիւ թէ վրայէն 20 տարի անցաւ՝ Դաւիթ Ե. կաթողիկոսն ալ 1605ին իր ու իրեն վեց

1 Բոյնակ. 1564. Թիւ 52։ — Հ. Միք. Վ. Չամչեան, Պատմ. Հայ. Գ. 519։

2 Յովսէփանոս Լեհացի, ժամանակագրութիւն, յամի 1572 եւ 1585։ — Հ. Միք. Վ. Չամչ. Պատմ. Հայ. Գ. 528։ — Գեր. Իգնատ. Վ. Փափազեան, Պատմ. Եկեղ. էջ 778։ — Չորս եպիսկոպոսներուն անուններն էին Յովհ. եպիսկոպոս Զէյթունոյ, Մարտիրոս Եպիսկոպոս Աշոցի, Յովհ. եպիսկոպոս Բերիոյ, Մինաս եպիսկոպոս Սեբաստիոյ։

եպիսկոպոսներուն ստորագրութեամբը խոստովանեցաւ արդոյն Պետրոսի աթոռին գլխաւորութիւնը՝ Պօղոս Ե․ Քահանայապետին տալով իր հաւատոյ դաւանութեան ու հպատակութեան թուղթը․ նոյն դաւանութիւնը գրեց երկու տարի ետքը իր բոլոր ժողովրդովը մէկտեղ[1]։

Գրեթէ ցոյցեր էին ասոնք․ եւ ստուգիւ ճշմարտասէր եւ իր սրբոց նախնեաց ողջամիտ վարդապետութեան հետեւող հոգի մը առանց սրտին փղձկելուն չէկրնար զասոնք կարդալ։ — Տասը տարի մ՚ալ յառաջ անցնելու ըլլանք՝ կը հանդիպինք Մելքիսեթ Եջմիածնայ կաթողիկոսին, որն որ աւելի հանդիսաւոր եղանակաւ իր հպատակութիւնը Հռոմայ աթոռին կը դաւանէր, երբ որ իր ամենէն հռչակաւոր քարոզիչը Զաքարիա վարդապետը հրեշտակութեամբ նոյն Պօղոս Ե․ Քահանայապետին առքը կը խրկէր (1617) իր վարդապետութեան ողջմտութիւնը ցուցընելու եւ իր որդիական հնազանդութիւնն անոր ընծայելու։ Իսկ Քահանայապետը կաթողիկոսին հայրական սիրոյ թուղթ եւ մէկ քանի սահմանադրութիւններ գրելէն զատ՝ իրեն ընծայ խրկեց ոսկի խաչ մը Քրիստոսի խաչափայտին մասնկովը եւ քահանայական զգեստ․ բայց ասկից՝ Շահաբաս Պարսից թագաւորին ալ յանձնարարական նամակ գրեց, որ կաթողիկոսին եւ Հայոց ազգին դիւրութիւն ընէ։ Ուստի եւ, ինչպէս Ստեփանոս վարդապետ Լեհացի կը գրէ, «Մելքիսեթ կաթողիկոսն վառեալ ի սէր Ս․ Փափին՝ կրկին յետ երից ամաց զնոյն Զաքարիա վարդապետ առաքէ առ ի հաստատել զնորագոյն զիւր անվրէպ հնազանդութիւնն նմա, եւ առնու ի Փափէն զամենայն կերպ ուղղափառ հաւատոյ, որով բաղումք ի Հայոց ածան ի հնազանդութիւն մեծի եկեղեցւոյն Հռոմայ»[2]։

1 Ստեփաննոս Լեհացի, ժամանակագր․ յամի 1605—1607։ — Հ․ Միք․ Վ․ Չամչ․ Պատմ․ Հայ․ Գ․ 600։

2 Ստեփաննոս Լեհացի, ժամանակագր․ յամի 1617։

Բայց Մելքիսեթ կաթողիկոսին եռանդեան ու սիրոյն առջեւն ատոնք քիչ էին։ 1622ին առ Գրիգոր ԺԵ. Քահանայապետ եւ 1623ին առ Ուրբանոս Ը. Քահանայապետ նորէն նորէն դաւանութեան ու հպատակութեան թուղթ կը գրէր։ Այս հռչակաւոր ու եռանդուն կաթողիկոսը՝ 1626ին Լէօպոլսոյ Նիկողայոս արքեպիսկոպոսը ձեռնադրեց՝ նախ Հռոմէական ուղղափառ եկեղեցւոյն դաւանութիւնն անկէց ընդունելով [1]։ Ափսոս որ տարի մը ետքը իր բազմարդիւն կենաց վախճանը հասնելով՝ Կամենից քաղքին մէջ հոգին աւանդեց Արարչին ձեռքը[2]։

Երկու տարի ետքը 1629ին յաջորդեց Էջմիածնայ աթոռը Մովսէս կաթողիկոս, եւ նոյն տարին առանց յապաղելու՝ չէ թէ միայն ինք առանձինն, այլ տասներկու եպիսկոպոսներու ստորագրութեամբ ու կնքով ուղղափառ հաւատոյ դաւանութիւն խրկեց Հռոմ Ուրբանոս Ը. Քահանայապետին [3]։ Այս իր հպատակու-

1 Ստեփանոս վարդապետ Ռոշքեանց Լեհացի այսպէս մանր կը պատմէ իր ժամանակագրութեան մէջ 1630երորդ տարին, եւ վաւերական կոնդակներն ու յիշատակարանները ձեռքն ունեցած կը վկայէ։ — Այս բանիբուն ու ստուգաբան ժամանակագիրը, որ իր հռչակաւոր Հայերէն բառարանովը եւ ուրիշ գրաւոր գործքերովը ալ շատ անուանի եղած է, ԺԸ. դարուն առջի կէսին կը պայծառանար, եւ իր ընդարձակ ու խորունկ գիտութեան համար Բազմապայծառ եւ Աստուածաբան վարդապետ կը կոչուէր։ Տեղւոյս պատշաճ չենք սեպեր աս անձին վրայ երկայն գրելը, եւ կը խրկենք առ այժմ մեր ընթերցողները Բազմավէպ օրագրին Տասներորդ հատորին (1852) 86—95 էջերը։

2 Նոյն Ստեփանոս Վ. Լեհացին այսպէս կը գրէ 1627երորդ տարւոյն մէջ։ "Եւ ինքն Մելքիսեթ կաթողիկոս չուէ ի Կամենից, ուր Մարտի 5 ձեռնադրէ եպիսկոպոս զԹորոս աբեղայն երբեմն կանանաւորի Կամենիցացի, առնէ կտակ Մարտի 14, որով զաթոռն Էջմիածնի յանձնէ Իսահակ կաթողիկոսին եղբօրորդւոյ իւրում, յետոյ վճարէ զկեանս իւր ի Մարտի 18, եւ թաղի յորմն եկեղեցւոյն Աւետման Սուրբ Աստուածածնին, զոր ինքն էր որքագործեալ,,։

3 Ստեփանոս Լեհացի, որ այս ամէն բաներուն մանաւանդ Լեհաստանի մէջ պատահած դէպքերուն ամենէն աւելի տեղեակն ու գրեթէ ժամանակակից պատմիչն է, մանաւանդ որ շատ դէպքերուն նոյն իսկ վաւերական կոնդակներն ու յիշատակարանները ձեռքն ունէր, Լէոպոլսեցւոց եւ Մաճառստանի մերձակայ գաւառներուն կրօնական դէպքերուն վրայ շատ լուսաւորութիւններ կու տայ, որոնց վրայ տեղն ի տեղն խօսիլը ուրիշ անգամ եւ պատեհութեան կը պահենք։

թիւնը դարձեալ երկու անգամ Հռոմայ աթոռին ընծայեց [1]։

Բայց հոս հարկ է անցնիլ ուրիշ մայրաքաղաք մը, եւ տեսնել թէ այնպիսի թագաւորական քաղքի մէջ՝ ուր որ պատահած դէպքերուն վրայ ձգուած քօղը չենք ուզեր վերցընել, աս ատեններս քանիք եւ քանիք եղան՝ որ ճշմարտութիւնը ճանչցան, եւ վշտօք, տառապանօք ու հալածանօք հանդերձ՝ ունեցան բաւական արութիւն “Սրտիւ հաւատալու յարդարութիւն եւ բերանով խոստովանելու ի փրկութիւն„։ — Յովհաննէս Գ. պատրիարք Կոստանդնուպոլսոյ 1631ին Հռոմ գնաց իր ուխտը կատարելու եւ իր հպատակութիւնը Ս. Պետրոսի աթոռին ցուցընելու [2]։ Նոյնպէս Զաքարիա պատրիարք գրեց իր հնազանդութեան թուղթը Ուրբանոս Ը. Քահանայապետին։ Նաեւ քանի մը տարի ետքը, 1642ին, իր երկրորդ յաջորդը Կիրակոս պատրիարք թէ իր հպատակութեան եւ թէ ուղղափառ Հռոմէական հաւատոյ դաւանութեան թուղթը երկու անգամ վերոյիշեալ Ս. Քահանայապետին ընծայեց, որմէ պատասխանն ալ ընդունեցաւ։ Նոյնպէս Խաչատուր պատրիարքը 1642ին, այսպէս նաեւ Թովմաս պատրիարքն ի հաղորդակցութիւն Հռոմայ եկեղեցւոյն կը մտնէին, նոյն առաքելական աթոռին բոլոր տիեզերաց վրայ ունեցած գլխաւորութիւնն ու գահերիցութիւնը իրենց նախորդներուն պէս թղթով խոստովանելով, եւ քահանայապետական օրհնութեան արժանի կ'ըլլային։

Հաստատուն մնալով խօսքերնուս վրայ՝ չենք ուզեր մանրամասն յիշել հոստեղս ոչ զՅովհաննէս Ամդայ արքեպիսկոպոսը, որ պատրիարքական իշխանու-

1 Գերապ. Իգնատիոս Վ. Փափազեան, Պատմ. եկեղ. էջ 872։ — Հ. Միք. Վ. Չամչեան, Պատմ. Հայ. Գ. 611։

2 “Յովհաննէս վարդապետն պատրիարքն Կոստանդնուպոլսոյ անցանէ ընդ Լեհաստան ի մեծն Հռոմ, եւ անդէն զուխտն իւր եւ զհնազանդութիւն կատարեալ, թողու զպատասխանն մերում յիշատակ զպատմութիւն Հայոց ի սկզբանէ աշխարհի մինչեւ յամն Տեառն 1236, զորոյ օրինակն առ իս առի„։ Սրբէք. Վ. ԼԻՀ. յամն 1631։

թիւնն ալ երբեմն տուած էր, ոչ զՅովհաննէս Եդեսիայ արքեպիսկոպոսը, ոչ զՊօղոս Տեկիրկոյ եպիսկոպոսը, ոչ զՍական Ուլու եպիսկոպոսը, եւ ոչ զՍական բազմարդիւն վարդապետը՝ որ Հռոմ Օրտինի կարդինալին առջեւը 1664ին հաւատոյ դաւանութիւնը կու տար¹, եւ ոչ ալ ուրիշ այնչափ ան դարուն վարդապետներն ու երեւելի անձինքը՝ որոնց ճշմարտասէր սրտերն եւ աստուածապաշտ հոգիներն աստուածային ազդեցութեանց կամակատար մնացին. եւ կը դառնանք դարձեալ Էջմիածնայ աթոռը:

Արդ՝ Մովսէս կաթողիկոսին յաջորդեց Փիլիպպոս կաթողիկոս 1633ին: Այն օրերը երբ որ Հ. Պօղոս Պիրոմալլի առաքելութեամբ Հայաստան կը խրկուէր, Ուրբանոս Ը. Քահանայապետը՝ որուն սրտին շատ սիրելի էր Հայոց ազգը, նոյն Փիլիպպոս կաթողիկոսին (1640) աս հայրախնամ թուղթը կը գրէր:

«Փիլիպպոսի Հայոց հայրապետի, Ուրբանոս Քահանայապետ Ը: — Մեծապատիւ եղբայր, ողջոյն եւ առաքելական օրհնութիւն: — Ոչինչ բացարձակութիւն վայրապ ընդ տիեզերս կարող է զազգս ի քահանայապետական հոգաբարձութենէ անջատել: Նմին իրի զայն խորհի հանապազ, զի զամենայն ազգաց զերջանկութիւն եւ զփրկութիւն հոգւոց հայթայթել կարիցէ: Այլ առանձինն ընդ Հայոց ազգն ունիմք կամս բարեախորժս եւ ոչ սակաւ նշանակս քահանայապետական սիրոյ ցուցանել նմա ցանկամք, զի վաղ ուրեմն յանցեալ ժամանակին էր համամիտ ընդ եկեղեցւոյն Հռոմայ եւ զՊետրոս յանձին յաջորդաց իւրոց բարեպաշտութեամբ մեծարեաց, եւ այս յայտ ի հնոց յիշատակարանաց պատմութեանն է: Քանզի բաց ի յիշատակացն փոխ փոխ սիրոյ սրբոցն Սեղբեստրոսի Քահանայապետի եւ Գրիգորի արքեպիսկոպոսի Հայոց, որք չեն ինչ ձեզ անծանօթ, տեւէ բաւէ տակաւին մեծապայծառն յիշատակ Փղորենտեան ժողովոյն, յորում մեծաւ բարե-

1 Ստեփ. Վ. Լեհացի յամի 1664:

պաշտութեամբ եւ Նախանձու, ի քահանայապետութեան Ուգինէոսի Դ.ի միաբանութիւն մտին Հայք ընդ եկեղեցւոյն Հռոմայ, եւ մեծաւ հաճութեամբ ամենայն ազգաց՝ զանձինս ի միութիւն առաքելական աթոռոյ կապեցին: Զոր կարէ ապաքէն եղբայրութիւն քո պայծառագոյնս առնուլ ի միտ ի գրոց անտի ժողովոյն այնորիկ եւ ի հրովարտակէ վերագոյն ճառելոյ Քահանայապետին, որ ոչ կարի հեռի ժամանակաւ՝ իշխանութեամբ սուրբ ժողովոյն գրեցաւ ի ձեր լեզու եւ ի լոյս ընծայեցաւ: . . . Ի նմանէ (ի Պիրումալեէ) ընդարձակագոյնս կարես առնուլ ի միտ թէ որպիսի սիրով խորովիմք եւ զոր խնամս ունիմք, զի մի պակաս ինչ լեալ գտանիցի յայնցանէ՝ զոր մարթ իցէ մեզ առնել ի շահ օգտութեան քոյ եւ համօրէն Հայոց աշխարհին: Եւ նա իսկ լեալ յայտ արարեալ ցուցցէ թէ որպէս ցանկացեալ եմք զի դու սիրով զմիութիւն աթոռոյս այսորիկ սրբոյ ընկալցիս, եւ զկաթողիկէ հաւատոն՝ առանց որոց անհնար է հաճոյ Աստուծոյ լինել, հաւատասցես սրտիւ յարդարութիւն եւ բերանով խոստովան լիցիս. ի փրկութիւն: Զայս սուրբ հաւատս ողջ եւ անարատ ունի Հռոմէական եկեղեցի, վարդապետ ամենայն եկեղեցեաց, զայս եւ իշխանք առաքելոցն Պետրոս եւ Պաւղոս արեամբ իսկ վկայութեամբ ուսուցին, եւ զայս սուրբքն Սեղբեստրոս Քահանայապետ եւ Գրիգոր արքեպիսկոպոս ձեր քարոզութեամբ ընդհանուր սփռեալ ծաւալեցին: Եւ մեք ուխտս ջերմաջերմս վասն մշտնջենաւոր երջանկութեան եղբայրութեան քոյ առ Պարգեւիչն ամենայն բարեաց յղեալ՝ աղաչեսցուք հանապազ զգթութիւն նորա զի ուղղեսցէ զխորհուրդս քոյ եւ լուսով աստուածեղէն շնորհաց իւրոց քեզ օգնական լինիցի:

“Գրեալ ի Հռոմ . . . յ18 աւուր Մայիս ամսեանն 1640. յեւթնեւտասներորդ ամի քահանայապետութեան մերոյ„[1]:

1 Ցուցեալ ի Քահանայապ. կոնգ. Տպարծ. Հատ. Հատ. Ա. 221:

Փիլիպպոս կաթողիկոս կը լսէր Քրիստոսի փոխանորդին ձայնին ու կոչման, եւ յօժարամիտ իր կաթողիկէ հաւատոյ դաւանութիւնը թղթով՝ 25 եպիսկոպոսաց եւ ութը վարդապետաց ստորագրութեամբ[1] Նոյն Պիրոմալլիին ձեռքով (1647) Հռոմ կը ղրկէր, եւ իր հլու հնազանդութիւնը՝ Իննովկենտիոս Ժ. Քահանայապետին ու անոր յաջորդներուն կը դաւանէր: — Տասնուեօթը տարի ետքը (1664) վերյիշեալ Ամդայ եպիսկոպոսին աշակերտը Խաչատուր Սսոյ կաթողիկոսը գրով քահանայապետական գլխաւորութիւնը կ'ընդունէր, եւ ուղղափառ հաւատոյ դաւանութիւնը 13 եպիսկոպոսներու եւ 9 վարդապետներու ստորագրութեամբ Աշոցի եպիսկոպոսին ձեռքով Աղեքսանդր Է. Քահանայապետին կը ներկայացընէր[2]:

Քահանայապետական գլխաւորութեան վրայ այսչափ եւ այսպիսի վկայութիւններն ու դաւանութիւնները բաւականէն աւելի կը ցուցընեն թէ մեր Նախահօր՝ Ս. Գրիգոր Լուսաւորչին վարդապետութիւնն ու հաւատքը Ս. Պետրոսի աթոռին ու անոր աթոռակալներուն վրայ՝ ինչ խորունկ ու հաստատուն արմատ ձգած էին մեր ազգին մէջ, որ ոչ հողմունք փորձութեանց եւ ոչ հեղեղք հալածանաց կրցան արմատաքի խլել, մանաւանդ թէ մնաց միշտ օրհնութեան ծիլ մը, որ երբեմն կը պարարտանայ ու կ'ուռճանայ: Այսու ամենայնիւ կ'ուզենք յառաջ տանիլ մեր պատմական ցոյցերուն ու վաւերական յիշատակարաններուն շարունակութիւնը, կամ ճշդիւ խօսելով՝ կ'ուզենք քիչ մ'ալ հռչակաւոր Ստեփան Վ. Լեհացւոյ ժամանակակից ժամանակագրին խօսել տալ, որն որ աչօք տեսածն ու ականջօք լսածը գրի առած է, որուն՝ չէ թէ միայն իր ժամանակագրութեան կերպարանքը ճշմարտութեան դրոշմը մէկտեղ կը կրէ, այլ նաեւ ուրիշ պատմիչներն

1 Ստեփ. Վ. Լեհացի, յամի 1640, 1647: — Հ. Միք. Վ. Չամչեան, Պատմ. Հայ. Գ. 621:

2 Ստեփ. Վ. Լեհացի, յամի 1664: — Հ. Միք. Վ. Չամչեան, Պատմ. Հայ. Գ. 698:

եւ նոյն իսկ դէպքերուն վաւերական ու հրապարակական յիշատակարանները ճշմարտութեան աներկբայելի երաշխաւորութիւնը կու տան[1]։ Ահանք ուրեմն իր խօսքերը։

"Յակոբ կաթողիկոս Էջմիածնի, կ'ըսէ գիտնական վարդապետը, 1680 թուականին մէջ, այր առաքինի, մեծահոգի, գրեաց առ Աղեքսանդր Է. եւ առ Իննոչենտիոս ԺԱ. վասն միաբանելոյ զեկեղեցիս Հայոց ընդ Հռոմայ, եւ առ այս բազմիցս յղեաց ի Հռոմ զԱռաքել վարդապետ Բարսեղ կոչեցեալն եպիսկոպոսն Երնջակայ։ Ինքն եւս կամէր գնալ ի Հռոմ, բայց վասն խռովութեան երկրի ի մէջ Նորին եւ Եղիազարու Վ.. որ յետոյ յաջորդեաց նմա, ոչ կարաց։ Բայց սակայն գոլով ի Կոստանդնուպոլիս, արար զդաւանութիւն ուղղափառ հաւատոյ առաջի Տ. Գասպարի Գասպարինեան, եպիսկոպոսին Չիզկենոյ եւ այլ եկեղեցականաց, գոլով ՁԲ. ամաց եւ չորից ամսոց, յայսմ ամի Օգոստոս Ա. որոյ օրինակն է առ իս. եւ զկնի ոչ բազում աւուրց վախճանի, եւ թաղի ի գերեզմանատանն Պէյօղլի, յորոյ դամբարանէն ոչ սակաւ նշանք լինին,,։

Ալ յաւելունք հոստեղս նոյն իսկ կաթողիկոսին իր ստորագրութեամբ տուած դաւանութեան վաւերական օրինակը։

"Ըստ անշուշտ եւ անհրաժեշտ եւ ամենաճշմարիտ աւանդութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ ըստ քարոզութեան ականատեսից Բանին կենաց մատակարարողաց, Սրբազանից Առաքելոց։ Եւ ըստ ուսուցման եւ հետեւման Ուղղադաւանից Սրբոց Հայրապետաց նախնեաց եւ վերջնոց։ Եւ ըստ ընտրութեան եւ դաւանութեան Երկոտասանից Վարդապետացն Աստուածաբանից։ Եւ ըստ կանոնադրութեան եւ Սահմանադրութեան Չորից Սրբոց Ժողովոցն Նիկիոյ, Կոս-

1 Այս ամենայն կը հաստատուի Թղթին մէջ, որուն օրինակը մեր նաեւ նոյն ատեն Եւդոկիացւոց մատենադարանին մէջ պահուած գտուած ընդարձակ [illegible] է։ Թիւ 157։

տանդնուպոլսոյ, Եփեսոսի եւ Քաղկեդոնի. կամաւ, յօժարութեամբ, աներկբայ հաւատով, անդառնալի Յուսով եւ անվախճան Սիրով: Ես նուաստ ծառայ Քրիստոսի Յակոբ Կաթողիկոս ամենից Հայոց, եւ Պատրիարք Վաղարշապատու, Լուսակառոյց Մեծի եւ Սրբոյ Աթոռոյն Էջմիածնի, գոլով ՁԲ. ամաց եւ չորից ամսոց, յամի Ի.Զ.երորդի Հայրապետութեանս իմոյ, մերձ ի ժամ մահուան իմոյ, ի մայրաքաղաքս Կոստանդնուպոլիս, ընդ հովանեաւ Սրբուհւոյ Աստուածածնի Եկեղեցւոյս, առաջի Ամենատեսին Աստուծոյ, եւ առաջի Ամենապատուոյ Եպիսկոպոսին Տեառն Գասպարի Գասպարինին, Վերատեսչի Սրբոյ Աթոռոյն Չիրիկոյ, եւ Տ. Ֆրանչիսկոսի Ճիլէ, ի կարգէն Յիսուսեան, ետու զդաւանութիւնս իմ, որպէս հաւատամ եւ դաւանիմ զոր ինչ ի վերոյգրեցելոցն աւանդեցաւ, եւ խոստովանիմ թէ մեծ եւ Առաքելական Ընդհանուր Սուրբ Եկեղեցին Հռոմայ ունի լի եւ գերագոյն կատարեալ Իշխանութիւն եւ Պետութիւն ի վերայ Ընդհանրականի Կաթուղիկէի Եկեղեցւոյ: Հաւատամ եւ զՎեհապետն նոյնոյ Սրբոյ Եկեղեցւոյն Աթոռակալ եւ փոխանորդ Սրբոյ Գլխաւորի Առաքելոյն Պետրոսի, կապող եւ արձակող յերկինս եւ յերկրի: Հաւատամ զկալեալն ի նմանէ՝ կալեալ յերկինս եւ յերկրի, եւ զթողեալն՝ թողեալ յերկինս եւ յերկրի. Ընդունիմ եւ պատուեմ: Ընդունիմ եւ պատուեմ զնոյն Ընդհանրական, Մեծ եւ Առաքելական Սուրբ Եկեղեցին Հռոմայ. եւ հետեւիմ հնազանդութեամբ Վարդապետութեան նորա ի կեանս յայս եւ ի հանդերձելումն: Հերքեմ եւ նզովեմ զընդդիմակս եւ հակառակորդս նոյնոյ Սրբոյ եւ Առաքելականի Եկեղեցւոյն Հռոմայ եւ Հաւատոյ նորին, ի կեանս յայս եւ ի հանդերձեալն:

“Գրեցաւ դաւանութիւնս այս ի Թվ. Հայոց. Ռ. Ճ. ԻԹ.ին յՕգոստոսի Ա: Որ ինձ Յակոբայ Ամենայն Հայոց Կաթուղիկոսի ընծայունելի է: Վասն որոյ

առ ի հաստատութիւն սորա ձեռամբ իմով ստորագրեցի. Յակոբ Կաթողիկոս ամենայն Հայոց„[1]:

Յառաջ տանինք Ստեփանոս Վ. Լեհացւոյն վկայութիւնները:

“Ի վախճանիլն Յակոբայ կաթողիկոսի նստի (1681) յաթոռն Էջմիածնի Եղիազարն Այնթեցի: Սա ի կենդանութեանն Յակոբայ գլուխութիւն ինչ յարուցանէ ընդ նմա, եւ հրամանաւ Տաճկաց թագաւորին երթեալ ի Սիս ի նմին կաթողիկոսէն Խաչատուրոյ ձեռնադրի կաթողիկոս ի վերայ Հայոց, որք ընդ իշխանութեամբ Օսմանցոց բնակէին: Զմեռոն օրհնէ յԵրուսաղէմ, եւ ի ձեռն Նուիրակաց իւրոց բաշխէ ընդ բոլոր Թուրքաստան, արգելելով զնուիրակութիւն Էջմիածնի: Կամէր երթալ ի Հռոմ, եւ նորոգել զվաղեմեան միաբանութիւնն ընդ սուրբ Աթոռոյն Հռոմայ, բայց հասեալ ի Զմիւռ, ի սադրելոյ Գուղայեցւոցն եւ այլոց՝ փաշային տեղւոյն հրամանաւն արգելանի երթալ: Ուստի դարձեալ յԵրուսաղէմ, գտանէ զհրաւիրակսն Էջմիածնի, եւ նոքօք գայ ի Կոստանդինուպոլիս, եւ անտի երթայ յԷջմիածին: Եղիա Արքեպիսկոպոսն Բեթղեհէմի ձեռնադրիչն իմ (Ստեփ. վարդապետի) ականատես վկայ լենաց Եղիազարու:

“Իսահակ վարդապետն Մակուեցի, աշակերտ Յակոբայ կաթողիկոսին, առաջին արքեպիսկոպոսն Հայաստանեայց եւ առաջնորդ աթոռոյն Թադէոսի սուրբ առաքելոյն, այր յոյժ իմաստուն եւ առաքինի, մինչեւ Արդար Սահակ կոչիւր, առաջի Տէր Վարդանայ Յունանեան, մինչդեռ սա քարոզելով ընդ Հայաստան շրջէր, արար (1682) զդաւանութիւն ուղղափառութեան, եւ զնոյն դաւանութիւն իւր յղեաց առ Իննոչենցիոս ԺԱ. Փափն: Սա առաքեաց զՄակուեցի Փիլիպպոսն աշակերտն իւր ի Հռոմ, որ ընդ իս ի միասին ուսաւ

1 Ձեռագիր Վիէն. Մխիթար. Մատեն. Թիւ 157. ուր նաեւ հետեւեալ դէպքը կը կարդացուի: “Առաքեալ վարդապետ Բողէկ անուանեցեալ եպիսկոպոս Երնջակայ գաւառին, ոչ միայն գրեաց, այլ բազմիցս դիմեաց ի Հռոմ, եւ անգէն զկեանս իւր զբաւեաց„:

զամենայն գիտութիւնս, էառ եւ զաստուածաբանական վարդապետութիւնն, բայց դարձեալ առ վարդապետն՝ զկնի սուղ ժամանակի վախճանի ոչ առանց մեծ տրտմութեան ամենեցուն։

«Եղիազար կաթողիկոսն Աղուանից ոմանք եպիսկոպոսօք խրովք զդաւանութիւն ուղղափառ գրեաց առ Իննոչենցիոս ԺԲ. Փափն։ — Նոյնպէս եւ յաջորդ նորին Սիմէոն կաթողիկոսն, 1695»։ Աս կաթողիկոսին համար դարձեալ նոյն ժամանակագիրն ասանկ կը գրէ. «Սիմէոն Աղուանից կաթողիկոսն, ընդ որոյ իշխանութեամբ են Շամախ, Գանձակ, Շիրուան, Դարապաղ քաղաքք եւ գաւառք, առ սոյն Քահանայապետն (Իննովկենտիոս ԺԲ.) զպատուական թուղթ հնազանդութեան գրեաց, զոր ես Նարգէմանեցի, ի վաղուց հետէ զինքն հնազանդ սուրբ եկեղեցւոյ Հռոմայ գրէ։ Խնդրէ ի սրբազան Փափէն զյանձնարարական թուղթ[1] առ Պարսից արքայն Շահսուլթան Հիւսէյինն, որպէս զի ըստ առաջին Թագաւորացն Պարսից, անխափան կարասցէ ինքն հովուել զհօտ իւր»։ Եւ Իննովկենտիոս ԺԲ. աս թուղթս իրեն կը գրէր, որն որ անժխտելի ապացոյց է մինչեւ հիմայ գրուածներուն։

«Մեծարգոյ եղբօր Սիմէոնի հայրապետի Հայոցն Շիրուանայ, Իննովկենտիոս Քահանայապետ ԺԲ։ — Մեծարգոյ եղբայր, ողջոյն եւ առաքելական օրհնութիւն։ — Զթուղթ գրեալ յեղբայրութենէ քումէ յամի հազարերորդի վեցհարիւրորդի իննսներորդի հինգերորդի ընթերցաք մեծաւ հաճութեամբ, քանզի երեւելի փոյթ հնազանդութեան եւ սիրոյ առ այս սուրբ աթոռս ընծայեցուցեր ի նմին ոչ սակաւ խոնարհութեամբ քան աստուածապաշտն մտօք. զորմէ եւ յայտ առնես թէ ոչ նոր ինչ է մտաց քոց, այլ անդուստ ի վերուստ ի բազում ամաց հետէ յօրինակէ

1 Թէ Իննովկենտիոս ԺԲ. չէ նաեւ Զամիալի Ցեսուեանք, թէ միայն յանձնարարական թուղթ Լեհաց Թագաւորին գեսպանը, նոյն այլ նաեւ պատգամաւոր խրկած է ժամանակագիրը կը պատմէ, 1695ին Շահին առ բանիս համար գլ. Իգ.

առաջին եւ արդարեւ հոյակապ եպիսկոպոսաց ազգին Հայոց ի քեզ լեալ եւ խնամով եւ հաւատարաւ մինչեւ ցայժմ պահեալ առաւելու օրըստօրէ եւ վառեալ բորբոքի ։ Ընդունիմք ճշմարտիւ զայս իմացուած մտաց քոց առանձինն ըղձիւք քահանայապետականն սիրոյ, եւ չկասկածեմք թէ այսպիսի գեղեցիկ նախանձ պտուղս ընտիրս բերիցէ եւ կամ զմեծ մասն այսր հօտի, Աստուծոյ օրհնութեամբ, միւսանգամ ի ծոց եւ ի ստինս մօր նորա Հռոմէական եկեղեցւոյ դարձուցանել կարիցէ. եւ դարձն առ նա կարող իցէ բառնալ եւ կամ գոնեայ նուազեցուցանել զաղէտսն՝ զոր աշխարհք յորմէ հետէ անջատումն լեալ է ։ Արդ զի յայնպիսի գործ բարեպաշտութեան՝ որ եւ լի է անզուգական փառօք յերկոսին իսկ կեանս, սրտի մտօք ձեռնամուխ լինիցիս, ի պարտուց պաշտաման մերոյ թելադիր լեալ յորդորեմք եւ ջերմագոյնս աղաչեմք, զի երեքկին պատուիրանին՝ զոր եղբայրութիւն քոյ ի թուղթս իւր յիշատակէ, սրտի մտօք հնազանդեսցուք, որով Յիսուս Քրիստոս Տէրն մեր զհօտ հոգւոց փրկելոց պատուական արեամբ իւրով՝ ճշգագոյնս արար յանձն Պետրոսի՝ իշխանի առաքելոց, զորոյ զաթոռն իսկ ունիմք յԱստուծոյ տեսչութենէն, թէպէտ եւ առանց արժանաւորութեան ։ Այլ զոր օրինակ ներքին զգածմամբ հայրական սրտի կարեկից լինիմք վշտաց այնր եկեղեցւոյ՝ որ երբեմն ծաղկեալ բարգաւաճէր, ցանկամք անձկութեամբ զի հնար լիցի ամենեւին բառնալ նոցա ի միջոյ եւ կամ գոնեայ մեղմանալ. յայն սակս ոչ դադարեսցուք ամենեւին զօգնականութիւնս իշխանութեան մերոյ մատուցանել, որ քեզ եւ ժամանակիդ նպաստաւոր կարիցեն լինել. եւ եթէ յոյս ինչ յաջողութեան որպիսի եւ իցէ ի հեռաստանէ նշմարիցի՝ գտցի ոք անվրէպ որ ըստ հրամանի մերում, որպէս ցանկասդ, խօսեսցի ընդ թագաւորին Պարսից եւ տացէ նմա զթուղթ մեր եւ զմեծարանս ։ Առ այժմ ջերմաջերմ աղաչեմք զամենազօրն Աստուած օգնել եւ պաշտպանել վաստակոց քոց եւ բարեպաշտն

զամենայն գիտութիւնս, էառ եւ զաստուածաբանական վարդապետութիւնն, բայց դարձեալ առ վարդապետն՝ զկնի սուղ ժամանակի վախճանի ոչ առանց մեծ տրտմութեան ամենեցուն:

"Եղիազար կաթողիկոսն Եղուանից ոմամբք եպիսկոպոսօք իւրովք զդաւանութիւն ուղղափառ գրեաց առ Իննոչենցիոս ԺԲ. Փապն: — Նոյնպէս եւ յաջորդ նորին Սիմէոն կաթողիկոսն, 1695": Այս կաթողիկոսին համար դարձեալ նոյն ժամանակագիրն ասանկ կը գրէ. "Սիմէոն Եղուանից կաթողիկոսն, ընդ որոյ իշխանութեամբ էին Շամախ, Կանձայ, Շիրուան, Ղարապաղ քաղաքք եւ գաւառք, առ սոյն Հայրապետն (Իննովկենտիոս ԺԲ.) զպատուական թուղթ հնազանդութեան գրեաց, զոր ես Նարգմանեցի, ի վաղուց հետէ զինքն հնազանդ սուրբ եկեղեցւոյ Հռոմայ գրէ: Խնդրէ ի սրբազան փափէն զյանձնարարական թուղթ[1] առ Պարսից արքայն Շահսուլթան Հիւսէյինն, որպէս զի ըստ առաջին թագաւորացն Պարսից, անխափան կարասցէ ինքն հովուել զհօտ իւր": Եւ Իննովկենտիոս ԺԲ. աս թուղթս իրեն կը գրէր, որն որ անժխտելի ապացոյց է մինչեւ հիմայ գրուածներուն:

"Մեծարգոյ եղբօր Սիմէոնի հայրապետի Հայոցն Շիրուանայ, Իննովկենտիոս Պահանայապետ ԺԲ: — Մեծարգոյ եղբայր, ողջոյն եւ առաքելական օրհնութիւն: — Զթուղթ գրեալ յեղբայրութենէ քումմէ յամի հազարերորդի վեցհարիւրորդի իննսներորդի հինգերորդի ընթերցաք մեծաւ հաճութեամբ, քանզի երեւելի փոյթ հնազանդութեան եւ սիրոյ առ սոյս սուրբ աթոռս ընծայեցուցեր ի նմին ոչ սակաւ խոնարհութեամբ քան աստուածապաշտն մտօք. զորմէ եւ յայտ առնես թէ ոչ նոր ինչ է մտաց քոց, այլ անդուստ ի վերուստ ի բազում ամաց հետէ յօրինակէ

1 Թէ Իննովկենտիոս ԺԲ. չէ նամակս Ջամբուլաթի Ցխատեանը, թէ միայն յանձնարարական թուղթ Լեհաց թագաւորին գրեալը, նոյն այլ նաեւ պատուիրակութիւն խրկած է ժամանակագիրը կը պատմէ, 1696ին Շահին առ բանիս համար դՀ. Իգ.

առաջին եւ արդարեւ հոյակապ եպիսկոպոսաց ազգին Հայոց ի քեզ լեալ եւ խնամով եւ հաւատեաւ մինչեւ ցայժմ պահեալ առաւելու օրըստօրէ եւ վառեալ բորբոքի։ Ընդունիմք ճշմարտիւ զայս իմացուած մտաց քոց առանձինն բղխիւք քահանայապետականն սիրոյ, եւ չկասկածեմք թէ այսպիսի գեղեցիկ նախանձ պտուղս ընտիրս բերիցէ եւ կամ զմեծ մասն այսր հօտի, Աստուծոյ օրհնութեամբ, միաբանգամ ի ծոց եւ ի ստինս մօր նորա Հռոմէական եկեղեցւոյ դարձուցանել կարիցէ. եւ դարձն առ նա կարող իցէ բառնալ եւ կամ գոնեայ նուազեցուցանել զաղէտսն՝ զոր աշխարհէք յորմէ հետէ անջատումն լեալ է։ Արդ զի յայնպիսի գործ բարեպաշտութեան՝ որ եւ լին է անզուգական փառօք յերկոսին իսկ կեանս, սրտի մտօք ձեռնամուխ լինիցիս, ի պարտուց պաշտաման մերոյ թելադիր լեալ յորդորեմք եւ ջերմագոյնս աղաչեմք, զի երեքկին պատուիրանին՝ զոր եղբայրութիւն քոյ ի թուղթս իւր յիշատակէ, սրտի մտօք հնազանդեսցուք, որով Յիսուս Քրիստոս Տէրն մեր զհոգ հոգւոց փրկելոց պատուական արեամբ իւրով՝ ճշդագոյնս արար յանձն Պետրոսի՝ իշխանի առաքելոց, զորոյ զաթոռն իսկ ունիմք յԱստուծոյ տեսչութենէն, թէպէտ եւ առանց արժանաւորութեան։ Այլ զոր օրինակ ներքին զգածմամբ հայրական սրտի կարեկից լինիմք վշտաց այնր եկեղեցւոյ՝ որ երբեմն ծաղկեալ բարգաւաճէր, ցանկամք անձկութեամբ զի հնար լիցի ամենեւին բառնալ նոցա ի միջոյ եւ կամ գոնեայ մեղմանալ. յայն սակս ոչ դադարեսցուք ամենեւին զօգնականութիւնս իշխանութեան մերոյ մատուցանել, որ քեզ եւ ժամանակիդ նպաստաւոր կարիցեն լինել. եւ եթէ յոյս ինչ յաջողութեան որպիսի եւ իցէ ի հեռաստանէ նշմարիցի՝ գտցի ոք անվրէպ որ ըստ հրամանի մերում, որպէս ցանկասդ, խօսեսցի ընդ թագաւորին Պարսից եւ տացէ նմա զթուղթ մեր եւ զմեծարանս։ Առ այժմ ջերմաջերմ աղաչեմք զամենազօրն Աստուած օգնել եւ պաշտպանել վաստակոց քոց եւ բարեպաշտն

ուխտից, եւ Տէր, մեծարգոյ եղբայր, գործակցութիւն սիրով մատուցանեմք զառաքելական օրհնութիւն:

"Գրեալ ի Հռոմ առ Ս. Մարեմայ Մեծի, եւ կնքեալ մատանեաւ ձկնորսի ի 6երորդ աւուր Յունիսս ամսեանն 1698, ի հինգերորդ ամի քահանայապետութեան մերոյ,,[1]:

Այլ գրէ դարձեալ նոյն ժամանակագիրը:

"Գրիգոր կաթողիկոսն Սսոյ եկն ի Հռոմ 1693 զուխտն իւր կատարել, ածեալ ընդ իւր զՅակոբ եպիսկոպոսն Հալէպցի եւ զՅովհաննէս եպիսկոպոսն. արարին զդաւանութիւն երեքեան: Կաթողիկոսն դարձաւ յերկիր իւր, իսկ եպիսկոպոսունքն՝ ընդ այլ:

"Մխիթար վարդապետն եպիսկոպոսն Մոկաց, Լալուակ Միխոյ կոչեցեալ, եկեալ ի Լէոպոլիս, առաջի Վարդանայ Յունանեան արքեպիսկոպոսին մերոյ արար զդաւանութիւն ուղղափառ հաւատոյ[2]:

"Վլաս վարդապետն Շամախեցի, եպիսկոպոս Շամախու եւ այլ քաղաքաց, նմանապէս գրեաց 1695 զհնազանդութիւն եւ զդաւանութիւն առ Իննոչենցիոս Փափն, զոր ես Թարգմանեցի,,:

Իննովկենտիոս ԺԲ. նոյն թղթոյն աս պատասխանը տուաւ:

"Մեծարգոյ եղբօր Վլասայ եպիսկոպոսի Հայոց, Իննովկենտիոս Քահանայապետ ԺԲ: — Մեծարգոյ եղբայր, ողջոյն եւ առաքելական օրհնութիւն: —

1 Յաւել. ի Քահանայապ. կոնդակ. Տարած. Հաւ. Հառ. Ա. էջ. 349:

2 Այսպէս կը գրուի նաեւ "Թուղթ քաջալերական առ Ուղղափառս մերազնեայս՝ որք ի քաղաքին Եւդոկիա,, մատենին մէջ. "Մովսէս վարդապետ Երեւանցի յամի Տեառն ՌՈՁԹին եկն ի Լէոպոլիս. եւ ի ձեռս իմ արար զԴաւանութիւն կաթողիկէի հաւատոյ. հրապարակաւ յեկեղեցւոջ:... Մխիթար վարդապետ Լալուակ Միխո մականուանեցեալ, եպիսկոպոս Մոկաց յամի Տեառն ՌՈՂԳին եկեալ ի Լէոպոլիս, արար հանդիսապէս առաջի իմ զդաւանութիւն կաթողիկէի հաւատոյ. Գոն եւ այլք բազումք ի ժամանակիս մերում, որք զնոյն շաւիղ ունէին ուղղափառութեան, եպիսկոպոսունք, վարդապետք, քահանայք, աբեղայք, եւ այլք ի գրերց յիւրաքանչիւրոց թեմից կաթողիկոսաց, եւ աշխարհականք գրեթէ անբաւք, որք գի յայանիք ձեզ են, Թողում,,:

Խնկալէտ եւ լուսաւոր յայտարարութիւն հնազանդութեան եւ մեծարանաց եղբայրութեան քոյ առ մեզ եւ առ այս սուրբ աթոռ՝ զառաջինն մեծի ուրախութեան պատճառք եղեն քահանայապետական ոգւոյս, սակայն քանզի կարի յոյժ հոգ ի մտի ունիմք զհանգամանաց իրաց ուղղափառն Հայոց՝ որք երբեմն ուրեմն սրբութեանն օրինակօք առ հասարակ ծաղկեալ բարգաւաճէին յոյժ, եւ զի զհռչակաւոր ազգն ձեր, որպէս վայել է, մեծ եւ արգոյ համարիմք, չեղեւ մեզ հնար առանց անհնարին թաղծութեան եւ ցաւոց ընթեռնուլ զթուղթ քոյ, յորում յիշատակես զդժնդակագոյն աղէտս, որովք այժմ պաշարեալ կայք, եւ աշխար եղեալ լաս վասն ջերմագոյն սիրոյ հայրական կամացն՝ որովք զբովանդակ ազգն ձեր յակն առեալ սիրեմք, ցանկամք ապաքէն զի յառատ յորդութիւնս ամենայն նպաստաւորն իրաց՝ հանդերձ ամենայն խաղաղութեանն եւ ամենայն հանդարտութեան յաջողութեամբ վայելիցէք, եւ որպէս խնդրեսդ՝ չառնեմք ինչ զանց մատուցանել այսց իրաց զօգնականութիւնս պաշտաման եւ ճոխութեան մերոյ, որք կարեւորն եւ պտղաբեր կարիցեն լինել, յոյր սակս եւ ջերմաջերմ պաղատանօք առ Աստուած Հայրն ողորմութեանց ընթանամք: Եւ եթէ արդարեւ կամիցիք ի ձէնջ եւս կուսէ յաւելուլ յայդ ամենայն՝ ճշմարտութեամբ դառնալով առ Տէր սրտիւք, ոչինչ մնայցէ այնուհետեւ՝ որում չկարիցեմք ակն ունել ի Նմանէ, որ ոչ պակաս է մեծութեամբ յողորմութեան իւրում որչափ կարողութեամբ ի գործս իւր: Սակայն զայս առանձինն պարտ է ունել ձեզ միշտ հաստատութեամբ ի մտի, զի ջանայցէք յարել հանապազ յայս սուրբ աթոռ երջանկելոյն Պետրոսի իշխանի առաքելոցն, եւ մի վարիցիք այսուհետեւ օրինակաւ իւիք ի զատուցել մոլորութիւնս: Օ՛ն առ, մեծարգոյ եղբայր, հովուական տքնութեամբ, որպէս պարտիդ, եւ մեծաւ հաւատեաւ ուշ եդեալ՝ մի դադարիր երբեք ի մատակարարելոյ զփրկական եւ զսուրբ

դարձմանն՝ որ վասն հանդերձելոյ փառաց ճշմարիտն կենաց կարեւոր իցէ, եւ նպաստամատոյց իսկ ի բառնալ զաղէտս ժամանակաւորս, զորոց այժմ բանք են, յապահովս լեալ եթէ ոչինչ հնար է լինել ի քէն, որով՝ հանդերձ մեծամեծ յարգանօք ամենայն առաքինեաց, ոչ միայն մերում մարդասիրութեան, այլ եւ կամաց եւ պաշտպանութեան ամենակալին Աստուծոյ առաւել արժանաւոր լինել կարասցես. եւ քեզ զորովագութ իմն սիրով զառաքելական օրհնութիւն մատուցանեմք:

"Գրեալ ի Հռոմ առ Ս. Մարեմայ Մեծի, եւ կնքեալ մատանեաւ ձկնորսի ի 6երորդ աւուր Յունիս ամսեան 1698, ի հինգերորդ ամի քահանայապետութեան մերոյ,,[1]:

Նմանք յաջորդներն ալ:

"Նահապետ կաթողիկոսն յայսմ ամի 1695 Սեպտեմ. 5 գրեաց զթուղթ, որոյ օրինակն առ իս է, առ Իննոչենցիոս փափն, դաւանելով զնա Տիեզերալոյս Գլխաց Գլուխ, եւ ամենայն Քրիստոսադաւան ազանց, մանաւանդ մերս սեռի Լուսաւորչականի եւ Հայազունի Ս. Հայր, խնդրելով զխնամակալութիւն Նորա ի վերայ Հայոց, եւ այլն: Որոյ ի սէր վառեալ սուրբ Հայրապետն, պատասխանեաց եւ ընծայից արժանի առնէ:

"Մինաս Վ. Թոխաթցի, արքեպիսկոպոսն եւ առաջնորդն Երուսաղէմայ ի սոյն ամի (1699) Դեկտեմբ. ԺԸ. ի Կոստանդնուպոլսէ առ նոյն Արքազան փափն գրեաց, դաւանելով այսպիսի բանիւք: Դաւանիմք եւս զՍրբազան Հռոմայ ճշմարիտ յաջորդ գլխաւոր Առաքելոյն Պետրոսի, գլուխ ամենայն հաւատացելոց, ծայրագոյն դատաւոր ի մէջ Եկեղեցւոյ Սրբոյ, եւ ընդհանրական Վարդապետ բոլոր եկեղեցւոյն Քրիստոսի: Դաւանէ զերկուս ի Քրիստոս բնութիւնս, զհոգւոյն Սրբոյ բղխումն ի Հօրէ եւ յՈրդւոյ, զներկայ արքայութիւնն, եւ զերանելի կեանս Սրբոց, զՔաւարանն եւ

1 Յաւել. ի Քահանայապ. Կոնդակ. Տպած. Հաւ. Հատ. Ա. 350:

զայլն։ Ըղերսէ զօրհնութեան նամակ ի սուրբ Հայրապետէն։ Որոց թղթոց օրինակք են առ իս։

“Եղիա արքեպիսկոպոսն Բեթղեհէմի՝ որ ի սուրբ ծննդեան Քրիստոսի, յորմէ եւ առի զարքաղան կարգս եւ զքահանայութիւն, յայսմ ամի 1700 դարձաւ յԵրուսաղէմ։ Սա յառաջնորդէն Երուսաղէմի եւ ի Հայոց թղթովք առաքեցաւ ի Հռոմ առ Ինոկ. ԺԲ. հանդերձ հնազանդութեամբ եւ այլն։ Խնդրելով զյանձնառարական գիրս առ թագաւորսն Կաղղիացւոց եւ Սպանիացւոց, որպէս զի ուր եւ դիպեսցի ի վերայ ծովու գերել զնաւ ինչ, զ'ի նմա եղեալ Հայսն մի գերեսցեն. զոր եւ ընկալաւ իսկ։ Սա էր ճշմարիտ ուղղափառ, խոնարհ եւ սրբակեաց։

“Եսայի Գանձասարայ, Գարապաղի եւ Շիրուանայ կաթողիկոսն յայսմ ամի (1712) առ թագաւորն մեր Լեհաց Օգոստոսն գրեաց, առաքելով ընդ Յուսուփ Վրուշինսքիին Եզուիտայն զթուղթն. ցուցանելով զինքն հաւատարիմ Սուրբ աթոռոյն Հռոմայ, եւ որդւոց նորին թագաւորացն Քրիստոնէից։

“Սոյն կաթողիկոսն Եսայի գրեաց եւ առ Կղեմէս ԺԱ. Փափն, առաքելով նմա զդաւանութիւն ուղղափառ հաւատոյ։

“Աստուածատուրն Համատանցին նախ կաթողիկոս Էջմիածնայ յայսմ ամի (1717), յետ մահուանն Աղեքսանդրի, որ գոլով ուղղափառ՝ գրեաց առ Կղեմէս փափն զթուղթ հնազանդութեան իւրոյ, եւ զմեծ փավաստանս Սուրբ Եկեղեցւոյն Հռոմայ»։

Իր յաջորդն ալ Կարապետ Ուլնեցի նոյն ուղղաթեան ճամբան բռնեց եւ գրեց Իննովկ. ԺԳ. Քահանայապետին թուղթ հնազանդութեան ու հպատակութեան[1]։

Չենք ուզեր ալ յառաջ տանիլ այս պատմական դէպքերուն ընթացքն ու հրապարակական դաւանութիւններուն յաջորդութիւնը. բայց չենք կրնար մոռն-

1 Գեր. Իգն. Վ. Փափազեան, Պատմ. Եկեղեց. 934։

գամայն զանց առնել խորհրդածութիւն մը՝ զորն որ ճշմարտութենէ եւ արդարութենէ կը ստիպուինք ընելու, թէ այն ամէն արիասիրտ անձինքն ու ժողովուրդը՝ որ վերջին դարերուն մէջ այնպիսի համարձակութեամբ ճշմարտութիւնը դաւանեցան, որպիսի՞ ժամանակ էին եւ ի՞նչ բանի ակնկալութիւն կ'ունենային։ Տարակոյս չկայ որ Քրիստոսի այն խօսքն էր իրենց հատուցումը՝ թէ "Յաշխարհի աստ նեղութիւն ունիցիք,,. իրենց վարձքն ու հատուցումն էր արհամարհութիւն, վիշտ եւ հալածումն։ Բայց այն ամենայն չէր կրնար զիրենք խախտել. ինչու որ Պետրոսի ժայռին վրայ յենած ամրացած էին, եւ իրենց հառաչանքն ու հեծութիւնները՝ զորոնք աշխարհք կ'արհամարհէր, առանց արդեանց եւ վարձուց չէին մնար Աստուծոյ առջեւ, այլ պտղատու ու արգասաւոր կ'ըլլային իրենց ազգակցաց մէջ։ Եւ այն քահանայապետական գլխաւորութեան դաւանութիւնը՝ զորն որ մեր Նախահայրը Ս. Գրիգոր իր արեամբն իր հոգեւոր որդւոց սրտին մէջ դրոշմած էր, 15 դարերու յեղափոխ դէպքերուն մէջ անջնջելի մնալէն ետքը՝ նորէն նորէն հաստատութիւն կ'առնէր, ինչպէս ութեւտասներորդ ու իննեւտասներորդ դարուց դէպքերը կը վկայեն։ Աստուածային տեսչութիւնը կը յարուցանէր նոյն իսկ Հայաստանի մէջէն մեր երանաշնորհ Հիմնադիրը զՄխիթար Վ. Սեբաստացի, որ իր առաքելական ջանքովն ու ողջամիտ վարդապետութեամբը, որուն անժխտելի ապացոյցներ են իր մատենագրութիւնները, "Զորդիսն Աստուծոյ զցրուեալսն,, ժողովել կը ջանար Քրիստոսի մի փարախը՝ որուն առաջին հովիւը Պետրոսի գաւազանաւ Քրիստոսի հօտը կ'արածէ։ Եւ կը դնէր հիմն մշտնջենաւոր քարոզութեան մը, երբ որ դեռ այն անմեղ արեան ջերմ գոլորշիները կը ծխէին հռչակաւոր մայրաքաղաքին ծովափունքը, ուր որ մեր Ս. Լուսաւորչին հոգեւոր որդին եւ իր քահանայութեան գործակիցը Տ. Կոմիտաս վկայն այնպիսի արիութեամբ իր հայրենի հաւատոյ վրայ կեանքը զոհելով՝

դաՀճի սրոյն տակ իր արեան մինչեւ վերջին կաթիլը կը թափէր, եւ այն սուրբ ու անբիծ արեան մէջ թաթխուած մարմինը վկայ կը թողուր իր վարդապետութեան ճշմարտութեան ու աստուածային սիրոյն, որով որ իր գերեզմանէն դեռ ամէն Հայրենակցաց սրտին գորովական ձայնով կը գոչէ. «ԱՀաւասիկ ես իմ բարւոք պատերազմս պատերազմեցայ, ընթացքս կատարեցի, Հաւատքս պաՀեցի եւ արդարութեան պսակն արդար դատաւորը Հատոյց ինծի[1]։ Բայց դուք, ազգակիցք իմ, անսացէք ինծի, դրոշմեցէք սրտերնուդ վրայ ողջամիտ վարդապետութիւնները՝ զոր քարոզեցի Հաւատքով ու սիրով ի Քրիստոս Յիսուս[2]. առէք պաՀեցէք այն գեղեցիկ աւանդը՝ որ մեր ՆախաՀօր եւ ՆախաՀարց բերնով Հոգւին սուրբ ձեզի կ'աւանդէ։ Լսեցէք այն երկնաւոր ու կենդանարար ձայնին, որ Պետրոսի ժայռէն իր արձագանգը կու տայ, թէ Եկայք առ իս ամենայն աշխատեալք եւ ես Հանգուցից զձեզ»։

Աս երկնաւոր ձայնին մենք ալ մեր նուաստ ձայնը կը խառնենք, մենք՝ որ աս փոքր մատենագրութեան մէջ ուրիշ բան չունինք աչքերնուս առջեւ, բայց եթէ՝ որ մեր Հայրենեաց աւանդենք իր Հայրենական անարատ աւանդութիւնը, եւ լուսաւորենք միտքերը՝ որ նախապաշարմամբ մթնցած կ'երեւան. մանաւանդ որ մեզի աս բարեբախտութիւնն ու երջանկութիւնը տրուած կը Համարինք, որ այնպիսիներուն կը խօսինք, որոնց այս ամենայն պէտք չէ որ անծանօթ ըլլայ, ինչպէս երբեմն իրեն երջանկութիւն կը Համարէր Պօղոս առաքեալ՝ ընտրութեան անօթը, եւ Համարձակ կը զրուցէր. «Արքայ Ագրիպպա, Համարիմ զանձն երանելի, զի քո առաջի այսօր տալոց եմ պատասխանի, մանաւանդ զի գիտակ իսկ ես ամենայն կրօնից եւ խնդրոց Հրէից[3]»։ Իսկ եթէ գտնուեցաւ Փեստոս օտարազգի մը՝ որ Առաքելոյն Հոգեկից վարդապետութիւնը մոլորութիւն կը

1 Բ. Տիմ. Դ. 7, 8։
2 Բ. Տիմ. Ա. 13, 14։
3 Գործ. ԻԶ. 2. 3։

յանդգնաներ, մեր ազգակցաց կրօնասիրութիւնն ու անաչառ վստահութիւնը մեզի յաւագոյն գործոց եւ պատասխանայ մը խրատուցի անկեղծութիւն կու տայ. որովհետեւ վստահ ենք որ իրենք իրենցմէ պայծառ կը տեսնեն թէ ճշմարտութիւն [1] կը բարբառենք, եւ յանձն չենք առներ որ աս ամենայն ծածկուած սեպուի իրենց առջեւ։ Ուստի եւ չենք հարցըներ Առաքելոյն հետ. "Հաւատա՞ս, արքայ Ագրիպպաս, մարգարէից,,. վասն զի աղէկ գիտենք որ մեր ազգայինք սրտանց կ'ուզեն հաւատալ իրենց մարգարէից, որոց Լուսաւորչին եւ ուրիշ մեր սրբոց հարց վարդապետութեան, որ նոյն իսկ այն ողջամիտ վարդապետութիւնն է՝ զորն որ հռոմէական եկեղեցին կը խոստովանի, զորն որ ուղղափառ ազգերը եւ 200 միլիոն մարդիկ կը դաւանին։

Եթէ մեծերս հրատարակուած հրապարակական գրուածքի մը յորդորն ընդունելի է, թէ փոքր մասը՝ մեծ մասին պէտք է համաձայնիլ, ահաւասիկ աչքերնիս պատեհ դէպքը կեցած է, եւ համեմատութիւնն այնպէս պայծառ է՝ որ անոր հետեւութիւնը պարզամիտ գեղջուկն ալ կ'ըմբռնէ։ Աշխարհքիս վրայ շուրջ 3 միլիոն ժողովուրդ մը առանձինն մէկ կողմը կը գըտնուի, եւ մէկալ կողմանէ՝ 200 միլիոն զանազան ու երբեմն նաեւ իրարու հակառակ ազգերէ, բայց հաւատոյ եւ՝ հաղորդակցութեան միութեամբ անխզելի կապուած ժողովուրդ մը բոլոր տիեզերաց երեսը բռնած տարածուած կը գտնուի, զորն որ իննեւտասան դարուց ոչ բռնութիւնները եւ ոչ նենգութիւնները, ոչ հերձուած եւ ոչ խարէութիւն կրցան բաժնել կամ նուաճել, զորն որ եւ ոչ դժոխոց դռները պիտի կարենան յաղթահարել։

Ու արդ՝ եթէ մի է Աստուած, նոյնպէս հաւատքն ու եկեղեցին ալ մէկ պիտ'որ ըլլայ, կը հարցընենք ուրեմն թէ ո՞ր մասը՝ որուն պիտի համաձայնի։ Կը գըտնուի՞ արդեօք մէկը՝ որ կարող ըլլայ ըսել թէ 200 մի-

1 Գործ. ԻԶ. 26.

լինել բաղկացած ամենէն հին եկեղեցին պէտք է որ շուրջ 3 միլիոն ժողովրդեան մը հնազանդի . . : Արդիւն խանգարեալ միտք պիտի ըլլայ, որ այսպէս կարենայ մտածել . . . . . : Բայց մենք մեր ազգայնոց ծանր մտածողներէն ուրիշ պատասխանւոյ մը կը սպասենք, եւ զմեզ երանագոյն կը համարէինք՝ եթէ Ագրիպպասայ խօսքերուն՝ որ ըսաւ Պօղոսի, թէ “Փոքու իմն հաւանեցուցանես զիս լինել քրիստոնեայ„[1] նման արձագանգը հնչէր այնպիսի սրտերու, որոնց քաղցր էր մեզի նոյն Առաքելոյն յիշատակաց արժանի պատասխանը տալ. “Խնդրէի յԱստուծոյ եւ փոքու եւ մեծաւ, ոչ միայն զքեզ, այլ զամենեսեան՝ որ լսեն ինձ այսօր, լինել այնպիսի որպէս եւ եսս եմ„[2]: Եւ դարձեալ՝ “Եթէ ըստ ճանապարհին՝ զոր ասեն հերձուած, այնպէս պաշտեմ զհայրենի Աստուածն. հաւատացեալ ամենայնի՝ որ ինչ յօրէնսն եւ ի մարգարէս (որ ինչ յօրէնս կաթողիկէ Հռոմէական եկեղեցւոյ եւ ի սուրբ Հայրս մեր) գրեալ է„[3]. եւ կնքել խօսքերնիս Քրիստոսի մեր Փրկչին խօսքերովը. “Քննեցէք զգիրս, զի դուք համարիք նոքօք ունել զկեանս յաւիտենականս„[4]:

1 Գործ. ԻԶ. 28:
2 Անդ. 29:
3 Անդ. ԻԴ. 14:
4 Յովհ. Ե. 39:

# ՑԱՆԿ

